ՊՐՈՖ. Հ. ՄԱՆԱՆԴՅԱՆ

# ՖԵՈԴԱԼԻԶՄԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

ՀՍԽՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ



# ՖԵՈԴԱԼԻԶՄԸ ՀԻ՛Ն ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՈՒ ՄԱՐԶՊԱՆՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆ)

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ

ՅԵՐԵՎԱՆ 1934

# 1. ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Պատմական գիտությունը, ինչպես հայտնի է, երկար ժամանակ համարում էր ֆեոդալիզմը առանձնակի ու ուրույն մի կազմակերպություն՝ հատուկ բացառապես միջնադարյան Արևմտյան Եվրոպային։ Սակայն դեռևս 18-րդ դարում անգլիական գիտնական Գիբբոնն իր «Պատմություն Հռոմեական պետության անկման և քայքայման» հռչակավոր աշխատության մեջ[1] կարծիք էր հայտնել, որ Արշակունիների տիրապետության ժամանակ հասարակային հարաբերությունները Իրանում ունեցել են ֆեոդալական բնույթ։

Նույն այս կարծիքն ավելի ևս հիմնավորել էր ֆրանսիական արևելագետ Սեն-Մարտենը 1821 թվին Փարիզի Ակադեմիայում իր կարդացած զեկուցման մեջ։

«Եթե համեմատենք — ասում է Սեն-Մարտենը — 12-րդ դարի Եվրոպան այն միապետության հետ, որ Քրիստոսից երեք դար առաջ հիմնել էին Ասիայում Արշակունիները, մենք կտեսնենք այստեղ ևս նման սովորույթներ և նման կարգեր. մենք կգտնենք աստիճանավորներ. միևնույն կոչումներով՝ մարքիզներ, բարոններ, ասպետներ և հասարակ զինվորականներ։ Այստեղ ևս որոշ թվով մարդիկ ունեին ազատության բոլոր իրավունքները, մինչդեռ մարդկանց մեծագույն մասը բոլորովին զուրկ էր այդ իրավունքներից»։[2] Սեն-Մարտենի կարծիքով, ֆեոդալիզմի ստեղծողը ո՛չ Եվրոպան էր, ո՛չ

[1] E. Gibbon, The history of the decline and fall of the Roman empire, ed. by Bury, London 1900, I, էջ 203—204։

[2] Histoire des Arsacides II, էջ 293. տես Адонц, Армения в эпоху Юстиниана, СПБ. 1908, էջ 436—437։

ել Պարթևները, այլ նրա առաջացման պատճառը մեծ յեր-
կիրների զինվորական գրավումն եր և այդ յերկիրների բա-
ժանումը և հանձնումը զորքին։ «Աստիճանները — ասում ե
նա—բաշխվել են այստեղ այնպես, ինչպես պաշտոնները զոր-
քերում. այդ կազմակերպությունը, ուրեմն, անխուսափելի
հետևանքն եր զինվորական կառավարության կամ նվաճման.
Արշակունիները չեյին, անշուշտ, այս ձևի կառավարության
ստեղծողը, վորովհետև նրանք չեյին հարկավ Ասիայի առա-
ջին նվաճողները» (տես նույնը, եջ 296)։

Սեն-Մարտենի այս վերջին պնդումը, վոր վերաբերվում
ե ֆեոդալիզմի ծագման, այժմ, իհարկե, անընդունելի յե.
սակայն նրա մյուս յենթադրությունը, վոր պետական կազ-
մակերպության ֆեոդալական ձևն առանձնահատուկ ե յեղել
նաև Պարթև Արշակունիների թագավորության, միանգամայն
ճիշտ կռահումն եր, վորը հաստատվեց հետագայում այդ
խնդրի մանրախույզ քննությամբ։

19-րդ դարի յերկրորդ կիսում պատմական գիտության
մեջ, ինչպես հայտնի յե, ֆեոդալիզմի խնդրում առաջ եր
յեկել հետզհետե վորոշ բեկում։ Համեմատական-պատմական
ուսումնասիրությունների շնորհիվ կարելի յե այժմ վերջնա-
կանապես պարզված համարել, վոր ֆեոդալիզմը գոյություն
ե ունեցել վոչ միայն միջնադարյան Յեվրոպայում, այլ և
ուրիշ յերկիրներում. Այժմ արդեն ընդունում են, վոր ֆեո-
դալիզմը սոցիալական զարգացման կարևոր ու հատուկ մի
փուլն ե և վոր նրա գոյությունն ակներև ե բազմաթիվ ժո-
ղովուրդների կյանքում, զանազան տեղերում և տարբեր
դարաշրջաններում։ Յեվրոպական ֆեոդալիզմը հիշեցնող վո-
րոշ կարգեր մատնացույց են արվում այժմ Հին Հունաստա-
նում և Հռոմում, Հին Արևելքում, սլավոնական յերկիրներում
և Ռուսաստանում, Ճապոնիայում, Չինաստանում և ուրիշ
տեղերում։

Ֆեոդալականության այդ յերևույթները տարբեր յեր-
կիրներում, տարբեր դարաշրջաններում և պատմական այլ
և այլ պայմաններում ունեցել են, անշուշտ, բացի ընդհա-

նուր նման գծերից, նույնպես և տեղական առանձնահատկություններ։ Ֆեոդալիզմի պատմական-համեմատական ուսումնասիրության համար կարևոր է հենց լուսաբանել մանրամասն կերպով զանազան յերկիրների ֆեոդալական զարգացման յերևույթներն իրանց ամբողջ անհատականությամբ, մատնանշելով թե նրանց հատկանշային նման գծերը և թե նրանց շեղումները և առանձնահատկությունները։

Այդ ուսումնասիրությունները կարևոր են խիստ վոչ միայն պատմագիտության, այլ և սոցիոլոգիայի համար։ Միանգամայն պարզ է, վոր ֆեոդալիզմի գաղափարը՝ իբրև ընկերաբանական ընդհանուր հասկացողություն՝ հնարավոր կլինի վերջնականապես ճշտել միայն այն ժամանակ, յերբ ֆեոդալական պետությունը և ֆեոդալիզմի յերևույթներն իրանց իրական ու բազմազան առանձնահատկություններով ուսումնասիրված կլինեն բացի Արևմտյան Յեվրոպայից նաև մյուս յերկիրների պատմական կյանքում։ Առանց այդ ուսումնասիրությունների, բնականաբար, թերի ու անկատար կլինեն նույնպես և պատմական-համեմատական հետազոտությունների նորագույն փորձերը, վորոնց նպատակն է պարզել ու վորոշել ֆեոդալականության խմբակից ձևերը և տալ նրանց մասին գիտական ընդհանրացումներ, հիմնված այն ամփոփումների վրա, վոր վերաբերվում են առանձին յերկիրների ֆեոդալական անցյալին։

Ընդհանուր տեսության այդպիսի մի փորձ արված է, որինակ, Н. Рожков-ի նորագույն ընդարձակ աշխատության մեջ՝ Русская история в сравнительно-историческом освещении (основы социальной динамики), том II, Москва 1922: Բացի յեվրոպական յերկիրների ֆեոդալիզմից Ռոժկովը քննության է առել իր գրքում նույնպես և արևելյան յերկիրների ֆեոդալական զարգացումը զանազան դարաշըրջաններում, ի միջի այլոց, նաև Հայաստանի և Վրաստանի։ Սակայն համեմատական նրա այդ տեսությունը թե արևելյան և թե, հատկապես, Հայաստանի և Վրաստանի ֆեոդալիզմի մասին՝ միանգամայն վայրիվերո յե և ավելի քան անբա-

վարար։ Հայաստանի, ինչպես և Վրաստանի, ֆեոդալիզմի համար նրա աղբյուրներն են, գլխավորապես, Ջիվելեգովի և Ջավախովի հոդվածները Հայաստանի և Վրաստանի պատմության ու գրականության մասին Գրանատի Հանրագիտական բառարանում։ Պարզ է վոր հարևանցի ու վիճելի նման ամփոփումները, վորոնք բնավ իսկ չեն լուսաբանում ֆեոդալիզմի եությունը վերոհիշյալ յերկիրներում, չեն կարող հիմք ծառայել ֆեոդալիզմի պատմական-համեմատական ուսումնասիրության։

Ռաժկովի սոցիալական-համեմատական նույն ուսումնասիրության մեջ անբավարար են ու խիստ վիճելի նաև այն գլուխները, վորոնք համառոտ ու ամփոփ տեղեկություններ են պարունակում ֆեոդալիզմի մասին Բյուզանդիայում, Արաբական Խալիֆատում, Հին Հնդկաստանում, Ասորեստանում, Բաբելոնում, Հին Յեգիպտոսում, Չինաստանում, Ճապոնիայում և արևելյան այլ յերկիրներում։

Անհաստատ ու անհաջող այս ամփոփումներն ակնբախ կերպով ցույց են տալիս, վոր Արևելքի նկատմամբ ֆեոդալիզմի խնդիրը դեռևս չի յենթարկվել մասնագիտական բազմակողմանի ու լուրջ քննության և կարոտ է, ուրեմն, ավելի խոր վերլուծման ու հետախուզման, քան մինչ այժմ կատարված են։

Հայաստանի նախարարական կազմակերպության մասնագիտական մանրախույզ հետազոտումը, ինչպես տեսնում ենք, նշանակություն ունի վոչ միայն Հին Հայաստանի քաղաքական ու ներքին կյանքի կարևորագույն հարցերի լուսաբանության, այլ և ընկերաբանական ու պատմական-համեմատական այն ուսումնասիրությունների համար, վոր վերև մատնանշված են։

Հայկական ֆեոդալիզմի և նրա առանձնահատկությունների պարզաբանումն ունի և ուրիշ ուշագրավ ու ընդհանուր նշանակություն։

Դեռևս Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ՝ Հին Հայաստանը, գտնվելով նրա պետական կազմի

մեջ, յենթարկվել եր, բնականաբար, իրանական կենցաղի ու կուլտուրայի ազդեցությանը։

Արմենիայում ևս, ինչպես և Իրանում, բնակչության սոցիալական շերտավորումը և ազնվականության զորեղացումը տեղի եյին ունեցել տոհմային կենցաղի քայքայման համապատասխան պայմաններում։ Այնուհետև, Արտաշեսյան թագավորության անկումից հետո, յերբ Հայաստանում հաստատվել եյին Պարթև Արշակունիները՝ հայկական ֆեոդալիզմը, ինչպես հայտնի յե, ձևավորվել ու զարգացել եր պարթևական կարգերի և ֆեոդալականության նման հիմքերի վրա։ Իրանական պետականության ազդեցությունը շարունակվել եր Հայաստանում, անտարակույս, նաև Սասանյանների ժամանակ, գլխավորապես, մարզպանության շրջանում։ Քաղաքական ու կուլտուրական նման պայմաններում են գտնվել նաև Վրաստանը և Աղվանքը։

Շատ պարզ ե, ուրեմն, վոր հայկական ֆեոդալիզմի լուսաբանումը կարող ե վորոշ լույս սփռել Մերձավոր Արևելքի և, մասնավորապես, Հայաստանի հարևան յերկրների սոցիալական և ֆեոդալական կազմակերպության վրա։ Իսկ այդ չափազանց կարևոր ե, վորովհետև այդ յերկրների սոցիալական հնագույն անցյալի մասին պարսկական ու վրացական աղբյուրները չունեն բավարար ու հաստատուն տեղեկություններ։

Հայկական ֆեոդալիզմի առաջին և, կարելի յե ասել, միակ ուսումնասիրողը պատմական լուրջ քննության գիտական-համեմատական յեղանակով յեղել ե Նիկ. Ադոնցը։ Իր „Армения в эпоху Юстиниана" (СПБ. 1908) կարևոր աշխատության մեջ նա, հիմնվելով Գահնամակի և մատենագրական աղբյուրների վրա, ճշտել ե հայկական նախարարությունների մոտավոր քանակը, վորոշել ե մեծ և փոքր նախարարությունների տոհմային կալվածների տեղագրությունը և դասավորությունը Հայաստանի զանազան շրջաններում, մանրախույզ կերպով քննել ե իրանական պետականության ու հայկական նախարարությունների ծագումը

և նրանց տոհմային ու ֆեոդալական հիմքերը, և իր ուսումնասիրության վերջում համեմատել է նախարարական կազմակերպությունը ֆրանսիական ֆեոդալիզմի հետ և ցույց տվել նրանց նման ու համապատասխան ընդհանուր առանձնահատկությունները։

Ադոնցի ուսումնասիրության բուն նպատակն է յեղել պարզել հայկական ֆեոդալիզմի ծագումը, իսկ նրա էությունը և առանձնահատկությունները քննված են նրա մոտ ամփոփ ու համառոտ կերպով և միայն այն չափով, ինչ չափով որ այս խնդրի լուսաբանումը պարզում է նախարարական Հայաստանի ֆեոդալական բնույթը։ Իմ այս ուսումնասիրության մեջ, ընդհակառակը, մանրամասն կերպով քննության է առնված նախարարական և, գլխավորապես. Արշակունյաց շրջանի նախարարական կազմակերպությունն իր ուրույն բովանդակությամբ և իր բոլոր էական առանձնահատկություններով, իսկ այդ կազմակերպության ծագման խնդիրը շոշափված է սեղմ ու ընդհանուր կերպով։ Համաձայն այդ հատուկ նպատակի՝ իմ աշխատության մեջ ընդարձակ տեղ է տրված նախարարական կազմակերպությանը վերաբերվող այն բոլոր տերմինների և կարևոր վկայությունների քննությանն ու ճշտմանը, վորոնք հանդիպում են նախարարական շրջանի մատենագրական հայ աղբյուրներում։ Առանց այդ քննության և մատենագրական վկայությունների ճշգրիտ մեկնության անկարելի յէ ըստ իս հասկանալ հայկական ֆեոդալիզմի էությունը և տալ նրա մասին հիմնավորված ընդհանուր տեսություն։

Վոր Հին Հայաստանի նախարարական կազմակերպությունը համապատասխանում է իր էությամբ Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմին, այդ ապացուցել է Ադոնցը վերոհիշյալ իր աշխատության մեջ։ Իմ ուսումնասիրության մեջ ցույց է տրված նաև, վոր ֆեոդալական այդ կազմակերպությունների նմանությունները շատ ավելի մոտ են յեղել և սերտ, քան մինչև այժմ յենթադրել են։

Ինչպես հայտնի յէ, Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի

հատկանիշներից մեկը համարվում է feod-ը, որից հենց ծագել է այդ կազմակերպության Ֆեոդալիզմ անունը։ Feod-ը կամ Lehn-ը, որպես հողային-ֆեոդալական հարաբերությունների հատուկ կարգ, պատմագետների կարծիքով, գոյություն է ունեցել բացառապես միջնադարյան Եվրոպայում։ Նրանց կարծիքով՝ feod-ը կամ պայմանական ժառանգական յուրահատուկ հողատիրությունը միանգամայն անծանոթ են եղել արևելյան յերկրներում։ Արդ՝ ուշագրավ է և ֆեոդալիզմի պատմական-համեմատական ուսումնասիրության համար խիստ կարևոր, որ Հին Հայաստանում, ինչպես պարզ երևում է հայկական աղբյուրների ուշադիր քննությունից, «խոստակ»-ը, լինելով կարևորագույն տերմին նախարարական կազմակերպության, իր էությամբ և իրավական բովանդակությամբ համապատասխանում է միջնադարյան feod-ին կամ Lehn-ին, իսկ «խոստակդար» նշանակում է «խոստակ»-տեր, այսինքն՝ feudataire կամ Lehnshalter։ Պարզվում է, ուրեմն, որ Հին Հայաստանի նախարարական կազմակերպությունն ունեցել է, բացի Ազոնցի մատնանշած ֆեոդալական առանձնահատկություններից, նաև այն հիմնական ու էական հատկանիշը, որը բնորոշ է եղել ու հատուկ միջնադարյան ֆեոդալիզմին Արևմտյան Եվրոպայում։

Նոր այս հետևությունն առանձնապես կարևոր է այն պատմագետների համար, որոնք ուսումնասիրում են ֆեոդալիզմի էությունը Մերձավոր Արևելքում և, հատկապես, Հայաստանի հարևան յերկրներում։ Feod-ի մասին ռուսերեն իմ աշխատության մեջ („Заметки о феоде и феодальном войске Парфии и Аршакидской Армении“, изд. Закфилиала Академии Наук, Тифлис 1932) ես մատնացույց էի արել, որ feod-խոստակը գոյություն ունեցած պիտի լինի նաև արևելյան այդ յերկրներում։ Ուրեմն՝ այս յենթադրությունն անսպասելի նոր հնարավորություններ է ընձեռում մասնագետներին հետազոտություններ կատարելու նաև այս ուղղությամբ։

Հայկական ֆեոդալիզմի տևողության ու ծագման ժամանակաշրջանի մասին իմ յեզրակացությունները տարբեր են Ադոնցի յենթադրություններից։ Հայաստանի ֆեոդալականացման սկզբնական շրջանը յես յենթադրում եմ վոչ թե Արտաշեսյան թագավորության ժամանակ, ինչպես կարծում ե Ադոնցը, այլ այդ թագավորության հաստատումից առաջ։ Այնուհետև՝ նախարարական կազմակերպությունը գոյություն ե ունեցել Հայաստանում մինչև ուշ միջնադարը։ Նրա քայքայման ու անկման սկիզբը դրվելու յե ըստ իս 14-րդ դարի յերկրորդ կեսից հետո։ Սակայն ի նկատի պետք ե ունենալ, վոր հետագա դարերում ևս հայկական ֆեոդալիզմի վորոշ մնացորդներ պահպանվել եյին Հայաստանի մի քանի շըրջաններում։

Նիկ. Ադոնցի կարծիքով՝ նախարարական կազմակերպությունը Հայաստանում գոյություն ե ունեցել մինչև մոնղոլական արշավանքները (տես Армения в эпоху Юстиниана, եջ 236)։ Այս յենթադրությունը, իհարկե, ճիշտ չե, վորովհետև խոշոր կալվածատիրության և ֆեոդալական իշխանությունների գոյությունը Հայաստանում ակնհայտնի մի փաստ ե նաև մոնղոլական տիրապետության ժամանակ։

Ֆեոդալիզմի յերկար տևողությունն ուշագրավ մի յերեվույթ ե վոչ միայն Հայաստանում, այլ նաև հարևան Վրաստանում, մասամբ և Աղվանքում։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր տարբեր դարաշրջաններում և Հայաստանի զանազան մասերում նախարարական կազմակերպությունը կրած պիտի լիներ զգալի փոփոխություններ։ Պարզաբանել ըստ հնարավորության հայկական ֆեոդալիզմի բոլոր շրջանները սկսած հնագույն ժամանակներից մինչև նրա քայքայումը՝ այդ, անշուշտ, ապագայի գործ ե։ Իմ այս աշխատության մեջ քննության ե առնված ֆեոդալիզմը Հին Հայաստանում միայն Արշակունյաց թագավորության և մարզպանության շրջաններում։ Թեև Հայաստանի ֆեոդալականացման սկիզբը մենք յենթադրում ենք Արտաշեսյան թագավորության հաստատումից առաջ, սակայն ֆեոդալիզմի ծագման

ամենահին այդ շրջանի մասին մենք չունենք վորոշ ու հաստատուն վկայություններ։ Աղբյուրների տեղեկություն-ները վերաբերվում են, գլխավորապես, զարգացած ու հարդարված նախարարական կարգերին, վոր վերջնականապես ձևակերպվել եյին Արշակունյաց թագավորության հաստատման ժամանակ։ Հասկանալի յե, թե ինչու առաջին հերթին անհրաժեշտ եր ուսումնասիրել հայկական ֆեոդալիզմը հենց այս շրջանում։

Ինձ թվում ե, վոր նախարարական կազմակերպության հնագույն այս անցյալը պարզելուց հետո դժվար չպիտի լինի ուսումնասիրել այնուհետև նաև նրա զարգացումը հետագա դարաշրջաններում։

---

## 2. ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Նախարարական կազմակերպությունը Հին Հայաստանում հայոց պատմության այն յելակետային կարևորագույն խնդիրն ե, վորի ուսումնասիրությունը հիմք ե ծառայելու Հայաստանի սոցիալական կյանքի և անգամ քաղաքական պատմության լուսաբանման։ Հայաստանի ներքին կյանքի մյուս հիմնական խնդիրն ե քաղաքների և առևտրի զարգացման պրոբլեմը, վոր յես մանրամասն քննել եյի ռուսերեն իմ նախորդ աշխատության մեջ — „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен“ (Эривань 1930)։

Ցեթե այս խնդիրները միայն վերջերս են յենթարկվում գիտական մանրախույզ հետազոտման՝ դրա գլխավոր պատճառն այն ե, վոր մատենագրական հայ աղբյուրները նկարագրում են գերազանցապես Հայաստանի արտաքին քաղաքական անցքերը, իսկ սոցիալական-տնտեսական յերևույթների և նախարարական կազմակերպության մասին նրանք տալիս են, մեծ մասամբ, անուղղակի և միջանկյալ տեղեկություններ, վորոնք չեն կարող նյութ դառնալ ընդ-

հանրացումների առանց մասնագիտական հատուկ վերլուծման։

Այդ մութ տեղեկությունները, ինչպես և նախարարական կենցաղի հատուկ տերմինները, թեև քննված ու մեկնըված են մասամբ նախապատրաստական իմ աշխատություններում, սակայն նույն վկայությունները և նախկին իմ դիտողությունները մեջ են բերված նաև սույն ընդարձակ ուսումնասիրության մեջ. որի նպատակն է արդեն տալ հայկական հնագույն ֆեոդալիզմի մանրամասն նկարագրությունը։

Բուն նյութին անցնելուց առաջ հարկավոր է սակայն մատնացույց անել այն աղբյուրները, որոնք հիմք են ծառայել մեր ուսումնասիրության։

Նախարարական կազմակերպության հնագույն շրջանի հիմնական աղբյուրներն են, նախ և առաջ, հին հայ մատենագիրները՝ Փավստոսը, Ագաթանգեղոսը, Կորյունը, Ղազար Փարպեցին և Եղիշեն։ Սրանց երկերը, որ գրված են մարզպանության շրջանում հինգերորդ և վեցերորդ դարերում, իրանց մեջ, բնականաբար, արտացոլում են նախարարական Հին Հայաստանի կենցաղը, աշխարհայեցողությունը և հատուկ կարգերը։ Վերոհիշյալ հեղինակներից առաջին երկուսը՝ Փավստոսը և Ագաթանգեղոսը՝ տալիս են մեզ ուշագրավ տեղեկություններ նախարարական Հայաստանի մասին Արշակունյաց թագավորության հետին շրջանում, իսկ մյուսները՝ Կորյունը, Ղազար Փարպեցին և Եղիշեն՝ հայկական ֆեոդալիզմի կարևորագույն աղբյուրներն են մարզպանական շրջանի։

Ամենամեծ չափերով օգտվել ենք, իհարկե, Փավստոսի պատմությունից, որն անփոխարինելի ու անգնահատելի աղբյուր է ֆեոդալական հին կենցաղի և պարունակում է իր մեջ միջանկյալ հարուստ ու բազմատեսակ նյութեր ավատական հարաբերությունների, բարքերի ու Արշակունյաց նախարարական պետության կարևոր առանձնահատկությունների մասին։ Եթե Փավստոսի մոտ պատմական փաս-

տերը և ժամանակագրությունը կարոտ են միշտ ճշտման ուրիշ աղբյուրների օգնությամբ՝ նրա կենդանի ու պատկերավոր լեզվով նկարագրած միջավայրն իր հատուկ բարոյական ու իրավական հայացքներով իրական կյանքի ճշգրիտ պատկերացումն է, վոր միանգամայն վստահելի յե իբրև առաջնակարգ նյութ հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրության։

Նախարարական կազմակերպության հնագույն շրջանի ուսումնասիրության համար վո՛չ պակաս եական նշանակություն ունեն հայկական ծագում ունեցող այն կանոնադրությունները, վորոնց ժամանակը հավանական է յենթադրել արաբական տիրապետությունից առաջ մարզպանության շրջանում։ Հայկական այս կանոնադրությունները հետևյալներն են՝

1. Շահապիվանի ժողովի կանոնները, վոր ընդունված եյին հինգերորդ դարի քառասնական թվականներին․
2. Սահակ կաթողիկոսին [† 439 թ․] վերագրված կանոնադրությունը․
3. Ներսես կաթողիկոսի [548—557] և Ներշապուհ Մամիկոնենից յեպիսկոպոսի անունով կանոնադրությունը․
4. Հովհան Մանդակունուն վերագրված կանոնագրությունը և
5. Դվինի 645 թվի ժողովի կանոնադրությունը։

Այս կանոնադրություններում կանոնների մեծագույն մասը վերաբերվում են կամ յեկեղեցական դասին և կամ դավանանքի ու պաշտամունքի ծիսական խնդիրներին։ Սակայն նրանց մեջ հանդիպում են, բարեբախտաբար, նաև այնպիսի կանոններ ու ակնարկներ, վորոնք լուսաբանում են նախարարական Հայաստանի կամ սոցիալական-իրավական հարաբերությունները և կամ ուրիշ կարևոր պրոբլեմներ։

Մեջ բերված կանոնադրությունների հաջորդականու-

*թյան մասին ուշագրավ է Սիրական Տիգրանյանի հետևյալ դիտողությունը։ «Պետք է կարծել—ասում է Տիգրանյանը—թե այս կանոնադրությունների գրավոր հորինման ժամանակաբանական հերթավորությունը նույնը պետք է յեղած լինի, ինչ վոր դրանց անվանյալ հեղինակների կենսագրական հաջորդականությունն է յեղել։ Ամեն հավանականությամբ,...* Հովհան Մանդակունու կանոնադրությունը *ավելի ուշ է, քան, օրինակ, Ներսեսի և Ներշապուհինը» (տես «Հայոց իրավունքի պատմության ներածություն», Յերևան 1924, եջ 116—117)։*

*Բացի վերոհիշյալ հայկական կանոնադրություններից ուշադրության արժանի չե իբրև ուժանդակ աղբյուր նաև Աղվանից Վաչագան արքայի կանոնադրությունը, վորն ընդունված է յեղել «Աղուէն»-ի ժողովում վոչ թե 488 թվին, ինչպես սովորաբար յենթադրում են, այլ, հավանորեն, յոթերորդ դարի սկիզբներում (տես իմ աշխատությունը՝ «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության,* II,» *Յերևան 1928, եջ 8)։*

*Նախարարությունների թիվը, գահերեցությունը և զինվորական ուժը վորոշելու համար կարևոր աղբյուրներ են թե վերոհիշյալ հին մատենագիրների համապատասխան տեղեկությունները և թե Գահնամակն ու այսպես կոչված Զորանամակը, վորոնք մանրամասն քննության են առնված Ադոնցի աշխատության մեջ* („Армения в эпоху Юстиппана“, *եջ 236—297. հմմտե նաև Սիր. Տիգրանյան, Հայոց իրավունքի պատմության ներածություն, եջ 187—202)։ Այս յերկու գրությունը, թեև ուշ ժամանակի խմբագրություններ են, սակայն ինչ չափով վոր այդ վավերագրերի տեղեկությունները քաղված են հին աղբյուրներից՝ նրանք վորոշ նշանակություն ունեն նաև հայկական ֆեոդալիզմի հնագույն շրջանի ուսումնասիրության համար։ Ի նկատի ունենալով վոր Ադոնցի աշխատության մեջ ընդարձակ կերպով քննված են թե Գահնամակն ու Զորանամակը և թե նախարարությունների թիվը ու նրանց յերկիրների տեղագրությունը՝ այդ խնդիրների վրա իմ ուսումնասիրության*

մեջ չեն կանգ եմ առել համառոտ ու հարևանցի կերպով։

Հայկական հնագույն ֆեոդալիզմի մասին մի քանի կարևոր վկայություններ տալիս են նաև օտար աղբյուրները և, մասնավորապես, այն հունարեն արձանագրությունները, որոնք գտնվում են Հայաստանում։ Այս կարգի աղբյուրները, դժբախտաբար, շատ քիչ են։ Հայտնի են առ այժմ և հրատարակված են հետևյալ երկու արձանագրությունները.

1. Աբարանում գտնված Տրդատ թագավորի հունարեն արձանագրությունը, որ կարդացել ու մեկնել է հայտնի ռուս գիտնական Ռոստովցևը (տես М. Ростовцев, Апаранская греческая надпись царя Тиридата, Анийская серия № 6, СПБ. 1911)։ Այս հուշարձանի բովանդակությունից գիտենք, որ Տրդատ թագավորը, հավանորեն, Տրդատ Մեծը՝ Գնթունիների տոհմի անդամներից մեկին նվեր է տվել ինչ որ կալվածներ Նիգ գավառում։

2. Երկրորդ հունարեն արձանագրությունը գտել է Լեման-Հաուպտը այժմյան Ֆարկին քաղաքի (=հին Տիգրանակերտ) պարսպի վրա։ Այդ արձանագրությունը, որ կարդացել ու մեկնել է ինքը Լեման-Հաուպտը, հրատարակված է նրա Armenien einst und jetzt աշխատության մեջ (Bd. I, Berlin 1910, էջ 410—429)։ Կարևոր այս հուշարձանը, որ ընդարձակ մի հայտարարություն է ու հրաման ուղղված Տիգրանակերտ քաղաքի բնակչությանը՝ չի կարող վերագրվել Հայոց Պապ թագավորին, ինչպես այդ ենթադրել է Լեման-Հաուպտը, որովհետև Պապը քրիստոնյա էր, մինչդեռ արձանագրության մեջ պարզ ասված է, որ թագավորն իր իշխանությունը ստացել է «աստվածների հաճությամբ և օգնությամբ» և միաժամանակ նույն այդ թագավորն անվանված է «աստված թագավոր թագավորաց»։ Մարկվարտի կարծիքը, որ արձանագրությունը վերագրվելու է ոչ թե չորրորդ, այլ երրորդ դարի Արշակունի հայ թագավորներից մեկին (տես Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, էջ 158—159), ըստ իս միանգամայն հիմնավոր է ու հավանական։

Բացի վերոհիշյալ հիմնական աղբյուրներից՝ Նախարարական կազմակերպության հնագույն շրջանի ուսումնասիրության համար կարևոր ուժանդակ աղբյուրներ են մատենագրական այն ինքնուրույն յերկերը, վորոնք գրված են մարզպանության շրջանում և պարունակում են իրանց մեջ նախարարական միջավայրի հատուկ տերմիններ և յերբեմն նաև միջանկյալ տեղեկություններ իրանց ժամանակակից ֆեոդալական կարգերի մասին։ Այս խմբի աղբյուրներից, վորոնցից ոգտվել ենք սույն ուսումնասիրութան մեջ, կարևոր են, որինակ, Գիրք Թղթոցի հնագույն մասերը և Հովհան Մանդակունուն վերագրված ճառերը, վոր համարվում են այժմ, գլխավորապես, Հովհան Մայրագոմեցու ճառեր (տես Կարապետ յեպիսկոպոս, «Յովհան Մանդակունի և Յովհան Մայրագոմեցի», Եջմիածին 1913, արտատպություն «Շողակաթ»-ից)։

Ուժանդակ աղբյուրներ են նմանապես արաբական և Բագրատունյաց ժամանակի և անգամ ավելի ուշ շրջանի հայկական մատենագրության յերկերը։ Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, ինչպես վերև ասացինք, գոյություն եր ունեցել մինչև ուշ միջնադարը։ Հասարակային հին կազմակերպության ձևերը չեյին, բնականաբար, չքացել նաև հետին դարերում, այլ նրանք վորոշ փոփոխություններ կրելով կամ յերբեմն նույնությամբ պահպանվել եյին նաև այդ դարաշրջաններում։ Հասկանալի յե, ուրեմն, վոր նաև այս կարգի աղբյուրները, յեթե նրանք ոգտագործվեն զգուշությամբ և քննադատորեն, կարող են կռվան ծառայել վորոշ խնդիրների լուսաբանման, վոր վերաբերվում են նախարարական կազմակերպության հնագույն շրջանին։

Հայկական հնագույն ֆեոդալիզմին վերաբերվող սոցիալական, հարկային և մյուս կարևոր տերմինների իմաստը կարելի յե հաճախ ճշտել ու լուսաբանել Թարգմանական հին գրականության ոգնությամբ։ Ուշագրավ ե, որինակ, վոր Հին և Նոր Կտակարանների գրաբար բնագրերում հունարեն schoinismos կամ schoinisma բառերը, վոր նշանակում

են՝ չափում լարի, չվանի միջոցով կամ լարով, չվանով չափված հողաբաժին՝ թարգմանված են «վիճակ» (Գ. Թագ. Դ, 13 Օրին. ԼԲ, 9 ևն), eleutheros, eleutheria՝ «ազատ» և «ազատություն» (Նլք ԻԱ. 2. 26. 27. Գաղ. Բ 4 ևն) oikonomos՝ «հազարապետ» (Ա. Պետ. Դ, 10. Ա. Կորնթ. Դ, 1 և 2 ևն), paidiskê, therapainê, doulê՝ «աղախին» (Ծնն. ԺԲ, 16. Ելք ԺԱ, 5. ԻԱ, 7 են) ևն ևն։ Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության մեջ հայերեն բնագրի «հող երգոյ» կարևոր տերմինը թարգմանված է aroura (տես Agathangelus und die Akten Gregors von Armenien, hrsgg. von Paul de Lagarde, Goettingen 1887, էջ 76), որ նշանակում է վարելահող կամ նաև հողի տարածության որոշ չափ։ Թարգմանական գրականության թե այս և թե նման վկայությունները կարող են, իրոք, ինչպես վերոհիշյալ համեմատություններից տեսնում ենք, ծառայել իբրև օժանդակ մի միջոց մութ ու անորոշ տերմինների քննության ու լուսաբանման։

Հայկական ֆեոդալիզմը, որ Արշակունյաց թագավորության և Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ յենթարկվել եր պարթևական ու սասանյան պետականության ազդեցությանը, իր եությամբ նման եր, ինչպես վերև ասացինք, իրանական ֆեոդալիզմին։ Այդ ազդեցությունը պարզ յերևում է Հին Հայաստանի նախարարական կազմակերպությանը վերաբերվող սոցիալական հենց այն տերմիններից, որ իրանց ծագումով, մեծ մասամբ, պարթևական են կամ իրանական. օրինակ՝ նախարար, նահապետ, ազատ, ռամիկ, ոստանիկ, սեպուհ, խոստակդար, ասպետ, հազարապետ, սպարապետ, պայազատ ևն։ Ֆեոդալական հարաբերությունները վերոհիշյալ յերկիրներում այնքան նման են յեղել իրար, որ իրանական այդ ֆեոդալիզմին վերաբերվող օտար աղբյուրները կարող են, բնականաբար, օժանդակ աղբյուրներ համարվել նաև հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրության համար։ Օտար այդ աղբյուրները և նրանց հաղորդած վկայությունները, որ, դժբախտաբար, շատ չեն, հիշատակված են Christensen-ի

„L'empire des Sassanides, — le peuple, l'état, la cour" աշխատության ծանոթություններում։ Այդ աղբյուրներից առանձնապես կարևոր է «Տանսարի նամակը Տաբարիստանի թագավորին», որ հրատարակված է ֆրանսերեն թարգմանության հետ միասին „Journal Asiatique"-ում („Lettre de Tansar au roi de Tabaristân", publ. et traduite par Darmesteter, Journ. Asiat. 1894, էջ 210 ևն և 513 ևն)։ Christensen-ի կարծիքով՝ այդ նամակը շարադրված է, հավանորեն, 557—570 թվականներին (տե՛ս „L'empire des Sassanides", էջ 112)։ Նույն կարծիքը, նրանից անկախ ու այլ պատճառաբանությամբ, հայտնել է և Մարկվարտն իր Eranschahr աշխատության մեջ (էջ 30 և ծան. 2)։

Մնում է մեզ հիշել նաև մի այլ աղբյուր, որից, դժբախտաբար, մենք չենք կարողացել օգտվել, թեև այդ աղբյուրը ևս, հավանորեն, հիմք է ծառայելու ապագայում Սասանյան Պարսկաստանի և Մերձավոր Արևելքի տնտեսական ու ներքին կյանքի լուսաբանման։ Այդ — ասորական հնագույն մատենագրությունն է, որի մեջ կարող են գտնվել, ինչպես և հայկական աղբյուրներում, որոշ վկայություններ և ակնարկներ Սասանյան Պարսկաստանի թե ֆեոդալական կազմակերպության և թե սոցիալական-տնտեսական հարաբերությունների մասին։ Այդ նոր նյութերը կարոտ են դեռ հավաքման ու մշակման հետագա ուսումնասիրություններում։ Մերձավոր Արևելքի ներքին կյանքի հետազոտման համար պատմագիտական այդ աշխատանքների ձեռնարկումը հերթական ու կարևորագույն, անշուշտ, մի նոր խնդիր է, որի վրա հրավիրում ենք ասորագետ պատմաբանների ուշադրությունը։

## Ա. ՑԱՆԿ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

«Աբրահամ Խոստովանող, Վկայք Արևելից», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի, Էջմիածին 1921.

«Ագաթանգեղայ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս 1909.

Agathangelus und die Akten Gregors von Armenien, hrsgg. von Paul de Lagarde, Goettingen 1887.

«Անանիայի վարդապետի Շիրակացւոյ, Ցաղագս հարցման և լուծման», հրատ. Հ. Օրբելու, Պետրոգրադ 1918.

«Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912.

Баладзори, Книга завоевания стран, текст и перевод проф. П. К. Жузе, Баку 1927.

«Գիրք Թղթոց», Թիֆլիս 1901.

«Եղիշէի վարդապետի, Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», Վենետիկ 1864.

«Եզնկայ Կողբացւոյ, Եղծ աղանդոց», Վենետիկ ՌՄՀԵ.

«Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», ի լոյս էած Ք. Պ., Ս.-Պետերբ. 1887.

Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի. — հետևյալ կանոնները՝

1. «Կանոնք Աշտիշատայ ժողովոյն».
2. «Կանոնք Սահակայ Հայոց հայրապետի».
3. «Կանոնք Շահապիվանի ժողովոյն».
4. «Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթողիկոսի».
5. «Կանոնք Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի».
6. «Կանոնք Դունայ ժողովոյն».
7. «Սահմանադրութիւն կանոնի Վաչականայ Աղուանից արքայի, եդեալ ի ժողովն որ յԱղուէնս».
8. «Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթուղիկոսի».

«Կանոնք Դունայ ժողովոյն», հրատ. Մխիթար վարդապետի և Սիրական Տիգրանյանի, Վաղարշապատ 1905.

«Կորիւն, Պատմութիւն վարուց և մահուան Մեսրոպայ վարդապետի», Վենետիկ 1894.

Corpus juris civilis, edd. Th. Mommsen, P. Krüger et R. Schöll, Berlin 1872—1895.

Herodoti historiarum libri IX, Bibl. Teubn.

«Ղազարայ Փարպեցւոյ, Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան», աշխատ. Գ. Տէր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանի, Տփղիս 1904.

«Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», երկ. տպ., Ս.-Պետերբուրգ 1887.

«Մխիթարայ Գօշի, Դատաստանագիրք Հայոց», հրատ. Վահան ծ. վարդ. Բաստամյանց, Վաղարշապատ 1880.

«Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս 1913.

*«Մովսէսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից աշխարհի». հրատ. Մկրտիչ Էմինի, Մոսկվա 1860.*

*«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912.*

*«Յովհաննու Մանդակունւոյ Հայոց հայրապետի, Ճառք», յերկ. տպագր., Վենետիկ 1860.*

Justini, M. Juniani, Epitoma historiarum Philippicarum Pompei Trogi, Bibl. Teubn.

*«Ողբք վասն չարեացն աշխարհիս և վկայաբանութիւն Վահանայ Գողթնացւոյ», Վենետիկ 1854.*

C. Plinii Secundi, Naturalis historiae, *տես* Histoire naturelle de Pline, avec la traduction en français, par M. É. Littré, T. I—II, Paris 1883.

Plutarchi vitae, graece et latine, *Փարիզի հրատար.* Th. Döhner-*ի* *և* F. Dübner-*ի*, vol. I—V, 1846—1855.

*«Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», ի լոյս ած Ք. Պ., Ս.-Պետերբուրգ 1879.*

Procopii, De bello Persico *և* De aedificiis, ed. Bonn.

Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert, hrsgg., übersetzt und erläutert von J. Karst, Bd. I und II, Strassburg 1905.

*«Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս 1911.*

Strabonis geographica, Bibl. Teubn.

*«Վիմական տարեգիր, Ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց Հայոց», կազմ. Կ. Կոստանեանց, Ս.-Պետերբուրգ 1913.*

*Տանսարի նամակը Տաբարիստանի թագավորին, տես* „Lettre de Tansar au roi de Tabaristān", publ. et traduite par Darmesteter, Journal Asiatique 1894.

*«Փաւստոսի Բուզանդացւոյ, Պատմութիւն Հայոց», յերկ. տպագր., Վենետիկ 1889.*

Xenophontis Anabasis *և* Kyroupaideia, Bibl. Teubn.

## Բ. ՑԱՆԿ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

*Աբեղյան Մ., Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ 1899—1901.*

Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ. 1908.

*Ալիշան, Այրարատ, Վենետիկ 1890.*

*Ակինյան Ն., «Մատենագրական հետազոտություններ», հատոր Գ. Վիեննա 1930.*

*Նույնի, «Դունայ 572-ի ապստամբութիւնը և յաջորդ տասնամեայ շրջանը», Հանդ. Ամս. 1913, հունվար, էջ 62—79.*

*Ավդալբեգյան Թ., Հաս, սակ ու բաժ, Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 1, Երևան 1926.*

*Նույնի, Հայ շինականի ու գեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում, Տեղեկ. Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 3, Երևան 1928.*

*Նույնի, Կարլ Մարքսի տնտեսական զարգացման թեորիան, յերկ. հրատ., Երևան 1926.*

*Բահաթրյան, Անձնական և հողային իրավունքը Հին Հայաստանում.*

Борьян Б. А., Армения, международная дипломатия и СССР, часть I, Москва 1928.

Brosset M., Histoire de la Géorgie, Additions et éclaircissements, St.-Pétersbourg 1851; *նաև* Introduction et tables de matières. St.-Pétersbourg 1858.

Брюсов, Летопись исторических судеб армянского народа, Москва 1918.

*Բարաղաշյան Ա. Մ., «Քննական պատմութիւն Հայոց», Մասն Բ., Թիֆլիս 1895.*

*Գելցեր Հ., «Համառօտ պատմութիւն Հայոց», թարգմ. Հ. Գր. վ. Գալեմքյարյանի, Վիեննա 1897.*

Gibbon E., The history of the decline und fall of the Roman empire, ed. by Bury, London 1900.

Гурко-Кряжин В., Прошлое и настоящее Советской Армении, „Новый Восток“ 1927, кн. 16—17.

*Գյուտերբոք Կ., «Հռովմէական Հայաստան և սատրապութիւնները Դ—Զ դարերուն», թարգմ. Հ. Մկրտ. վ. Նորշունանի, Վիեննա 1914.*

*Նույնի, «Բիւզանդիոն և Պարսկաստան և անոնց դիւանագիտական և ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ», թարգմ. Հ. Հմ. Համբարյանի, Վիեննա 1911.*

Decourdemanche J. A., Traité pratique des poids et mesures des peuples anciens et des Arabes, Paris 1909.

Джавахов И., Государственный строй древней Грузии и древней Армении, СПБ. 1905.

*Զարբանալյան Գ., «Հայկական հին դպրութեան պատմութիւն», յերկրորդ տպագր., Վենետիկ 1897.*

Эмин Н., История Армении Моисея Хоренского, новый перевод, Москва 1893.

*Ինճիճյան Հ. Ղուկ., «Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի», հատ. Ա, Բ և Գ, Վենետիկ 1835.*

Латышев В. В., Известия древних писателей греческих и латинских о Скифии и Кавказе, СПБ. 1890.

Laurent J., L'Arménie entre Byzance et l'Islam. Paris 1919.

Lehmann-Haupt C. F., Armenien einst und jetzt. Bd. I, Berlin 1910.

*Լէօ, Հայոց պատմութիւն, հատ. առաջին, Թիֆլիս 1917.*

*Խալաթյանց Գր., «Ղազար Փարպեցի և գործք նորին», Մոսկվա 1883.*

Халатьянц Г., Очерк истории Армении. Москва 1910.

Christensen Arthur, L'empire des Sassanides, — le peuple, l'état, la cour. Kobenhavn 1907.

*Կոստանյանց Կ., «Հիւսուածք», գիրք յերրորդ, Վիեննա 1877.*

Кулаковский Ю., История Византии, т. I, Киев 1918.

Кулишер И. М., Лекции по истории экономического быта Западной Европы, Петроград 1918.

Kremer Alf., Culturgeschichte des Orients unter den Chalifen, Bd. I—II, Wien 1875.

*Համբարյան Հ. Հ., «Հայաստանի քաղաքական վիճակը Վահանի մահէն մինչև Վարդան Ե-ի ապստամբութիւնը», Հանդ. Ամս. 1912, սեպտ., էջ 531—535.*

*Հյուբշման Հ., «Հին Հայոց տեղւոյ անունները», թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա 1907.*

Hübschmann H., Armenische Grammatik, Leipzig 1895.

Manandian Agop, Beiträge zur albanischen Geschichte, Leipzig 1897.

Манандян Я. А., О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Эривань 1930.

Его же, Заметки о феоде и феодальном войске Парфии и Аршакидской Армении, Тифлис 1932.

*Նույնի, Հայաստանի պատմությունը Թուրք-Թաթարական արշավանքների շրջանում, Երևան 1922.*

*Նույնի, Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում, Երևան 1925. տես նույնը Տեղեկ. Պետ. Համալսարանի № 1, Երևան 1925.*

*Նույնի, Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում, Երևան 1926. տես նաև Տեղեկ. Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 1, Երևան 1926.*

*Նույնի, Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության, I, տես Տեղեկ. Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 2, Երևան 1927.*

*Նույնի, Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության, II, Երևան 1928. տես նույնը Տեղեկ. Պետ. Համալսարանի № 4, Երևան 1928.*

Markwart J., Eranschahr nach der Geographie des Ps. Moses Xoren., Berlin 1901.

Նույնի, «Պատմութիւն հայերէն նշանագրերու և վարուց Մաշտոցի», թարգմ. Հ. Ա. Վարդանյանի, Վիեննա 1913.

Նույնի, Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen, Wien 1930.

Марр Ник., Этимология двух терминов армянского феодального строя, ЗВО, т. XI, 1897—1898.

Նույնի, Крещение армян, грузин, абхазов и аланов, араб. версия, СПБ. 1905.

Նույնի, ընդարձակ քննություն Ջավախովի „Государственный строй древней Грузии и древней Армении" աշխատության, տես Жур. Мин. Нар. Прав. 1908.

Նույնի, Кавказский культурный мир и Армения, Петроград 1915.

Meillet A., De quelques mots Parthes en arménien, Revue des études armén., T. II, Fas. 1, Paris 1922.

Մուսայելյան Հ., Անդրկովկասի հողային պայմանները, Վաղարշապատ 1910.

Noeldeke Th., Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sasaniden, Leyden 1879.

Նորայր Բյուզանդացի, «Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք», Տփղիս 1910.

Շահխաթունյան Հովհ. յեպիս., «Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ», հատ. I և II, Էջմիածին 1842.

Stein Ernst, Studien zur Geschichte des byzantinischen Reiches, Stuttgart 1919.

Ջամչյան Մ., «Պատմութիւն Հայոց», հատ. I—III, Վենետիկ 1784—1786.

Павлово-Сильванский Н. П., Феодализм в древней Руси, Москва 1923.

Патканьян К., История армян Моисея Каганкатваци, СПБ. 1861.

Рожков Н., Русская история в сравнительно-историческом освещении, т. II, Москва 1922.

Ростовцев М., Апаранская греческая надпись царя Тиридата, Анийская серия № 6, СПБ. 1911.

Սամվելյան Խ., «Մխիթար Գոշի Դատաստանագիրքը ու Հին Հայոց քաղաքացիական իրաւունքը», Վիեննա 1911.

Նույնի, «Արեան վրէժ և փրկանք», տես Ազգագր. Հանդէս, գիրք Ժ, Թիֆլիզ 1903.

Saint-Martin M. J., Histoire des Arsacides de Perse, II, Փարիզ 1840.

Сергеевич В., Русские юридические древности, т. I, изд. второе, СПБ. 1902.

*Ստեփանե Խորեն Ծ. վ., «Մովսէս Խորենացու հայկական պատմութիւն», աշխարհաբար թարգմ., Ս.-Պետերբուրգ 1889.*

Вебер Макс. Аграрная история древнего мира, перев. под. ред. Д. М. Петрушевского, Москва.

*Տեր-Մկրտչյան Կարապետ յեպիսկ., «Յովհան Մանդակունի և Յովհան Մայրագոմեցի», արտատպ. «Շողակաթ»-ից. Եջմիածին 1913.*

*Տիգրանյան Սիր., Հայոց իրավունքի պատմության ներածություն. Յերևան 1924.*

Tournebize Fr., Histoire politique et religiense de l' Arménie. Paris 1900.

Френкель А. С., Сборник законов грузинского царя Вахтанга VI, Тифлис 1887.

Markwart J., Die Genealogie der Bagratiden, Caucasica, F. 6, 2. Teil, Leipzig 1930.

Rostowzew M., Studien zur Geschichte des römischen Kolonates. Leipzig 1920.

## 3. ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՐԳԻ ԿԱՐԵՎՈՐ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Հայաստանի նախարարական կազմակերպության քննության ու լուսաբանության համար անհրաժեշտ է ուրվագծել համառոտ կերպով ֆեոդալական հասարակակարգի ընդհանուր ու կարևոր հատկանիշները։*

*Ֆեոդալիզմը, ինչպես հայտնի յե, վոչ միայն տնտեսական-հասարակական հատուկ կազմակերպություն է, այլ միաժամանակ աանձին սիստեմ է սոցիալական-քաղաքական ուրույն հարաբերությունների։ Ֆեոդալիզմն ունի, ուրեմն, և տնտեսական և քաղաքական հատկանիշներ։*

*Տնտեսագիտական նորագույն յերկերում մատնանշվում է, սովորաբար, վոր ֆեոդալիզմի տնտեսական հիմքը կազմում է արտադրության ֆեոդալական յեղանակը՝ բնական կամ նատուրալ տնտեսությունը, վորը պետք է հակադրել վոչ թե փողային, այլ ապրանքային տնտեսության։ Ֆեոդալիզմի ժամանակ թեև գոյություն են ունեցել փոխանակություն, փող, քաղաքներ և առևտուր, սակայն նրանց նշանակությունը յեղել է յերկրորդական։ Արտադրող հիմնական դա-*

սակարգը յեղել է գյուղացիությունը, որը, մեծ մասամբ, գտնվել է ճորտական վիճակում, և, որոշ չափով, նաև մանր արհեստավորությունը։ Քաղաքները և արհեստները մեծ զարգացում են ստացել ֆեոդալիզմի քայքայման վերջին շրջանում։

Բացի տնտեսական այս հիմքերից, որոնք մասամբ բնորոշ են նաև նախակապիտալիստական մյուս տնտեսական հասարակարգերի համար, իբրև ֆեոդալիզմի էական հատկանիշ մատնացույց է արվում խոշոր կալվածատիրության և ազնվականության գերակշռող դերը՝ ոչ միայն տնտեսական, այլ և պետական-իրավական։ Ֆեոդալական պետությունները բաժանված են յեղել բազմաթիվ մեծ և փոքր շրջանների, որոնց մեջ պետական իշխանությունը պատկանել է մեծ կամ փոքր չափով կալվածատեր իշխաններին, որոնք անվանվել են սենյորներ։ Հողատիրությունը պարունակել է, ուրեմն, իր մեջ թե մասնավոր և թե հանրային իրավունքի տարրեր, և խոշոր կալվածատերերը յեղել են ոչ միայն հողատեր, այլ և դատավոր, կառավարիչ, իսկ հաճախ լիակատար պետ և իշխան իրանց յերկիրների սահմաններում։ Առանձին ու ինքնիշխան այս շրջաններն անվանվել են Ֆրանսիայում seigneurie, Անգլիայում՝ manor, Գերմանիայում՝ Grundherrschaft և Ռուսաստանում՝ боярщина: Հասկանալի յե, իհարկե, որ խոշոր կալվածատեր սենյորը, օժտված լինելով պետական կարգի իրավունքներով, յեղել է անմիջական տեր ու տնօրեն այն բնակչության, որը գտնվել է իր յերկրամասում։ Գյուղացիության կախումը նրանից ունեցել է, ինչպես իրավացի կերպով շեշտում են տնտեսագետները, արտատնտեսական բնույթ՝ պայմանավորված անմիջական իշխանությամբ ու հպատակությամբ։

Հողատիրության այս առանձնահատկությունները, նրա սենյորական կազմակերպությունը՝ կարելի յե համարել, անտարակույս, ֆեոդալիզմի գլխավոր ու անհրաժեշտ հատկանիշը։ Ֆեոդալական հասարակակարգի համար բնորոշ է ոչ միայն բարձրագույն իշխանության ցրվածությունը և

յերկրի բաժանումը տերունական ինքնուրույն շրջանների, այլ և սրանց միացումը դաշինքային վասսալական կապերով։ Այդ միությունն անհրաժեշտ է յեղել փոխադարձ պաշտպանության ու օգնության համար։ Վասսալական կապը կայանում եր նրանում, վոր ստորադաս սենյորները հատուկ պայմանագրեր եյին կնքում իրանց հովանավորող ու պաշտպանող ավելի հզոր սենյորների հետ, հատուկ յերդում եյին տալիս նրանց հավատարմության ու հպատակության և խոստանում կատարելու սյուզերեններին հանդեպ զինվորական ու այլ պատվավոր ծառայության պարտականություններ։ Ֆեոդալական պետություններում ստեղծվել եր այսպիսով վասսալական հարաբերությունների մի յերկար շղթա, վորն անվանում են «ֆեոդալական սանդուխք»։ Միջնադարյան Ֆրանսիայում, օրինակ, այդ սանդուխքն ունեցել է հետևյալ ստորակարգումները։ Վասսալական իշխանությունների ամենավերին շերտը կազմում եյին այստեղ խոշորագույն իշխանությունները, վորոնք թագավորի անմիջական վասսալներն եյին և, մեծ մասամբ, գրեթե անկախ եյին նրանից։ XI դարում սրանք անվանվում եյին դքսություններ (duchés) և կոմսություններ (comtés)։ Սրանցից ներքև գտնվում եյին յերկրորդ կարգի իշխանությունները, վորոնք վասսալներ եյին դուքսերի և կոմսերի և անվանվում եյին բարոնություններ (baronnies)։ Ավելի ցածում եյին դերակոմսությունները (vicomtés) և դղեկատերերը (châtellenies), վորոնք վասսալներ եյին վերոհիշյալ իշխանությունների։ Իսկ բոլորովին ներքևում եյին բազմաթիվ մանր սենյորությունները, վորոնք վասսալներ եյին դարձյալ մյուս ավելի բարձր կարգի ֆեոդալների։

Ֆեոդալական այս սանդուխքը կամ աստիճանավորումը համարում են նույնպես կարևոր հատկանիշ ֆեոդալական հասարակակարգի։

Հատկապես Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալիզմին առանձնահատուկ է յեղել, բացի այդ, ֆեոդը (feodum, fief, Lehn), վորից այս հասարակակարգը ստացել է ֆեոդալիզմ

անունը։ Լայն իմաստով ֆեոդ, ինչպես հայտնի է, անվան-
վել են այն հողամասերը (fief-terre) և այն պաշտոնները
(fief-office) կամ իրավունքները, որ ստանում էին ազնվա-
կանները սենյորից հավատարմության ու ծառայության հա-
տուկ պայմանով։ Իսկ նեղ ու իսկական իմաստով ֆեոդ են
համարվել, գլխավորապես, ազնվականության տրված հողերը։
Յուրաքանչյուր մեծ սենյոր ունեցել է բազմաթիվ վասսալ-
ներ, որոնք, ստացած լինելով նրանից մանր հողաբաժին-
ներ, պարտավոր էին իրանց սենյոր-սյուզերենի հանդեպ
կատարել որոշ ծառայություններ, գլխավորապես, զինվո-
րական։ Հենց այս մանր կալվածատեր վասսալներից, որ
անվանվում էին ձիավորներ (chevalier, Ritter), կազմված
է յեղել սենյորների հեծելազորը։ Ուրեմն՝ ֆեոդ-հողերի հիմ-
նական առանձնահատկությունն է յեղել հողատիրությունը
զինվորական ծառայության պայմանով։ Սրանք տարբերվել
են պարգևական կալվածներից (beneficium) նրանով, որ
պարգևական հողատիրությունը յեղել է ժամանակավոր ու
անձնական, իսկ ֆեոդականը՝ ժառանգական ու տոհմային։
Սակայն ժառանգական լինելով հանդերձ ֆեոդական հո-
ղատիրությունը ևս յեղել է պայմանական։ Հողատեր վաս-
սալներից, որոնք ստացել էին ֆեոդեր իրանց հատուկ
ծառայության համար, սենյորներն իրավունք ունեյին հետ
գրավել այդ կալվածները, յեթե նրանք խախտում էին
պայմանը և չէին կատարում իրանց ստանձնած պարտա-
կանությունները։

Վերև մենք տեսանք, որ իրանք սենյորները ևս վաս-
սալներ էին կամ թագավորի և կամ ավելի հզոր ու խոշոր
սենյորների։ Թեև սրանց allod-ական անգամ կալվածները
նույնպես անվանվել են ֆեոդ, սակայն, իրապես, այս կալ-
վածները յեղել են, օրինակ, Ֆրանսիայում, մեծ մասամբ,
լիակատար ու անպայման սեփականություն։ Նրանց ֆեոդ-
անունը, լինելով պարզապես խաբուսիկ ու անիրական, չու-
ներ, բնականաբար, պայմանական հողատիրության սովո-
րական իր իմաստը։

*Ինչպես հայտնի յե, ֆրանսիական գիտնականները, որինակ՝ Գիզոն և Ֆյուստել դը-Կուլանժը, համարել են ֆեոդը գլխավոր ու հիմնական հատկանիշ ֆեոդալական հասարակակարգի։ Այս կարծիքն այժմ չի ընդունվում, վորովհետև պայմանական հողատիրությունը՝ ֆեոդը համատարած ու ընդհանուր յերևույթ չի յեղել անգամ Ֆրանսիայում։ Անտարակուսելի յե սակայն վոր ֆեոդը կարևոր առանձնահատկություններից մեկն ե հատկապես Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալիզմի։*

*Ֆեոդալական հասարակակարգը, ինչպես պարզ հետևում ե վերոհիշյալ դիտողություններից, իր եությամբ խոշոր կալվածատիրության ու զինվորական ազնվականության տիրապետություն ե։ Ֆեոդալիզմի զարգացման, գլխավորապես, առաջին շրջանում իշխանությունը պատկանել ե հողատեր զինվորական ազնվականության, վորին ստորադրված են յեղել քաղաքականապես ու տնտեսապես ֆեոդալական գյուղացիությունը, արհեստավորությունը և մյուս խավերը։*

*Ֆեոդալական հասարակակարգի ուսումնասիրության համար կարևոր ե, անշուշտ, նաև գյուղացիության սոցիալական-տնտեսական դրության պարզաբանումը։*

*Վորովհետև հողն եր այս հասարակակարգում արտադրության հիմնական պայմանը, ուստի և հասկանալի յե, վոր գյուղացիությունն եր «ֆեոդալական սանդուխք»-ի այն անհրաժեշտ պատվանդանը, վորի վրա հաստատված եր իշխող ազնվականության նյութական ապահովությունը և տնտեսական բարեկեցությունը։ Ֆեոդալական յերկիրներում գրեթե ամեն տեղ գյուղացիները բաղկացած են յեղել զանազան խմբերից, վորոնք տարբերվել են իրարից իրանց տնտեսական ու իրավական դրությամբ։ Թեև նրանց մեծագույն մասը գտնվել ե ճորտական — յերբեմն խիստ ծանր ու յերբեմն համեմատաբար մեղմ — վիճակում, սակայն գոյություն են ունեցել միաժամանակ նաև ազատ գյուղացիության մնացորդներ։ Գյուղացիների ճորտական դրությունը յեղել ե յերբեմն այնքան մեղմ, վոր շատ քիչ ե տարբերվել ազատ*

գյուղացիների գրությունից, իսկ երբեմն այնքան ծանր՝ որ շատ մոտ է եղել կատարյալ ստրկության։ Հողատեր ազնվականների հանդեպ տարբեր են եղել ըստ այդմ նաև նրանց պարտականությունների չափը և բնույթը։ Հավելյալ աշխատանքը կամ արտադրանքը, որ ստացել է հողատերն արտադրության ֆեոդալական եղանակի պայմաններում, անվանվում է ֆեոդալական ռենտա, և այս ռենտան եղել է, ինչպես հայտնի է, կամ արտադրանքային, կամ փողային և կամ աշխատանքային։ Միևնույն գյուղացիները վճարել են հաճախ բացի բնատուրքից նաև որոշ փողային տուրք և պարտավոր են եղել միաժամանակ կատարել կալվածատիրոջ մոտ պարտադիր ձրի աշխատանքներ։ Ֆեոդալական այս կամ այն ձևի ռենտայի գերիշխումը կախված էր, իհարկե, տնտեսության զարգացման պայմաններից։ Փողային ռենտայի նշանակությունը կարող էր մեծ լինել ֆեոդալական տնտեսության զարգացման միայն այն շրջանում, երբ գերակշռող դեր էր կատարում փոխանակությունը և փողային շրջանառությունը։ Իսկ աշխատանքային ռենտան կամ կոռը կարող էր ստացած լինել մեծ չափեր, երբ սենյորները կամ կալվածատերերն իրանք են ունեցել շուկայի հետ կապված սեպհական ու իքնուրույն իրանց տնտեսությունները, որոնք նրանք մշակում էյին ճորտական գյուղացիների պարտադիր ու ձրի աշխատանքով։

Գյուղացիության տնտեսական ու իրավական վերոհիշյալ դրությունը, գլխավորապես, նրա ճորտական վիճակը՝ ընդհանուր գրեթե ու սովորական երևույթ է հատկապես ֆեոդալական հասարակակարգում։

Ֆեոդալական հասարակակարգի մեջ գոյություն են ունեցել նաև քաղաքներ, որոնց դերը և նշանակությունը տարբեր է եղել ֆեոդալիզմի զարգացման զանազան շրջաններում և ֆեոդալական առանձին երկիրների տեղական ուրույն պայմաններում։ Մերձավոր Արևելքում, ինչպես և Միջերկրական, Հյուսիսային ու Բալտյան ծովերի ափերում, քաղաքները եղել են համեմատաբար խոշոր ու բազմամարդ և ֆեո-

դալիզմի զարգացման հնագույն իսկ շրջաններում կարևոր դեր են կատարել իբրև արտաքին ու միջազգային առևտրի կենտրոններ։ Նույն այս քաղաքները յեղել են, մեծ մասամբ, նշանավոր կենտրոններ նաև արհեստների ու ներքին փոխանակության զարգացման։ Արտաքին առևտուրը՝ թեև առանձնապես չեր քայքայում ֆեոդալական հասարակակարգի բնական-տնտեսական հիմքերը, սակայն նա վորոշ ազդակ եր, անշուշտ, փոխանակության ու դրամական շրջանառության աճման։ Անժխտելի յե նույնպես, վոր ֆեոդալիզմի սկզբնական միևնույն շրջաններում գոյություն են ունեցել նաև ուրիշ հին քաղաքներ, վորոնք կենտրոնավայր են յեղել արհեստագործ բնակչության ու ներքին առևտրի։ Այս տիպի քաղաքները վարչական կենտրոններ եյին, մեծ մասամբ, սենյորական շրջանների, առաջ եյին յեկել, գլխավորապես, ֆեոդալական բերդերի ու ամրությունների մոտ և պատերազմի ժամանակ ծառայում եյին իբրև պատսպարան շրջակա բնակչության համար։ Ֆեոդալական հասարակակարգում՝ թեպետ և գյուղացին եր գլխավոր արտադրողը և բնական տնտեսությունն եր արտադրության գերիշխող ձևը, սակայն, ինչպես տեսնում ենք, նույն հասարակակարգում վորոշ չափով զարգացած են յեղել քաղաքային տնտեսությունը, արհեստագործական արդյունաբերությունը, նաև առևտուրը և դրամական շրջանառությունը։ Ֆեոդալիզմի ուսումնասիրության համար քաղաքների ու քաղաքային տնտեսության խնդիրն արժանի յե, անշուշտ, առանձին ուշադրության։ Լինելով ֆեոդալական հասարակակարգի կարևոր ու եական տարրը՝ ֆեոդալական քաղաքը պարունակում եր իր մեջ նոր հասարակակարգի այն ներհակ ու ընդդիմադիր սաղմերը, վոր նախապայմանն եյին ֆեոդալիզմի քայքայման։ Ֆեոդալիզմի այս քայքայումը, վոր պայմանավորված եր արդյունագործական արտադրության ու տեխնիկայի և ապրանքային տնտեսության բուռն ու արագ աճմամբ, տեղի ունեցավ, ինչպես հայտնի յե, Արևմտյան Յեվրոպայում քաղաքների արտակարգ զարգացման պատճառով։

Ֆեոդալական քաղաքների տնտեսական ու սոցիալական վերոհիշյալ բնույթն ու դերը առավել կամ նվազ չափով առանձնահատուկ են յեղել ֆեոդալական կազմակերպությանը գրեթե բոլոր յերկիրներում։

Պահպանելով ամեն տեղ ընդհանուր ու անհրաժեշտ իր հատկանիշները՝ ֆեոդալական հասարակակարգն ունեցել է զանազան յերկիրներում նաև վորոշ յուրակերպ գծեր, վորոնք արդյունք են յեղել տեղական առանձնակի պայմանների։ Անգամ Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալիզմը միակերպ ու նույնանման չե յեղել, որինակ, Ֆրանսիայում, Անգլիայում, Գերմանիայում, Իսպանիայում, Իտալիայում և նույն իսկ միևնույն այս յերկիրների զանազան շրջաններում։ Այս տեսակետից կարևոր է ու անհրաժեշտ մատնանշել միշտ ֆեոդալական կազմակերպությունների վոչ միայն նման ու համապատասխան գծերը, այլ և տեղական առանձնահատկությունններն ու նրանց առաջացման հատուկ պայմանները։

Սույն ուսումնասիրության մեջ մանրամասն կերպով քննության են առնված թե նախարարական կազմակերպության վերև մատնանշված ֆեոդալական հատկանիշները և թե տեղական բնույթ ունեցող նրա մասնավոր առանձնահատկությունները։

---

## 4. ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ԴԱՍԸ

### Ա. ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎՈՐՊԵՍ ԱՌԱՆՁԻՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ֆեոդալիզմի շրջանում, ինչպես վերև ասացինք, գերակշռող դեր եր կատարում խոշոր կալվածատիրությունը։ Հայտնի յե նույնպես, վոր խոշոր կալվածատերերի ազնվական բարձր դասը, լինելով ընդարձակ յերկիրների տեր, ունեին այդ յերկիրներում քաղաքական իշխանության իրավունքներ։ Ֆեոդալական ամեն մի պետություն բաժանված եր ըստ այդմ բազմաթիվ մանր իշխանությունների։ Կալվածատիրական առանձին այդ շրջանները, վորոնք օժտված եյին պետական կարգի իրավունքներով, անվանվում եյին Ֆրանսիայում՝ սենյորիա, Անգլիայում՝* manor *ե Գերմանիայում՝* Grundherrschaft։

*Արդ՝ ուշագրավ ե, վոր պետական իշխանության հենց նույն ապակենտրոնացումը և ցրվածությունը մենք գտնում ենք նաև Արշակունյաց Հայաստանում։ Այստեղ ևս իշխող դասը բաղկացած եր խոշոր կալվածատերերից, վորոնք իրանց յերկիրներում ունեյին քաղաքական իշխանություն և «տերական» իրավունքներ։ Ազնվականների այս բարձր դասը, վոր համապատասխանում ե միջնադարյան Յեվրոպայի սենյորներին, անվանվում ե հնագույն հայ աղբյուրներում՝ «նախարարք», «նախարարազունք» և «ազգք», «տոհմք» կամ «տունք նախարարացն», իսկ նրանց պետական կարգի իշխանությունը, նաև այդ իշխանության տակ գտնվող յերկիրներն՝ անվանվում են «նախարարութիւնք»։*

*«Նախարար» բառի ստուգաբանությունը և ծագումը յերկար ժամանակ մնում եր մութ և անհասկանալի։ Գիտա-*

կան հնագույն յերկերում այդ բառը սովորաբար մեկնել են իբրև նախ-արար և համապատասխան են համարել լատինական prae-fectus տերմինին։ Ինճիճյանն իր Հնախոսության մեջ (Բ, եջ 77) կարծում է, վոր «անունս նախարար ինքնին յայտ առնէ ածանցեալ յանուանցս նախ և արար. իբր նախկին ի յարարս, կամ նախակարգեալ իշխան, որպիսի էր և առ լատինս անունս praefectus, ցուցանելով զյառաջագահութիւն և զնախադասութիւն քան զայլս»։ Եմինը Խորենացու ռուսերեն իր թարգմանության հավելվածում[1] ընդունել եր նույն այս մեկնությունը։

Նախարար բառի այդ հին ստուգաբանությունն առաջին անգամ մերժել ե Ն. Մառը և մատնանշել, վոր այդ բառի սկզբնական ձևը յեղած պիտի լիներ *նահարար, համապատասխան նահապետ և նահանգ բառերին։ Նախարար, այսինքն՝ *նահարար, նրա կարծիքով, նշանակում ե յերկրի, շրջանի (nah [ɯah]=ɯahr) տեր, գլխավոր (rar = պրս. radh, զնդ. ratu)[2]: Նիկ. Ադոնցը, ընդունելով Մառի այս մեկնությունը, կարծում ե վոր, *նահարար բառի յերկրորդ մասը ծագում ե վոչ թե ratu, այլ պրսկ. δar արմատից[3]։

Մառի և Ադոնցի յենթադրությունները նախարար բառի ծագման մասին nahaδar-ից վերջերս վերջնականապես հաստատվեցին։ Ուղիղ մեկնությունը տվել ե պրոֆ. Meillet[4] սոգդիերեն լեզվի ոգնությամբ, վորի մեջ պահպանվել ե nâfδâr բառը «ժողովրդի կամ ցեղի պետ» նշանակությամբ։ Նույն բառի պարթևական ձևը նա յենթադրում ե *nâfaδâra՝ nâfa «պորտ, ցեղ» և δâra «պետ, գլխավոր»։ Պարթևական * nâfaδâra հայերենում դառել ե, նրա կարծիքով, *նահարար, սակայն ժողովրդական ստուգաբանությամբ *նահ-ը վերածվել ե նախ-ի և ստացվել նախարար ձևը։

---

[1] Н. Эмин, История Армении Моисея Хоренского, Москва 1893, եջ 298։

[2] Տես Зап. Вост. Отд. Имп. Рус. Арх. Общ., том XI, 1898, եջ 170—173։

[3] Армения в эпоху Юстиниана, եջ 451։

[4] Revue des études arméniennes, II, fasc. 1, Paris 1922, եջ 1—3։

Նախարարությունները Հին Հայաստանում իրանց մեծությամբ և նշանակությամբ տարբեր էին իրարից, ինչպես և սենյորիաները միջնադարյան Եվրոպայում։

Ֆեոդալական պետության վերին շերտը կազմում էին Արևմտյան Եվրոպայում խոշոր և առաջնակարգ իշխանությունները, վորոնք փաստորեն գրեթե անկախ էին թագավորից կամ կայսրից։ XI դարում սրանք անվանվում էին Ֆրանսիայում դքսություններ (duchés) կամ կոմսություններ (comtés): Սրանցից ներքև գտնվում էին յերկրորդ կարգի խոշոր սենյորիաները, վորոնք անվանվում էին բարոնություններ (baronnies): Սրանք, մեծ մասամբ, խոշոր իշխանությունների ֆեոդալներն էին։ Ավելի ցածում էին դերակոմսությունները (vicomtés) և դղեկատերերը (châtellenies), իսկ բոլորովին ներքևում՝ բազմաթիվ մանր սենյորիաներ, վորոնք վասսալներն էին վերոհիշյալ ավելի զորեղ ֆեոդալների։

Այս դասակարգությունը կամ աստիճանավորումը, վոր կարևոր մի հատկանիշն եր Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի, գոյություն է ունեցել նաև Հին Հայաստանում։

Առաջին կարգի մեծ իշխանություններին համապատասխանում են այստեղ, նախ և առաջ, բդեշխությունները։ Քաղաքականապես սրանք գրեթե անկախ իշխանություններ էին, բայց գտնվում էին հայ Արշակունիների գերիշխանության տակ։ Բդեշխների իշխանություններն ընդարձակ յերկիրներ էին Հայաստանի սահմանային շրջաններում։ Հենց այդ պատճառով բդեշխներն անվանվում էին «սահմանապահք», «սահմանակալք», նաև «կողմնապահք» կամ «կողմնակալք»։

Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայություններից հայտնի յե, վոր Արշակունիների ժամանակ Հայաստանում կար չորս բդեշխություն։ Հայաստանի հարավ-արևելյալ սահմանում իշխում եր «Նոշիրական բդեաշխ»-ը, հարավային սահմանում «յԱրուաստան կողմանէն», այսինքն՝ հյուսիսային Միջագետքի և Մծբինի հյուսիսակողմում՝ «Աղձնեաց բդեաշ-

խ»-ը, հարավ-արևմտյան սահմանում «յԱսորեստանեայց կողմանէն», այսինքն՝ Ասորիքի դիմաց գտնվող շրջանում՝ հավանորեն, Ծոփաց բդեշխը (ըստ Մարքվարտի)[1] և հյուսիսում «ի Մասքթաց կողմանէն», այսինքն՝ Իբերիայի Մեսխեթի շրջանի դիմաց՝ «Գուգարաց բդեաշխ»-ը։

Ագաթանգեղոսը և Փավստոսը վկայում են, վոր բդեշխները «գահերէց» իշխաններ եյին «արքունի տաճարին»։ Պարզ է վոր սրանք իբրև «գահերէց» իշխաններ՝ իրանց դիրքով բարձր են յեղել մյուս նախարարություններից։ Նիկ. Ադոնցը նույն իսկ յենթադրում է, վոր նրանք չեյին մուծված նախարարությունների համար սահմանված գահակարգի շարքը, վորովհետև համարվել են գրեթե հավասար թագավորին[2]։

Պրոֆ. Մարքվարտի կարծիքով, Պլուտարքոսի հայտնի տեղեկությունը չորս թագավորների մասին, վորոնք սպասարկում եյին Տիգրան Մեծին, վերաբերվում է հենց այս չորս բդեշխներին[3]։ Բդեշխությունների ծագումը և կազմակերպումը Մարքվարտը յենթադրում է, ուրեմն, Տիգրան Մեծի ժամանակ։ Նիկ. Ադոնցը, հավանական ու ընդունելի համարելով այս յենթադրությունը, կարծում է նույնպես, վոր բդեշխները նախկին փոքր ու ինքնուրույն թագավորությունների միապետներ են, վորոնք Տիգրան Մեծից սկսած ճանաչել եյին հայ թագավորների քաղաքական գերիշխանությունը։

Վոր բդեշխները, իբրև թագավորներին գրեթե իրավահավասար իշխաններ, նախարարական կազմի շրջանակից դուրս են համարվել, այդ յերևում է, ի միջի այլոց, նրանից, վոր նրանք Արշակունյաց թագավորության մեջ չեն վարել գործակալական պաշտոններ։

Բդեշխների ու բդեշխության վերաբերյալ աղբյուրների վկայությունները.

---

[1] Eranschahr, էջ 172։

[2] Армения в эпоху Юстиниана, էջ 283։

[3] Marquart J., Eranschahr. Berlin 1901, էջ 171—173։

1. «Ագաթանգեղայ, Պատմութիւն Հայոց», աշխատութ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս 1909, ԺԻԶ, 873, էջ 459—460՝

«Եւ ի զինուորական կողմանէն՝ զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին, որ բդեաշխքն կոչին. զառաջին սահմանակալն ի Նոր Շիրական կողմանէն, և զերկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց կողմանէն, և զերրորդն՝ յԱրուաստան կողմանէն, զչորրորդն՝ ի Մասքթաց կողմանէն».

2. «Փաւստոսի Բուզանդացւոյ, Պատմութիւն Հայոց», Վենետիկ 1832, Դպր. Դ, գլ. Թ, էջ 21՝

«Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխն. որ էր մի ի չորից, գահերէց բարձերէց տաճարին արքունի».

3. Փաւստ., Դպր. Դ, գլ, Ծ, էջ 163՝

«Եւ սկսան սորսորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին. Թողին զիւրեանց արքայն Արշակ. Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. Նախ բդեաշխն Աղձնեաց, և Նորշիրական բդեաշխն, և Մահկեր տանն, և Նիհորականն, և Դասնտրէին, և ամենայն նախարարութիւն Աղձնեաց. և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ...»։

4. «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս 1913, II, Ը, էջ 114՝

«Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ կողմնակալ հիւսիսոյ կարգէ [Վաղարշակ] զմեծ և զհզօր ազգն, և նահապետութեանն անուն կարդայ բդեաշխ Գուգարացւոց».

5. Խորենացի, II, Ը, էջ 116՝

«Եւ զՇարաշան ի տանէ Սարասարայ հաստատէ [Վաղարշակ] բդեաշխ մեծ և կուսակալ յարեւմտից հարաւոյ, յեզերս սահմանացն Ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ, գաւառս պարգեւելով զԱրձն և որ շուրջ

*զնովաւ, և զլեառնն Տաւրոս, որ և Սիմ, և զԿղեսուրն ամենայն».*

*6. Խորենացի* I, *ԻԳ, եջ 70՝*

*«Յորոց զմինն յարեմտից հարաւոյ աշխարհիս մերոյ, մերձ ի սահմանս նորին Ասորեստանի, բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին, այս ինքն է զՍանասարն. և ի սմանէ աճումն և բազմասերութիւն լեալ՝ լցին զՍիմն ասացեալ լեառն։ Իսկ պերճքն և գլխաւորքն ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութիւն վաստակոց առ թագաւորսն մեր ցուցեալ՝ զբդեշխութիւն կողմանցն արժանաւորեցան առնուլ».*

*7. Փաւստոս, Դպր. Ե, գլ. ԺԶ, եջ 216՝*

*«Յաղագս թագաւորին Աղձնեաց։ Դառնայր ապա զօրավարն Մուշեղ յերկիրն Աղձնեաց, և հարկանէր զերկիրն ի մեծ ի հարուածս. զի և նոքա ապստամբեալ էին յարքայէն Հայոց։ Զերբակալ արարեալ զբդեաշխն Աղձնեաց, առ նմին կոտորեցին զկանայս* եւն»:

*Բդեշխները, ինչպես և առաջին կարգի մեծամեծ նախարարներն անվանվում են աղբյուրներում «աշխարհատերք», «աշխարհակալք» կամ «գաւառակալք», «գաւառատերք»։*

*«Աշխարհակալք» կամ «աշխարհատերք», վորոնք ամենաբարձր կարգի իշխաններն էյին, համապատասխանում են, անշուշտ, Սասանյան Պարսկաստանի* šathradhâr*-ներին (=աշխարհակալ), վորոնք նույնպես իշխանական ամենաբարձր խավն էյին Պարսկաստանում*[1]*։ Այս* šathradhâr*-ները, լինելով վասալներ Պարսից թագավորի, գրեթե անկախ իշխաններ էյին և անվանվում էյին նույն իսկ թագավորներ, վորովհետև իրանց սյուզերենի պաշտոնական տիտղոսն էր «թագաւոր թագաւորաց»։ Ինչպես և Հին Հայաստանի բդեշխ-*

---

[1] *Սույն* šathradhâr*-ների մասին մանրամասն տեղեկություններ և կարևոր բացատրություններ մեջ են բերված* A. Christensen*-ի աշխատության մեջ՝* L'empire des Sassanides, Kohenhavn 1907, *եջ 21—23։*

ները՝ նրանք իշխում էին պետության հեռավոր ծայրամասերում։ Նրանք պարտավոր էին տրամադրել իրենց զորքերը բարձրագույն սյուզերենին և վճարում էին նրան. հավանորեն, նաև վորոշ հարկ։

Բդեշխները, վոր անվանվում էին Հին Հայաստանում «սահմանակալ»-ներ կամ «աշխարհակալ»-ներ, ինչպես տեսնում ենք, կատարելապես նույնն են, ինչ վոր Սասանյան Պարսկաստանի šathradhār-ները։

Մեր այս լուսաբանությունը հիմնապես տարբեր է Նիկ. Ադոնցի տված բացատրությունից։

Ադոնցի կարծիքով[1], Սասանյան Պարսկաստանում սովորական սատրապները և շրջանների կառավարիչները šathradhār չեն անվանվել, այլ šathradhār ավելի շուտ սոցիալական կամ դասային խմբի անուն է՝ անվանի մեծամեծների, վորոնք խոշոր կալվածատիրության ներկայացուցիչներն էին։ Իբրև սոցիալական գաղափար՝ šathradhār-ը համարժեք է ըստ Ադոնցի նախարար գաղափարին։ Այս յենթադրությունը, վոր հակասում է šathradhār-ների վերաբերյալ պատմական աղբյուրների վկայություններին, ինչպես տեսնում ենք, միանգամայն սխալ է։

«Աշխարհակալ» և «աշխարհատէր» կամ «գաւառակալ» և «գաւառատէր» բացի բդեշխներից անվանվել են Հին Հայաստանում նաև առաջին կարգի մեծամեծ նախարարները։ Այդպես են անվանված, որինակ, Փավստոսի մոտ Մանաճիհր Ռշտունին, «նահապետն Որդունեաց տոհմին» և «իշխանն Մանաւազեան տոհմին»։ Պարզ է վոր վերոհիշյալ հոմանիշները գործ են ածվել առաջնակարգ նախարարական տոհմերի նաև մյուս մեծամեծների համար։

Ի նկատի ունենալով «աշխարհակալ» կամ «աշխարհատէր» իշխանների զինվորական ուժը՝ աղբյուրները նրանց անվանում են յերբեմն «բիւրաւորք» և «հազարաւորք»։ «Բիւրաւորք» են նրանք, վորոնց զինվորական ուժը 10.000-ի

---

[1] Армения в эпоху Юстиниана, էջ 442 և 450—451։

չափ էր, իսկ «հազարաւորք» նրանք, վորոնց զինվորական ուժը 1000-ից պակաս չէր։

Այս տերմինների իմաստն ուղիղ է մեկնված հայագիտական թե հին և թե նոր յերկերում։ Հայկազյան լեզվի նոր բառգրքում «բիւրաւոր»-ը հասկացված է հենց այդ իմաստով և մեկնված է՝ «պետ տասն հազար արանց. որ ունի ընդ ձեռամբ բիւր մի զօրաց»։ Նույն լուսաբանությունը տրված է այս տերմիններին նաև Ալիշանի Այրարատում (եջ 424)՝ «ըստ Թուոյ և յոլովութեան ընդ իշխանութեամբ իւրեանց եղելոյ զօրականին —- ասում է Ալիշանը — կոչեցեալք ըստ Ագաթանգեղեայ՝ հազարաւորք և բիւրաւորք»։ Հմմտե նաև Նորայր Բյուզանդացի, «Կորիւն վարդապետ և Նորին Թարգմանութիւնք», Տփխիս 1900, եջ 270։

Ավելորդ չեմ համարում մեջ բերել մի քանի կարևորագույն վկայություններ վերոհիշյալ տերմինների մասին.

1. Փաւստոս, III, Դ, եջ 9՝

> «Եւ զայն ժամանակաւ յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անգանէին ընդ միմեանս, մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ, և տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց իրաւանց. Եւ պղտորէին զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանաւազեան տոհմին, և միւս ես Նահապետն Որդունեաց տոհմին».

2. Փաւաստոս, III, Ը, եջ 20՝

> «Բայց յետ այսորիկ ոչ դադարէին Պարսք ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. և նա դնէր օրէնս, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատիարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն կայցեն առ արքային, և ընդ նմա շրջեսցին, և մի՛ ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս արքունի».

3. Փաւստոս, IV, ԺԲ, եջ 108՝

> «Իսկ աշխարհ ամենայն Հայոց լեզուին, ի գաւառաց գաւառաց կողմանց կողմանց տեղեաց տեղեաց,

մեծամեծք աշխարհակալք զաւառատեարք նահապետք մեծազգեացք և ամենայն ուխտ քահանայութեան, ժողովք միաբանական ժողովրդոցն. ի սուգ տխրութեան ընկղմեալ էին վասն իւրեանց հօտապետ գլխաւորին. զի հեռացաւ ի նոցանէ».

4. Ագաթանգեղոս, ՃԺԲ, 796, էջ 415՝

«Այս իշխանք են ընտիրք, կուսակալք. կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք ի մէջ Հայաստան աշխարհի տանն Թորգոմայ, զորս գումարեաց Թագաւորն Տրդատ և առաքեաց զնոսա ի կողմանս Կապուտկացւոց, ի քաղաքն Կեսարացւոց, զոր ըստ հայերէն լեզուին Մաժաք կոչեն».

5. Խորենացի, II, Ը, էջ 112—113՝

«Եւ յարևելից կողմանէ, զեզերբ հայկական խօսիցս [կարգէ Վաղարշակ] կողմնակալս բիւրաւորս զերկուս ի ցեղից տանցնահապետութեանց, զՍիսակեանսդ և որ ի Կադմեայ տանէն, զորոց զանուանսն ի միում ի յառաջագունից ասացեալ ճառիցն կարգեցաք».

6. Խորենացի, II, Ը, էջ 113՝

«Յետ սորա մեծ և անուանի և բազմաբիւր զարևելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն՝ զայր անուանի և յամենայն գործ մտաւորութեան և հանճարոյ առաջին, զԱռան, առ մեծ գետովն, որ հատանէ զդաշտն մեծ, որ անուանի Կուր: Բայց զայս գիտեա, զի զցեղս զայս մեծ և անուանի մոռացումն եղև մեզ յառաջնումն մատենին յիշատակել, զգունդն որ ի Սիսակայ, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից և զլեռնակողմն նորին դաշտի, ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն որ ասի Հնարակերտ. և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա անուանեցաւ Աղուանք. զի աղու ձայնէին զնա: Եւ ի սորա ծննդոց այս Առան անուանի և քաջ կարգեցաւ կողմնակալ բիւրաւոր ի Պարթևէն Վաղարշակայ: Ի սորա զաւակաց ասեն սե-

րեալ զազգն Ուտէացւոց և Գարդմանացւոց և Ծաւդէացւոց և Գարգարացւոց իշխանութիւնսն».

7. Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս 1914, էջ 59՝

«Եւ ժողովէին..... իշխանք և ամենայն գաւառապետք, գաւառակալք, պետք և բռնաւորք, զօրագլուխք, հազարաւորք, կուսակալք ազատօք՝ կողմանց կողմանց, աւագ նախարարք աշխարհին Հայոց»։

Սենյորական դասի ստորին կարգերը կազմում եյին Հին Հայաստանում «կրտսեր» նախարարները։

Աղբյուրների մեջ հիշվում են, ինչպես հայտնի յե, «աւագ և կրտսեր նախարարք» և «մեծամեծ աւագանի»-ն։ Բանասիրական և պատմական լերկերում նախարարների «աւագ» և «կրտսեր» մակդիրները մեկնված են տարբեր իմաստով։

1. Ինճիճյանն իր Հնախոսության մեջ (II, էջ 90) յենթադրում է, վոր «աւագ թուին կոչեցեալ նոքա՝ որոց մեծ էր կամ գործ կառավարութեան և կամ երկիր. իսկ կրտսեր նոքա՝ որոց փոքր էր պաշտօն և կամ երկիր»։

2. Կ. Կոստանյանցն իր «Հիւսուածք»-ի մեջ (գիրք Գ, Վիեննա 1877, էջ 29 և 36) տալիս է հետեվյալ տարբեր լուսաբանությունները. էջ 28—29՝ «երկու կարգի նախարարներ կային՝ աւագ և կրտսեր. առաջին կարգից էին այն նախարարները, որոնք Հայոց ամենահին ազնուական կամ նահապետական ցեղերից էին յառաջացել. իսկ երկրորդ կարգից էին նոքա, որոնց նախահայրերը հասարակ մարդիկ են եղել առանց ազնուական ծագումի և նախարարութիւն ստացել են թագաւորներից իրենց մի նշանաւոր ծառայութեան կամ հաւատարմութեան համար» (Նույն այս լուսաբանությունը տես նաև Էմինի Խորենացու ռուսերեն թարգմանության հավելվածում, էջ 298). մյուս մեկնությունը գտնվում է դարձյալ «Հիւսուածք»-ում, էջ 36՝ «իւրաքանչիւր նախարարութեան մէջ կար աւագ

նախարար՝ տանուտէրը, եւ կրտսէր նախարար՝ սեպուհները»։

3. Նիկ. Ադոնցի կարծիքով՝ նախարարները համարվել են «ավագ» կամ «կրտսեր» իրանց հզորության և կարևորության համեմատ (Армения в эпоху Юстиниана, էջ 453)։

Վերոհիշյալ ենթադրություններից անհիմն է և անհավանական Կոստանյանցի և Եմինի կռահումը, որ իբր «կրտսեր» նախարարների կարգին պատկանել են «հասարակ մարդիկ առանց ազնվական ծագումի», որոնք նախարարություն էին ստացել թագավորներից իրանց ծառայության կամ հավատարմության համար։ Այդ մասին աղբյուրների մեջ ո՛չ վկայություններ կան, ո՛չ էլ որևէ ակնարկ։

Նախարարությունների բաժանումն «ավագ» և «կրտսեր» խմբերի, ինչպես մատնանիշ է արել Ջավախովը,[1] բավարար կերպով լուսաբանված է Ղազար Փարպեցու մի վկայության մեջ։ Փարպեցու պատմելով, Վարդան Մամիկոնյանը Պարսից արքունիքում արտասանած իր ատենախոսության ժամանակ ի միջի այլոց ասում է՝ «բազումք են յայս երից աշխարհաց յազատորդւոց, որք են աւագ քան զիս և գահու և աւուրբք» (Տփղիս 1914, գլ. ԻԶ, էջ 49)։ Այս վկայությունից դժվար չէ հետևցնել, որ «ավագ» են համարվել նախարարները կամ «գահու» և կամ «աւուրբք»։

Եվ իրոք՝ ներքև մեջ բերված վկայությունների մեջ նախարարների «ավագ» մակդիրը գործ է ածված հենց այդ երկու իմաստով։

Հայտնի է արդեն, որ Արշակունյաց թագավորության, ինչպես և Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ, հաջորդական կարգով որոշված էին նախարարական տոհմերի գահերն այդ տոհմերի հզորության կամ կարևորության համեմատ։ Գոյություն է ունեցել գահերի կարգը որոշող հատուկ ցուցակ, որ անվանվում էր Գահնամակ։

---

[1] И. Джавахов, Государственный строй древней Грузии и древней Армении, С.-Петербург 1905, էջ 110։

Ըստ այսմ՝ «աւագ»-ների խմբին են պատկանել այն հզոր- ու առաջնակարգ տոհմերի նախարարները, որոնք «գահերէց» եյին, իսկ «կրտսեր»՝ նրանք, որոնց գահերը յեղել են յերկրորդական կարգի։

Բացի այդ՝ վկայությունների մեջ յերբեմն «աւագ» նախարար է անվանվում նախարարական տոհմի մեջ տարիքով մեծը, այսինքն՝ նահապետը կամ տանուտերը։

Ուշագրավ է, որ ուշ միջնադարում «աւագ» են անվանվել նահապետները կամ տանուտերները, իսկ նահապետությունն անվանվել է «աւագութիւն»։ «Աւագ» բառն իր այս վերջին նշանակությամբ կատարելապես համապատասխանում է միջնադարյան Եվրոպայի senior-ին։

«Աւագ» նախարարները վկայությունների մեջ անվանվում են հաճախ «աւագանի» և յերբեմն նաև «մեծամեծաւագանի».

Վկայություններ՝

1. «Եղիշէի վարդապետի վասն Վարդանաց և Հայոց պատերազմին», Վենետիկ 1864, Ը, եջ 343՝

«Այս երեսուն և հինգ արք. են որ յաւագ նախարարացն, և են որ ի կրսերագունից, սակայն ամենեքեան ըստ մարմնոյ են նախարարազունք».

2. «Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ. ոչ որ միայն աւագագոյնքն էին, այլ զբազումս ի կրսերագունաց անտի» (Եղիշէ. էջ 354).

3. Խորենացի, II, ԿԴ, եջ 197՝

«Եւ այլ որ ինչ կրտսերագոյն ազգք, եթէ աստ և եթէ զկողմամբք Կորճէից, հաստատէ այս Տիգրան. որք միանգամ անազգիք էին ի վաշտս և անձամբ երեւելիք...»

4. Խորենացի, III, ԾԱ, եջ 323՝

«Որոց մնացելոցն պարգեւեալ զկեանս՝ հրամայեաց [Արտաշիր] զտունս երկաքանչիւրոցն զկալեալսն յարքունիս՝ դարձուցանել ի նոսա. բայց միայն ի գահ հայրենի ոչ հաստատել, այլ ի խոնարհ քան զբազումս

մատուցեալ Նախարարս, ի կարգ կրտսերագունից պատ-
րաստել»։

5. Կանոնք Շահապիվանի (հրատ. Ղլտճյանի), Ի, եջ 81՝

«Եւ իշխան որ էր աշխարհին, և գեղջ ուրուք ազատ նախարար՝ տէր գաւառին կամի պղծութեանն թիկունք լինել...»

6. Փաւստոս, III, ԺԴ, եջ 42՝

«Բայց մեծամեծք նախարարացն աւագանին շատ եդին ի մտի արքային, զի մի կատարեսցէ զչարութիւն կամացն իւրոց առ գառնութեան սրտին ցասման...»

7. Փաւստոս, III, ԻԱ, եջ 54

«Ապա առաւել ժողովեցան ի մի ժողով միաբանութեանն մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. Նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք ևն»։

8. Ագաթանգեղոս, գլ. ԻԱ, 225, եջ 118՝

«Եւ ի վաղիւ անդր թագաւորն և նախարարքն և մեծամեծ աւագանին խառնաղանճ ամբոխիւ բազմութեամբ եկեալ ևն»։

Ազնվականության ամենաստորին շերտը կազմում էին Հին Հայաստանում «ազատ»-ները, վորոնք վասսալներ էին «աւագ» և «կրտսեր» նախարարությունների։

Ֆեոդալական Հայաստանը բաժանված եր, ինչպես տեսնում ենք, բազմաթիվ իշխանությունների, վորոնք յենթարկվում եյին կամ Արշակունյաց տոհմի թագավորներին և կամ իրանցից զորեղ, բարձրագույն կարգի իշխաններին։ Աղբյուրների մեջ հիշատակվում են, որինակ, Նախարարություններ, վորոնք յենթարկվում եյին բդեշխներին, ինչպես այդ պարզ ու բացահայտ յերևում ե հետևյալ վկայություններից.

1. Փաւստոս, IV, Ծ, եջ 163՝

«Բայց Նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեաշխն Աղձնեաց.... և ամե-

նայն նախարարութիւն Աղձնեաց. և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ».

2. Փաւստոս, V, ԺԵ, էջ 216՝

«Եւ զբդեաշխն Գուգարաց, որ յառաջն ծառայէր Թագաւորին Հայոց և ապստամբեաց, կալեալ գլխատէր. և զազգն որձակոտոր առնէր, և զկանայսն և զդստերսն ի գերութիւն վարէին։ Սոյն օրինակ և որ միանգամ ի կողմանն յայն էին նախարարքն, և ի Թագաւորէն Հայոց եղեն ապստամբ, զամենեսեան գլխատէր..»։

Կալվածատեր ազնվականության ստորադաս խավերի վասսալական կապը և կախումն ավելի բարձր և զորեղ սյուզերեններից անվանվել է Հին Հայաստանում «ծառայութիւն»։

«Ծառայ» և «ծառայութիւն» բառերը, վոր նշանակում եյին նաև ստրուկ և ստրկություն, սպասավոր և սպասավորություն, իբրև նախարարական կազմակերպության հատուկ տերմիններ՝ վոչ միայն կարող են համեմատվել ֆեոդալական Եվրոպայի vassus, servus, servitium և Ռուսաստանի слуга, служба բառերի հետ, այլ և իրանց նշանակությամբ կատարելապես համապատասխանում են այդ բառերին։

Ուշագրավ է նաև այն, վոր միջնադարյան Եվրոպայի dominus-ը կամ senior-ն անվանվում է Հին Հայաստանում «տէր», իսկ dominium-ը՝ «տէրութիւն»։

Հիմնվելով աղբյուրների սխալ հասկացված վկայությունների վրա, բանասիրական ու պատմական աշխատություններում նախարարությունների թիվը Հին Հայաստանում յենթադրում եյին, սովորաբար, 900 կամ 400։ Սակայն Ն. Ադոնցը վերոհիշյալ իր աշխատության մեջ[1] մանրախույզ կերպով ուսումնասիրել է այս խնդիրը և, օգտվելով աղբյուրների արժանահավատ տեղեկություններից, պարզել է արդեն, վոր Հին Հայաստանում նախարարական տոհմերի թիվը, վո-

[1] Армения в эпоху Юстиниана, гл. X, Количественый анализ нахарарства, էջ 236—297։

որոնք այս կամ այն չափով հայտնի յեն յեղել, պետք ե հաշվել մոտավորապես մինչև հիսուն։

Նույն աշխատության մեջ քննության ե առնված նաև նախարարությունների տեղագրության խնդիրը (глава XI. Территориальный анализ нахарарств, եջ 298 - 321)։ Իր ուսումնասիրության այս մասում՝ խոսելով Արծրունյաց, Մարդպետական և Ռշտունյաց նախարարությունների մասին՝ Ադոնցը յենթադրում ե, վոր այս մեծ իշխանությունների շուրջը խմբված են յեղել Վասպուրականի մյուս մանր իշխանությունները։ Նույն համակենտրոնացումը հատուկ ե յեղել, անշուշտ, նաև Սյունիքին և Աղվանքին։

Բոլոր այս դիտողությունները նախարարական իշխանությունների մասին հիմք են տալիս յեզրակացնելու, վոր յեվրոպական ֆեոդալիզմի վասսալական աստիճանավորումը (hiérarchie) գոյություն ե ունեցել նաև Հին Հայաստանում։

---

### Բ. ԱՌԱՆՁԻՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԵՐՔԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

Ինչպես վերև տեսանք, Հին Հայաստանի ֆեոդալական կազմակերպության գլխավոր և եական հատկանիշն այն եր, վոր նախարարական խոշոր կալվածքները վո՛չ թե սոսկ հողային գույք եյին (Grundvermögen, земельное имущество). այլ պետական կարգի հողային «տերություն»-ներ (Grundherrschaft, земельное господство)։

Պրոֆ. Ի. Ջավախովը վերև հիշված իր աշխատության մեջ (Государственный строй древней Грузии и древней Армении) յենթադրում ե, վոր Հին Հայաստանում և Վրաստանում, ինչպես նաև Արևելքի ուրիշ ազգերի մոտ, պետական ու սոցիալական կազմակերպության վերաբերյալ տերմինները ծագել են, մեծ մասամբ, տոհմական նախորդ շրջանից։

Յեվ իրապես՝ յուրաքանչյուր նախարարական յերկիր, վոր անվանվում եր «աշխարհ» կամ «գավառ», պահպանել

*եր Հայաստանում նաև տոհմական նախորդ շրջանի «տուն» անունը։ Իշխանությունն ամեն մի նախարարության մեջ պատկանում եր նախարարական տոհմի ներկայացուցչին, վոր կոչվում եր «տանուտէր», «տէր» կամ «նահապետ»։*

*Հոմանիշ այս անուններից «տանուտէր»-ը և «տէր»-ը տոհմական հնագույն շրջանի և արմենական գաղթականության անվանումներ են, իսկ «նահապետ»-ը փոխառություն և պարթեերենից և համապատասխանում է պրթ.* nâfapati *բառին, վոր նշանակում է տոհմի, ցեղի պետ (տես* A. Meillet, Revue des études arméniennes, II, fasc. 1, *եջ 1 - 3)։*

*Մատնանշված տերմինների իմաստը ֆեոդալական Հայաստանում լուսաբանված է բանասիրական ու պատմական թե հին և թե նորագույն աշխատություններում։*

> *1. Ըստ Ինճիճյանի «տէր», «տանուտէր» կամ «նահապետ» «կոչէր նա՝ որ գլխաւոր էր իւրաքանչիւր տոհմի նախարարութեան, կոչելով տէր Սիւնեաց, տէր Մամիկոնէից. յորոյ ի ձեռին էր տէրութիւն երկրի նոյն տոհմին, եւ և տէրութիւն ի վերայ զօրաց այնր տոհմի» (Հնախօս. II, եջ 78)։*
>
> *2. Կ. Կոստանյանցն իր «Հիւսուածք»-ի մեջ (III, եջ 36) տալիս է նույն տերմինների հետևյալ մեկնությունը։ «Ամենայն նախարարութիւն — ասում է նա — ունէր իւր մեծը, որ կոչուում էր* tanuayrs *կամ* ta-nutēr *կամ* tēr. *տանուտէր լինում էր սովորաբար նա, որը նոյն նախարարական ցեղի մէջ ամէնից մեծն էր տարով. այնպէս որ մնացած նախարարազունները, այսինքն՝ տանուտիրոջ որդիքը կամ եղբարքը՝ գտնուում էին նորա փակատար իշխանութեան տակ»։*

*Կոստանյանցի լուսաբանությունը, ինչպես տեսնում ենք, տարբեր է Ինճիճյանի մեկնությունից։ Ինճիճյանի կարծիքով՝ «ի ձեռն [տանուտէրի] էր տէրութիւն երկրի նոյն տոհմին», իսկ Կոստանյանցի բացատրությամբ՝ տանուտերների փակատար իշխանության տակ գտնվել են նախարարական տոհմերի անդամները։ Այս վերջին բացատրու-*

թյունը ճիշտ չէ, որովհետև տանուտերների իշխանության տակ գտնվել են իրոք ոչ միայն նախարարական տոհմերի անդամները, այլ նաև, ինչպես ուղիղ ընթադրել է Ինճիճյանը, նախարարական շրջանի ամբողջ բնակչությունը։

Նույն այս խնդիրը քննության է առել վերջերս Ջավախովը Государственный строй վերոհիշյալ իր աշխատության մեջ (էջ 100—109) և նա ևս նահապետական իշխանությունը հասկացել է այն ուղիղ և լայն իմաստով, ինչպես և Ինճիճյանը։

«Տանուտէր»-ների կամ «Նահապետ»-ների տիրական իշխանությունը, նաև նրանց իշխանության տակ գտնվող յերկրամասը, անվանվել են «տանուտէրութիւն», «տէրութիւն» կամ «նահապետութիւն»։

Որ «նահապետ»-ները կամ «տանուտէր»-ները իշխանական իրավունքներ են ունեցել իրանց յերկիրներում՝ այդ յերևում է, ի միջի այլոց, նրանից, որ աղբյուրների մեջ նրանք անվանվում են ոչ միայն «տանուտէր», «տէր» կամ «նահապետ», այլ և «իշխան», իսկ նրանց յերկիրները՝ նաև «իշխանութիւն»։

Աղբյուրների մեջ հիշատակվում են յերբեմն «աւագ տանուտէր»-ները։ Վերև մենք տեսանք, որ նախարարները «աւագ» են համարվել կամ «կրտսեր» «գահու և աւուրբք»։ Համապատասխան նախարարների այդ բաժանման՝ «աւագ տանուտէր» ևս անվանվել են, ինչպես այդ ուղիղ դիտել է Ջավախովը (Государственный строй, էջ 110), այն «տանուտէր»-ները, վորոնք իրանց գահով, դիրքով կամ տարիքով ավելի բարձր եյին կամ մեծ։

Վկայություններ վերոհիշյալ անունների վերաբերյալ.

1. Փաւստոս, IV, ԺԵ, էջ 119՝

«Ջայնու ժամանակաւ էր դուստր մի գեղեցիկ Անգովկայ ուրումն, մի ի նախարարացն նահապետին Աւենեաց, որում անուն Փառանձեմ կոչէր»․

2. Փաւստոս, V, ԼԷ, էջ 245՝

«Եւ ազգին Մամիկոնեան տոհմին տանուտէր նա-

նահապետ կացոյց Թագաւորն՝ Վաչէ անուն ի նմին տոհմէ»։

3. *Փաւստոս*, V, ԽԲ, *էջ* 257՝

*«Նոյնպէս յամենայն գաւառս կացուցանէր սպարապետն Հայոց Մանուէլ* նահապետս յիւր տեարս *գա-ւառաց գաւառաց»*։

4. *Փաւստոս*, IV, ԾԹ, *էջ* 183՝

*«Եւ էր նա կին Գարեգնի* տեառնն Ռշտունեաց գա-ւառին»։

5. *Խորենացի*, II, Ը, *էջ* 112՝

*«Քանզի ոչ ասեն* նահապետաց *ազգին՝ Մուրա-ցեան* տէր, *այլ Մարացւոցն* տէր»։

6. *Խորենացի*, II, Գ. *էջ* 104՝

*«Եւ նախարարութիւնս և* նոցին նախարարութեանցն նահապետութիւնս *հաստատեաց [Վաղարշակ] զարս պի-տանիս»*։

7. *Եղիշէ*, Է, *էջ* 242 (*Վենետիկ* 1864)՝

*«Զի ոչ ըստ կարգի ունէր նա [Վասակ]* զտէրու-թիւն Սիւնեաց աշխարհին, *այլ նենգութեամբ և քսու-թեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ»*։

8. *Փարպեցի*, II, Լ, *էջ* 58՝

«Արս աւագս ի տանուտերացն *Հայոց*, զիշխանն *Ար-շարունեաց Արշաւիր*, զիշխանն *Գիմաքսենից զՀմայեակ և* զիշխանն *Աբեղենից զԳազրիկ»*։

9. *Փաւստոս*, III, Դ, 9՝

*«Եւ պղտորէին զմիծ աշխարհն Հայոց* իշխանն *Մանաւազեան տոհմին, և միւս ևս* նահապետն *Որդու-նւոց տոհմին»*։

10. *Փարպեցի*, II, ԽԶ, *էջ* 85՝

*«Եւ ի նմին աւուր զԹշնամին նորա, զսեպուհն Սիւնի, զուրացողն զՎարազվաղան՝* տէր *ի վերայ աշ-խարհին Սիւնեաց կացուցանէին, որոյ որքան ժամա-նակս կալեալ* զիշխանութիւնն Սիւնեաց՝ *բազում արա-րեալ անիրաւութիւնս...»*։

Յուրաքանչյուր նախարարության մեջ տոհմի ավագագույն անդամը, վորին հանձնվում եր յերկրի իշխանությունը, կոչվում եր, ինչպես տեսանք, «տանուտէր», «տէր» կամ «նահապետ»: Նախարարական տոհմի մնացած անդամները, ինչպես դժվար չէ հետևցնել աղբյուրների վկայություններից, անվանվել են «սեպուհ»:

«Սեպուհ» տերմինը ևս ուղիղ է մեկնված նախորդ աշխատություններում:

1. Ըստ Ինճիճյանի (Հնախօս. Բ, եջ 80)՝ «յայսմ անուն կոչին իւրաքանչիւր անձինք ամենայն նախարարութեանց սակս գոլոյ յազնուական տոհմէ. բայց սոքա չէին տեարք կամ տանուտեարք տոհմին և ոչ երկրին. այսինքն չէին գլխաւորք. յայտ է այս ի մատադիր քննողաց ի բանից անտի վիպագրաց մերոց»:

2. Նույն լուսաբանությունը գտնում ենք նաև Կոստանյանցի («Հիւսուածք» Գ, եջ 36 և 38), Ջավախովի (Государственный строй, եջ 126) և Ադոնցի (Армения в эпоху Юстиниана, եջ 472) աշխատություններում:

Ուշագրավ է առանձնապես «սեպուհ» բառի ստուգաբանությունը, վոր առաջարկել է Ն. Մառը (տես ЗВО Имп. Рус. Арх. Общ., т. XI, եջ 165—169): Մառի կարծիքով՝ «սեպուհ»-ը (=* սեպուրհ, հմմտե վրց. sazepuro) հայերենում իրանական փոխառություն է և համապատասխանում է զենդ. vīsaputhra բառին, վորը նշանակում է տոհմի, ցեղի վորդի: Ուրեմն՝ նախարարական տոհմի առաջնորդն ու գլխավորն անվանվել է «նահապետ» = nāfapati, վոր նշանակում է տոհմի, ցեղի պետ, իսկ մյուս անդամները՝ «սեպուհ»=vīsaputhra, այսինքն՝ տոհմի, ցեղի վորդի:

Մեր նախորդ աշխատություններից մեկում («Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում» Յերևան 1925, եջ 12), մենք մատնանշել եյինք, վոր «սեպուհ» են կոչվել վոչ միայն նախարարական տոհմերի, այլ և Արշակունյաց թագավորա-

*կան տոհմի անդամները։ Փավստոսի պատմության մեջ Գնելը, Արշակ թագավորի յեղբոր վորդին, անվանված է «մեծ սեպուհն Արշակունի» (IV, ԺԵ, էջ 124)։*

*Ղազար Փարպեցու պատմության մեջ հիշվում է հաճախ բացի «սեպուհ»-ից նաև «աւագ սեպուհ» տերմինը։ Այս վերջին անունը քննության է առնված Ջավախովի և Ադոնցի վերոհիշյալ աշխատություններում* (Государственный строй, *էջ 127 և* Армения в эпоху Юстиниана, *էջ 472)։ Ջավախովի յենթադրությամբ՝ «աւագ սեպուհ» անվանվել են կամ նախարարական տոհմի կարևորության համաձայն և կամ ըստ տարիքի, իսկ Ադոնցի կարծիքով՝ «աւագ սեպուհ»-ը տարիքով ավագագույնն էր նախարարական տոհմում, վորը «տանուտէր»-ի կամ «նահապետ»-ի մահից հետո ժառանգելու յեր նրա իշխանությունը։*

*Ինձ թվում է, վոր այս յերկու յենթադրությունն էլ հավանական են։ Փարպեցու վկայություններից կարելի յե կռահել, վոր «աւագ սեպուհ» կոչվել է կամ վորևէ ավագ նախարարության «սեպուհ»-ը և կամ նախարարական տոհմի մեջ «սեպուհ»-ներից տարիքով ավագը։ Ուշագրավ է նաև այն, վոր «աւագ սեպուհ»-ները մասնակցություն են ունեցել պետական գործերում։ Փարպեցու վկայություններից յերևում է, վոր նրանք «տանուտէր»-ների հետ միասին հրավիրվում էյին Պարսից արքունիք, մասնակցում էյին «աշխարհաժողով»-ներում և կնքում էյին «մատեանեաւ» կարևոր գրությունները։ Նրանց գործակցությունը և այլ կառավարական խնդիրներում միանգամայն հավանական է, վորովհետև «աւագ սեպուհ»-ները՝ վորպես տանուտիրության գահաժառանգներ՝ ստանձնելու էյին նախարարական յերկրի իշխանությունը։*

*Վկայություններ «սեպուհ» և «աւագ սեպուհ» անունների վերաբերյալ.*

*1. Փարպեցի,* III, *ԿԸ, էջ 121՝*

*«Եւ* սեպուհ *մի ուրծացի, որում անուն էր Վարազներսեհ, որդի Կողթեկայ իշխանին Ուրծայ».*

2. Փարպեցի, I, ԺԸ, 37՝

«Եւ լուեալ զայս ամենայն խօսս բազմութեան ազատացն Հայոց, տանուտերացն և սեպհացն և միահամուռ ժողովրդոցն բազմութեան...»։

3. Եղիշէ, III, եջ 127 (Վենետիկ 1864)՝

«Եւ զայլս բազում զօրս յարքունի տանէն էարկ լինքն, և զսեպուհս ոմանս յայլմէ տոհմէ»։

4. Փարպեցի, I, ԺԵ, եջ 26՝

«Եւ տաղակացեալ մեծամեծ տանուտեարքն Հայոց և ազատ սեպուհքն և ամենայն ժողովրդոցն բազմութիւնք...»

5. Փարպեցի, II, ԻԵ, եջ 47՝

«Եւ հրամայէր [Յազկերտ] գրել յերեսին հրովարտակսն, զի ամենայն տանուտեարքն և ազատ սեպուհքն երեցունց աշխարհացն փութով և անխափան ի դուռն եկեսցեն»։

6. Փարպեցի, II, Լ, եջ 58՝

«Յորհուրդ ի մէջ առեալ իշխանին Սիւնեաց Վասակայ հանդերձ ամենայն տանուտերամբք Հայոց և ազատ սեպհօք, և զմիտս ամենեցուն յիւր կամսն հաւանեցուցանէր»։

7. Փարպեցի, II, ԼԲ, եջ 62՝

«Եւ գրեալ զայս ամենայն բանս հաւատոյ ուխտին, և կնքեալ նախ մատանեաւ իշխանին Սիւնեաց Վասակայ և ապա մատանեօք ամենայն տանուտերացն Հայոց և ազատ սեպհացն.... եւ տուն ցպատուական եպիսկոպոսն և ցաւագ քահանայութիւնն որ էին անդ»։

8. Փարպեցի, Բ, ԼԵ, եջ 65՝

«Եւ Նիգակակից տայր նմա զՄուշ զազատ սեպուհ՝ յազգէն Դիմաքսենից»։

Նահապետական կամ տանուտերական իշխանությունը ժառանգում էր, ինչպես ասացինք, նախարարական տոհմի ավագ անդամը, այսինքն՝ «աւագ սեպուհ»-ը։

Ժառանգական նույն կարգը, ինչպես հայտնի յե, պահ-

պանվել էր նախարարական տոհմերում Բագրատունյաց ժամանակ, նաև ուշ միջնադարում։ Ուշագրավ է այդ տեսակետից, որ Մխիթար Գոշի Դատաստանագրքում թագավորական գահի ժառանգ համարվում է առաջին հերթին թագավորի յեղբայրը՝ «Եւ որքան եղբարք իցեն նորա — ասում է Մխիթար Գոշը — որդւոց նորա ոչ է իրաւացի առնուլ թագաւորութիւն» (տես Դատաստանագիրք Հայոց, հրատ. Վ. Բաստամյանցի, Վաղարշապատ 1880, II, Ա, էջ 300)։ Բաստամյանցի յենթադրությունը, որ այս կանոնի նկատմամբ Դատաստանագրքի վրա ազդեցություն է ունեցել մահմեդական օրենքը կամ սովորությունը, ինչպես տեսնում ենք, միանգամայն անհավանական է։

Փավստոսը վկայում է, որ նախարարական շրջաններում հայ Արշակունիներն իրանք եյին կարգում «տանուտէր»-ներ կամ «նահապետ»-ներ։ Սակայն Արշակունիների այդ միջամտությունը, ինչպես ցույց են տվել Ջավախովը և Ադոնցը (Государственный строй, էջ 101—103 և Армения в эпоху Юстиниана, էջ 464—465), յեղել է սոսկ ձևական։ Արշակունիները ճանաչում եյին միայն կամ հաստատում օրինական ժառանգների իրավունքները։

Ի նկատի ունենալով այս խնդրի կարևորությունը, հարկ եմ համարում մեջ բերել ժառանգության այդ հնավանդ իրավունքի վերաբերյալ մի քանի ուշագրավ վկայություններ՝

1. Փաւստոս, V, Լէ, էջ 246՝

«Եւ եղև իբրև եկն եհաս յերկիրն Հայոց Մանուէլ եղբարբն իւրով Կոմսիւ հանդերձ, իբրև ետես զնա Վաչէն՝ որ յառաջն էր լեալ նահապետ, մինչ չև եկեալ էր ի նա՝ ետ ցնա զպատիւ իշխանութեանն, զոր առեալ էր ի թագաւորէն Վարազդատայ։ Քանզի նա էր երէց յազգին, և Մանուէլն ունէր զնահապետութեան ազգին տանուտէրութեան պատուին. և Վաչէն լինէր երկրորդ»։

2. Փաւստոս, IV, Բ, էջ 67՝

«Եւ կացոյց արքայն [Արշակ] զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութեանն ազգին իւրեանց, և

զՎասակ զմիջին եղբայրն զիւր զայեակն ի սպարապետութիւնն զօրավարութեան յերս պատերազմացն. սոյնպէս և զկրտսերն ի պետս զօրացն կացուցանէր։ Սոյնպէս և զամենայն ազգսն զօրացն մեծամեծացն նահապետացն, որպէս առաջին թագաւորքն նուաճեալք յիւրաքանչիւր չափու»։

3. Եղիշէ, VII, եջ 242 (Վենետիկ 1864)՝

«Զի ոչ ըստ կարգի ունէր նա [Վասակ] զտէրութիւնն Սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ և քսութեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ, և յինքն տարաւ զտէրութիւնն իբրև քրտիկար յարքունիս»։

Յուրաքանչյուր «տանուտէր» կամ «նահապետ»՝ իբրև լիազոր տեր և կառավարիչ նախարարական յերկրի՝ ուներ թե վարչական և թե դատական իշխանություն։ Հպատակ հարկատու բնակչությունից իր գործակալների միջոցով նա ստանում էր հարկեր և տուրքեր. ուներ սեփական զորք և առանձին դրոշ։ Փավստոսը, օրինակ, անվանում է նահապետներին «գնդից և դրօշուց տեարք»։ «Ապա ի մի ժողով կուտեցան — ասում է Փավստոսը — առ արքայն Արշակ մեծամեծք նահապետք ազգաց ազգաց, տոհմաց տոհմաց, գնդից և դրօշուց տեարք» (IV, Գ, 68)։

Գլխավոր իշխանությունների և նրանց վասալների զորքերի քանակի մասին պահպանվել է մի հին ցուցակ, որը հրատարակել էր Հ. Շահխաթունյանն իր «Ստորագրության» մեջ[1]։ Նույն ցուցակը վերահրատարակված է նաև Ալիշանի «Այրարատ»-ում (եջ 424), Կոստանյանցի «Հիւսուածք»-ում (III, եջ 32) և Ադոնցի „Армения в эпоху Юстиниана“ աշխատության մեջ (եջ 251—252)։

Համաձայն այդ ցուցակի հազար կամ հազարից ավելի զորք տալիս էյին պատերազմի ժամանակ իշխանական 23

---

[1] «Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ», Էջմիածին 1842, II, եջ 58—59։

խոշոր շրջան, հինգհարյուր կամ հինգհարյուրից ավել՝ 10 շրջան և հիսունից մինչև յոթհարյուր՝ 53 շրջան։ Զինվորական ցուցակի այդ տեղեկությունները, դժբախտաբար, վավերական չեն, խիստ աղճատված են և, Ադոնցի կարծիքով (էջ 252—297), հորինված են արվեստորեն VII դարից հետո, հավանաբար, գրավոր հնագույն աղբյուրների օգնությամբ։ Այնուամենայնիվ՝ նախարարական զորքերի թվի մասին հաղորդված վկայությունները կարող են, ինչպես ընթադրում է Ադոնցը, մասամբ ճիշտ լինել, վորովհետև այդ տվյալները համապատասխանում են մոտավորապես Խորենացու, Զենոբի և Փավստոսի ցուցումներին։

Նախարարական իշխանություններն ունեյին իրանց սեպհական ամրոցները և բերդերը, վորոնք վտանգի ժամանակ ծառայում եյին իբրև ապաստարան։ Այդ ամրությունները եյին նրանց հենարանը և հույսը պատերազմի և ապստամբությունների ժամանակ։

Ինչպես հայանի յե Փավստոսի վկայությունից, մեծ խռովությունների ընթացքում, վոր բռնկվել եյին Հայաստանում Տիրան թագավորի ժամանակ, Արտավազդ և Վասակ Մամիկոնյանները պատսպարվել եյին իրանց բերդերում, վոր գտնվում եյին Տայքում (Փավստոս III, ԺԸ, էջ 47 և IV, Բ, էջ 67)։ Ղազար Փարպեցին ևս վկայում է, վոր Վարդանանց կռիվների ժամանակ «սեպուհ մի ուրծացի, որում անուն էր Վարազներսեհ,..... նենգեալ ուխտին սրբոյ՝ երթեալ ուեբէր գշահաստանն Բռնավիժի, և առեալ զամենայն կարասի շահաստանին՝ գիմեալ ամրանայր ի բերդն որ անուանեալ կոչի Ասգրայ բերդ, որ էր բերդ ամուր իշխանութեանն իւրեանց» (Փարպեցի III, Կէ, 121)։ Բազմաթիվ նաև ուրիշ վկայություններից յերևում է, վոր բերդերը և ամրությունները, լինելով նեցուկ և հենարան ավատական առանձնացման՝ նույնպիսի կարևոր դեր են կատարել Հին Հայաստանում, ինչպես և միջնադարյան Յեվրոպայում։

Հասկանալի յե այդ տեսակետից, վոր նախարարական Հայաստանը նվաճելու, ինչպես և նախարարական ապստամ-

*րությունները ընկճելու համար, անհրաժեշտ էր նախ քանդել ու գրավել այդ կարևոր պատսպարանները։*

*Նախարարական ամեն մի իշխանություն ուներ իր հատուկ կենտրոնատեղին, որը կոչվել է, ինչպես ենթադրում են Ջավախովը և Ադոնցը* (Государственный строй, *էջ 120 և* Армения в эпоху Юстиниана, *էջ 463), «գահ» կամ «գահույք», այսինքն՝ տեղ կամ «գահ» աթոռանիստ կենտրոնի իմաստով։ Փավստոսի մոտ, օրինակ, Մանավազյան տոհմի իշխանի կենտրոնն անվանվում է «բուն գահույից գեղն»* (III. *Դ, էջ 10)։*

*Ադոնցի կարծիքով, նախարարական շրջանի կենտրոնատեղին կոչվել է ոչ միայն «գահ» կամ «գահույք», այլ և «ոստան»։*

*Այս վերջին պնդումը նախարարությունների հնագույն անցյալի նկատմամբ ճիշտ չէ։ Հյուբշմանը շատ ուղիղ դիտել է, որ Արշակունյաց ժամանակ «ոստան» է համարվել այն երկիրը միայն կամ քաղաքը, որ գտնվել է Արշակունյաց իշխանության տակ։ «Ոստան» նշանակում էր, ուրեմն, «արքունի կալված, երկիր կամ քաղաք»։ «Ոստան» էյին, ինչպես հայտնի է, Արտաշատը, Վաղարշապատը և հետագայում նաև Դվինը։ Աղբյուրների վկայություններից դժվար չի հետևցնել, որ ոչ թե հին շրջանում, այլ միմիայն հետագա դարերում, «ոստան»-ը գործ է ածվել նաև նախարարական. ուրիշ կենտրոնների համար։ Որովհետև Արշակունյաց շրջանում գտնվող գլխավոր քաղաքները «ոստան» էյին անվանվում, այնուհետև՝ «ոստան» են համարվել նաև նախարարական իշխանությունների նշանավոր կենտրոնները, օրինակ՝ Նախճավանը, Հադամակերտը և Դարոյնքը։*

*Մատենագրական աղբյուրների տեղեկությունները նախարարությունների ներքին կազմակերպության մասին, ինչպես տեսնում ենք, քիչ են և թերի։ Սակայն այնուամենայնիվ՝ ընդհանուր ու աղոտ գծերով վորոշվում են նախարարությունների թե ներքին կազմակերպության հիմնական կողմերը և թե նրանց պետական ինքնամփոփ ու ինքնուրույն վիճակը։*

Նախարարությունները Հին Հայաստանում, ինչպես տեսանք, ինքնուրույն իշխանություններ էին։ Սակայն նրանք իբրև վասալներ գտնվում էին միաժամանակ հայ Արշակունիների իշխանության տակ։ Իրանք Արշակունիները նույնպիսի միահեծան «տէր» էին իրանց բնիկ յերկրում, ինչպես «նահապետ»-ները կամ «տանուտէր»-ներն իրանց շրջաններում։

Արշակունիների բուն յերկիրը, որ իր տարածությամբ շատ ավելի ընդարձակ էր քան նախարարական «տէրութիւն»-ները, կոչվում էր, հավանորեն, «ոստան»։

Նիկ. Ադոնցը կարծում է, որ «ոստան» նշանակում է արքունիք, բառացի՝ շեմք, համապատասխանում է միջնադարյան Յևրոպայի curtis dominicalis-ին և իբր թե այդպես են անվանվել նախարարական և արքունի յերկիրների կենտրոնները[1]։ Նրա յենթադրությունը, ըստ յերևույթին, հիմնված է Հայկազյան լեզվի Նոր բառգրքի վրա, որը «ոստան» բառի դիմաց դրել է նույնպես՝ «սեամ, դուռն արքունի» բացատրությունը։ Սակայն հիմնավոր և համոզիչ է, ինչպես վերև ասացինք, ոչ թե այս բացատրությունը, այլ այն մեկնությունը, որ տվել է «ոստան» բառին Հյուբշմանն իր «Հին հայոց տեղւոյ անունները» աշխատության մեջ (Թարգմ. Հ. Բ. Պիլիպիկճեանի, Վիեննա 1907, էջ 393—394)։ Նրա լուսաբանությամբ՝ «ոստան» բառի ծագումն անպայման պարսկական է. չորրորդ դարում «ոստան» է անվանվել այն յերկիրը կամ քաղաքը, որ գտնվել է Արշակունի թագավորի (կամ Արշակունյաց թագավորական տան որևէ իշխանի) իշխանության տակ։

Վերև մատնանշել էինք, որ «ոստան» կոչվել են Այրարատ գավառի գլխավոր քաղաքները՝ Արտաշատը, Վաղարշապատը և ապա Դվինը։ «Ոստան» էին սակայն ոչ միայն այդ քաղաքները, այլ և Արշակունիների «բնիկ սեփ-

---

[1] Армения в эпоху Юстиниана. էջ 463։

*հականՖ Այրարատ գավառը, նաև նրանց անմիջական իշխանության տակ գտնվող արքունի ամբողջ յերկիրը։ Վոր այս յենթադրությունը միանգամայն ճիշտ ե, այդ պարզ յերևում ե Փավստոսի հետևյալ վկայություններից.*

> *1. Փաւստոս, VI, ԺԹ. եջ 133՝ «Բայց զտոհմս կամսարականացն՝ որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ առնէր [Արշակ]. և զգաւառսն ունէր յոստան»․*
>
> *2. Նույնը, V, ԺԸ. եջ 217՝ «Հարկանէր [Մուշեղ] և յԱնգեղ տունն զբազումս, և հանէր ընդ սուր։ Բայց աշխարհն, զի ոստան արքունի լեալ էր վաղ վաղ, բնակիչք գաւառին և ինքեանք կային ի հարկի ծառայութեան»։*

*Արշակունինները, լինելով անմիջական «տէր» արքունի յերկրի կամ «ոստան»-ի, միաժամանակ բարձրագույն սենյորներ եյին նախարարական ամբողջ Հայաստանի։ Իբրև միապետներ, վորոնց ստորադրված եյին բդեշխությունները և բոլոր նախարարությունները, նրանք անվանվում եյին «թագաւոր» կամ «արքայ Հայոց Մեծաց» (տես Փաւստոս, III. ԺԱ, եջ 28, IV, ԺԱ, եջ 107, Կորյուն [Վենետիկ 1894], եջ 14 և 20, Ագաթանգեղոս ՃԺԶ, եջ 428, Դ, եջ 29, ԺԲ, եջ 73 են), իսկ նրանց իշխանությունը՝ «տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին» (տես Փաւստոս IV, Բ, եջ 67)։*

*«Հայոց Մեծաց» թագավորը թեև համարվում եր բարձրագույն տեր և հրամայող նախարարական ամբողջ Հայաստանի, սակայն նրա այդ բացարձակ իշխանությունը գրեթե անվանական եր և ձևական։ Հայաստանի քաղաքական և աշխարհագրական պայմաններում դժվար եր զսպել և սանձահարել զորեղ ու ըմբոստ նախարարությունները և զոլեղացնել թագավորական միահեծան իշխանության հեղինակությունը։ Դժվար եր այդ, մանավանդ, և այն պատճառով, վոր Հայաստանում չեյին հասունանում կամ ամրանում այն անտեսական ու սոցիալական նախադրյալները, վորոնք*

նպաստելու էին միապետական իրական իշխանության ստեղծմանը։

Ներքև մենք կտեսնենք, որ Արշակունիների բուռն ու անհաշտ պայքարն ընդդեմ նախարարությունների շարունակվել է գրեթե անընդհատ մինչև նրանց թագավորության անկումը։

Նախարարությունները, որ համառությամբ պաշտպանում էին իրենց ներքին անկախությունը, ճանաչում էին Արշակունիներին իրենց «տէր» և «թագաւոր Հայոց Մեծաց» բարձրագույն սենյորի իմաստով՝ ճիշտ այնպես, ինչպես և ֆեոդալական Եվրոպայում։ Նրանք գործակցում էին Արշակունիներին, երբ հարկավոր էր պաշտպանել նախարարական Հայաստանն արտաքին հարձակումներից։ Թագավորը համարվում էր ընդհանուր ներկայացուցիչ միջազգային հարցերում. նա հայտարարում էր պատերազմ, կնքում էր դաշինք, ուղարկում ու ընդունում էր դեսպանություններ և պահպանում հարաբերություններ օտար պետությունների հետ։ Հավանական է սակայն ենթադրել, որ այս հարցերն անգամ քննվում էին սովորաբար «աշխարհաժողով»-ներում[1]։

Համեմատելով նախարարությունների պարտականությունները Արշակունիների հանդեպ արևմտյան ֆեոդալների համապատասխան պարտականությունների հետ, դժվար չէ համոզվել, որ վասսալական այդ հարաբերություններն ունեն ընդհանուր նման գծեր, որ ակներև են ու անժխտելի։

Ուշագրավ է ամենից առաջ, որ Հին Հայաստանում ևս ֆեոդալական դասակարգության ամեն մի ստորին խավի կապը և կախումն ավելի բարձր շերտից արտահայտվել է նույն տերմիններով, ինչպես և միջնադարյան Եվրոպայում։ Հայ նախարարները, ինչպես հայտնի է, անվանվում էին

---

[1] «Աշխարհաժողով» բառը թեև իբրև հատուկ տերմին չի հանդիպում մատենագրական հին աղբյուրներում, սակայն այդ բառը ճշտորեն արտահայտում է աշխարհախումբ խորհրդակցությունների բնույթը, որ ներքև քննվելու են։

«ծառայ» նախ հայ Արշակունիների և ապա Պարսից թագավորների։ Այն պարտականությունները՝ որ նրանք ունեյին թագավորի հանդեպ, կոչվում եյին «ծառայություն»։ Իբրև հատուկ տերմիններ Հայաստանի նախարարական կազմակերպության, «ծառայ» և «ծառայություն» համապատասխանում են, ինչպես ցույց է տվել Նիկ. Ադոնցը, ֆեոդալական Յեվրոպայի servus, servitium և Ռուսաստանի слуга, служба բառերին (Армения в эпоху Юстиниана, էջ 459)։

Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալական իշխանությունները պարտավոր եյին — և այդ նրանց հիմնական պարտականությունն եր — պատերազմի ժամանակ տրամադրել սենյորին իրանց զինվորական ուժերը։ Նույն պարտականությունն ունեյին Հին Հայաստանում նախարարությունները Արշակունյաց և Սասանյան Պարսկաստանի թագավորների հանդեպ։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, որ Հայաստանում ևս, ինչպես և ֆեոդալական Յեվրոպայում, նախարարական իշխանությունները պարտավոր եյին պաշտպանել իրանց սենյորի բերդերը և հարկավոր դեպքերում տրամադրելու եյին նրան իրանց սեփական ամրությունները։

Միջնադարյան Յեվրոպայում վասսալների գլխավոր պարտականություններից մեկն եր նաև նրանց պարտադիր ծառայությունն արքունիքում կամ սենյորական պաշտոնավայրում։ Նրանք վոչ միայն իրանց ներկայությամբ առանձին փայլ եյին տալիս սենյորի տոնական մեծ հանդեսներին, այլ գործակցում եյին նրան քաղաքական ու կառավարական գործերում, մասնակցում եյին կարևորագույն հարցերի քննությանը հատուկ ժողովներում և վարում եյին նույն իսկ արքունի վորոշ պաշտոններ։

Նույնը մենք տեսնում ենք նաև նախարարական Հայաստանում, գլխավորապես, Արշակունյաց թագավորության ժամանակ։

Նախարարների և «ազատ»-ների մեծ ու փոքր պաշտոններն արքունիքում և «ոստան»-ում անվանվում եյին «գործ» կամ «գործակալություն», իսկ նախարարներն ու «ազատ»-

*ներն իրանք կոչվում էին իբրև արքունի պաշտոնյաներ՝ «գործակալ»-ներ։ Համաձայն Ադոնցի՝ «գործ» և «գործակալ» համապատասխանում են արևմտյան ֆեոդալիզմի* office *և* officier *տերմիններին*[1]։

*Ամենակարևոր «գործակալութիւն»-ներն Արշակունյաց Հայաստանում, որ հանձնարարված էին ավագ նախարարություններին և կաթողիկոսությանը, անվանվում են աղբյուրներում՝ «թագակապ ասպետութիւն», «մարդպետութիւն», «մագխազութիւն», «սպարապետութիւն», «հազարապետութիւն» և «մեծ դատաւորութիւն»։*

*«Թագակապ ասպետութեան» իշխանությունը հանձնված էր Բագրատունիներին։ Իբրև «թագադիր» նրանք գահակալության ժամանակ թագ էին դնում թագավորի գլխին։*

*Պարթևների թագավորության մեջ, ինչպես և Սասանյան Պարսկաստանում, թագադրության թագ իրավունքը տրված է լեղել, ինչպես հայտնի չէ, ազնվական ամենաբարձր տներին, վորոնք ազգական էին թագավորական ընտանիքին։ Բագրատունիների մասին ես հաղորդվում է, վոր նրանք խնամիական գծով ազգական էին Արշակունիներին (տես Սեբէոս, Պատմութիւն ի Հերակլն, Ս.-Պետ. 1879, Ա, էջ 9, Խորենացի, II, ԿԳ, էջ 194, Փաւստոս V, ԽԴ, էջ 263)։*

*1. Փաւստոս, V, ԽԴ, էջ 263՝*

*«Առնէր հարսանիս և եղբօր նորին Վաղարշակայ, և տայր նմա դդուստր ասպետին Բագրատունոյ ի Սպեր գաւառէ, որ* թագադիրն[2] թագակապն *լեալ էին ի բնմէ ազգին Թագաւորութեանն Արշակունոյ»*.

*2. Ագաթանգեղոս, ՃԺԲ, էջ 414՝*

*«Զորրորդ՝ իշխանն* թագակապ իշխանութեան ասպետութեանն».

*3. Ագաթանգեղոս, ՃԻՁ, էջ 460՝*

---

[1] Армения в эпоху Юстиниана, *էջ 467։*

[2] *Բնագրում «թագաւորքն», վոր ուղղելու յի «թագադիրքն», տես Ն. Բիւզանդացի, «Կորիւն վարդապետ և Նորին Թարգմանութիւնք», Տփխիս 1900, էջ 269։*

«Առնոյր ընդ իւր [Տրդատ]... զմեծ իշխանն Անգեղ տան, եւ զթագադիր ասպետն, եւ զսպարապետն մեծ».

4. Խորենացի, II, Է, էջ 110՝

«Արդ՝ նախ և առաջին օրինադրէ Թագաւորն [Վաղարշակ] զինքն և զտուն իւր, սկիզբն առնելով ի գլխոյ իւրմէ և ի թագէ։ Եւ զկոչեցեալն Բագարատ, որ ի Հրէից, շնորհակալութիւն նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռնտուութեանն առ թագաւորն և միամտութեանն և քաջութեանն, զյառաջասացեալ տանուտիրական պատիւն ազգին սպարգևելով. և իշխել նմա թագ ի գլուխ դնել թագաւորին, և կոչել թագադիր, այլ և ասպետ»..

5. Խորենացի II, Ը, էջ 117՝

«Եւ ազերսեալ որ ի Հրէից Շամբատայ Բագարատ, որ և թագադիր և ասպետ».

6. Նոյնը II, ԺԴ, էջ 128՝

«Վասն որոյ առնու ի նոցանէ ի բաց [Տիգրան] զիշխանութիւն զօրուն. բայց միայն զթագակապ ասպետութիւնն ոչ հանէ».

7. Նոյնը II, ԽԷ, էջ 174՝

«Եւ ոչ ինչ ընդհատ յայլոց պատուոց տայ դայեկին իւրում Սմբատայ [Արտաշէս], բայց միայն յերկուց գնդացն և ի կարմիր կօշկէ. և աւելի քան զհայրենական զիւր թագակապ ասպետութիւնն և զիշխանութիւնն արեմտեայ զօրուն՝ հաւատայ ի նա զամենայն զօրս Հայոց, և զբոլոր աշխարհիս զգործակալս և զհամօրէն տունն արքունի».

8. Նոյնը II, Գ, էջ 104՝

«Նախ և առաջին փոխարէն բարեաց հատուցանելով առնն զօրաւորի և իմաստնոյ, որ ի Հրէիցն՝ Շամբատայ Բագարատ. տալով նմա իշխանութիւն ազգաւ թագադիր լինել Արշակունեաց»։

«Ասպետ» բառը, ինչպես հայտնի է, գործ է ածվել եր-

րև հատուկ տիտղոս Բագրատունիների տոհմում։ Բանասի-
րական ու պատմագիտական հնագույն յերկերում այդ տեր-
մինի մասին արված են զանազան մեկնություններ, վոր
հիշատակված են Նորայր Բյուզանդացու «Կորյուն վարդա-
պետ և Նորին Թարգմանութիւնք» աշխատության մեջ (եջ
284)։ Նոր Հայկազյան Բառգրքում և Աճառյանի Արմատա-
կան բառարանում «ասպետ» բառին վերագրված է այն սո-
վորական նշանակությունը, վոր ընդունված է նաև այժ-
մյան գրական լեզվի մեջ՝ «ասպետ»—«ձիաւոր ազնուական,
իշխանաւոր հեծեալ»։

Նույն բառի ստուգաբանական մեկնությունը, վոր ըն-
դունելի չէ համարել Աճառյանը, տվել է Հյուբշմանն իր
Armenische Grammatik աշխատության մեջ (եջ 109)։ «Աս-
պետ»-ը, նրա կարծիքով, համառոտություն է հին պարսկե-
րեն *aspapati բառի, վոր նշանակում է «ձիատեր»։ Այս
բացատրությունը, թեև ստուգաբանորեն բավարար կերպով
հիմնավորված է, սակայն խիստ վիճելի յե «ասպետ» և *as-
papati բառերի վերոհիշյալ նշանակությունների տարբերու-
թյան պատճառով։ Անհասկանալի յե նույնպես, թե ինչու
«ասպետ»-ը, ունենալով ֆեոդալական chevalier կամ рыцарь
բառի նշանակությունը, գործածական չէ յեղել Հայաստա-
նում իբրև տերմին «ձիավոր ազնվական»-ների համար։

Նույն «ասպետ» բառի մասին մի այլ բացատրություն,
վոր հիշատակված չէ Աճառյանի Արմատական Բառարանում,
առաջարկել է Ադոնցը (տես „Армения в эпоху Юстиниа-
на“, եջ 400—402)։ Ըստ այդ բացատրության՝ «ասպետ»
Բագրատունիների տոհմային տիտղոսն է, նշանակում է
«տոհմապետ» և համապատասխանում է իրանական viϑa-
pati բառին։ Թեև Ադոնցի այս ստուգաբանությունը կարոտ
է ավելի հիմնավոր լուսաբանման, սակայն այս մեկնությունն
ըստ իս հավանական է, վորովհետև նոր այս բացատրությամբ
միանգամայն հասկանալի յե դառնում «ասպետ»-ի գործա-
ծությունն իբրև տիտղոս Բագրատունիների միայն տոհմում։

«Գործակալ»-ական մեծ իշխանություն եր արքունիքում

«մարդպետություն»-ը։ Ադոնցի յենթադրությամբ՝ «մարդպետ» նշանակել է սկզբում «մարդ» ցեղի պետ, այն հայտնի ցեղի, որ ապրում էր Մարդաստանում։ Հետագայում «մարդպետ»-ը դառել է նախարարական տոհմի տիտղոս (տես Армения в эпоху Юстиниана, էջ 319)։ Համաձայն տոհմային այդ տիտղոսի «մարդպետ»-ներին հանձնված արքունի «գործակալությունն» անվանվել է «մարդպետություն»՝ ճիշտ այնպես, ինչպես և Բագրատունիների տոհմային «ասպետ» տիտղոսի համաձայն վերոհիշյալ «գործակալություն»-ը կոչվել էր «ասպետություն»։

«Մարդպետութեան» մեծ իշխաններին հանձնարարված են յեղել Արշակունիների կանանոցի և արքունիքի վերակացությունը, թագավորական ամրությունների և բերդերի պահպանությունը և արքունի գանձերի ու կալվածների վերահսկողությունը։ Նրանց բարձր դիրքը և բացառիկ հեղինակությունն արքունիքում պարզ յերևում է նրանից, որ Փավստոսի մոտ նրանք անվանվում են «հայր» կամ «հայր թագավորի», իսկ նրանց պաշտոնը՝ «հայրություն»։

Նորայր Բյուզանդացու և Ինճիճյանի վերոհիշյալ աշխատություններում սխալ են մեկնված «մարդպետութեան» վերաբերյալ Փավստոսի հետևյալ վկայությունները.

1. Փաւստոս, IV, ԺԴ, էջ 117՝

«Արդ ելանէր սա շրջէր ընդ մարդպետութիւնն իւր. ապա եկն էջ Հայր մարդպետ ի գաւառն Տարօնոյ ընդ իւր գեւղսն տեսանել.... Եկն էջ և Հայրն մարդպետ զիւրով իշխանութեամբն շրջեալ».

2. Փաւստոս, V, Գ, էջ 195՝

«Ապա մինչդեռ մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբ շրջէր յերկրին Տարօնոյ, և Մուշեղ սպարապետն Հայոց էր ի նմին գաւառին յիւրում բերդին»։

Ինճիճյանը և Նորայր Բյուզանդացին յենթադրում են, որ «շրջէր ընդ մարդպետութիւնն իւր» և «զիւրով իշխանութեամբ շրջէր» պետք է հասկանալ այն իմաստով, որ

«մարդպետ»-ների իշխանության տակ գտնվող կալվածները Տարոնում «մարդպետութեան» սեփական յերկիրն եյին (տես «Հնախօս», Բ, եջ 138 և «Կորիւն և Նորին Թարգմանութիւնք», եջ 268)։ Այս յենթադրությունը անհավանական է և անընդունելի։ Ինչպես ուղիղ մեկնել է Գարագաշյանը, հիշյալ կալվածներն արքունի տան շրջաններ եյին, վորոնք գտնվել են «ընդ տեսչութեամբ մարդպետաց» (տես «Քննական պատմութիւն Հայոց», Բ, եջ 7 և 20)[1]։ Ուրեմն՝ «ընդ մարդպետութիւնն իւր» և «զիւրով իշխանութեամբ» խոսքերի տակ պետք է հասկանալ «մարդպետ»-ների վոչ թե «տանուտէրական», այլ «գործակալական» իշխանությունը։

«Մարդպետութեան» քաղաքական մեծ դերը չորրորդ դարում մատնացույց է արված Մարկվարտի „Südarmenien und die Tigrisquellen“ աշխատության մեջ (Wien 1830, եջ 58—70)։ Մարկվարտի կարծիքով «մարդպետ»-ներն իբրև արքունի «գործակալ» ներ ձգտել են ամրացնել Արշակունիների հզորությունը և ստեղծել զորեղ թագավորական իշխանություն. միաժամանակ նրանք աշխատել են ամեն կերպ ընկճել ու թուլացնել ինքնիշխան ու կենտրոնախույս նախարարությունները։ Հակառակ կենտրոնացման այս քաղաքականության՝ Մամիկոնյան տոհմը և յեկեղեցական բարձր իշխանությունը գործել են ձեռք ձեռքի տված ընդդեմ «մարդպետութեան» և պաշտպանել են նախարարական տոհմերի կալվածական ու «տանուտէրական» իրավունքները։

Հասկանալի յէ այդ տեսակետից, վոր Փավստոսը՝ վորպես այս վերջին կուսակցության պատմագիր՝ խորապես ատում է «մարդպետ»-ներին և պախարակում է խստիվ

---

[1] Նույն այս կարծիքը հայտնել է նաև Մարկվարտը, տես Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, եջ 36։ Անհավանական է սակայն Մարկվարտի մյուս յենթադրությունը, վոր իբր թե նաև Թովմա Արծրունու մոտ հիշատակված Վասպուրականի գավառները (III, ԻԹ, եջ 251—252), վորոնք «մարդպետ»-ների «սեփական» կալվածներն եյին, համարվելու են արքունի տան յերկրներ. տես Die Genealogie der Bagratiden, Caucasica 1930. Fasc. 6, 2. Teil, եջ 35։

*նրանց վարած քաղաքականությունը նախարարությունների հանդեպ։ «Մարդպետ»-ներին, վոր գործում եյին նախարարությունների ու կաթողիկոսության հակառակ, Փավստոսն անվանում ե՝ «չարասիրտ, չարախորհուրդ, չարագործ»* (III, *ԺԸ, եջ 47) և կամ «այր չար և ժանտաբարոյիք անօրէն և անիրաւ»* (IV, *ԺԴ, եջ 116)։*

*Մեջ ենք բերում «մարդպետութեանն» վերաբերյալ աղբյուրների կարևորագույն վկայությունները․*

*1. Փաւստոս,* III, *ԺԷ, եջ 45՝*

*«Եւ տան զնա [զՇահակ] ի ձեռս իշխանին* մարդպետութեանն, *որում անուն իւր* Հայր *կոչէր»*.

*2. Նույնը,* IV, *Դ, եջ 72՝*

*«Զ*Հայր *մեծ իշխանն* մարդպետութեանն».

*3. Նույնը,* III, *ԺԸ, եջ 46—47՝*

*«Բայց քան զամենեսին աւելի այր մի անօրէն և այսամուտ, որ աւելի ընդ ազգս նախարարացն գրգռէր զԹագաւորն Տիրան։ Այս ինքն որ ունէր զպատիւն* մեծի մարդպետութեանն, *այր* ներքինի՝ *չարասիրտ չարախորհուրդ չարագործ, որում* Հայր *կոչէին։ Զբազումս ի նախարարացն ետ քսութեամբ առանց վնասու կոտորել, և խանգարեաց զմեծ տէրութիւն թագաւորութեանն»*.

*4. Նույնը,* V, *Գ, եջ 196՝*

*«Եւ փոխանակ ի նորա տեղի* հայրութեան մարդպետութեանն *[կացուցին] զԳղակ*[1] *ոմն անուն, որ յաւուրս Արշակայ թագաւորին կամ Տիրանայ հօր նորա զամու մինջ լեալ* նոյն գործ մարդպետութեանն».

*5. Նույնը,* V, *Է, եջ 210—211՝*

*«Իսկ Դրաստամատն ներքինին, որ յամս Տիրանայ թագաւորին Հայոց և Արշակայ որդւոյ նորա թագաւորին Հայոց լեալ էր իշխան տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին, և ամենայն բեր-*

---

[1] *Բնագրում «զԴրգղակ» փխ. «զԳղակ»։*

դացն արքունի՝ որ ի կողմանս յայնս. սոյնպէս և յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ, և բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն։ Եւ քանզի այս գործակալութիւն եւ մարդպետութիւն, որում Հայրն կոչէին, ներքինեաց գործ լեալ էր ի բնէ ժամանակաց ի թագաւորութեանն Արշակունոյ, և զայս Դրաստամատն ներքինի զիշխանն զԱնգեղ տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից ի ժամանակին՝ յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց»։

6. Նույնը, V, Զ, էջ 207՝

«Ապա Տէրէնդ զօրավարն զօրացն Յունաց և Մուշեղ զօրավար զօրացն Հայոց զԳդակ մարդպետ, որ անուանեալ կոչէր բուն գործոյն Հայր թագաւորին, թողին զնա սահմանապահ ի Գանձակ»։

7. Ագաթանգեղոս, ՃԺԲ, էջ 414՝

«Յայնժամ թագաւորն վաղվաղակի փութով և երկիւղիւ և մեծաւ խնդութեամբ հոգացեալ, գումարեաց զգլխաւորս նախարարացն և զկուսակալս աշխարհացն. առաջին՝ իշխանն Անգեղ տան, երկրորդ՝ իշխանն Աղձնեաց, որ է բդեաշխն մեծ, երրորդ՝ իշխանն մարդպետութեան իշխանութեանն..»։

8. Խորենացի, II, Է, էջ 112՝

«Նա և ներքինիս հրամայէ [Վաղարշակ] ի նոյն ազգէ լինել. և նահապետ նոցա զՀայր իշխան մասին յԱտրպատականէ մինչև ցԾուաշ և ցՆախճաւան, և նահապետութեան ազգին սա մեծարոյ։ Բայց թէ որպէս կամ ուր սորա իրք անցին անյիշատակելի, ես ոչ գիտեմ»։

9. Խորենացի, III, ԺԵ, էջ 274՝

«Տեսեալ զայս Տիրանայ և յոյժ զարհուրեալ՝ առաքէ զմարդպետն կոչեցեալ Հայր, և հանդերձ երդմամբ կոչէ առ ինքն զԶօրայ»։

Իբրև առանձին «գործակալութիւն» աղբյուրների մեջ հիշվում է նաև «մաղխազութիւն»-ը։ «Մաղխազ», ինչպես ցույց է տվել Ն. Ադոնցը, նշանակում է «տեր, իշխան,

*թագավոր» (= ասոր.* malxazu, *տե՛ս* Армения в эпоху Юстиниана, *էջ 400)։*

*Մատենագրական վկայություններից հայտնի չէ, որ «մաղխազ» տոհմային տիտղոսն էր Խորխոռունիների։ Պարզ է, ուրեմն, որ արքունի այս «գործակալություն»-ը հանձնված է եղել Խորխոռունիների նախարարական տոհմին և անվանվել է «մաղխազություն» ըստ նրանց տոհմային տիտղոսի՝ միանգամայն համապատասխան վերոհիշյալ «գործակալություն»-ներին, որոնց անունները ևս, ինչպես վերև տեսանք, ծագել էին «ասպետ» և «մարդպետ» տոհմական տիտղոսներից։*

*«Մաղխազութեան» պաշտոնը, ինչպես ենթադրում են, վերաբերվել է թագավորի անձի պաշտպանությանը։ «Մաղխազ»-ը որպես արքունի «գործակալ», Խորենացու վկայության համաձայն, թիկնապահների գլխավորն էր։ Նույն պաշտոնը Սասանյան Պարսկաստանում անվանվել է* puš-tîkpânsâlâr, *այսինքն՝ փուշտիպանների կամ թիկնապահների հրամանատար*[1]*։*

*«Մաղխազություն»-ը և «մաղխազ»-ները հնագույն աղբյուրների մեջ հիշվում են հետևյալ հատվածներում.*

*1. Խորենացի,* II, *Է, էջ 110՝*

*«Եւ թիկնապահս իւր, զինու հանդերձ, ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ, արս ընտիրս և քաջս, նիզակաւորս և սուսերաւորս. և զգլուխ նահապետութեան նոցա* զՄաղխազ *ոմն այր բարի և սրտեայ։ Բայց անուն ազգին զնախնականն պահէ».*

*2. Խորենացի,* III, *Թ, էջ 267՝*

*«Եւ փոխանակ Միհրանայ կարգէ [Խոսրով] զԳարջոյլ* Մաղխազ *նահապետ Խոռխոռունեաց ի վերայ զօրուն».*

*3. Ագաթանգեղոս, ԾԺԲ, էջ 414՝*

---

[1] *Տե՛ս* A. Christensen, L'empire des Sassanides, *էջ 93—94։*

«Հնգետասաներորդ՝ իշխանն Մաղխազութեան տանն».

4. Նոյնը, ՃԻՁ, էջ 460՝

«Առնոյր ընդ իւր [Տրդատ]... և զիշխանն Մաղխազութեան տանն».

5. Փաւստոս, III, ԺԲ, էջ 29՝

«Բայց գումարեաց ընդ նմա [Յուսիկան] Թագաւորն Տիրան զմեծամեծ նախարարսն ըստ սովորութեան օրինակին... և զՄանասպ զԽորխոռունեաց զիշխանն Մաղխազութեան տանն».

6. Նոյնը, V, ԼԸ, էջ 252՝

«Ապա յետ այսորիկ առաքեցին Զարմանդուխտ տիկինն Հայոց և սպարապետն Մանուէլ զԳարջոյլ Մաղխազ, և ընդ նմա զբազումս ի նախարարացն Հայոց».
Տես նաև Փաւստոս, IV, ԺԱ, էջ 106, V, ԽԳ, էջ 263։

Մեծ «գործակալութիւն» էր նաև «հազարապետութիւն»-ը, որին հանձնարարված է չեղել, հավանորեն, արքունի երկրի տնտեսական բարեկարգման և գյուղացիական ու չելեմտական գործերի վարչությունը։

«Հազարապետ»-ի պարտականությունն էր, ըստ երևույթին, աջակցել երկրի շինարարական աշխատանքներին և շինական տնտեսության զարգացմանը։ «Հազարապետութեան» այս պարտականությունները կապված էյին հարկահանության գործի հետ։ Հողի մշակությունը, ոռոգման գործը և, ընդհանրապես, երկրի շեն վիճակը նշանակություն ունեյին՝ իբրև հիմք և աղբյուր պետական բարեկեցության և պետական եկամուտների։

«Հազարապետ»-ի աշխարհախնամ գործունեության կարևոր այս կողմը շեշտված է, հատկապես, Փավստոսի պատմության հետևյալ հատվածում՝

«Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն աշխարհատես խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց՝ հազարապետն ամենայն երկրին» (IV, Բ, էջ 67)։

Իսկ նույն պաշտոնի ֆինանսական բնույթը կարելի է ենթադրել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ «հազարապետ» բառը համապատասխանում է հաճախ հունարեն oikonomos («տնօրեն, տնտես») բառին (տես Ա. Պետ. Դ, 10, Ա. Կորնթ. Դ, 1 և 2)։

Ուշագրավ է նաև, որ Բագրատունյաց թագավորության ժամանակ ևս, օրինակ, Թովմա Արծրունու պատմության մեջ «հազարապետ» բառը գործ է ածվել՝ իբրև տեսուչ ու վերակացու արքունի հարկերի։

> «Ի դառնալն Ապուսէթի յԱսորիս — ասում է Թովման — և Մուսէի հաւատալ զվերակացութիւն հարկաց արքունի, և ընդդէմ եկեալ յարքունուստ հազարապետ ումն հարկաց Ծովափի կոչեցեալ ամիրայ Ալայ անուն» (տես «Պատմութիւն տանն Արծրունեաց», Պետերբուրգ 1887, II, Ջ, եջ 111)։

«Հազարապետութեան» արքունի պաշտոնը գոյություն է ունեցել ոչ միայն Արշակունյաց թագավորության, այլ և մարզպանության ժամանակ։ Իբրև Պարսկական Հայաստանի «հազարապետ»-ներ Կորյունի և Ղազար Փարպեցու մոտ հիշված են Վահան Ամատունին Վարդանանց ապստամբությունից առաջ և պարսիկ Վեհվեհնամը Ատրվշնասպի մարզպանության ժամանակ (տես «Պատմութիւն վարուց և մահուան Մեսրոպայ վարդապետի», Վենետիկ 1894. եջ 44 և Ղազար Փարպեցի, «Պատմութիւն Հայոց», Տփխիս 1904, III, ԿՋ, եջ 118)։

Ուշադրության արժանի է սակայն, որ Սասանյան Պարսկաստանում «հազարապետ»-ը կամ ավելի ճիշտ՝ «մեծ հազարապետն» ունեցել է անհամեմատ ավելի բարձր դիրք և ավելի ընդարձակ իշխանություն։ Հայկական աղբյուրներում կան, օրինակ, կարևոր տեղեկություններ Միհրներսեհի մասին, որը «հազարապետ» եր Հազկերտ Բ-ի ժամանակ։ Յեղիշեն նրան անվանում է «մեծ հազարապետ Արեաց և Անարեաց» և «վզրուկ հրամատար Երան և Աներան»։ «Հա-

զարապետութեան» նրա պաշտոնը Յեղիշեն բնորոշում ե հետևյալ իր վկայության մեջ՝

> «Սա էր իշխան և հրամանատար ամենայն տէրութեանն Պարսից, որում անունն էր Միհրներսեհ. և չէր ոք ամենևին, որ իշխէր ըստ ձեռն նորա ելանել. եւ ոչ միայն մեծամեծք և փոքունք, այլ և ինքն թագաւորն հրամանի նորա անսայր» (Վենետիկ 1864, III, եջ 153)։

Յեվ իրավի՝ «մեծ հազարապետ»-ը Սասանյան Պարսկաստանի մեծ վեզիրն եր և ամենաբարձր պաշտոնյան։ Նա վարում եր պետական բոլոր գործերը թե ներքին և թե արտաքին։ Հայ պատմիչները, ըստ յերևույթին, գիտակցել են, վոր «հազարապետ»-ի վերոհիշյալ պաշտոնը Հայաստանում տարբեր ե «հազարապետ»-ի կամ «վզրուկ հրամատար»-ի պաշտոնից Պարսկաստանում։ Գուցե դրանով հենց բացատրվում ե, վոր Յեղիշեն Միհրներսեհին անվանում ե սովորաբար վո՛չ թե «հազարապետ», այլ «մեծ հազարապետ» (II, 47, VII, 230, VIII, 251 և 345)։

Ինձ թվում ե, կարելի յե վերապահությամբ նույն իսկ յենթադրել, վոր Փավստոսի հիշած «Անձատայ իշխան» Վաղարշը յեղել ե Տիրանի ժամանակ «մեծ հազարապետ... ամենայն Հայոց Մեծաց» այդ պաշտոնի հենց վերև մատնանշված իմաստով։

«Հազարապետութեան» և «մեծ հազարապետութեան» վերոհիշյալ տարբերությունն արժանի յե առանձին ուշադրության և կարոտ ե հատուկ քննության հետագա ուսումնասիրություններում։

Մեջ ենք բերում կարևոր այդ «գործակալութեան» վերաբերյալ մատենագրական վկայությունները.

1. Փաւստոս, III, ժԲ, եջ 29՝

> «Բայց գումարեաց ընդ նմա թագաւորն Տիրան զմեծամեծ նախարարսն ըստ սովորութեան օրինակին,

զմեծ հազարապետն *ի հազարապետութեանն* [:][1] *իսկ ի տոհմէ ամենայն Հայոց Մեծաց, զՎազարշ, որ էր իշխան Անձտայ. և ընդ նմա Զարեհ իշխան, նահապետ մեծի Ծոփաց».*

*2. Կորիւն, Վենետիկ 1894, էջ 14՝*

*«Ի մանկութեան տիսն վարժեալ [Մաշթոց] հելլենական դպրութեամբն, եկեալ հասեալ ի դուռն Արշակունեաց թագաւորաց Հայոց Մեծաց. կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին* առ հազարապետութեամբն *աշխարհիս Հայոց Առաւանայ ուրումն».*

*3. Նոյնը, էջ 44՝*

*«Ի զինուորական կողմանն, առաջնումն Վահան անուն յազգէն Ամատունեաց, որ էր* հազարապետ *Հայոց Մեծաց».*

*4. Եղիշէ,* II, *էջ 39՝*

*«Եւ եւս չարագոյն հինգերորդն. քանզի որ* հազարապետ *աշխարհին էր՝ իբրև զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից. գրգռեաց յարոյց զամբաստանութիւն ի վերայ նորա, և հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն. և միւս ես մոգպետ դատաւոր աշխարհին».*

*5. Փարպեցի,* III, *ԿԶ, էջ 118՝*

*«Եւ եկեալք ի գաւառն Շիրակայ, ի դաշտն, ուր բանակէր մարզպանն Հայոց Ատրվշնասպ Յոզմանդեան, և առ նմին* հազարապետն Հայոց *Վեհվեհնամ».*

*6. Խորենացի,* II, *ԾԳ, էջ 183՝*

*«Վասն որոյ կարգէ Արտաշէս զՎրոյր՝* հազարապետ, *զայր իմաստուն և բանաստեղծ, և հաւատայ ի նա զամենայն գործս տանն արքունի».*

*7. Խորենացի,* II, *ՁԲ, էջ 224՝*

---

[1] *Կետադրութիւնն ուղղել ենք համաձայն Ադոնցի ցուցման, տես* Армения в эпоху Юстиниана, *էջ 446։*

«Իսկ Տրդատ ի հազարապետութիւն Հայոց զՕտայն կացուցանէ».

8. Խորենացի, III, Կէ, էջ 357՝

«Բայց յաղթեաց քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութեամբ մարմնաւորաւ. վասն զի ի ժամանակին յայնմիկ ի նմա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն աշխարհիս Հայոց».

9. «Կանոնք Շահապիվանի ժողովոյն», հրատ. Ղլտճյանի, էջ 59՝

«Եւ լինէր այս ի ԺԶ ամի թագաւորութեանն Յազկերտի Պարսից արքայի և Վասակայ Սիւնւոյ մարզպանութիւն Հայոց, Վահանայ Ամատունւոյ հազարապետութիւն և Վրվայ Խորխոռունւոյ Մաղխազութիւն»։

Իբրև մեծ «գործակալություն» աղբյուրների մեջ հիշատակվում է հաճախ «սպարապետություն»-ը, որը կոչվում է նաև «զորավարություն» և «ստրատելատություն»։

Չորրորդ ու հինգերորդ դարերում «սպարապետութեան» պաշտոնը, ինչպես հայտնի չէ, վարել են ժառանգաբար Մամիկոնյանները։ Փավստոսի վկայությամբ, նրանք ընդհանուր հրամանատարներ էին «ի վերայ իշխանութեանն բովանդակ՝ ի վերայ ամենայն զօրաց զօրավարութեանն բազմութեանն Հայոց Մեծաց» (IV, Բ, էջ 68)։ Ալիշանի կարծիքը, որ «սպարապետ»-ը գերագույն առաջնորդն էր հետևակ զորքի, իսկ «ասպետ»-ը հեծելազորքի («Այրարատ», էջ 423), միանգամայն սխալ է և անընդունելի։ Աղբյուրների վկայություններից պարզ է, որ պատերազմի ժամանակ Հայաստանի ամբողջ զորքը՝ թե արքունի տան և թե նախարարական իշխանությունների՝ կռվել է «սպարապետ»-ի ընդհանուր հրամանատարության տակ։

«Սպարապետ»-ները, լինելով վերին հրամանատարներ «ի վերայ իշխանութեանն բովանդակ»՝ ունեյին, բնականաբար, մեծ կշիռ և բարձր հեղինակություն։ Իրանց այդ դիրքը և մեծ ուժը Մամիկոնյանները, ինչպես վերև ասացինք, աշ-

*խատել են հաճախ ոգտագործել վոչ թե ի շահ թագավորա-կան իշխանության զորեղացման և յերկրի կենտրոնացման, այլ ավելի ի նպաստ նախարարական իշխանությունների ու նրանց իրավունքների անձեռնմխելիության*[1]*։ Այդ տեսա-կետից, Մամիկոնյանների քաղաքական դերն Արշակունյաց թագավորության ժամանակ, ինչպես շատ ուղիղ դիտել ե պրոֆ. Մարկվարտը, կարոտ ե վերաքննության և նոր ու ավելի անաչառ գնահատման։*

*Մամիկոնյանների իբրև «սպարապետ»-ների մասին ման-րամասն տեղեկություններ են հաղորդում Փավստոսը, Փար-պեցին և Յեղիշեն, վորոնք Մամիկոնյանների տոհմային պատմիչներն են և, այլայլելով հաճախ պատմական իրողու-թյունը, փառաբանել են նրանց քաջագործությունները և առաքինությունները։*

*Այդ վկայություններից մենք մեջ ենք բերում միայն մի քանիսը.*

1. *Փաւստոս,* III, *ԺԱ, եջ 28՝*

*«Սակայն զՎաչէի զօրավարի փոքրիկ մանգիկ մի զնորուն զորդի ի հայրենի բարձ գահուն մատուցանէին, որում անուն էր յանուն հօր իւրոյ Արտաւազդ։ Առաջի թագաւորին զհօրն պատիւն ի գլուխն դնէին, և* զսպա-րապետութեանն *նորուն տեղի.... Եւ հրաման ետուն մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս հանդերձ թագաւորաւն՝ Արշաւրայ և Անդովկայ սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ, զի կացցէ ի տեղի նախնեացն իւրոց և հօր իւրոյ,..... և զնորուն գործ քաջութեան* սպարա-պետութեան անուանն զօրավարութեանն *յաջորդեսցէն զամենայն աւուրս կենաց իւրոց».*

2. *Փաւստոս,* III, *Դ, եջ 9՝*

*«Ապա մեծ ցասմամբք և բազում սրտմտութեամբ արձակեաց թագաւորն [Խոսրով] ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետ Մամիկոնեան տոհմին՝*

---

[1] *Տես* Markwart, Südarmenien und die Tigrisquellen, *եջ 67 և 156։*

յազգէ սպարապետութեանն Հայոց, զմեծ զօրավար զօրաց-
իւրոց, սատակել կորուսանել զազգն երկոսեան»․
3․ Նոյնը, III, Ը, 20՝
«Բայց վստահ լինէր [Խոսրով] ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց Մեծաց, և ի քաջ Վահան յԱմատունի։ Գումարէր զօրսն ամենայն տանցն ուռագանւոյն ընդ զօրսն արքունի, և տայր զգումարտակն ամենայն ի ձեռս նոցա»․
4․ Նոյնը, IV, Բ, եջ 68՝
«Նոյնպէս ստրատելատութեանն սպարապետութեանն զօրավարութեանն մարտի կռուելոյ,… ի բուն ի նախնեացն կարգաց ի Մամիկոնեան ազգին, ի վերայ իշխանութեանն բովանդակ, ի վերայ ամենայն զօրաց զօրավարութեանն բազմութեանն Հայոց Մեծաց»․
5․ Նոյնը, V, Լէ, եջ 247՝
«Իսկ յորժամ հաս եկաց Մանուէլն ի փառս տէրութեան իւրոյ, նախ առանց հրամանի թագաւորին Վարազդատայ յինքն յափշտակեաց զզօրավարութեանն զսպարապետութիւնն. զի այն ինչ որ իւրոց նախնեացն ի բնէն կալեալ էր ի սկզբանէ, զոր արքայն Վարազդատ շնորհ առնէր իւրում դայեկին Բատայ՝ զայն Մանուէլ յինքն հանեալ ունէր զիշխանութիւնն»․
6․ Ագաթանգեղոս, ՃԻԳ, եջ 451՝
«Եւ որք առաքեցանն յարքայէ ղնոյանէն, զի ածցեն զնոսա՝ այսոքիկ են. առաջնոյն անուն Արտաւազդ, որ սպարապետն էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց»․
7․ Խորենացի, III, ԾԱ, եջ 323՝
«Արդ՝ Արտաշիր ոչ ժամանեալ ի կարճութենէ աւուրցն այլ առնել աշխարհագիր՝ յայնմ որ յառաջնոցն փոխեաց, իբր անուամբն հրամայեաց գրել զայն ամենայն, և տալ գահու և պատուոյ, հանդերձ իշխանութեամբ գիւղից և դաստակերտաց Համազասպայ, և որում ցանկայրն՝ զսպարապետութիւնն Հայոց»:

Փավստոսի պատմության մեջ մի անգամ միայն հիշվում է նաև «գործակալութիւն մեծի դատաւորութեանն» հետևյալ հատվածում՝

> «Բայց յայնժամ դեռ ևս կենդանի էր ծերունի սուրբն մեծն քորեպիսկոպոսն Դանիէլ, այր սքանչելի։ Աշակերտ եղեալ էր սա մեծին Գրիգորի, վերակացու և գլխաւոր եկեղեցեաց[1] նահանգին Տարօնոյ, Գրիգորի ձեռական իշխանութեանն՝ կողման մասին գործակալութեանն մեծի դատաւորութեանն՝ ունէր զիշխանութիւնն զայն առանձինն. այլ վերակացու և հրամատար տեսուչ և հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց Մեծաց ընդ ամենայն տեղիս» (III, ԺԴ, էջ 36)։

Այս հատվածից երևում է, որ «մեծի դատաւորութեանն» «գործակալութիւն»-ը հանձնված է եղել հոգևորական բարձր իշխանութեան։ Ադոնցի կարծիքով, նախաքրիստոնեական Հայաստանում դատական իշխանությունը գտնվել է հեթանոս հոգևորականության՝ քուրմերի ձեռին, իսկ քրիստոնեությունն ընդունելուց հետո այդ իշխանությունն անցել է յեկեղեցուն և հանձնվել է ամեն մի շրջանում համապատասխան յեպիսկոպոսին (Армения в эпоху Юстиниана, էջ 447)։

Պետք է սակայն ի նկատի ունենալ, որ դատական մի շարք հատուկ գործեր, ինչպես դժվար չէ կռահել աղբյուրների վկայություններից, վերաբերվել են, հավանորեն, թագավորի, իշխանների և նրանց ներկայացուցիչների անմիջական իրավասության։

Փավստոսի վերոհիշյալ վկայության մեջ առանձնապես ուշագրավ է այն, որ «մեծի դատաւորութեան» «գործակալութիւնն» անվանված է նաև «Գրիգորի ձեռական իշխանութիւն»։ Արդ՝ չեթե «ձեռական» իշխանությունը հոմանիշ է «գործակալական» իշխանության, ինձ թվում է, կարող ենք հաստատապես պնդել, որ «ձեռական իշխանութեան»

---

[1] «Եկեղեցեաց» փխ. «Եկեղեաց», տես «Կորիւն եւ նորին թարգմանութիւնք», էջ 247։

վերաբերյալ Փավստոսի մի ուրիշ վկայություն սխալ է մեկնվել և հիմք է ծառայել շփոթ և անընդունելի ենթադրությունների պատմական և հայագիտական թե հին և թե նոր աշխատություններում։

Կարևոր այդ մյուս վկայությունը գտնվում է Փավստոսի պատմության հետևյալ հատվածում (IV, ԺԴ, էջ 117)՝

> «Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն. զի հնգետասան գաւառ ղայն ձեռական իշխանութեան ունէին իբրև սեպհական ի բնմէ, առանձին առոշոգի նոցա էր կարգեալ։ Եւ յայն գաւառ գլխաւոր գաւառք այս էին, Այրարատ, Դարանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք»։

Հիմնվելով Փավստոսի այս վկայության վրա՝ ենթադրել են, որ վերոհիշյալ 15 գավառները պատկանել են կաթողիկոսներին իբրև տոհմային սեփականություն (համմտե Ինճիճյան, Հնախօս. Գ, էջ 275—276, Գարագաշյան, Քննական պատմութ., Բ, էջ 7, Մարկվարտ, Südarmenien, էջ 63* են, են.)։ Միանգամայն անժխտելի է, իհարկե, որ Գրիգոր Լուսավորչի տոհմը ունեցել է գյուղեր և կալվածներ Հայաստանի զանազան մասերում, սակայն ենթադրել, որ հիշյալ 15 գավառները, այսինքն՝ Արշակունիների գրեթե ամբողջ «ոստան»-ը, կաթողիկոսական տան կալվածներ էին՝ այդ, անշուշտ, չափազանցություն է և ակներև խեղաթյուրում Փավստոսի վկայության։ Խնդիրը շատ պարզ է։ Փավստոսի թե առաջին և թե այս երկրորդ վկայության մեջ «ձեռական իշխանութիւն» է անվանված «մեծի դատաւորութեան» «գործակալութիւն»-ը, որը «սեպհական» էր, այսինքն՝ ժառանգական և տոհմային, իբրև կաթողիկոսական տան հանձնված առանձին կամ «առոշոգի» իշխանությունը։

«Հնգետասան» գավառները, ուրեմն, արքունի երկրի կամ «ոստան»-ի այն շրջաններն էին, որ տրված էին կաթողիկոսներին իբրև «մեծի դատաւորութեան» «գործակալական» իշխանության շրջաններ։

*Կաթողիկոսների դատական իշխանությունը հիշվում է նաև Խորենացու պատմության հետևյալ հատվածում՝*

> *«Վասն որոյ հաւանեալ Վռամայ՝ զերկաքանչիւրոցն կատարեաց զխնդիրս. տուեալ յաթոռ եպիսկոպոսապետութեանն զայլ ոմն ասորի, Շամուէլ անուն, զի լիցի ընդդիմափառ մեծին Սահակայ և հակառակաթոռ. և գործ նմա զատուցանէ զընկերել մարզպանին, կալ ի վերայ բաշխից հարկաց խնդրեցելոց և* դատաստանաց *և այլ աշխարհական կարգաց»* (III, ԿԵ, էջ 350)։

*Դատավարության հանձնումը Շամուել կաթողիկոսին կարևոր մի ցուցումն է արքունի «գործակալութիւնների» պահպանման Պարսկական Հայաստանում Արշակունյաց թագավորության անկումից հետո։*

*«Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում» մեր նախորդ աշխատության մեջ (Յերևան 1926, էջ 4) մենք արդեն մատնացույց էինք արել, որ 429 թվից հետո մինչև Հազկերտ Բ-ի նոր քաղաքականությունը Պարսկական Հայաստանի ներքին վիճակը և նախարարական հին կարգերը մնացել էին գրեթե անփոփոխ։ Արշակունյաց թագավորության անկումից հետո, ինչպես վկայում է Յեղիշեն՝ «Ի Նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն» (Վենետիկ 1852, I, էջ 11)։ Յեվ իրոք, հայտնի յե արդեն, որ հայկական նախարարությունները, ինչպես և հոգևորականությունը, Արշակունյաց վերջին թագավորի գահընկեցությունից հետո պահպանել էին անաղարտ ու անփոփոխ իրանց իշխանական գրեթե բոլոր իրավունքները։ Մամիկոնյանները մնում էին դարձյալ, իբրև Պարսկական Հայաստանի սպարապետներ, Վահան Ամատունուն հանձնված է յեղել հազարապետության գործակալությունը, իսկ դատավարության իշխանությունը մնացել էր, ինչպես տեսնում ենք, բարձր հոգևորականության ձեռին։*

*Առաջին անգամ Պարսկական Հայաստանի ինքնավար ներքին կազմակերպության մեջ խոշոր փոփոխություններ*

մացրեց Հազկերտ Բ-ը։ Սրա քաղաքականությունը, ինչպես այդ պարզ յերևում է փաստական մի շարք տվյալներից, ուղղված է յեղել վոչ միայն քրիստոնեական յեկեղեցու, այլ և նախարարություններին և, ընդհանրապես, ինքնավար հին կարգերի և արտակարգ արտոնությունների դեմ։ Յեղիշեյի վկայությամբ, հենց այս Հազկերտ Բ-ի ժամանակ «հազարապետութիւն»-ը հանձնվել է պարսիկ պաշտոնյայի, իսկ դատական իշխանությունը՝ մոգպետի։

> «Քանզի որ հազարապետ աշխարհին էր — ասում է Յեղիշեն — իբրև զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից. զրգռեաց յարոյց [Դենշապուհ] զամբաստանութիւն ի վերայ նորա, և հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն, և միւս եւս մոգպետ դատաւոր աշխարհին, զի զեկեղեցւոյն փառսն աղաւաղեսցեն» (II, եջ 39—40)։

Կաթողիկոսների դատական նախկին իշխանության վերահաստատումը կարելի յե, հավանորեն, յենթադրել Հազկերտ Բ-ի հալածանքներից հետո։

Բացի վերոհիշյալ մեծ «գործակալութիւն»-ներից Արշակունյաց Հայաստանում գոյություն են ունեցել, նման միջնադարյան Յեվրոպայի, պալատական զանազան պաշտոններ, վոր հանձնված են յեղել «սեպուհ»-ներին, «կրտսեր նախարարութիւն»-ներին և կամ մանր ազնվականության։

Աղբյուրների միջ այդ պաշտոններից հիշվում են, որինակ, «սենեկապետ արքային», «շահխռապետ», «որսապետ», «տակառապետ», «զինակիր», «կարապետ արքայի» ևն.։

Նախարարական Հայաստանին վերաբերյալ կարևորագույն ընդհանուր խնդիրները քննվում եյին, ինչպես վերև ասվեց, «աշխարհաժողով»-ներում, վորոնց սկզբնական ծագումը հավանական է յենթադրել նախկին տոհմային կյանքի հնագույն շրջանում։ Այս ժողովների մասին առանձնապես ուշագրավ են Ագաթանգեղոսի և Փավստոսի հետևյալ վկայությունները.

1. Ագաթանգեղոս, ԾԸ, էջ 403՝

«Առնոյր այնուհետև խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին և ընդ իշխանսն, նախարարօքն և զօրօքն հանդերձ՝ վասն խաղաղութեան հասարակաց, քակել, կործանել, բառնալ զգայթակղութիւնսն ի միջոյ, ի բաց կորուսանել».

2. Նույնը, ԾԸ, էջ 404՝

«Իսկ անդէն վաղվաղակի թագաւորն ինքնիշխան հրամանաւ, և ամենեցուն հաւանութեամբ, գործ ի ձեռն տայր երանելւոյն Գրիգորի, զի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն և զիւր կարծեալ աստուածսն չաստուածս անուանեալ՝ անյիշատակ առնել, ջնջել ի միջոյ».

3. Նույնը, ԾԺԱ, էջ 412՝

«Իսկ թագաւորն Տրդատիոս հանդերձ միաբանութեամբ կնաւ իւրով Աշխէն տիկնաւ, և քերբ իւրով Խոսրովիդխտով, հրաման ետ ի ժողով կոչել միաբանութեամբ ամենայն զօրաց իւրոց։ Եւ վաղվաղակի հասանէին ի ժամադիրն յամենայն կողմանց ըստ հրամանին՝ յԱյրարատ գաւառն ի Վաղարշապատ քաղաք։ Յանդի և թագաւորն չու արարեալ անդ հասանէր։ Եւ կուտեցան առ հասարակ զօրքն ամենայն, և մեծամեծք և կուսակալք, գաւառակալք, պատուաւորք, պատուականք, զօրավարք, պետք և իշխանք, նախարարք և ազատք, դատաւորք և զօրագլուխք, և հասեալ կային առաջի թագաւորին».

4. Փաւստոս, III, ԺԷ, էջ 45՝

«Ապա յայնմ ժամանակի միաբան խորհեցան աշխարհօրէն խորհուրդ, եթէ ում պարտ իցէ զհայրապետութեանն զկաթողիկոսութիւն ունել».

5. Նույնը, III, ԻԱ, էջ 54՝

«Ապա առաւել ժողովեցան ի մի ժողով միաբանութեամբ մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. Նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհա-

կալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք, բայց ի զօրավարացն, այլ և ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն».

6. Նույնը, IV, Գ, եջ 68՝

«Ապա ի մի ժողով կուտեցան առ արքայն Արշակ մեծամեծք նահապետք ազգաց, տոհմաց տոհմաց, գնդից և դրօշուց տեարք. ամենայն սատրապք նախարարք և ազատք, պետք և իշխանք, զօրավարք և սահմանապահք, ի մի հաւանութիւն միաբանական խորհուրդ, զի եկեսցեն տեսցեն և խորհեսցին վասն իւրեանց առաջնորդի, թէ ում արժան իցէ նստել յաթոռ հայրապետութեանն և հովուել բանաւոր խաշանց Քրիստոսի».

7. Նույնը, IV, ԾԱ, 165՝

«Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեանն Թագաւորութեանն Հայոց. և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծամեծք նախարարք կուսակալք կողմակալք գաւառատեարք գործակալք և դասապետք շինականաց».

8. Նույնը, V, ԼԳ, եջ 240՝

«Եւ ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք ի մի վայր ի միասին, և Մուշեղ սպարապետն, և Հայր Մարդպետ, և ամենայն իշխանքն ասէին. զի՞նչ արասցուք կամ զի՞նչ գործեսցուք, խնդրեսցուք զվրէժ Թագաւորին մերո, թէ ոչ»։

Տես նաև Փաւստոս, III, ԺԳ, եջ 35, ԺԴ, եջ 38, ԺԵ, եջ 43։

Վերոհիշյալ ժողովների մեծագույն մասը գումարված է յեղել կաթողիկոսի ընտրության համար։ Կաթողիկոսական իշխանությանը յենթակա եյին, ինչպես հայտնի յե, թե արքունի «ոստանի» և թե նախարարական շրջանների յեպիսկոպոսները։ Հասկանալի յե, ուրեմն, վոր կաթողիկոսական ընտրությունն ընդհանուր մի խնդիր եր, վոր վերաբերվում եր վոչ միայն արքունի յերկրին, այլ և նախարարական ամբողջ Հայաստանին։

Ավելի քան հավանական ե յենթադրել, որ նման ընդհանուր ժողովները, որոնց մասնակցում եյին «նախարար»-ները, «ազատ»-ները և «գործակալ»-ները, հատկանշային եյին և սովորական նախարարական Հայաստանում և, հավանորեն, այդ ժողովներում քննվում եյին Հայաստանի նաև ներքին և արտաքին կյանքի կարևորագույն հարցերը։

Ագաթանգեղոսի վկայությունների մեջ (1 և 2) մատնանշված ե, որինակ, որ հեթանոսության վերացումը Հայաստանում վորոշված ե յեղել «ամենեցուն հաւանութեամբ»։ Վերև առաջ բերված հինգերորդ վկայության մեջ ժողովի հավաքման նպատակն եր՝ խնդրել օգնություն Բյուզանդիայից ընդդեմ Սասանյան Պարսկաստանի։ Համաձայն վերոհիշյալ յոթերորդ վկայության՝ նախարարները վորոշում են «միաբան համօրէն աշխարհօրէն» դադարեցնել կռիվը Պարսկաստանի դեմ[1]։

Ըստ յերևույթին, հենց նույն «աշխարհաժողով»-ներում մշակվել և ընդունվել են պարտադիր ընդհանուր կանոններ նախարարական ամբողջ Հայաստանի համար։ Սրա ապացույց կարող ե ծառայել Շահապիվանի 443 թվի[2] ժողովը։ Այս ժողովի մասին ուշագրավ ե Շահապիվանի կանոնադրության նախաբանի հետևյալ հատվածը՝

> «Գային ժողովէին ի հրամանէ միաբանութեան աւագաց եղեալ կէտն ի Շահապիվան, ի բանակետղ թագաւորացն Հայոց ի ժամանակ նորաբեր տօնին։ Եւ լինէր այս ի Զ ամի[3] թագաւորութեանն Յազկերտի Պարսից արքայի և Վասակայ Սիւնւոյ մարզպանու-

---

[1] Ուշագրավ ե առանձնապես, որ թե այս և թե հինգերորդ վկայության մեջ մատնանշված են բացի բարձր և ստորին ազնվականությունից նաև «ռամիկ շինական»-ները և «դաստակերտ շինականաց», որոնք ներկա են յեղել այս աշխարհաժողովներում։

[2] Տես Թ. Ավդալբեգյան, Հայ շինականի և գեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում, Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 3, եջ 57—60։

[3] Ուղղել ենք՝ Զ փխ. ԺԶ, հմմտ. Թ. Ավդալբեգյան, նույնը, եջ 58։

թիւն Հայոց, Վահանայ Ամատունւոյ հազարապետու-
թիւն և Վրվայ Խոռխոռունւոյ մաղխազութիւն։ Եւ ժո-
ղովէին եպիսկոպոսք, երիցունք և սարկաւագունք
բազումք և նախանձաւոր պաշտօնեայք և համօրէն ուխտ
սրբոյ եկեղեցւոյ, իշխանք և ամենայն գաւառապետք,
գաւառակալք, պետք և բռնաւորք, զօրագլուխք, հա-
զարաւորք, կուսակալք ազատօք՝ կողմանց կողմանց,
աւագ նախարարք աշխարհին Հայոց, որք էին նա-
խանձախնդիր օրինաց ևն» (տե՛ս «Կանոնագիրք Հա-
յոց», հրատար. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս 1914, էջ 59)։

Յեթե ի նկատի առնվի, վոր Շահապիվանի այս ժողովը տեղի յեր ունեցել Արշակունյաց թագավորության անկումից 14 տարի հետո, կարելի յե ըստ իս վստահորեն յենթադրել, վոր կանոնագիր այս «աշխարհաժողով»-ը չեր կարող լինել մի նորմուծություն. Նման ժողովներ սովորական են յեղել, հավանորեն, նաև Արշակունյաց ժամանակ։

Նախարարների «գործակալական» պաշտոնների մասին արքունիքում, նրանց մասնակցության մասին «աշխարհա-ժողով»-ներում՝ աղբյուրների հաղորդած տեղեկությունները, ինչպես տեսնում ենք, շատ չեն և իրանց բովանդակությամբ յել հաճախ անորոշ են։

Ավելի մանրամասն ու ընդարձակ են աղբյուրների վկայությունները հատուկ պարգևների և արտաքին զարդարանքների մասին, վոր նախարարները և «գործակալ»-ները ստացել եյին թագավորներից։ Այդ պարգևները և զարդարանքները, վոր հիշատակված են Ինճիճյանի Հնախոսության մեջ (Բ, եջ 284—287), անվանվում եյին «պատիւ» (= honor)։ Բացի այդ՝ ամեն մի պաշտոն ևս կոչվում եր «գործ», «գործակալութիւն» և կամ «պատիւ»։ «Պատիւ» են անվանվել նմանապես թագավորական և նահապետական բարձրագույն իշխանությունները։

«Պատիւ» բառի այդ տարբեր նշանակությունները պարզ յերևում են հետևյալ վկայություններից.

1. *Եղիշէ, Վենետիկ 1864,* VII, *էջ 240—241՝*

*«Կոչեցին և զուրացեալն. և նա ըստ առաջի կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն, զոր ունէր ի թագաւորէն, կապէր և զպատուաւորսն, և զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ, և զկոանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով և ակամբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր, և զգինդսն յականջսն, և զգումարտակն ի պարանոցին, զսամոյրսն զթիկամբքն և* զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ՝ *երթայր յարքունիս».*

2. *Փաւստոս,* III, *ԺԸ, էջ 47՝*

*«Այս ինքն որ ունէր* զպատիւն մեծի մարդպետութեանն».

3. *Փարպեցի,* II, *ԽԲ, էջ 76՝*

*«Կարծեցեալ առնել մեծապէս սպաս թագաւորին Յազկերտի և ամենայն աշխարհին Արեաց, ե առնուլ* զպատիւ թագաւորութեան *և զպարգևս».*

4. *Փաւստոս,* V, *ԼԷ, էջ 246՝*

*«Քանզի նա էր երէց յազգին, և Մանուէլն ունէր զնահապետութեան ազգին* տանուտէրութեան պատուին».

5. *Փարպեցի,* II, *ԽԲ, էջ 77՝*

*«Եւ յառաջեալ սակաւ մի Նենգաւորին Վասակայ ի նոցանէ՝ ձայն զկնի եդեալ սրբոյն Ղևոնդի՝ կոչէր զնա պատուոյն անուամբ մեծաձայն. «Սիւնեաց տէր, Սիւնեաց տէր»։*

*Խոսելով բդեշխութիւն»-ների և «նախարարութիւն»-ների պարտականությունների մասին արքունիքի հանդեպ, վերև մենք քննության չեյինք առել կարևոր մի խնդիր՝ թե արդյոք նրանք հարկ տալիս եյին Արշակունիներին թե վոչ։*

*Գիտական մի շարք աշխատություններում յենթադրվել ե, վոր նախարարությունները պարտավոր եյին վճարել վո-*

րոշ տուրքեր Արշակունի թագավորներին[1]։ Մեծ մասամբ, այդ յենթադրությունն արվում է առանց փաստական վորևե հիմնավորման։ Ինճիճյանը միայն իբրև ապացույց այդ յեզրակացության մատնանիշ է անում, վոր ըստ Թովմա Արծրունու վկայության Հայաստանի բոլոր շրջանները, անգամ Աղվանքը և Վրաստանը, հարկ եյին վճարում Սմբատ Ա. Բագրատունուն։ Պարզ է, վոր այս վկայությամբ չի կարելի հիմնավորել և հաստատել նախարարությունների հարկատվության հարցն Արշակունյաց ժամանակ։

Կարևոր այդ խնդրի մասին, վորքան ինձ հայտնի յե, հնագույն հայ պատմիչների մոտ չկան պարզ ու բացահայտ տեղեկություններ։ Փավստոսի պատմության մեջ կան սակայն անուղղակի ակնարկներ, վորոնք կարող են կռվան լինել յենթադրական կռահումների։ Փավստոսի այդ ակնարկները գտնվում են նրա պատմության հետևյալ հատվածներում.

1. Փաւստոս, V, Ը, 213՝

«Նախ հարկանէր [Մուշեղ] զտուն Թագաւորին Հայոց, որ յԱտրպայականին էր. զամենայն երկիրն գաւառացն Ատրպատճացն աւերէր, և առնոյր գերէր բազում գերութիւն ի նոցանէ. և զՄացորդսն նուաճէր և ի հարկի կացուցանէր, և տանոյր զբազումս պանդանդս ի նոցանէ».

2. Նոյնը, V, Թ, եջ 214՝

«Հարկանէր Մուշեղ զապստամբս Նոշիրական աշխարհին, որ ապստամբեցին յարքայէն Հայոց. առնոյր աւերէր գերէր, և ի Մացորդացն առնոյր պանդանդս, և զընակիչս երկրին ի հարկի ծառայութեան կացուցանէր».

3, Նոյնը, V, Ժ, եջ 214՝

«Հարկանէր Մուշեղ սպարապետն և զայս գաւառս

[1] Տես Ինճիճյան, Հնախոս. Բ, եջ 88, Գարագաշյան, Քննական պատմություն, II, եջ 7, Խ. Սամվելյան, Մխիթար Գոշի Դատաստանագիրքն, Վիեննա 1911, եջ 58, Հ. Մուսայելյան, Անդրկովկասի հողային պայմանները, Վաղարշապատ 1910, եջ 13, Կոստանյանց, Հյուսվածք III, եջ 28։

ապստամբեալս յարքայէն Հայոց, զԿորգուս և զԿորդիս և զՏմորիս. առնոյր գերէր և աւերէր, դնէր հարկ մնացորդացն, և առնոյր պանդանդս»։

4. Նոյնը, V, ԺԱ, էջ 214՝

«Եւ զկողմանսն Մարաց, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց, հարկանէր զնոսա մեծապէս, և գերէր զբազումս ի նոցանէն, և մնացորդացն դնէր հարկս, և առնոյր պանդանդս»։

5. Նոյնը, V, ԺԲ, էջ 214՝

«Հարկանէր զերկիրն Արձախայ մեծաւ պատերազմաւ, գերէր զբազումս ի նոցանէն. և զմնացորդացն առնոյր պանդանդս, և զմնացեալսն ի հարկի կացուցանէր»։

6. Նոյնը, V, ԺԳ, էջ 215՝

«Եւ զԿուր գետ՝ որպէս և յառաջն լեալ էր, ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին. և ի գլխաւորացն բազումս սպանանէին. և զմնացորդսն ի հարկի կացուցանէին, և պանդանդս ի նոցանէ առնուին»։

7. Նոյնը, V, ԺԴ, էջ 215՝

«Հասեալ [յերկիրն Պարսից և ի Փայտակարան քաղաք], զբազումս ի նոցանէ գլխով պատուհաս առնէր սպարապետն զօրավարն Մուշեղ. զբազումս ի նոցանէ գերէր, և զմնացորդսն ի հարկի կացուցանէր. և առնոյր պանդանդս ի նոցանէն, և անդ ոստիկանս վերակացուս թողոյր»։

8. Նոյնը, V, ԺԵ, էջ 216՝

«Սոյն օրինակ և որ միանգամ ի կողմանն յայն էին նախարարքն, և ի թագաւորէն Հայոց եղեն ապստամբ, զամենեսեան գլխատէր. և թափէր զամենայն գաւառն [Վրաց], և առնոյր պանդանդս, և զմնացեալսն ի հարկի կացուցանէր»։

9. Նոյնը, V, ԺԶ, էջ 216՝

«Զերբակալ արարեալ զբդեաշխն Աղձնեաց, առ

նմին կոտորեցին զկանայս, և զորդիս նոցա ի գերութիւն վարեցին. և զմնացեալսն ի հարկի կացուցանէր, և վերակացուս և ոստիկանս յերկրին Աղձնեաց թողուին».

10. Նոյնը, V, ԺԷ, էջ 217՝

«Հարկանէր զերկիրն գաւառին Մուշեղ Մեծի Ծոփաց, և զազգսն հանէր ընդ սուր. և առնոյր պանդանդս, և զազգն ի հարկի կացուցանէր».

11. Նույնը, V, ԺԸ, էջ 217՝

«Հարկանէր և յԱնգեղ տունն զբազումս, և հանէր ընդ սուր։ Բայց աշխարհն, զի ոստան արքունի լեալ էր վաղ վաղ, բնակիչք գաւառին եւ ինքեանք կային ի հարկի ծառայութեան»:

12. Նույնը, V, ԺԹ, էջ 217՝

«Հանէր ընդ սուր զտեարս գաւառին [Անձտայ]. առնոյր պանդանդս, և նուաճէր. ի հարկի ծառայութեան թագաւորին Հայոց Պապայ զամենեսեան առ հասարակ կացուցանէր».

Այս հատվածներում Փավստոսը նկարագրում է Հայաստանի ապստամբ ծայրագավառների նվաճումը Պապ թագավորի ժամանակ, որ պատմական տեսակետից կարող է թերևս վիճելի համարվել։ Մեզ համար կարևոր է սակայն և հետաքրքիր «ի հարկի ծառայութիւն»-ը, որ վերագրվում է նվաճված յերկիրներին։ Բոլոր գրեթե վկայություններում սահմանագլուխ իշխանությունների մասին կրկնվում է, ինչպես տեսնում ենք, հետևյալ դարձվածքը՝ «ի հարկի ծառայութեան թագաւորին Պապայ զամենեսեան առ հասարակ կացուցանէր» (վկ. 12), «ի հարկի ծառայութեան կացուցանէր» (վկ. 2,) «ի հարկի կացուցանէր» (վկ. 1, 5, 6, 7, 8, 9, 10) և «դնէր հարկ Թագորդացն» (վկ. 3 և 4)։

Նիկ. Ադոնցի յենթադրությամբ՝ «ի հարկի կացուցանել» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանել» նշանակում են այստեղ վոչ թե հարկ դնել, այլ հնազանդեցնել (տես Армения в эпоху Юстиниана, էջ 480)։ Այս յենթադրությունը,

ինչպես ցույց ենք տվել նախորդ մեր աշխատություններից մեկում («Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Երևան 1925, էջ 29), ճիշտ չէ։ Վերև՝ յերրորդ և չորրորդ վկայություններում՝ «ի հարկի կացուցանէր» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանէր» դարձվածքների փոխարեն վորոշ ասված է՝ «դնէր հարկ մնացորդացն»։ Այս պարզ համեմատությունից յերևում է, վոր նվաճված բոլոր շրջանները հարկ եյին վճարելու Պապ թագավորին։

Կարելի յե արդյոք Փավստոսի այս տեղեկությունից հետևցնել, վոր վերև հիշված բոլոր սահմանային մեծ իշխանությունները ապստամբվելուց առաջ ևս պարտավոր են յեղել հարկ տալ Արշակունի թագավորներին։

Առաջին հայացքից կարող է հավանական թվալ, վոր Մուշեղ Մամիկոնյանը, վերստին նվաճելով ապստամբած և անջատված ծայրագավառները, վերականգնում էր այնտեղ քաղաքական նախկին կացությունը, այսինքն՝ նրանց հպատակությունը թագավորական իշխանության, նաև նրանց առաջվա հարկատու վիճակն Արշակունիների հանդեպ։

Այս յենթադրությունը, վոր թվում է հնարավոր և հավանական, իմ կարծիքով, խիստ վիճելի յե և անընդունելի։ Փավստոսի վկայությունների ուշադիր և մանրախույզ քննությունը ցույց է տալիս, վոր վերոհիշյալ ծայրագավառները հարկ եյին տալու Պապ թագավորին իբրև նվաճված յերկիրներ։ 7-րդ և 12-րդ վկայություններում պարզ ասված է, որինակ, վոր Կասպից յերկրում ու Անձիտում նշանակված են յեղել վերակացուներ և վոստիկաններ։

Վոր այդ ծայրագավառները՝ վորպես ինքնուրույն իշխանություններ՝ հարկ չեյին վճարում Արշակունիներին՝ այդ մասին մի ակնարկ կա ըստ իս վերև մատնանշված 11-րդ վկայության մեջ։ Խոսելով Անգեղտուն գավառի նվաճման մասին, Փավստոսն առանձնապես շեշտում է, վոր «աշխարհն, զի ոստան արքունի լեալ էր վաղ վաղ, բնակիչք գաւառին և ինքեանք կային ի հարկի ծառայութեան»։ Ուրեմն՝ այս

գավառի դրությունը տարբերվել է մյուս ծայրագավառների դրությունից. Նրան «ի հարկի ծառայութեան կացուցանել»-ը չէր փոփոխում նրա հարկային հին վիճակը, վորովհետև նա արքունի «ոստան» էր և նրա բնակիչներն ապստամբությունից առաջ էլ «կային ի հարկի ծառայութեան»։

Ինչպես տեսնում ենք, այս վերջին վկայությունից կարելի չէ կռահել, վոր Արշակունիները հարկ էին ստանում արքունի «ոստան»-ից, բայց վոչ այն ծայրագավառներից, վոր վերև հիշված են։

Բդեշխությունների և մեծ նախարարությունների հարկատվության այս խնդիրը լուսաբանելիս՝ հարկավոր է ի նկատի ունենալ նաև մի ուրիշ ուշագրավ ցուցում։ Բյուզանդական աղբյուրներից հայտնի է, վոր Հայաստանի նախկին նախարարությունները՝ Մեծ Ծոփքը, Փոքր Ծոփքը, Անձիտը, Հաշտյանքը, Անգեղտունը և Բալահովիտը՝ վորոնք միացվելով կայսրության պահպանել էին իրանց ներքին ինքնուրույնությունը և հին իրավունքները, բյուզանդական կայսրներին հարկ չէին վճարում, այլ տալիս էին իբրև կամավոր նվեր, ինչպես յերևում է 387 թվի կայսերական դեկրետից (Cod. Theod. XII, 13, 6), aurum coronarium՝ «պսակի վոսկի»[1]։

Ինձ թվում է, հռոմեական այդ սատրապությունների հարկատվությունից ազատ լինելը կարող է մի նշան համարվել, վոր բդեշխությունները և մեծ նախարարությունները նաև Արշակունյաց թագավորության ժամանակ ազատ են յեղել «ի հարկի ծառայութիւն»-ից։ Հնարավոր է սակայն, վոր դրամական վորոշ նվերներ (= «պատարագ», հմմտե Խորենացի, II, Բ, եջ 103) տալու սովորությունը գոյություն է ունեցել նաև Հին Հայաստանում, բայց այդ մասին մատենագրական աղբյուրների մեջ, դժբախտաբար, չկա և վոչ մի տեղեկություն։

---

[1] Տես Կ. Գյուտերբոգ, «Հռոմէական Հայաստան և հռոմէական սատրապութիւնները», թրգմ. Մ. Նուրշուանի, Վիեննա 1914, եջ 53—55, նաև Армения в эпоху Юстиниана, եջ 113—115։

## 5. «ԱԶԱՏ»-ՆԵՐԸ ԵՎ «ՈՍՏԱՆԻԿ»-ՆԵՐԸ

*Ինչպես վերև տեսանք, նախարարական կազմակերպությունը հիմնված էր Հին Հայաստանում կալվածատիրության վրա։ Նախարարական տոհմերը ոչ միայն խոշոր կալվածատերերն էին Հին Հայաստանի, այլ և, լինելով տեր ընդարձակ յերկիրների, ունեյին այդ յերկիրներում քաղաքական իշխանության իրավունքներ։*

*Աղբյուրների վկայություններից դժվար չէ նաև հետևցընել, որ բացի ազնվական այս բարձր խավից գոյություն է ունեցել Հայաստանում մի մեծ շերտ կալվածատեր մանր ազնվականության, որ անվանվում էր «ազատ» և «ոստանիկ»։*

*Ուշագրավ է, որ «ազատ» բառը ես, ինչպես և «նախարար» ու «նահապետ», պարթևական տերմին է և փոխառություն է հայերենում պարթևերենից (= պհլ.* âzât, *պրսկ.* „âzâd“):

*Սոցիալական այս տերմինի իմաստի մասին հայագիտական աշխատություններում հայտնված են յերեք տարբեր կարծիքներ։*

*1. Ինճիճյանի լուսաբանությամբ՝ «ազատ» կոչվել են նախարարները և նախարարությունները։ «Եւ սակս այսոցիկ իշխանութեանց համարիմ ազատ կոչեցեալ զնախարարս — ասում է Ինճիճյանը — զի թագաւորն չունէր ի վերայ նոցա զայն իշխանութիւն՝ զոր ունէր ի վերայ ժողովրդեան. ոչ խառնէր ի կառավարութիւն երկրի և բնակչաց նախարարաց» (տես Հնախօսութ.* II, *եջ 77 և 88)։ Խ. Սամվելյանը ես «ազատ» և «նախարար» համարում է նույնանիշ։ «Հին Հայաս-*

տանում — ասում է նա — հասարակությունը բաժանված էր յերկու դասակարգի՝ ազատ ու շինական։ Առաջինը բաղկացած էր զանազան նախարարական ու իշխանական տների ներկայացուցիչներից, վորոնք հենված լինելով ավատական կազմի վրա կազմում եյին մի զինվորական-ազնվական կաստա, ոժտված տոհմային սեփականատիրական իրավունքներով» («Մխիթար Գոշի Դատաստանագիրքը», Վիեննա 1911, եջ 60—61)։

2. Նիկ. Ադոնցը հնարավոր է գտնում, վոր «ազատ» անվանվել են, հավանորեն, նախարարների վորդիները, ուստի «ազատ» և «սեպուհ» կարող են, նրա կարծիքով, ունեցած լինել միևնույն նշանակությունը (Армения в эпоху Юстиниана, եջ 451 և 452)։

3. Եմինի ու Կարստի յենթադրությամբ՝ «ազատ» է կոչվել ստորին ազնվականությունը (տես История Армении Моисея Хоренского, Москва 1893, եջ 303 և Sempadscher Kodex, II, Strassburg 1905, եջ 95)։ Ջավախովը ևս «ազատ»-ներին համարում է առանձին դաս, վոր դասվելու յե նախարարներից ցած և ռամիկներից բարձր (Государственный строй, եջ 132 և 133)։

Վերոհիշյալ բացատրությունները, ինչպես տեսնում ենք, խիստ հակասական են և իրար հետ անհաշտելի։

Սխալ պետք է համարել, անշուշտ, Ինճիճյանի լուսաբանությունը, վոր իբր թե նախարարներն «ազատ» են անվանվել, վորովհետև թագավորը չե ունեցել իշխանություն նրանց յերկիրների ու բնակչության վրա։ Անընդունելի յե նույնպես և Ադոնցի կռահումը, թե «ազատ» և «սեպուհ» հոմանիշ տերմիններ են և իբր թե «ազատ» են կոչվել նախարարների վորդիները։

Այս վերջին բացատրությունը, վոր հիմնավորված չե պատմական փաստացի տվյալներով, կարելի յե անտես առնել, վորովհետև «ազատ» տերմինի այդ ոտարոտի լուսա-

քանությունը չի հաստատվում աղբյուրների վկայություն-ների ուշադիր քննությամբ։

Վերոհիշյալ յենթադրություններից հավաստի չեն, իմ կարծիքով, և ուղիղ Եմինի, Կարստի և Ջավախովի կարծիք-ները։ «Ազատ»-ները Հայաստանում, իբրև, ստորին ազնվա-կաններն էին, վորոնք աղբյուրների մեջ հիշատակվում են գրեթե միշտ նախարարներից հետո և ռամիկներից առաջ։ Հայտնի յե արդեն, վոր Սասանյան Պարսկաստանում էլ âzât անվանվել են, ինչպես մատնացույց է արել Christensen-ը իր L'empire des Sassanides աշխատության մեջ (Kobenhavn 1907, եջ 44), մանր ազնվականները, վորոնք բավական մեծ թիվ եյին կազմում և ցրված եյին ամբողջ յերկրում։

Վոր «ազատ»-ները և «նախարար»-ները Հայաստանի ազնվականության տարբեր շերտերն եյին, այդ յերևում է մի շարք վկայություններից, վորոնց մեջ նրանք հիշվում են «նախարար»-ներից հետո՝ իբրև բնակչության ինքնուրույն ու առանձին մի խմբակցություն։

Ավելորդ չեմ համարում մեջ բերել մի քանի համապա-տասխան վկայություններ.

1. Փաւստոս. IV, ԺԵ, եջ 120՝

«Եւ քսիս ստութեան զԳնելոյն ննդութեամբ առ թագաւորն Արշակ մատուցանէր [Տիրիթ]՝ թէ Գնել թագաւորել կամի, և զքեզ սպանանել. և ամենայն մեծամեծք և նախարարք եւ ազատք սիրեն զԳնել, և ամե-նայն աշխարհիս նախարարք կամին զտէրութիւն նորա ի վերայ իւրեանց առաւել քան զքո».

2. Ագաթանգեղոս, ԾԺԱ, եջ 412 (Տփղիս 1909)՝

«Եւ կուտեցան առ հասարակ զօրքն ամենայն, և մեծամեծք և կուսակալք, գաւառակալք, պատուա-ւորք, պատուականք, զօրավարք, պետք և իշխանք, նախարարք եւ ազատք, դատաւորք և զօրագլուխք, և հասեալ կային առաջի թագաւորին».

3. Ղազար Փարպեցի, Ա, եջ 2 (Տփղիս 1904)՝

«Եւ ոմանց յընկերակցաց նախարարացն եւ յայլ ա-

զատ մարդկանէ՝ դառնալ յետս յուխտէ սրբութեանն և անշէջ յաւիտենից հրոյն լինել լուցկիք, պատրաստելոյն սատանայի և նորին արբանեկացն».

4. Նույնը, I, Է, եջ 10՝

«Իսկ թակարդացն շրջափակութեամբք, երադազիւքն և գահոզովքն. ելեալ ի յորս զունդք նախարարացն որդւովքն ազատացն».

5. Նույնը, III, ՀԱ, եջ 128՝

«Եւ առեալ ընդ իւր [Վահան] զնախարարսն եւ զազատս եւ զայլ ամենայն ռամիկն, որք կամաւոր խընդութեամբ երթային ի գործ պատերազմին, և չուեալք ի Դունայ զօրքն Հայոց՝ ըստ աւուրս օթեանացն երթեալ հասանէին ի գաւառն յԱրտազ».

6. Եղիշէ, VIII, եջ 343 (Վենետիկ 1852)՝

«Այս երեսուն և հինգ արք, են որ յաւագ նախարարացն եւ են որ ի կրսերագունիցն, սակայն ամենեքեան ըստ մարմնոյ են նախարարազունք.... եւ բազում եւս այլ ազատ մարդիկ, են որ յարքունի տանէ, և են որ ի տանէ նախարարացն իսկ նոցուն, նիզակակիցք և մարտակիցք քաջ նահատակացն»։

«Ազատ» անվան սովորական նշանակությունը՝ իբրև մանր ազնվական՝ միանգամայն պարզ է ու անվիճելի։

Սակայն ուշագրավ է, որ Խորենացու պատմության մեջ «նախարար»-ների սոցիալական դրությունը բնորոշված է իբրև «ազատութիւն»[1], իսկ Փավստոսի և Փարպեցու մոտ «նախարար»-ներն անվանվում են «ազատորեար» կամ «ազատանի»։ Ուրեմն՝ Ինճիճյանի վերոհիշյալ յենթադրությունը ևս անհիմն չէ։ Ըստ յերևույթին, «ազատ» անունն ունեցել

[1] Ուշադրության արժանի յե, որ Խորենացու մոտ այդ ազատությունն անվանված է «սեպհական ազատութիւն»։ Էմինը «սեպհական ազատութիւն»-ը թարգմանել է „родовое дворянство", իսկ Խորեն Ստեփանեն՝ «հայրենական ազնուականութիւն»։ Ինձ թվում է ավելի ուղիղ կլիներ թարգմանել՝ „сепухское азатство" և «սեպուհական ազատութիւն»

և բացի սովորական իր նշանակությունից նաև ավելի լայն իմաստ, և, մասնավորապես, «ազատորեար» ու «ազատանի» տերմինները գործ են ածվել «նախարար»-ների նկատմամբ, ինչպես այդ պարզ չերևում է մատենագրական հետևյալ վկայություններից.

1. Մովսէս Խորենացի, III, Ի, էջ 280 (Տփղիս 1913)՝

«Եւ զերկուսս զայսոսիկ յազգս'ց նախարարացն բառնայ. մի՝ զմերձաւորաց խնամութիւն, զոր վասն ագահելոյ **սեպհական ազատութեանն** առնէին. և միւս՝ որ ի վերայ մեռելոց գործէին ոճիրս ըստ հեթանոսական սովորութեանն».

2. Փաւստոս, III, Ի, էջ 52 (Վենետիկ 1885)՝

«Եւ այլ մեծամեծք նախարարացն և աւագ տանուտէրք **ազատանին**, սոյնպէս և զօրքն արքունի յիւրաքանչիւր տունս յիւրաքանչիւր կայեանս յիւրաքանչիւր գաւառս դադարեալ էին».

3. Փարպեցի, II, ԻՁ, էջ 49՝

«Եւ լուեալ զայս ամենայն բանս, պատուոյ և խոստմանց և մահու սպառնալեաց, ի Թագաւորէն Պարսից Յազկերտէ երեցունց աշխարհաց **ազատանւոյն**՝ լռեցին առ վայր մի այլքն. բայց յառաջ կացեալ աներկիւղ և քաջասիրտ մտօք Վարդանայ Մամիկոնէից տեառն և Հայոց սպարապետի՝ պատասխանի ետ Թագաւորին Յազկերտի առաջի ամենայն բազմութեանն և ասէ, եթէ «Բազումք են յայս երից աշխարհաց **յազատորերոյ**, որք են աւագ քան զիս և գահու և աւուրբք, և շատ են, որ ի խոնարհ են».

4. Նոյնը, II, ԾԵ, էջ 97.

«Թէ հաւանին արեգական և կրակի երկիր պագանել և զմեր օրէնս յանձն առնուն պաշտել՝ նոցա զմահապարտութիւնն թողում, և **զազատորեարսն** զոր կապեալ է՝ արձակեմ ի Հայս, և զիւրաքանչիւր ուրուք զտանուտէրութիւն տամ և զգահ և զպատիւ»։

*«Ազատ» տերմինի իմաստը վորոշելուց հետո՝ անհրաժեշտ ե այժմ քննության առնել և լուսաբանել նաև «ոստանիկ» անվան նշանակությունը։*

*«Ոստան» և «ոստանիկ» բառերի նշանակությունը, ինչպես մենք ցույց ենք ավել նախորդ մեր աշխատություններից մեկում («Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Պետ. Համալսարանի Տեղեկագիր, № 1, Յերևան 1925, եջ 7—13), սխալ ե հասկացվել թե մատենագրական հին աղբյուրներում և թե բանասիրական ու պատմական նորագույն յերկերում։*

*Ինչպես հայտնի յե, «ոստանիկ» դասի ծագումն առաջին անգամ փորձել եր լուսաբանել Մովսես Խորենացին իր պատմության հետևյալ յերկու հատվածում.*

*1. Մովսես Խորենացի, II, է, եջ 111—112 (Տփղիս 1913)՝*

*«Եւ զունդս և պահապանս դրան արքունի կարգէ [Վաղարշակ] զչորս, զմի մի ի ւրաքանչիւր բիւրովք վառեալովք ի նոյն* ի ծին ի զարմից թագաւորացն՝ որք ի մերոյ նախնւոյն ի Հայկայ, որք բուն ոստանն անուանեալ, *որք ընդ ժամանակս ժամանակս ժառանգութիւն ի հարանցն ընկալեալ գիւղս և դաստակերտս։ Իսկ ատ ուրեմն Պարսից Թագաւորութեանն, որպէս լսեմ, այլս ոմանս յարուցեալ գունդս և* ոստան անուանեալ. *ոչ գիտեմ թէ վասն սպառելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդդիմութեան իրիք արդեօք չկարեալ և ի բաց ընկեցեալ զազգն՝ զայլս ի տեղի նոցա յարուցին գունդս՝ անուամբ արքունի։ Այլ առաջինն հաստատ ի զարմից Թագաւորացն առաջնոց. որպէս և այժմ ի Վրաց աշխարհին, որ սէփէծուլն կոչին».*

*2. Նույնը, I, Լ, եջ 82—83՝*

*«Պատմի և այս, թէ զկնի այսպիսի իրաց կատարման՝ յուղարկէ Թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծաւ ամբոխիւ ի Հայս՝ յաւանն՝ զոր շինեաց յիւր անուն Տիգրան, որ է Տիգրանակերտ, և զգաւառսն զայնոսիկ ի ծառայութիւն նմա հրամայէ։ Եւ* զոստանն

*անուանեալ կողմանցն այնոցիկ* ազատութիւն *ի զարմից սորա ասէ լեալս,* իբր թագաւորական զարմս»:

*Խորենացին, ինչպես երևում է այս հատվածներից, «ոստանիկ»-ների դասը համարել է «թագաւորական զարմ», վոր ծագել է Հայկ նահապետի ու Տիգրանի քրոջ Տիգրանուհու սերունդներից։*

*Հ. Ղ. Ինճիճյանը, հետևելով Խորենացուն, «ոստանիկ»-ներին համարում է նույնպես «ի հին զարմից թագաւորացն որ ի Հայկայ» և «ի զարմից Տիգրանուհւոյն», սակայն լենթադրում է իր կողմից, վոր «ոստանիկ» կոչվել են «նաև այլ թագաւորազունք Արշակունեաց, սերեալք յարքայորդւոց», վորոնց հատկացված են լեղել բնակության համար Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառները (տես Հնախօս. II, եջ 132—133 և 160—162)։*

*Նիկ. Ադոնցը ևս, այս խնդրում, ընդհանուր առմամբ, համամիտ է Խորենացու հետ։ Նա ևս ընդունում է, վոր «ոստանիկ»-ները թագավորական սերունդ են, սակայն ծագել են վոչ թե հին թագավորներից, այլ Արշակունիներից։ Նրա կարծիքով, «ոստանիկ» իր նշանակությամբ համապատասխանում է «արքունի» բառին։ «Ոստանիկ»-ների կապը թագավորական ընտանիքի հետ նույնը լեղած պիտի լինի, ինչ վոր «սեպուհ»-ների կապը նախարական ընտանիքների հանդեպ։ «Ոստանիկ»-ները, ուրեմն, նրա լենթադրությամբ, թագավորական տոհմի «սեպուհ»-ներն են։ Բացի այդ, հետագայում «ոստանիկ»-ներ են համարվել նաև նրանք, վորոնք իրանց հատուկ ծառայությունների համար ստացել եյին Այրարատում, իբրև պարգև, վորոշ կալվածներ կամ Արշակունիներից կամ հետո՝ Սասանյան Պարսկաստանից։ Արշակունյաց թագավորության անկումից հետո «ոստանիկ» դասի մեջ են ներմուծվել նաև Արշակունյաց արքունիքում ծառայող ազատ մարդիկ։*

*Հիմնական կետում, ինչպես տեսնում ենք, Նիկ. Ադոնցը Խորենացու լուսաբանությունը համարում է ճիշտ ու միայն իր կողմից անում է վորոշ լրացումներ և ուղղումներ։*

Նիկ. Ադոնցը «ոստան»-ի նշանակությունը յենթադրում է «շէմք, արքունիք» (= ռուս. двор), ուստի և «ոստանիկ» բառը լեզվական իր նշանակությամբ նա համապատասխան է համարում ռուսական дворовый, дворянин բառերին[1] (Армения в эпоху Юстиниана, եջ 463 և 476—479)։

Սակայն ուղիղ է և համոզիչ, ինչպես վերև ես ասացինք, ո՛չ թե այս բացատրությունը, այլ Հյուբշմանի ստուգաբանական մեկնությունը, վորը նա տվել է իր Armenische Grammatik աշխատության մեջ (Leipzig 1895, եջ 215)։ Ըստ Հյուբշմանի «ոստան»-ը համապատասխանում է պհլ. östān բառին (պրս. östāndār „Provinzialstatthalter") և նշանակում է «արքունիքին պատկանող յերկիր կամ քաղաք»։ Ընդունելով «ոստան»-ի նշանակությունն իբրև «արքունի յերկիր», Հյուբշմանը «ոստանիկ» բառը թարգմանել է „die daher stammenden Adligen oder Truppen", այսինքն՝ «արքունի յերկրից ծագող ազնվականներ կամ զորագունդեր»։

Հետաքրքիր են ու ուշագրավ «ոստանիկ»-ի իմաստը վորոշելու համար Յեղիշեյի ու Փարպեցու հետևյալ վկայությունները.

1. Եղիշէ, Վասն պատերազմին Վարդանանց, I, եջ 18՝

«Գունդ կազմէր [Յազկերտ Բ.] ի Հայոց Մեծաց զազատ և զազատորդի, և յարքունի տանէ զոստանիկ մարդիկ».

2. Նույնը, IV, եջ 160՝

«Բազում և այլ ազատ մարդիկ, զոր ոստանիկսն անուանեն յարքունի տանէ».

---

[1] Ռուսական двор-ին և սենյորական curtis dominicalis-ին համապատասխանում է հայերենում ո՛չ թե «ոստան»-ը, այլ «դուռն» տերմինը։ Տե՛ս Փարպ. II, Լ, եջ 57՝ «այլ հանդերձ հաւանելովք ընդ ինքեանս դրամբ և ընտանեօք դէմ եդեալ անցանել ի կողմանս իշխանութեանն յունաց ճեպէին»։ Փարպ. II, ԽԲ, եջ 75՝ «զդրան երէցն իշխանին Արծրունեաց Ներշապհոյ՝ զտէր Մուշէ»։ Կան. Վաչակ. ԺԱ՝ «Եւ այնոքիկ, որ կոծ դնեն, զտանուտէրն եւ զկուսանս կապեսցեն եւ ի դուռն արքունի տարցեն եւ պատուհաս ի վերայ դիցեն» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս 1914, եջ 195)։

3. *Ղազար Փարպեցի,* II, *ԼԶ, էջ 67՝*

*«Եւ որք խոտորեցան զկնի սատանայի ընդ ուխտանենգին Վասակայ՝ են այսոքիկ. իշխանն Բագրատունեաց՝ Տիրոց, իշխանն Խորխոռունեաց՝ Գադիշոյ, իշխանն Ապահունեաց՝ Մանէճ, իշխանն Վահեւունեաց՝ Գիւտ, իշխանն Պալունեաց՝ Վարազշապուհն, իշխանն Աբեղենից՝ Արտէն, իշխանն Ուրծայ՝ Ներսէհ, և այլք* յոստանկաց *և սեպուհք ոմանք յիւրաքանչիւր տոհմէ».*

4. *Նոյնը,* II, *ԽԱ, էջ 73՝*

*«Զանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք և սեպուհք,* ոստանիկք *և ռամիկք, դիմեալ ի յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Համայեակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ».*

5. *Նոյնը,* III, *ՂԳ, էջ 170՝*

*«Յաղագս իւրաքանչիւր ուրուք խնդրոյ և օգտի, որ այժմ աստ են առաջի ձեր նախարարք և ազատք և* այլք յոստանիկ մարդկանէ *և յայլուծիոյ որերոյ՝ ճանաչող էք և կարող, և գիտէք հատուցանել զարժանն».*

6. *Եղիշէ,* III, *էջ 126 (Վենետիկ 1864)՝*

*«Թէպէտ և ոչ ունէին թագաւոր առաջնորդ, և ոչ յարտաքուստ օգնական զոք յօտարաց, սակայն անձանց առաքինութեամբ և սուրբ վարդապետաց միաբանութեամբ համագունդ ամենայն զօրօք նախարարացն յիւրաքանչիւր տանէ ի մի վայր գային հասանէին վաղվաղակի. բազում և այլ այրուձի, որ յարքունի տանէ անտի էր».*

*Տես նաև Փարպեցի* II, *ԼԲ, էջ 61.* III, *ՀԱ, էջ 129.* III, *ՂԹ, էջ 178։*

*Այս վկայությունների մեջ ամենից կարևորը յերկրորդն է, վորի մեջ պարզ ասված է, վոր «ոստանիկ» են անվանվել «ազատ մարդիկ յարքունի տանէ»։ Ուշագրավ է և այն, վոր «ոստանիկ»-ների «յարքունի տանէ» զորագունդը հակադրվում է առաջին և վեցերորդ վկայությունների մեջ*

մյուս գրքին, որ անվանված է «գունդ ի Հայոց Մեծաց ազատ և ազատորդի» կամ «զօրք Նախարարացն յիւրաքանչիւր տանէ»։

Շատ պարզ է, որ «արքունի տուն» չի նշանակում այստեղ արքայական ընտանիք, այլ գործ է ածված արքունի երկրի համար, որը եղել է ոչ թե նախարարական սեպհականություն, այլ թագավորական։

«Ոստանիկ»-ները, ինչպես տեսնում ենք, Փարպեցու և Յեղիշեի մոտ հակադրվում են նաև «սեպուհ»-ներին, որոնք ծագում էին նախարարական տոհմերից։

Այս վերջին փաստը, որ «ոստանիկ»-ների դասը չի ծագել նախարարական տոհմերից, ըստ երևույթին, հայտնի չէ եղել նաև Խորենացուն։ Խորենացին ևս, ինչպես երևում է նրա վկայություններից, գիտեր, որ «ոստանիկ»-ները եղել են «ազատ մարդիկ», բնակություն են ունեցել ոչ թե նախարարական շրջաններում, այլ արքունի երկրում, որ նրանցից կազմված է եղել այն հատուկ զորագունդը, որ կոչվել է «արքունի» կամ «յարքունի տանէ», սակայն իրական ու պատմական ծագումն այդ դասի Խորենացու ժամանակ եղել է մութ և անհասկանալի[1]։

Նրա բացատրությունը, որ «ոստան ազատութիւն»-ը ծագում է թագավորական հին զարմերից, հավանորեն, հիմնըված է ոչ թե պատմական հաստատ ու որոշ փաստերի վրա, այլ մոտավորապես, նույն տվյալների վրա, որ հայտնի են և մեզ։ Անհավանական չէ, որ Խորենացին կարող էր արքայական ընտանիքի նեղ իմաստով հասկացած լինել «ոստանիկ»-ների «արքունի» մակդիրը և նրանց ծագումը «յարքունի տանէ»։ Այսպես է մեկնել «արքունի տուն»-ը և Հ. Գ. Ինճիճյանն իր «Հնախօսութեան» մեջ։ Հենվելով Եղիշեի վկայությունների վրա, նա ևս վստահաբար հետևցրել է, իբր թե «ոստանիկ»-ներին «այլ պատմագիրք յայտնի

[1] Խորենացու սխալ մեկնությունը «ոստանն անուանեալ ազատութեան» ուշագրավ մի ապացույց է ըստ իս, որ նրան չէ կարելի համարել հինգերորդ դարի մատենագիր։

յարքունի տանէ լեալ իշխն, սովիմբ իմանամք զընիկ հայ-կական զարմն արքայական, որպէս էր ցեղն առաջին» («Հնա-խօս. II, Վենետիկ 1835, էջ 161—162)։

Եթե «յարքունի տանէ» իմաստի այս վերջին հասկա-ցողությունն է յեղել Խորենացու յենթադրության հիմքը, պարզ է, վոր այդ ապացույցն ավելի քան թույլ է, վորով-հետև «յարքունի տանէ», ինչպես վերև տեսանք, գործ է ածված «ոստանիկ»-ների նկատմամբ արքունի յերկրի և վոչ արքայական ընտանիքի նշանակությամբ։

Համոզիչ չեն կարող համարվել և Նիկ. Ադոնցի յեզրա-կացությունները, վորովհետև Նրա պնդումների միակ ու գլխավոր կռվանը Խորենացու վկայությունն է, վորը Նա հիմնական կետերում համարել է ընդունելի և արժանա-հավատ։

Նրա այն ուղղումը, վոր «ոստանիկ» են անվանվել վոչ թե հնագույն թագավորական սերունդները, այլ Արշակու-նյաց տոհմի «սեպուհ»-ները և իբր թե «սեպուհ» անունը գործ է ածվել միմիայն նախարարական ընտանիքների վորոշ անդամների համար (Армения в эпоху Юстиниана, էջ 451), ճիշտ չէ։ Փավստոսի պատմության մեջ Գնելը, Արշակ Թա-գավորի յեղբոր վորդին, անվանված է «մեծ սեպուհն Արշա-կունի» (Վենետիկ 1832, IV, ԺԵ, էջ 124)։

Ինձ թվում է, վոր միանգամայն անվիճելի յե, Փավս-տոսի վկայությամբ էլ հաստատվում է, վոր «սեպուհ» են կոչվել վոչ միայն նախարարական, այլ և Արշակունյաց Թա-գավորական տոհմի անդամները։

Վոր այս վերջիններն անվանված լինեյին հատկապես «ոստանիկ», այդ մասին մատենագրական աղբյուրներում չկան վոչ վկայություններ, վոչ էլ վորևե ակնարկներ։

Ինչպես տեսնում ենք «ոստանիկ»-ների Թագավորական զարմ լինելը, հին Թագավորների կամ Արշակունիների, այն-քան էլ հաստատ չէ, ինչպես մինչև այժմ կարծել են։ Իրապես՝ «ոստանիկ» են անվանվել Արշակունյաց բուն յերկրի «ոստան»-ի «ազատ»-ները, վորոնցից կազմված

գունդն անվանվել է «արքունի» կամ «յարքունի տանէ»։

«Ազատ» և «ոստանիկ» տերմինների նշանակությունը վորոշելուց հետո՝ անհրաժեշտ է այժմ պարզել մանրամասնորեն նրանց սոցիալական դրությունը և փաստական դերը նախարարական Հին Հայաստանում։

Ինչպես կըտեսնենք, կարևոր այս խնդրի քննությունը ևս ցույց է տալիս, վոր Հին Հայաստանի նախարարական կազմակերպության նմանությունն ու համապատասխանությունը Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալիզմին շատ ավելի մեծ է և ակնհայտ, քան մինչ այժմ յենթադրել են։

Արևմտյան Յեվրոպայում սենյորների իշխանությանը յենթարկված եյին մանր ազնվականները, վորոնք՝ ստացած լինելով սենյորներից վորոշ հողաբաժիններ և համարվելով նրանց վասսալները՝ պարտավոր եյին ստանձնել հողատու իրանց «տէր»-երի հանդեպ զինվորական և այլ պատվավոր ծառայության պարտականություններ։ Այս մանր ազնվականները, վորոնցից կազմված եր սենյորների ձիավոր զորքը, անվանվում եյին հեծյալներ (chevaliers, Ritter):

Ճիշտ և ճիշտ նույնը մենք դտնում ենք նաև նախարարական Հայաստանում։

Այստեղ ևս «ազատ»-ներից և «ոստանիկ»-ներից, վոր գտնվում եյին բդեշխությունների, նախարարությունների կամ Արշակունիների իշխանության տակ, կազմված եր նախարարական և արքունի շրջանների հեծելազորքը։

Խիստ ուշագրավ է այդ տեսակետից, վոր Սմբատ Գունդստաբլի XIII դարի Դատաստանագրքում «ազատ», «ձիաւոր» (=chevalier) և «լին ճորտ» (=հին ֆրանս. homme lige) համարվում են նույնանիշ, ինչպես այդ յերևում է Դատաստանագրքի հետևյալ վկայությունից՝

«Եւ զիշխանքն դատէ իշխանաց իշխան՝ իշխանաւքն եւ իւրենց տեսովն. նոյնպէս և զազատսն՝ որ են ի մերս ծառայորդն եւ լին ճորտերն՝ նա իւրընցնովն զիւրենք դատեն իշխանաց իշխանայքն. զթագաւորին ճոր-

տերն՝ թագաւորին հրամանաւքն» (տես J. Karst, Sempadscher Kodex, B. I, Strassburg 1905, էջ 104—105)։

Վոր Սմբատ Գունդստաբլի այս բացատրությունը միանգամայն ճիշտ է, այդ պարզ յերևում է հնագույն աղբյուրների բազմաթիվ վկայություններից, վորոնց մեջ տեղեկություններ են հաղորդված նախարարությունների և «արքունի տան» կամ «ոստան»-ի զորքերի մասին։ Այդ վկայությունների մեջ վորոշակի մատնանշված է, վոր Նախարարական Հայաստանի զորքերը կազմված են յեղել, գլխավորապես, «ազատ»-ներից և «ոստանիկ»-ներից։ Ուշագրավ է նաև, վոր մատենագրական աղբյուրների մեջ այդ զորքերն անվանվում են սովորաբար «ազատազօրք», «ազատագունդ զօրք», «ազատագունդ բանակ» կամ «ազատախումբ բանակ»։

Մեջ ենք բերում մի քանի համապատասխան վկայություններ.

1. Փաւստոս, IV, ԾԵ, էջ 174՝

«Ապա իբրև ետես տիկին աշխարհին Հայոց կինն Արշակայ թագաւորին Հայոց Փառանձեմ զզօրս թագաւորին Պարսից, եթէ եկին լցին զաշխարհս Հայոց, առեալ ընդ իւր մարդիկ իբրև մետասան հազար **ազատս ընտիրս սպառազէնս պատերազմողս**, և հանդերձ նոքօք դիմեաց եմուտ ի բերդն Արտագերից՝ որ ի յերկրին Արշակունեաց՝ յերեսաց զօրացն Պարսից».

2. Փաւստոս, V, Բ, էջ 193՝

«Ապա Մուշեղ որդի Վասակայ, սպարապետն Հայոց Մեծաց, ընտրեաց իւր արս **ընտիրս միամիտս ազատս ազգայինս** քառասուն հազար, միաբանս միակամս, և կազմեաց զնոսա ձիով և թուշակաւ և զինուն».

3. Եղիշէ, I, էջ 18 (Վենետիկ 1864)՝

«Գունդ կազմէր [Յազկերտ] ի Հայոց Մեծաց **զազատս եւ զազատորդի, եւ յարքունէ տանէ զոստանիկ մարդիկ»**.

4. Փաւստոս, III, էջ 55 (ԻԱ)՝

«Յայնմ ժամանակի **ազատագօրն նախարարացն Հա-**

յոց առեալք զիւրաքանչիւր ընտանիս, լինէին փախստականք, ի կողմանս Յունաց անցանէին».

5. Նոյնը, III, ԺԱ, էջ 26՝

«Ապա ժողովէր սպարապետն զօրավարն Հայոց Մեծաց Վաչէ զազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն».

6. Նոյնը, IV, էջ 126 (ԺԵ)՝

«Տայր հրաման Թագաւորն Արշակ ազատազունդ բանակին զհետ լինել Տիրիթայն».

7. Ագաթանգեղոս, ԾԺ, էջ 412՝

«Եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէր զաւրնթերակաց արքունիսն հանդերձ մեծամեծ աւագանօքն և ամենայն ազատազունդ բանակաւն աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել».

Հմմտե նաև «Կորիւն, Պատմութիւն վարուց և մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի», էջ 23 (Վենետիկ 1894). Փաւստոս, IV, ԾԵ, էջ 175, V, ԻԴ, էջ 223 ևն.։

«Ազատ»-ների և «ոստանիկ»-ների զինվորական դաս լինելը Հին Հայաստանում, ինչպես տեսնում ենք, անվիճելի յե։

Christensen-ը մատնանացույց է արել, որ Սասանյան Պարսկաստանում էլ azât-ների դասին պատկանել են, հավանորեն, ձիավորները (chevaliers), որոնք զորքի լավագույն մասն էին։ Այս ձիավորների մեծագույն մասը խաղաղ ժամանակ ապրում էր սեպհական կալվածներում, մշակում իր հողերը և զբաղվում իր գյուղացիության գործերով (տե՛ս L'empire des Sassanides, էջ 44)։

Նույն դրությունը, հավանորեն, յեղած պիտի լիներ նաև Հին Հայաստանում։

Հայաստանի նախարարական կազմակերպության առանձնահատկություններն ուսումնասիրելիս առանձնապես կարևոր է պարզել «ազատ»-ների և «ոստանիկ»-ների հողա-

տիրության խնդիրը և, մանավանդ, պայմանական հողատիրության՝ feod-ի կամ Lehn-ի՝ գոյությունը Հին Հայաստանում։ Արևմտյան Եվրոպայում, ինչպես հայտնի է, feod-ը կամ Lehn-ը կազմում էր միջնադարյան ֆեոդալիզմի հիմնական հատկանիշներից մեկը։ Հարկավոր է ուրեմն որոշել, թե արդյոք գոյություն չեն ունեցել նախարարական Հայաստանում ևս արևմտյան feod-ը կամ նման հողատիրական կարգեր։

Այս խնդիրը մանրամասն քննված է «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» մեր նախորդ աշխատության մեջ (տես Տեղեկագիր Պետ. Համալսարանի, Երևան 1928, № 4, էջ 43—52)։ Կարևոր եմ համարում մեջ բերել այստեղ մեր այդ ուսումնասիրությունն ամբողջությամբ և մի քանի անհրաժեշտ լրացումներով։

«Ազատ»-ների և «ոստանիկ»-ների սոցիալական ու տնտեսական դրությունը քննելիս՝ իմ ուշադրությունը գրավել էր Ստեփանոս Օրբելյանի պատմության մեջ «խոստակդար» բառը, որի նշանակությունը, իմ կարծիքով, վերջնական կերպով դեռ լուսաբանված չէ։ Այն նշանակությունը, որ յես վերագրելու յեմ «խոստակդար» բառին, այնքան կարևոր է հայկական ֆեոդալիզմի պարզաբանման համար, որ յես անհրաժեշտ եմ համարում մանրամասն առաջ բերել մատենագրական, ինձ հայտնի, բոլոր հատվածները, որոնց մեջ հիշատակված են «խոստակդար» և «խոստակ» բառերը։

Այդ յերկու բառը հանդիպում են Մովսես Կաղանկատվացու և Ստեփանոս Օրբելյանի մոտ հետևյալ վկայություններում.

1. Աղվանից Վաչական արքայի 6-րդ կանոնում՝

«Վանաց երէց կամ վանական ոք՝ եթէ ի վանացն դայթանք առնէ և ի վերայ յայտ լինի, անարգեսցեն զնա և ի տեղւոյն ի բաց արասցեն, և զխոստակն յեկեղեցին կալցեն» (տես «Մովսեսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից աշխարհի», հրատ. Մ. Էմինի, Մոսկվա 1860, Ա, գլ. ԻԶ, էջ 66—67).

2. «Ստեփանոսի Օրբելեան արքեպիսկոպոսի, Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս 1911, Գլ, ԼԹ, էջ 206՝

«Ետու ես տէր Փիլիպպէ զԲերդկաներէչոյ զկէսդ Սառնաքարին փոխան, և զկէսդ սուրբ եկեղեցւոյդ. և չիշխէ ոք հեռացնել՝ ոչ եղբայր և ոչ որդի և ո՛չ յիմ ժառանգաւորաց».

3. Նոյնը, Գլ. ԼԹ, էջ 206—207՝

«Ցերկերիւր և ինըսուն երեք թուականութեանս Հայոց որպէս կամ եղև ինձ Փիլիպպէի՝ որդւոյ Վասակայ, Սիւնեաց տեառն, ետու զՏաթև վասն իմ հոգւոյս ի ձեզ ի Տէր Դաւիթ՝ Սիւնեաց եպիսկոպոս. յիմ հօրէն լիս հրիտակ հասեալ էր. Անխուէշքարէ (*) ամենայն սահմանօք, լեռամբ և դաշտիւ, այգօք և ընկոյզեօք, մարգագետնովք և ջաղացանով և որ ինչ համօրէն սահմանք են. և մի՛ ոք իշխեսցէ յետ իմ անցման, իմ որդիք կամ եղբարք կամ այլ ժառանգաւորք հեռացուցանել զայդ գիւղդ յայդ եկեղեցւոյդ և ի սուրբ Խաչէդ».

4. Նոյնը, Գլ. Խ, էջ 219՝

«Եւ շէն մի Մաճ անուն ի Բաղաց գաւառի, որ նախ աեառն Ատրներսեհի՝ Սիւնեաց տեառն և իմ եղբօր, ինձ էր տուեալ. և յետ այնորիկ Հրահատայ՝ իմ տեառնն, գնեալ էր յիմ եղբօրէն, և ինձ վաճառեալ և հոգեցատուր արարեալ՝ ետու ես Բուպլիդուխտ զայդ շէնդ լերամբք և դաշտով, մարգով և արտով, գետով, ջրով և ցամաքով, ծառովք և տնկովք ի սուրբ Խաչդ և ի Տէր Սողոմոն՝ Սիւնեաց եպիսկոպոս։ Ես զիմ հոգիս ի քեզ յանձն արարի. արդ իշխան ես դու Տէր Սողոմոն՝ և որ յետ քո այլ յաջորդի ոք ի սրբութեանց յաթոռդ Սիւնեաց, եպիսկոպոսունք, ուտել և վայելել զայդ շէնդ բոլորովիմբ իւր սահմանօքդ մինչև յաւիտեանս ժամանակաց։ Եւ մի՛ ես և մի իմ եղբօրորդիք և այլ ժառանգաւորք պայքարել եւ համիմաղ կալ մի՛ իշխեսցեն».

5. *Նոյնը, Գլ. ԽԳ, էջ 232–233՝*

*«Եւ յայսմհետէ մինչև յաւիտեան այս լիցի սահման Տաթևոյ սուրբ ուխտիս. և մի ոք իշխեսցէ այսմ հակառակել՝ մի Բաղացիք և մի Որոտնեցիք և մի Վաղանդացիք, մի Շնհէրացիք և մի Նորեցիք։ Եթէ ոք ընդ հակառակս ելանէ ի մերոց կամ յօտարաց,* յաւագաց կամ ի ձեռնատուաց եւ ի խոստակդարաց կամ ի տանուտերաց, *ի սուրբ Երրորդութենէն որոշեալ լիցի, և յերից սուրբ ժողովոցն նզովեալ եղիցի»։*

*Հայկազյան բառգրքի աշխատակիցները «խոստակ»-ը հասկացել են այս հատվածներում, իբրև «խոշտակ, զաւակ, մանուկ, ժառանգ», իսկ «խոստակդար»՝ իբրև «խոշտակ յետագայ, այսինքն՝ զաւակ զաւակի, յետնորդք, թոռունք»։ Նույն բառգրքում «խոշտար» բառին տրվում է հետևյալ լուսաբանությունը. «խոշտար կամ խոստար, որ և խոստակ՝ մանուկ, տղայ, զաւակ, սան, համբակ, ժառանգ որբացեալ»։ «Խոստակ» և «խոստակդար» բառերի այս նշանակությունը, ինչպես տեսնում ենք, հիմնված է այդ բառերի ստուգաբանական ծագման վրա՝ «խոստակ-խոշտակ, խոստար-խոշտար»։ Այդ ստուգաբանությունը սակայն ճիշտ չէ. ուրեմն՝ անընդունելի պիտի համարել նաև վերոհիշյալ ամբողջ բացատրությունը։*

*Նույն բառերի ստուգաբանական ուղիղ մեկնությունը տվել է արդեն Հյուբշմանն իր* Armenische Grammatik *աշխատության մեջ (էջ 161)։ Ըստ Հյուբշմանի «խոստակ» նշանակում է* „Güter, Besitz", *այսինքն՝ «կալված», ստացվածք»* (=*նոր պարսկ.* x$^{v}$āsta „Güter, Besitz"), *իսկ «խոստակդար» նշանակում է* „der Erbo", *այսինքն՝ «ժառանգ»* (=*պհլ.* x$^{v}$āstakdār „der Erbe" Pand-nāma 80, eigentlich „Besitzhalter"):

*Հյուբշմանի այս մեկնությունից հետո միանգամայն հասկանալի է դառնում վերև առաջ բերված Աղվանից Վաչական արքայի վեցերորդ կանոնը։ «Խոստակն յեկեղեցին կալցեն» պետք է հասկանալ այն իմաստով, վոր հանցավոր*

«վանաց երէց»-ից կամ «վանական»-ից յեկեղեցին առնում էր ոչ թե նրանց որդիներին, ինչպես մինչև այժմ յեն-թադրել են[1], այլ նրանց կալվածները կամ հողաբաժինները։

Այս կանոնն իր բովանդակությամբ համապատասխանում է Շահապիվանի ժողովի երկրորդ և «Ներսեսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոններին, որոնք նույնպես վերաբերվում են իրանց կոչմանն անհամապատասխան՝ ագէտ կամ հանցավոր եկեղեցականներին։

1. Տես Կանոնագիրք Հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանցի, Թիֆլիս 1914, եջ 61՝

«Եթէ կրօնաւոր երէց գացի ի պղծութեան կամ ի պոռնկութեան կամ յայլ գործս չարեաց և ստուգեալ վկայիւք, քահանայութիւնն լուծցի և յեկեղեցւոյ բաժնէն հեռացեալ լիցի. յ դրամ տուգանս տացէ և ի կարօտեալս բաշխեսցեն. եթէ երէց, եթէ սարկաւագ՝ կանոնս այդ կացցէ, և նոքա ի կարգ զինուորութեան կացցեն և ի հարկս արքունի, և ընդ պաշտօնեայս մի խառնեսցին».

2. Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանցի, եջ 109 («Կանոնք Ներսեսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», Ե.)՝

«Տգէտք մի իշխեսցեն ժամից սրբոյ եկեղեցւոյ, զի անիրաւ է, վասն անուսումնութեանն ընդ զինուորս կացցեն և զհայրենի հող եւ ջուր կալցեն, և յարքունիս հարկ, և զորդիս ի դպրոց տացեն, զի ուսցին»։

Վերոհիշյալ կանոններում՝ «խոստակն յեկեղեցին կալցեն», «յեկեղեցւոյ բաժնէն հեռացեալ լիցի» և «զհայրենի

[1] Տես История Агван Моисея Каганкатваци, пер. К. Патканьяна, СПБ. 1861, եջ 67։ «Խոստակն ի յեկեղեցին կալցեն» Պատկանյանը թարգմանել է „сына взять в церковь", սակայն ծանոթության մեջ նա հայտնում է, որ այդ թարգմանությունը կասկածելի է։ Միևնույն սխալ ենթադրությունն արված է նաև Վաչականի կանոնների իր գերմաներեն թարգմանության մեջ. տես Beiträge zur albanischen Geschichte, Leipzig 1897, եջ 16։

հող և ջուր կալցեն»՝ միևնույն իմաստն ունեն։ Հանցավոր կամ տգետ կրոնավորներից և քահանաներից եկեղեցին, ինչպես տեսնում ենք, յետ էր առնում նրանց անշարժ գույքը, հողն ու ջուրը, որովհետև այդ գույքը եկեղեցու «բաժին»-ն էր։

Նախորդ աշխատություններից մեկում («Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Պետ. Համալսարանի Տեղեկագիր № 1, Երևան 1925, էջ 13—17) ես արդեն մատնանիշ եյի արել, որ դեռևս Արշակունյաց թագավորության ժամանակ, քրիստոնեության տարածման սկզբնական իսկ շրջանում, հոգևորականությանը տրված են յեղել հատուկ հողաբաժիններ։ Այդ հողաբաժինների վերաբերմամբ, ինչպես պարզ յերևում է վերև առաջ բերված կանոններից, նաև Դվինի ժողովի ութերորդ կանոնից, հոգևորականներն ունեցել են միայն տիրության և օգտագործման իրավունք, իսկ գերագույն սեփականության իրավունքը պատկանել է յեկեղեցուն։ Օգտատիրության (dominium utile) այդ իրավունքը յեղել է ժառանգական, այսինքն՝ այդ հողաբաժինները հոգևորականներն իրավունք են ունեցել թողնել իբրև ժառանգություն իրանց որդիներին կամ մերձավորներին (տես «Կանոնք Դունայ ժողովոյն», Ը, Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանցի, էջ 124—126)։ Հասկանալի յէ, ուրեմն, թէ ինչու Ներսեսի ու Ներշապուհի հինգերորդ կանոնում այդ «հողն ու ջուրը» անվանվում է «հայրենի»։

Հողատիրության այս ձևը, անշուշտ, պայմանական էր։ Հոգևորականները վերոհիշյալ գույքը, հողն ու ջուրը, ստացել էյին իրանց հոգևոր «ծառայութեան» համար։ Ցերթե այդ «ծառայութիւն»-ն աններաժեշտ էր դառնում նրանց տգիտության կամ ծանր հանցավորության պատճառով՝ յեկեղեցին իրավունք ուներ այդ գույքը յետ գրավել և տալ «արժանաւոր»-ներին։

Վաչական արքայի վեցերորդ կանոնը խիստ կարևոր է ու ուշագրավ այն տեսակետից, որ այդ կանոնում հոգևո-

բականներին հատկացված հողաբաժիններն անվանվում է «խոստակ»։ «Խոստակ»-ը, ուրեմն, ինչպես կարելի յե յենթադրել, հիմնվելով վերոհիշյալ բացատրությունների վրա, այն հողաբաժիններն են կամ անշարժ գույքը, վոր հատկացվել են հոգևորականներին նրանց հոգևոր «ծառայության» համար իբրև dominium utile, այսինքն՝ վոչ իբրև լիակատար սեփականություն, այլ ժառանգական ոգտատիրության իրավունքով։ Նույն հողաբաժինների նկատմամբ գերագույն սեփականության իրավունքը (dominium directum), ինչպես պարզ յերևում է վերոհիշյալ վկայություններից, պատկանել է յեկեղեցուն։

Դժվար չե կռահել, վոր հողատիրության այդ ձևը քրիստոնեական յեկեղեցին ընդօրինակած պիտի լիներ նախարարական Հայաստանի բուն կենցաղից։

Պրոֆ. Նիկ. Ադոնցն իր Армения в эпоху Юстиниана աշխատության մեջ (եջ 322, 361 ելն) շատ ուղիղ դիտել է, վոր նախարարական Հայաստանի հիմնական առանձնահատկություններից մեկն այն է յեղել, վոր հայ յեկեղեցին, գտնվելով նախարարական միջավայրի ազդեցության տակ, յուրացրել եր նախարարական կազմակերպության պատրաստի ձևերը և մեծ չափերով յենթարկվել եր ֆեոդալականացման, կամ ավելի ճիշտը՝ նախարարականացման[1]։

Ի նկատի ունենալով այդ ազդեցությունը, ինձ թվում է, կարելի յե յենթադրել, վոր նախարարական Հայաստանում «խոստակ» կարող եյին անվանված լինել բացի վերոհիշյալ հողաբաժիններից նաև այն հողերը կամ անշարժ գույքերը, վորոնք կալվածատեր սյուզերենների կողմից տրվել են «ազատ»-ներին կամ «ոստանիկ»-ներին իբրև dominium

---

[1] Նախարարականացման յենթարկված պիտի լիներ, ինչպես յենթադրում է Մ. Ռոստովցևը, նաև նախաքրիստոնեական հայ յեկեղեցին (տես Studien zur Geschichte des römischen Kolonates, Leipzig 1910, եջ 273)։ Անհավանական չե, ուրեմն, վոր հոգևորականներին տրվող «խոստակ»-ները կարող եյին գոյություն ունեցած լինել նաև հեթանոսական Հայաստանում։

utile. այն պայմանով, որ այս վերջինները հողատու իրանց «տէր»-երի հանդեպ կատարելու էին զինվորական և այլ պատվավոր «ծառայութեան» պարտականություններ։

Այս վերջին իմաստով «խոստակ»-ը կատարելապես համապատասխան կլինի feod-ին (ֆրանս. fief, գերմ. Lehn):

Որ այս ենթադրությունն անհիմն չէ, այդ ցույց են տալիս «խոստակդար» բառի վերաբերյալ վերև առաջ բերված վկայությունները։ Իմ կարծիքով «խոստակդար»-ն այդ վկայություններում նշանակում է «խոստակ»-առու, այսինքն՝ feudatarius, feudataire կամ Lehnshalter:

Պրոֆ. Հ. Հյուբշմանը, ինչպես տեսանք, «խոստակդար»-ը թարգմանում է „Erbe“՝ «ժառանգ», բայց, ի նկատի ունենալով «խոստակ» բառի իր ստուգաբանությունը, ավելացնում է՝ „eigentlich Besitzhalter“՝ «իսկապես կալվածառու»։

Ակադեմիկոս Մ. Բրոսսեն իր „Histoire de la Géorgie“ աշխատության մեջ (Introduction et tables des matières, St. Pétersbourg 1858, էջ LXXXVII) մերժում է Հայկազյան բառգրքի վերոհիշյալ մեկնությունը, որը, ինչպես տեսանք, արդյունք էր սխալ ստուգաբանության, և հենվելով Մ. Դորնի ցուցմունքների վրա՝ ենթադրում է, որ «խոստակ»-ը նշանակում է „richesse“՝ «հարստություն», իսկ «խոստակդար»՝ „un intendant, un surveillant des biens“, այսինքն՝ «վերակացու կամ հարստությունների վրա հսկող»։ Հիմնվելով այս մեկնության վրա՝ «խոստակդար»-ը նա համարում է հոմանիշ «ձեռնաւորի» և թարգմանում է „employé“ «պաշտոնյա»։

Մինչև այժմ ոչ ոք ուշադրություն չէ առել, որ «խոստակ»-ն իրավական իր բովանդակությամբ համապատասխանում է միջնադարյան feod-ին և, հետևաբար, «խոստակդար»-ը պարսկական իր dâr վերջավորությամբ նշանակել է, հավանաբար, «խոստակ»-առու (=գերմ. Lehns-halter): Մինչդեռ այս եզրակացությունը ստացվում է ոչ միայն «խոստակդար» բառի ստուգաբանական վերլուծումով, այլ և Ստե-

փանոս Օրբելյանի վերոհիշյալ վկայությունների ուշադիր քննությամբ։

Ինչպես հայտնի է, Ստեփանոս Օրբելյանն իր պատմության մեջ քաղվածորեն զետեղել է այն վավերագրերի պատճենները, վորոնք վերաբերվում են «Սիսական Նահանգի» յեկեղեցական կալվածներին։ Վերև առաջ բերված բոլոր վկայությունները գտնվում են հենց այդ կարևոր քաղվածքներում։

Այդ վկայություններից յերկրորդը (Ստեփ. Օրբ. էջ 206) վերաբերվում է «Բերդկանիրէչ» գյուղին, վոր 839 թվին Սյունյաց Փիլիպպե իշխանը տվել էր Սյունյաց Տեր Դավիթ յեպիսկոպոսին՝ կեսը «Սառնաքարին փոխան» և կեսը յեկեղեցուն։ Յերրորդ վկայության մեջ ասված է, վոր նույն Փիլիպպե իշխանը 844 թվին նվիրել է Տաթևի նույն Ս. Խաչ յեկեղեցուն Տաթև գյուղը (Ստեփ. Օրբել. էջ 206—208)։ Չորրորդ վկայությունից իմանում ենք, վոր 867 թվին Գուրգենդուխտը՝ Փիլիպպեյի քույրը և Սյունյաց Հրահատ իշխանի կինը, «անորդի գոլով»՝ «Մահ չենը»՝ «զիւր հոգեմասն բաժինն ընծայէ ի սուրբ Խաչն և ի Տէր Սողոմոն» (Ստ. Օրբ., էջ 218—220)։ Վերջապես՝ հինգերորդ վկայությունը վերաբերվում է «Տաթևայ սուրբ ուխտ»-ի սահմաններին, վոր հատուկ վճռով և առանձին գրությամբ վորոշված են յեղել 906 թվին (Ստեփ. Օրբել., էջ 230—234)։

Ուրեմն՝ ինչպես տեսնում ենք, «խոստակդար» բառը հիշատակված է 839, 844, 867 և 906 թվականների Տաթևի վանքի փաստաթղթերում։ Վոր «խոստակդար»-ի նշանակությունն այս վկայություններում վոչ թե «ժառանգ» է կամ «պաշտոնյա», ինչպես յենթադրել են Հյուբշմանը և Բրոսսեն. այլ «ավատառու», այդ հաստատվում է, ինչպես ասացի, հենց նույն վկայությունների ուշադիր քննությամբ։ Վերոհիշյալ վկայություններից յերկրորդում ասված է՝ «և չիշխէ ոք հեռացնել՝ ոչ եղբայր և ոչ որդի և ոչ յիմ խոստակդարաց», իսկ յերրորդում՝ «մի ոք իշխեսցէ յետ իմ անցման,

իմ որդիք կամ եղբարք կամ այլ խոստակդարք հեռացուցանել զայդ գիւղդ»։

Եթե «խոստակդար»-ը հասկանանք առաջին հատվածում իբրև «ժառանգ»՝ կստացվի, իմ կարծիքով, ավելորդ կրկնություն, որովհետև Փիլիպպեի անմիջական ժառանգները, նրա որդիները, հիշատակված են արդեն նույն հատվածի սկզբում։ Նոր Հայկազյան բառգրքի մեկնությունը՝ «թոռունք կամ յետնորդք»՝ թեև հարմարվում է թե առաջին և թե երկրորդ հատվածներին, սակայն այդ մեկնությունը, ինչպես վերը տեսանք, կարելի չէ անտես առնել, որովհետև «խոստակդար»-ի այդ նշանակությունը հիմնված է ստուգաբանական բռնազբոսիկ և սխալ բացատրության վրա։

«Խոստակդար»-ի իմաստը որոշելու համար ավելի կարևոր են չորրորդ և հինգերորդ վկայությունները։

Չորրորդ վկայության մեջ, որ գտնվում է Քուպղիդուխտի 867 թվի պայմանավճռում, ասված է՝ «եւ մի՛ ես և մի՛ իմ եղբօրորդիք և այլ խոստակդարք պայքարել եւ համիմաղ կալ մի՛ իշխեսցեն»։ Քուպղիդուխտը, ինչպես տեսանք, զավակ չուներ, ուստի «խոստակդար»-ն այստեղ ոչ «թոռունք» կարող է նշանակել, ոչ էլ անմիջական ժառանգ։ «Խոստակդար»-ի իսկական իմաստը որոշվում է այս հատվածում փաստական ու կարևոր մի նոր ցուցման օգնությամբ, որ ուշադրության չի առնվել։

Վավերագրերի տակ, որ քաղվածորեն առաջ են բերված Ստեփանոս Օրբելյանի մոտ, սովորաբար, ստորագրել են կամ հիշվում են իբրև վկաներ հենց վերոհիշյալ այն անձինք, որոնցից պահանջվում էր չառարկել կամ չընդդիմանալ նվիրատուի կամքին։ Քուպղիդուխտի փաստաթղթի վերջում ասված է.

> «Եւ դրեցի յ316 թուականութեանս Հայոց վկայութեամբ իմ եղբօրորդեացս՝ տեառն Վասակայ և տեառն Աշոտի և տեառն Գրիգորոյ և տեառն Սահակայ և իրեանց ազատաց և ամենայն Շնհէրեցեաց» (Ստ. Օրբ., էջ 220)։

Վերև հիշված «եղբօրորդիք և այլ խոստակդարք», ինչ-պես տեսնում ենք, այստեղ մատնացույց են արված իբրև վկաներ, սակայն «եղբօրորդիք և այլ խոստակդարք»-ի փոխարեն ասված է՝ «վկայութեամբ իմ եղբօրորդեացս և իւրեանց ազատաց»: Այս զուգադիպումը պատահական չէ, այլ պարզ մի ապացույց է, որ չորրորդ վկայության մեջ «այլ խոստակդարք» են անվանված Բուպլիդուխտի յեղբօրոր-դիների «ազատ»-ները, որոնք «խոստակ»-առու էին, այ-սինքն՝ ավատառու։

Որ մատնանշված զուգադիպումը յեզակի ու բացառիկ չէ, այդ յերևում է և մյուս փաստաթղթերից, որոնք Ստե-փանոս Օրբելյանի մոտ առաջ են բերված առանց կրճատ-ման։ Օրինակ, Փիլիպպեի 844 թվի վճռագրի սկզբում աս-ված էր՝ «և մի ոք իշխեսցէ յետ իմ անցման, իմ որդիք կամ եղբարք կամ այլ խոստակդարք հեռացուցանել զայդ գիւղդ», իսկ նույն վճռագրի վերջում կարդում ենք.

> «Եւ վկայք լիցին աստուածապահ տէր Գրիգոր՝ Սիւնեաց տէր, տէր Ատրներսէհ՝ Վասակայ որդի, Սիւ-նեաց տեառն, տէր Գրիգոր՝ Սահակայ որդի, տէր Հրա-հատ և տէր Արուման՝ Սահակայ որդիք. տէր Հրահատ և տէր Գագիկ՝ Գրիգորոյ Սիւնեաց տեառն որդիք, տէր Վահան՝ Վարդանայ որդի. նոյնպէս և յիմ ազատաց՝ Հուռ, Բուրդոյ, Խոսրով՝ Շապուհոյ որդիք, Ջեանշէր՝ Թէոդորոսի որդի, Աշնակ՝ Վահանայ որդի, Զագիկ՝ Վա-հանայ որդի, Վարդան՝ Ջանադայ որդի, Սահակ՝ Վասակայ որդի, Միհրան՝ Թուրքայ որդի, Ցովհան՝ Ներսէհի որդի, Մուշեղ՝ աէր Տիրոցի որդի, Հասան՝ Շապուհոյ որդի, Վահան՝ Մխիթարայ որդի, աէր Մուշեղ՝ Սմբատայ որդի, աէր Վահան՝ Բաբգենի որդի, աէր Բաբգէն և տէր Վասակ և աէր Աշոտ՝ իմ Փիլիպպէի որդիք. և ի կրօնաւորաց Ահարոն... Եւ վասն առաւել հաստատու-թեան զիմ սովորական մատանիս ի վերայ եդի և զիմ որդեաց և զայլ ազատաց» (Ստ. Օրբ., եջ 207—208)։

Ինչպես Քուպլիդուխտի փաստաթղթում, նույնպես և այս վճռագրում, վերև հիշված «խոստակդար»-ներին ներքևում համապատասխանում են դարձյալ «ազատ»-ները, որոնք Փիլիպպեի ավատառուներն էին։

«Խոստակդար»-ի նշանակությունը իբրև feudataire կամ ավատառու այնքան որոշ է ու ակնբախ այս երկու վճռագրում, որ ես ավելորդ եմ համարում կանգ առնել ուրիշ նման վկայությունների վրա, որ կան նաև մյուս փաստաթղթերում։

Որ «խոստակդար»-ը չունի «ձեռնաւոր»-ի իմաստ, ինչպես ենթադրել է ակադեմիկոս Մ. Բրոսսեն, այդ ես պարզ երևում է վերև մատնանշված հինգերորդ վկայությունից 906 թվի վճռագրում, որով որոշված են եղել Տաթևի շրջակա սահմանները։ Այդ վճռագրի մեջ «խոստակդար»-ը, ինչպես տեսանք, հիշատակված է հետևյալ հատվածում.

> «Եթէ ոք ընդ հակառակս ելանէ ի մերոց կամ յօտարաց, յաւագաց կամ ի ձեռնաւորաց եւ ի խոստակդարաց կամ ի տանուտէրաց, ի սուրբ Երրորդութենէն որոշեալ լիցի, և յերից սուրբ ժողովոցն նզովեալ եղիցի» (Ստ. Օրբ., էջ 233)։

Այստեղ, ինչպես տեսնում ենք, «ձեռնաւոր»-ները հիշվում են առանձին «խոստակդար»-ներից առաջ։ Ուրեմն՝ միանգամայն անվիճելի է, որ «ձեռնաւոր» և «խոստակդար» բառերն ունեցել են տարբեր իմաստ։ Նույն այս հատվածը հետաքրքիր է ու ուշագրավ նաև այն տեսակետից, որ նրա մեջ ըստ ավագության կարգի նախ հիշատակված են «աւագ»-ները և նրանց «ձեռնաւոր»-ները [1], հետո՝ «խոս-

---

[1] Ինչպես հայտնի է, «ձեռնաւոր» են անվանվում ուշ միջնադարի հայկական արձանագրություններում հնագույն շրջանի «գործակալ» պաշտոնյաները։ Այս տերմինը, ինչպես տեսնում ենք, կարող է կապ ունենալ «ձեռական» տերմինի հետ։ Իսկ այս հավանական մի նոր ապացույց է, որ կաթողիկոսության վերոհիշյալ «ձեռական իշխանութիւն»-ը պետք է լիներ «գործակալական իշխանութիւն»։

տակդար»-ները՝ «ուապ»-ների և «տէր»-երի ավատառուները և վերջում՝ «տանուտէր»-ները։ «Տանուտէր»-ները վերջում են դրված, որովհետև այս դարաշրջանում այդ բառը, մեծ մասամբ, գործ է ածվել գյուղապետի իմաստով։

«Ոստակդար»-ի նշանակության այս նոր լուսաբանությամբ վորոշվում է նախարարական կազմակերպության հիմնական առանձնահատկություններից մեկը և վերջնականապես պարզվում է, վոր feod-ը և պայմանական հողատիրությունը նախարարական Հայաստանում գոյություն են ունեցել իններորդ դարում։

Նրա ծագումը սակայն, անշուշտ, ավելի հին է։

«Ոստակ»-ը, ինչպես տեսանք, հանդիպում է նաև Աղվանից Վաչագան արքայի կանոններում։ Մինչև այժմ յենթադրել են, վոր այդ կանոնները ընդունված են յեղել «Աղուէն»-ի ժողովում 488 թվին [1]։ Իրապես՝ այդ ժողովը, ինչպես մանրամասն ցույց ենք տվել «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» մեր աշխատության մեջ (II, Տեղեկագիր Պետ. Համալսարանի, Յերևան 1928, № 4, եջ 50), տեղի յեր ունեցել, հավանորեն, յոթերորդ դարի սկիզբներում։

«Ոստակ»-ի և «խոստակադար»-ների գոյությունը կարելի չէ սակայն յենթադրել նաև VII դարից առաջ՝ թե մարզպանության և թե Արշակունյաց թագավորության ժամանակ։

Վերև մենք արդեն տեսանք, վոր յեկեղեցականների պայմանական հողատիրությունը, վոր առաջ յեկած պիտի լիներ նախարարական կարգերի ազդեցությամբ, կարող է սկիզբ առած լինել չորրորդ դարում։ Այդ արդեն ուշադրավ մի ակնարկ է, վոր պայմանական հողատիրությունը գոյու-

---

[1] Տես Մ. Չամչյան, Պատմություն Հայոց, Բ, եջ 219. M. Brosset, Histoire de la Géorgie, Additions, St.-Pétersbourg 1851, եջ 473. Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris 1900, եջ 357. Նաև իմ աշխատության մեջ՝ Beiträge zur albanischen Geschichte, Leipzig 1897, եջ 28։

թյուն ունեցած պիտի լիներ՝ իբրև մանր ազնվականության ավատական հողատիրություն՝ նաև այդ հնագույն դարա-շրջանում։

Նույն այդ յենթադրության հիմք կարող ե ծառայել «խոսաակ»-ի և «խոստակդար»-ի ստուգաբանական ծագումը պարթևերեն xʷâstak և xʷâstakdâr բառերից։ Այս տերմին-ները, լինելով Արշակունյաց շրջանի փոխառություն, նրանց հնությունը կարող ե դարձյալ հավանական մի ցուցանիշ համարվել, վոր Նախարարական Հայաստանում feod «խոս-տակ»-ը և feudataire «խոստակդար»-ը գոյություն են ունեցել վոչ միայն 9-րդ և 7-րդ դարերում, այլ նաև մարզպանական և Արշակունյաց ժամանակներում։

Հիմնվելով ուշագրավ ու կարևոր այս դիտողություն-ների վրա, ինձ թվում ե, ավելի քան հավանական պետք ե համարել, վոր «ազատ»-ների և «ոստանիկ»-ների մեծագույն մասը Նախարարական Հայաստանում յեղել են «խոստակդար»-ներ, այսինքն՝ ստացած են յեղել Նախարարական շրջաննե-րում և արքունի յերկրում վորոշ հողաբաժիններ կամ անշարժ գույք օգտատիրության իրավունքով (dominium utile) և հատուկ պայմանով, վոր հողատու իրանց «տէր»-երի հանդեպ ստանձնելու եյին զինվորական և այլ պատվավոր «ծառա-յութեան» պարտականություններ[1]։ Ի նկատի ունենալով, վոր յեկեղեցական «խոստակ»-ները համապատասխան պիտի լինեյին աշխարհիկ «խոստակ»-ներին, կարելի յե, իմ կար-ծիքով, յենթադրել, վոր «ազատ»-ների և «ոստանիկ»-ների

---

[1] Յոթերորդ դարից հետո, ինչպես հայտնի յե մեծ չափեր եր ստա-ցել հայերի գաղթը Փոքր Ասիա։ Այստեղ ես ֆեոդալական Հայաստանի «ազատ»-ները, վորոնք անվանվում են στρατιῶται և ἄκριτοι, ստանում եյին մանր կալվածներ և բյուզանդական կայսրության հանդեպ ստանձնում եյին զինվորական ծառայության պարտականություններ։ Բյուզանդիայի թեմական ու զինվորական կազմակերպության վորոշ առանձնահատկու-թյունները վերագրվելու յեն ըստ իս հայկական ֆեոդալիզմի ազդեցու-թյան։ Այդ տեսակետից առանձնապես կարևոր ե բյուզանդական այն հա-տուկ օրենքների ուսումնասիրությունը, վորոնք վերաբերվում են վերո-հիշյալ զինվորականների արտոնություններին։

«խոստակ»-ները ևս համարվել են ժառանգական և «հայրենի»։

«Խոստակ» և «խոստակդար» տերմինների մեր նոր լուսաբանությունն անսպասելի նոր հնարավորություններ է ընձեռում մասնագետ իրանագետներին հետազոտություններ կատարելու այս ուղղությամբ։

Հ. Հյուբշմանը մատնանիշ է արել, որ $x^v$ âstakdâr-ը Pandnama i Adarbad Maraspand յերկում նշանակում է «ժառանգ» (der Erbe, Arm. Gram., եջ 161)։ Ճի՞շտ է արդյոք որոշված այդ բառի իմաստը։ Ինձ թվում է, որ պարթևական այդ բառն իր նշանակությամբ կարող է համապատասխան լինել հայերեն «խոստակդար»-ին։ Ավելի քան հավանական է, որ feod «խոստակ»-ը, ինչպես և ավատատիրական վերոհիշյալ կարգերը, գոյություն ունեցած պիտի լինեյին պարթևների մոտ, նաև, հավանորեն, Վրաստանում, Աղվանքում և Սասանյան Պարսկաստանում։

Պատմագիտական բոլոր թե հին և թե նոր ուսումնասիրություններում, հիմնվելով Պլուտարքոսի և Յուստինուսի վկայությունների վրա՝ (Justinus, Epit. histor. Philipp. Pompei Trogi, lib, XLI, II, 2, 5 ևն և Plutarchos, Crassus XXI)՝ յենթադրել են, որ պարթևների հեծելազորքը կազմված է յեղել, գլխավորապես, ստրուկներից։ Հիմնվելով այս յենթադրության վրա, պատմագետներն ընդունում են այժմ, որ պարթևական պետությունն իբրև սոցիալական-տնտեսական կազմակերպություն ունեցել է, հավանորեն, ստրկատիրական բնույթ։

Այս պնդումները, ինչպես մանրամասն ցույց եմ տվել ռուսերեն իմ աշխատության մեջ („Заметки о феоде и феодальном войске Парфии и Аршакидской Армении“, Тифлис 1932), միանգամայն սխալ են։

Բանասերները և պատմագետներն ուշադրություն չեն առել, որ Յուստինուսի և Պլուտարքոսի վերոհիշյալ վկայությունների մեջ servitia և δοῦλοι, որ գործ են ածված Անտոնիոսի և Կրասոսի դեմ պատերազմող պարթևական

*գործերի համար, ունեն* servus-*ստրուկի ո՛չ թե սովորական իմաստ, այլ համապատասխանում են «ծառայ,* servus, слуга" *ֆեոդալական տերմիններին և նշանակում են* servus-*«ծառայ» վասսալի իմաստով։ Պարթևական ձիավորներին Յուստինուսը և Պլուտարքոսն անվանել են* servitia *և* δοῦλοι, *որովհետև նրանք, լինելով «ազատ»-ներ, «ծառայ» էին կամ վասսալ պարթևական նախարարների։*

*Մատենագրական հայ աղբյուրների քննությամբ այդ վկայությունները ստանում են բոլորովին նոր իմաստ և պարզ ու որոշ հաստատվում է, որ Պարթև Արշակունիների հեծելազորքը, նման ու համապատասխան լինելով Հայ Արշակունիների «ազատազօրք»-ին, կազմված է յեղել, գլխավորապես, այն «ազատ»-ներից, վորոնք «խոստակդար» էյին* (=feudataire, Lehnsträger) *կամ արքունիքի և կամ մյուս մեծ իշխանությունների։*

*Անհրաժեշտ է սակայն մատնանշել, վոր Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ բացի «ազատազօրք»-ից գոյություն է ունեցել մարզպանական Հայաստանում նաև հատուկ հեծելազորք, վոր կազմված է յեղել «ռամիկ»-ներից։ Այդ հեծելազորքի մասին կան կարևոր ցուցումներ Ղազար Փարպեցու պատմության մեջ և Դվինի ժողովի կանոններում.*

*1. Փարպեցի,* III, *գլ. 78, Տփղիս 1904, եջ 144՝*

*«Եւ տեսեալ սպարապետին Հայոց Վահանայ զայսչափ բազմութիւն զօրացն Պարսից, և այլ նախարարացն Հայոց որ ընդ նմա էին, և* այլ ռամիկ այրուձիոյն Հայոց».

*2. «Կանոնք Դունայ Ժողովոյն», Վաղարշապատ 1905 (հրատար. Մխիթար վարդապետի և Սիրական Տիգրանյանի), եջ 23՝*

*«ոմանք յազատաց և* յռամիկ ճեծելոց *հասանելով ի գիւղս ուրեք՝ թողեալ զգիւղն ի վանս առնեն զիջևանս և ի յարկս ողբոց»։*

*Ինձ թվում է, որ այս «ռամիկ այրուձի»-ն, որ հիշատակված չէ հնագույն աղբյուրներում, առանձնապես կարևոր նշանակություն էր ստացել, գլխավորապես, այս ժամանակաշրջանում։ Սասանյան Պարսկաստանը, ինչպես հայտնի յէ, հայկական հեծելազորքն ուղարկում էր հաճախ պատերազմելու իր հեռավոր արևելյան սահմանները։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յէ, որ հայ ազնվականությունն ամեն կերպ աշխատելու յեր խուսափել ու ազատվել այդ նոր ու խիստ ծանր պարտականությունից։ Հայ «ազատազորք»-ը հենց ինքը, հավանորեն, շահագրգռված էր, որ այդ ծանր զինապարտությանը մեծ չափերով մասնակից լինեն նաև «ռամիկ»-ները։*

*Հետաքրքիր է ու ուշադրության արժանի, որ ֆեոդալական Կիլիկիայում ևս, ինչպես հայտնի յէ Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքից, գոյություն էն ունեցել «ձիաւորք որ ի Հայս ազատ կոչին» և «ցած հեծելվորք» կամ «ցած շինականք հեծելվորք» (տե՛ս* J. Karst, Sempadscher Kodex aus dem 13 Jahrhundert, I, *էջ 103—105 և* II, *էջ 95—97)։ Սմբատի Դատաստանագրքի 70-րդ կանոնից պարզ յերևում է, որ «շինական հեծելվոր»-ներին զինվորական այդ ծառայության համար տրվել էն տնտեսական ու իրավական առանձին արտոնություններ։ Ըստ յերևույթին, որոշ արտոնություններ ունեցել էն նաև մարզպանական Հայաստանի «ռամիկ հեծեալ»-ները։*

*Որ այս «ռամիկ» զինվորները սոցիալական ավելի բարձր դիրք էն ունեցել քան հասարակ «շինական»-ները՝ այդ կարելի յէ կռահել Ատովմի, Նրա որդու ու ընկերների վկայաբանության վրացերեն թարգմանությունից, որի մեջ հիշված էն այս «ռամիկ հեծեալ»-ները և «ռամիկ» բառը թարգմանված է «չինեբուլի», որ նշանակում է «ականաւոր» (տե՛ս* (Джавахов, Государственный строй древней Грузии и древней Армении, *էջ 133)։*

*Միջնադարյան Յեվրոպայում վասալները, ստանալով սենյորներից ազատության իրավունքով հատուկ հողա-*

բաժիններ կամ անշարժ գույք, վո՛չ միայն ստանձնում եյին իրանց «տէր»-երի հանդեպ զինվորական պարտականություններ, այլ և պարտավոր եյին ոգնել նրանց խորհուրդով (consilio) ժողովներում, նաև մասնակցելու եյին սենյորիալի վարչական ու դատական գործերին։ Ավատառուների այս պարտականությունները, վոր տարբեր եյին, ինչպես կըտեսնենք, գյուղացիության ու ռամիկ ժողովրդի պարտականություններից, համարվում եյին ազնիվ՝ «ծառայություն»։

Արդ՝ ուշագրավ է խիստ ու հետաքրքիր, վոր Նախարարական Հայաստանում ևս նման պարտականություններ ունեցել են «ազատ»-ները և «ոստանիկ»-ներն իրանց «տէր»-երի հանդեպ։

Վերև մենք տեսանք, վոր ընդհանուր աշխարհաժողովներին նախարարների հետ միասին մասնակցում եյին հաճախ նաև «ազատ»-ները։ Պետք է յենթադրել, վոր Նախարարական յերկիրներում ևս գումարվել են նույնպես տեղական ժողովներ մասնակցությամբ «ազատ»-ների։

Մենք հիշել եյինք նույնպես, վոր Արշակունյաց արքունի ամենակարևոր «գործակալություն»-ները հանձնարարված են յեղել «աւագ նախարարութիւն»-ներին և կաթողիկոսությանը, իսկ գործակալական մանր պաշտոնները՝ մանր ազնվականությանը։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր նախարարական յերկիրները ևս ունեցել են իրանց «գործակալութիւն»-ները, վորոնք, հավանորեն, հանձնված են յեղել, գլխավորապես, «սեպուհ»-ներին և «ազատ»-ներին։

Փավստոսը, նկարագրելով Արշակունյաց թագավորության վերահաստատումն Արշակ թագավորի ժամանակ, արքունի «գործակալ»-ների մասին տալիս է հետևյալ կարևոր վկայությունը.

Փաւստոս, IV, Բ, եջ 67—68 (Վենետիկ 1889)՝

> «Եւ նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս և զառաջինսըն. մեծամեծքն յիւրաքանչիւր գահու և գործակալութեան յիւրաքանչիւր չափու:........ Եւ այլ յայսմ ազգաց և ի

*խոնարհ՝ որ գործակալս անուն բարձիւք առաջի արքային պատիւ. ի գլուխ բազմէին, թող զնահապետս մեծամեծս եւ զտանուտերս, որք գործակալք միայն էին ինն հարիւր բարձ, որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեանն բազմակալացն կարգելոց, թող զտանկայս գործակալութեանն սպասու»*[1]։

*Հիմնվելով այս վկայության վրա՝ բանասերներից վոմանք յենթադրել են, վոր Արշակունիների ժամանակ գոյություն ե ունեցել Հայաստանում մոտ 900 նախարարական ընտանիք։ Ադոնցը թեև ընդունում ե նույնպես, վոր Փավստոսի այս տեղեկությունը վերաբերվում ե բացառապես նախարարական դասին, սակայն չափազանցություն ե համարում Փավստոսի 900 թիվը և միաժամանակ մատնացույց ե անում, վոր նախարարական միևնույն տոհմից կարող եյին լինել մի քանի «գործակալ»-ներ* (Армения в эпоху Юстиниана, *եջ 239 և 467—468)*։

*Արդ՝ ճի՞շտ ե արդյոք, վոր Փավստոսի վկայությունը վերաբերվում ե բացառապես նախարարական տոհմերին և նրանց թվին։ Հավանական ե արդյոք, վոր վերոհիշյալ արքունի «գործակալ»-ները յեղել են, անպայման, նախարարական դասից։*

*Յենթադրել վոր պալատում ներկա գտնվող բոլոր «գործակալ»-ները նախարարներ եյին՝ այդ, անշուշտ, քմահաճ ու բռնազբոսիկ մի բացատրություն ե, վոր բնավ չի հետևում Փավստոսի վկայության բովանդակությունից։ Ըստ իս՝ Արշակունյաց արքունիքում և արքունի յերկրում Հայաստանի ավագ նախարարություններին հանձնված են յեղել միմիայն ամենաբարձր «գործակալություն»-ները, իսկ յերկրորդական կարգի պաշտոնները վարել են, գլխավորապես, «ազատ»-ները կամ «ոստանիկ»-ները։*

*Հավանական ե, ուրեմն, վոր Փավստոսի հիշած «գործակալ»-ների մեծագույն մասը վոչ թե նախարարներն եյին,*

---

[1] *Կետադրությունը փոխել ենք համաձայն Նիկ. Ադոնցի ուղղումների. տես* Армения в эпоху Юстиниана, *եջ 239*։

այլ «ոստան»-ի մանր ազնվականները։ Հետաքրքիր է առանձնապես, որ Սասանյան Պարսկաստանում ևս, ինչպես մատնացույց է արել Christensen-ը, վարչական ստորին պաշտոնները վարում եյին āzāt-ները (տես L'empire des Sassanides, եջ 44)։

Շահապիվանի ԺԶ կանոնում ասված է, որ «առանց դատաւորի եպիսկոպոսին չիշխէ լինել եպիսկոպոս կամ երէց, կամ ազատ ոք դատաւորաց» (Կանոնագիրք Հայոց, հրատարակ. Ա. Ղլաճյանի, եջ 76)։ Այս հատվածում հիշվում են, ինչպես տեսնում ենք, իբրև դատավորներ հատկապես «ազատ»-ները։

Զպետք է իհարկե կարծել, որ «ազատ»-ները և «ոստանիկ»-ները բոլորն էլ յեղել են «խոստակգար»-ներ։ Նրանք կարող եյին ունեցած լինել վոչ միայն «խոստակ»-ներ, այլ և կալվածներ ժառանգական լիակատար սեփականության իրավունքով, որ միջնադարյան Յեվրոպայում անվանվում եյին allod։

Նիկ. Ադոնցի կարծիքով. Մերովինգյան շրջանի allod-ը համապատասխանում է այն ժառանգական տոհմային կալվածներին, որ Հին Հայաստանում կոչվում եյին «հայրենիք»[1] (Армения в эпоху Юстиниана, եջ 457 --458)։ Խաչիկ Սամվելյանը սակայն՝ «հայրենիք» կամ «հայրենական» համարում է այն հողերը, վորոնք՝ նման միջնադարյան feodum-ին՝ տրվել են իբրև ժառանգական սեփականություն («Մխիթար Գոշի Դատաստանագիրքն», Վիեննա 1911, եջ 294)։ Ուշագրավ է, իրոք, վոր բացի իսկական allod-ներից, վորոնք անվանվում են «հայրենիք», նաև feod—«խոստակ»-ը, վորը ժառանգական ոգտատիրության իրավունքով տրված է յեղել յեկեղեցականներին՝ «Ներսեսի կաթուղիկոսի և Ներշապհոյ

---

[1] Յեղիշեյի մոտ հիշատակված են յերկիրք՝ «հայրենիք», «պարգեւականք» և «քսակագինք» հետևյալ վկայության մեջ՝ «Այնպէս և երկիրք եթէ հայրենիք, եթէ պարգեւականք և եթէ քսակագինք, և հանեալ ուրուք իցէ, հրամայեցաք զի դարձցին» (Վենետիկ 1852, III, եջ 147)։

*Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոնում անվանված է «հայրենի»[1],*

*«Ազատ»-ների և «ոստանիկ»-ների սոցիալական ու տնտեսական դրությունը պարզելու համար կարող են իբրև կռվան ծառայել Շահապիվանի կանոնները տուգանքների մասին, որ վճարելու էին հանցապարտ «ազատ»-ները և «շինական»-ները։*

*Համաձայն այդ ժողովի Գ, Ե, Է, Թ և ԺԱ կանոնների սահմանված էին դրամատուգանքներ հետևյալ հարաբերությամբ։*

> *1. Ամուսնությունը պոռնկությամբ պղծող «ազատ»-ից 200 դրամ, իսկ «շինական»-ից՝ 100 դրամ, որ տրվելու էին կարոտյալներին (Կանոն Գ).*
>
> *2. Ամուսնացած կնոջից բաժանվող «ազատ»-ից 1200 դրամ, իսկ «շինական»-ից 600 դրամ, որ տրվում էր կնոջը (Կանոն Ե).*
>
> *3. Աղջիկ առևանգող «ազատ»-ից 1200 դրամ («փոխանակ անարգանացն»,) իսկ շինականից՝ 600 դրամ (Կանոն Է).*
>
> *4. Հարցուկներին դիմող «ազատ»-ից 200 դրամ, իսկ «շինական»-ից՝ 100 դրամ, որ տրվելու էին կարոտյալներին (Կանոն Թ).*
>
> *5. Մեռելների վրա կոծ դնող «ազատ»-ից 100 դրամ, իսկ «շինական»-ից՝ 50 դրամ, որ բաշխվելու էին աղքատներին (Կանոն ԺԱ)։*

*Բոլոր հիշյալ դեպքերում տուգանքների հարաբերությունն է 2 առ 1։ Այս հարաբերությունը կարող է, անշուշտ, ուշագրավ մի նշան համարվել, որ հինգերորդ դարի առաջին կեսում, երբ սահմանված էին այդ կանոնները, «ազատ»-ների սոցիալ-տնտեսական դրությունը, թեև տարբեր է եղել «շինական»-ների դրությունից, սակայն այդ տարբերությունը, հավանորեն, մեծ չի եղել։*

---

[1] *«Հայրենիք» ու «հայրենի» տերմինների նշանակության ճշտումը կարոտ է բոլոր իր հատուկ ու ավելի մանրամասն քննության։*

«Ազատ»-ների և «ոստանիկ»-ների մեծագույն մասը, վորոնցից կազմված եր Հայաստանի հեծելազորքը և ստորին պաշտոնեությունը, ունեցել ե, ըստ յերևույթին, համեմատաբար փոքր կալվածներ։ Հետևաբար՝ «խոստակ»-ները ևս վոր տրվում եյին նրանց՝ մեծ չպիտի լինեյին։ Տնտեսական իր հզորությամբ ազնվական այս դասը կարող ե մոտավորապես համեմատվել միջնադարյան Անգլիայի eorl-երի հետ, վորոնց վճարում եյին արնագին յերկու անգամ ավելի, քան գյուղացիներին կամ coerl-երին։

Շահապիվանի կանոնների այս քննությունից կարելի յե, ինչպես տեսնում ենք, վստահորեն հետևցնել, վոր «ազատ»-ները և «ոստանիկ»-ները նախարարական Հայաստանի հողատեր մանր ազնվականներն են, միանգամայն տարբեր նախարարական իշխանական ու խոշոր կալվածատեր դասից։

«Ազատ»-ների ու «շինական»-ների իրավական ու կենցաղային տարբեր կացության մասին մատենագրական աղբյուրների մեջ կան միայն մի քանի միջանկյալ, բայց հետաքրքրական ցուցումներ։

Հանցավոր «ազատ»-ները, ինչպես պարզ վկայում են Շահապիվանի կանոնները, չեն յենթարկվել մարմնական պատիժների։ Նմանապես՝ նրանց չեր կարելի ուղարկել աշխատանքի գուբնոց կամ ուրկանոց։ Հանցանք գործելիս, նրանք վճարում եյին միայն դրամատուգանքներ։

«Ազատ»-ների նկատմամբ այդ հատուկ բացառությունները շեշտված են հետևյալ կանոններում՝

1. «Կանոնք Շահապիվանի Ժողովոյն» (հրատ. Ա. Ղլտճյանի), Գ, եջ 63՝

«Եթէ ազատ է և զան չէ մարթ հարկանել, ի տուգանն և յապաշխարութիւնն յաւելցեն».

2. Կանոն Ե, եջ 65՝

«Ապա թէ ազատ է և ի գոդենոցն չերթայ, Ճ դրամ տուգան տացէ գոդեացն».

3. Կանոն Ժ, էջ 68՝

«Ապա եթէ ազատ է և ի գողենոց չերքայ՝ Շ դրամ տացէ գողեացն».

4. Կանոն ԺԲ, էջ 70՝

«Ապա եթէ ազատ է ի գողինն չերքայ, Յ դրամ տացցէ նոցա»։

Ուշադրության արժանի է նաև, վոր Փարպեցու և Յեղիշեյի մոտ «ազատ»-ներն անվանվում են «որսատենչ»(Փարպ. I, Է, էջ 10), «փափկացեալ» (Յեղիշե, Վենետիկ 1864, III, էջ 115)։ Իրանց արտաքին տեսքով, ինչպես վկայում է դարձյալ Փարպեցին, «ազատ»-ները տարբերվել են «շինական»-ներից (III, ՀԷ, էջ 142)։

## 6. ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐԻ ԴԱՍԸ ՎՈՐՊԵՍ «ԱԶԱՏԱՑ ՏՈՀՄ»

*Միջնադարյան Եվրոպայում ֆեոդալական աշխարհիկ կարգերը և ֆեոդալականացման զորեղ հոսանքը խորապես ազդել էին քրիստոնեական եկեղեցու զարգացման վրա, տալով նրա վարչական ու տնտեսական կազմակերպությանը ֆեոդալական ձևակերպում և հատուկ գունավորում։*

*Նույնը, բնականաբար, մենք տեսնում ենք նաև Հին Հայաստանում։*

*Այստեղ ես, ինչպես մատնացույց է արել Նիկ. Ադոնցը* (Армения в эпоху Юстиниана, *էջ 322—370), հայ եկեղեցին, գտնվելով նախարարական Հայաստանի միջավայրում, մեծ չափերով ենթարկվել էր նախարարական կարգերի ազդեցության[1]։ «Եկեղեցու ազգայնացումը—ասում է Ադոնցը—համազոր էր նրա նախարարականացման կամ ֆեոդալականացման. որովհետև քաղաքական վարչակարգը Հայաստանում ուներ ֆեոդալական բնույթ և իշխանությունը բաժանված էր բազմաթիվ իշխանական տոհմերի մեջ, բնականաբար, նաև եկեղեցական իշխանությունը պիտք է համակերպվեր ներգործող միջավայրին և ընդուներ նույն միջավայրի պատրաստի ձևերը» (էջ 361)։*

*Եվ իրոք՝ ինչպես քաղաքական իշխանությունը, նույնպես և եկեղեցականը, ապակենտրոնացած և բաժանված են եղել Հին Հայաստանում ըստ նախարարությունների, և*

---

[1] *Այդ ազդեցությանը, ինչպես ճիշտ դիտել է Մ. Ռոստովցևը, ենթարկված է եղել նաև հեթանոսական հայ եկեղեցին, որից ծագել էր քրիստոնեական եկեղեցին, ժառանգելով վերջինիս կալվածները և հարստությունները, տես* Studien zur Geschichte des römischen Kolonates, Leipzig 1910։

բացի արքունի երկրից կամ «ոստան»-ից նաև մյուս մեծ ու առաջնակարգ «տէրութիւն»-ներում գոյություն են ունեցել առանձին եպիսկոպոսություններ։

Համաձայն Ադոնցի քննության՝ այդ եպիսկոպոսներից արքունի «ոստան»-ի եպիսկոպոսապետը կամ կաթուղիկոսը մյուս եպիսկոպոսների հանդեպ ունեցել է նույն դիրքը, ինչ որ թագավորը նախարարական շրջանների իշխանների հանդեպ։ Եպիսկոպոսները, ինչպես և նախարարական երկիրների իշխանները, անվանվել են «տէր» և համարվել այդ երկիրների հոգևոր ներկայացուցիչները։

Նախարարական միջավայրի ազդեցությանը պետք է վերագրել, որ հոգևորականությունը Հին Հայաստանում, ընդհանուր առմամբ, նույնպիսի փակ, կղզիացած մի դաս է եղել, ինչպես և «նախարար»-ների, «ազատ»-ների ու «շինական»-ների դասերը։

Արշակունիների ժամանակ, ինչպես վկայում է Փավստոսը, կաթողիկոսությունը, ավելի ճիշտ՝ եպիսկոպոսապետությունը, ժառանգական է եղել Գրիգոր Լուսավորչի և Աղբիանոսի ընտանիքներում։ Նույնը կարելի է ենթադրել նաև նախարարական ինքնուրույն շրջանների եպիսկոպոսությունների մասին։ Քահանայության ժառանգական լինելը թե հնագույն և թե հետագա դարերում հայտնի է ազգային եկեղեցական ժողովների կանոններից։

Հոգևոր կոչման այդ ժառանգականությունը, որ խիստ օտարոտի էր և արտասովոր քրիստոնեական ընդհանուր եկեղեցու տեսակետից, քննության է առնվել Տրուլլի 692 թվի ժողովում և անհանդուրժելի համարվել իբրև նմանողություն հրեական սովորույթի։ Իրապես, հայ եկեղեցու այդ առանձնահատկությունը ոչ թե հետևություն էր կամ ազդեցություն հրեական ժառանգական քահանայապետության, ինչպես այդ ենթադրել են Գելցերը («Համառօտ պատմութիւն Հայոց», թարգմ. Գր. Գալեմքյարյանի, Վիեննա 1897, էջ 43) և Կարստը (Sempadscher Kodex, Strassburg 1905, Bd. II, էջ 43—44), այլ արդյունք էր Հին Հայաստանի

սոցիալական ու ներքին պայմանների և յեկեղեցական դասի ֆեոդալականացման կամ նախարարականացման[1]։

Վոր հոգևորականներն առանձին ինքնամփոփ մի դաս եյին ընդհանրապես, այդ յերևում ե մասամբ նաև յեկեղեցականներին վերաբերյալ հատուկ տերմիններից՝ «ժառանգաւորք եկեղեցւոյ», «տոհմ քահանայից», «ժառանգութիւն քահանայական» ևն.։

Մեջ ենք բերում յեկեղեցական իշխանությունների ժառանգականության մասին մի քանի ուշագրավ վկայություններ.

1. Փաւստոս, IV, Գ, եջ 72 (Վենետիկ 1889)՝

«Վասն այսորիկ յիրաւի արժանի եղև սա [Ներսէս] աթոռոյն հայրապետաց և տեղւոյ հարցն իւրոց առաջնոց».

2. Խորենացի, III, ԽԹ, եջ 320՝

«Յետ այսր վախճանելոյ եպիսկոպոսապետն Ասպուրակէս, ի տեղի նորա յաջորդէ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսիսի, որդւոյ Աթանագենի, որդւոյ Յուսկան, որդւոյ Վրթանիսի, որդւոյ սրբոյն Գրիգորի».

3. Նոյնը, III, ԿԶ, եջ 354՝

«Յայնժամ ժողովեալ ի միասին ամենայն նախարարացն՝ չոգան առ մեծն Սահակ, և զմեղանս յանձն առեալ՝ աղաչէին զնա դարձեալ ունել զաթոռն. խոստանային ի Պարսից արքայէն հաստատել զնա, մուրհակ ամենեցուն կնքեալ՝ ազգաւ տալ թոռանց նորա զնոյն իշխանութիւն».

4. Նոյնը, III, ԿԳ, եջ 349՝

«Բայց Սուրմակայ ոչ աւելի տևեալ քան զմի ամ՝ ի նոցին իսկ նախարարացն հալածեցաւ յաթոռոյն. որ ապա զիւրոյ գաւառին զԲզնունեաց զեպիսկոպոսութիւնն ի Պարսից արքայէն եդիտ ունել ազգաւ».

---

[1] Տես Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 369։

5. Ղազար Փարպեցի, I. ԺԴ, էջ 23՝

«Եւ այնուհետև միաբանեալ գնացին ի դուռնն, և երթեալք անդր յանդիման եղեն արքային Պարսից Վռամայ։ Ընդ որս էր և երէց մի Սուրմակ անուն ի գաւառէն Բզնունեաց, ի գեղջէն որ կոչի Արծկէ, ի տոհմէ քահանայից գաւառին».

6. «Կանոնք Դունայ ժողովոյն», Ը, (հրատ. Ղլտճյանի, էջ 124—125)՝

«Եթէ ոք այր կամ կին ի ժառանգաւորաց սրբոյ եկեղեցւոյ անորդի իցէ, ի կենդանութեան իւրում իշխան լիցի ինքն ունել զամենայն և անցեալ ըստ ինքն ի մերձաւորացն մի՛ իշխեսցէ հեռացուցանել զհող և զջուր և զամենայն շնորհս եկեղեցւոյն».

7. Նոյնը, Ե, էջ 123՝

«Արդ իւրաքանչիւր ոք զհարանց ժառանգութիւնն կալցի և սրբոյ եկեղեցւոյ պաշտամանն հաստատ կացցէ և վարդապետին ի հնազանդութեան՝ ամենայն յօժարութեամբ».

8. «Կանոնք Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», Թ (հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 110)՝

«Եւ այժմ, թէ գտցի ոք արարեալ ի նմին վնասու, ի բաց որոշեալ լիցի ամենայն տամբ իւրով ի քահանայական ժառանգութենէն ամենևին»։

Իբրև սոցիալական անջատ մի խմբակցություն՝ հոգևորականությունը դասված է եղել ազնվականների շարքում և իր ապահարկությամբ հավասարված է համարվել «ազատ»-ների դասին։

Աղբյուրների մեջ շեշտվում է հաճախ, որ Տրդատ Թագավորը և Գրիգոր Լուսավորիչը հայոց եկեղեցին համարել են «ազատաց տոհմի» կարգում։ Եկեղեցու այդ «ազատություն»-ը հասկացվել է, գլխավորապես, իբրև ազատություն այն հարկերից, որ պարտավոր էին տալ «շինական»-ները։

Հոգևորականության սոցիալական դրության տնտեսա-

կան այդ կողմը միանգամայն պարզ յերևում է մատենագրական հետևյալ վկայություններից.

1. Եղիշե, II, էջ 75 (Վենետիկ 1864)՝

«Նա և ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց ի սկզբանէ, և դու ընդ հարկաւ եդիր»։

2. Նույնը, II, էջ 38—39՝

«Թէպէտ և ի վերին երեսս կեղծաւորէր [Դենշապուհ], այլ ի ներքոյ խորհուրդք չարագոյն ցուցանէին. Առաջին՝ զազատութիւն եկեղեցւոյն արկանէր ի ծառայութիւն. երկրորդ՝ միայնակեաց քրիստոնեայք՝ որ բնակեալ էին ի վանորայս, ընդ նովին աշխարհագրաւ էարկ»։

3. «Կանոնք Ս. Սահակայ Հայոց հայրապետի», III, ՀԸ, (հրատ. Ա. Ղլտճյանի, տես «Կանոնագիրք Հայոց», էջ 34—35)՝

«Իսկ ի վանս բնակեալք..... անյապաղ զպաշտաման կատարել զկարգ՝ զխաղաղութիւն խնդրելով ամենայն աշխարհի, և զեղջ շինութիւն և զառողջութիւն ի տուէ և ի գիշերի բաղում արթնութեամբ. վասն այսորիկ ազատ յամենայն հարկապահանջ իշխանաց սահմանս ընկալաւ եւ անդս և երիցագոյն պատիւ ժառանգեաց յուխտի սրբութեան եկեղեցւոյ»։

4. «Կանոնք Դունայ ժողովոյն», Ե (հրատ. Ղլտճյանի, էջ 123)՝

«զի ժառանգութիւն սրբոյ եկեղեցւոյ իբրեւ զազատութիւն է, զոր երանելոյ սրբոյն Գրիգորի և թագաւորին մերոյ Տրդատայ զատուցեալ են»։

5. Նույնը, Թ, էջ 126՝

«զի երանելոյն Գրիգորի և սրբոյն Տրդատայ զսուրբ եկեղեցւոյն ժամկոչնս ընդ ազատաց տոհմին են կարգեալ, և ազատ էին սրբոյ եկեղեցւոյ հող եւ ջուր. Նաև ի Պարսից իսկ տէրութեանն յայտ արարեալ և չէ խառնեալ ի շինական իշխանութիւնն. զերիցունեաց տունսն

ի դիւանին եդեալ են, բայց միայն զհասն տալ յար-քունիս»։

Նույն այս կանոնը Մխիթար Գոշի խմբագրությամբ (տես Դատաստանագիրք, I, ԺԶ, էջ 215—216)՝

«Զի երիցս հրանելոյն սրբոյն Գրիգորի և երա-նելոյն Տրդատայ թագաւորի զուրբ եկեղեցւոյն զժա-ռանգութիւնն ընդ այլ ազատաց աւնս կարգեալ է եւ ազատ էին սրբոյ եկեղեցւոյն հողովն եւ ջրովն: Եւ ի Պարսից թագաւորութեան ժամանակս թէպէտ և ի պե-կար արկին, սակայն տուրն ի դիւանի յայտնի է և չէ խառնեալ ի շինականս, բայց միայն զհարկսն տայրն յարքունիսն»։

Մի կողմ թողնելով այս հատվածների մութ կետերը հասի և պեկարի մասին, որ մենք մանրամասն քննել ենք մեր նախորդ աշխատություններում (տես Հայաստանի ար-քունի հարկերը մարզպանության շրջանում» և «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության», Տե-ղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, 1926, № 1, էջ 31, 32—37 և 1927, № 2, էջ 35—37), նույն հատվածների բո-վանդակությունից կարող ենք հետևցնել, որ Արշակունյաց ժամանակ, Տրդատ Մեծից սկսած, յեկեղեցականները հարկ չեն վճարել ո՛չ Արշակունի թագավորներին, ո՛չ էլ կալվա-ծատեր իշխաններին։

Ցեղիշեյի վերոհիշյալ վկայություններից պարզ յերևում է, որ հայ յեկեղեցու ապահարկությունն արքունի հարկերի նկատմամբ վոչնչացված է յեղել Պարսկական Հայաստանում Հազկերտ Բ-ի ժամանակ, Դենշապուհի աշխարհագրից հետո, այսինքն՝ մոտավորապես 450 թվին։

Այնուհետև, ինչպես դժվար չե հետևցնել Դվինի ժողովի իններորդ կանոնից, յեկեղեցականներին նորից հաջողվել եր ձեռք բերել հարկային վորոշ արտոնություն։ Նրանք չեն յեղել «խառնեալ ի շինական իշխանութիւնն», «երիցունեաց տունն»-ը գրանցված է յեղել արքունի դիվանում և նրանք պարտավոր են յեղել «միայն զհասն տալ յարքունիս»։

Թ. Ավդալբեգյանը, մեկնաբանելով Դվինի ժողովի նույն այս կանոնը, յենթադրել ե, վոր «զհասն» բառը հավանական ե հասկանալ «հարկ» բառի ու վոչ թե հողահարկի իմաստով և վոր յեկեղեցին ու հոգևորականները պարտավոր եյին հարկ տալ Պարսից պետությանը։ Սակայն նրանք կիսով չափ ազատված եյին հարկատվությունից, վորովհետև հարկ չեյին տալիս տեղական իշխաններին (տե՛ս «Հաս, սակ, բաժ», Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, 1926, № 1, եջ 54—55)։

Այս յենթադրությունը թվում ե ինձ անհավանական։

Վոր, իրոք, հայ հոգևորականությունն ունեցել ե ինչ վոր արտոնություն նաև արքունի հարկերի նկատմամբ՝ այդ կարելի յե ըստ իս յեզրակացնել «Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոնից՝

> «Նոյնպէս և տգէտք մի՛ իշխեսցեն մտից սրբոյ եկեղեցւոյ, զի անիրաւ է, վասն անուսումնութեանն ընդ զինուորս կացցեն և զհայրենի հող և ջուր կալցեն, և յարքունիս հարկ, և զորդիս ի դպրոց տացեն, զի ուսցին» (տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտ-ճյանի, եջ 109)։

Յեթե տգետ հոգևորականները, կորցնելով իրանց արտոնությունները, զրկվում եյին հայրենի հողից ու ջրից և վճարելու եյին «յարքունիս հարկ», ինձ թվում ե՝ կարելի յե յենթադրել, վոր պաշտոնավարող հոգևորականներն արքունի այդ հարկից ազատ են յեղել։

Այս վերջին հարկը վերոհիշյալ մեր աշխատությունների մեջ մենք համապատասխան եյինք համարել Սասանյան Պարսկաստանի gezith գլխահարկին, իսկ «հաս» կամ «պեկար» հարկը, վոր հայ հոգևորականությունը պարտավոր եր «տալ յարքունիս», յենթադրել եյինք հողային հարկ՝ նման արաբական շրջանի «խարաճ»-ին։

Յեկեղեցու «ազատութիւն»-ը և յեկեղեցականների «ազատաց տոհմ»-ում կարգվելը բացի նրանց ապահարկությունից ունեցել ե նաև ուրիշ ուշագրավ հիմքեր։

Հին Հայաստանի յեկեղեցական կազմակերպության հիմ-

նական առանձնահատկություններից մեկն այն է եղել, որ եկեղեցու ստորին պաշտոնեությանը ևս, ինչպես և «ազատ»-ներին, տրված են եղել feod «խոստակ»-ներ։ Այս հատուկ հողաբաժինների մասին, որ ստացել էր եկեղեցին չորրորդ դարի առաջին կեսում, տալիս են կարևոր տեղեկություններ Ագաթանգեղոսը և Փավստոսը։

Ագաթանգեղոսն իր պատմության մեջ, նկարագրելով քրիստոնեության տարածումը Հայաստանում Գրիգոր Լուսավորչի ու Տրդատ Մեծի ժամանակ, հաղորդում է, որ Տրդատ թագավորը եկեղեցական դասի տնտեսական ապահովության համար հատկացրել էր հատուկ հողամասեր ավաններում և ագարակ տեղերում։

> «Ցետ այսորիկ — վկայում է Ագաթանգեղոսը — հասեալ նմա [Գրիգոր Լուս.] բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց Մեծաց աշխարհին, շինելով եկեղեցիս յամենայն աշխարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքս, յաւանս, ի շէնս, ի գեօղս և յագարակս։ Սոյնպէս և թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս երդոյ՝ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն, նուէր պտղոյ Տեառն մատուցանէր» (Տփղիս 1909, գլ. ՃԺԹ, 837, էջ 436)։

Փավստոսը ևս նույն այս հողերի մասին ունի հետևյալ ուշագրավ վկայությունը՝

> «Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, եւ զերկուսն միայն թողոյր երկուս հողս: Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի նրէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս

և գործիս երիցանցն և սարկաւագացն» (V, գլ. ԼԱ, Վենետիկ 1889, էջ 237)։

Ինչպես տեսնում ենք, Ագաթանգեղոսի և Փավստոսի այս հատվածները հիմնական խնդրում, վոր Տրդատ թագավորը գյուղական յեկեղեցիներին տվել եր հատուկ հողեր, միանգամայն իրար համապատասխանում են։ Ուշադրավ այս փաստը, վորի մասին հաղորդում են իրարից անկախ և Ագաթանգեղոսը և՛ Փավստոսը, պետք է ընդունել, իբրև հավաստի ու ստույգ։ Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր Տրդատ Մեծը տնտեսապես պետք է ապահովեր գյուղական հոգևորականներին, և շատ բնական է, վոր հոգևորականության վարձատրման ամենահավանական միջոցը կարող եր լինել այդ ժամանակ այն հողաբաշխումը, վոր վկայված է հիշյալ հեղինակների մոտ։

Ագաթանգեղոսի վկայությամբ՝ գյուղական հոգևորականությանը հատկացված են յեղել «չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ», իսկ Փավստոսի վկայության մեջ հիշատակված են միայն «եւթն» հողերը, վորոնցից Պապ թագավորը հինգը գրավել եր «յարքունիս»։ Ագաթանգեղոսի վկայությունը, վոր այս կետում ավելի ընդարձակ է ու վորոշ, ամենայն հավանականությամբ, պետք է համարվի նաև ավելի ուղիղ։ Շատ հավանական է, վոր ագարակ տեղերում, ուր յեկեղեցու սպասավորների թիվը ավելի պակաս կլիներ, քան ավաններում, հողաբաժինները ևս պետք է լինեյին ավելի քիչ։

Արդ՝ ի՞նչ է նշանակում հող երդոյ։

Հունարեն Ագաթանգեղոսում (տես Paul de Lagarde. Agathangelus und die Akten Gregors von Armenien, Goettingen 1887, էջ 76) «հողս երդոյ» թարգմանված է arouras: Հունարեն aroura բառը նշանակում է վարելահող կամ նաև հողի տարածության վորոշ չափ, ինչպես հռոմեական jugerum-ը կամ գերմանական Hufe-ն։ Ուրեմն՝ Ագաթանգեղոսի թարգմանը «հող երդոյ» հասկացել է կամ վարելահողի իմաստով կամ համարել է իբրև վորոշ չափի հողաբաժին։ Ցերկ-

բորդ յենթագրությունն ավելի հավանական է, վորովհետև aroura բառը հողաբաժնի հատուկ իր նշանակությամբ ավելի յե համապատասխանում «հող երդոյ» հայերեն բնագրին, քան վարելահողի ընդհանուր իր նշանակությամբ։ Հիմնվելով Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության վրա, կարելի յե, ուրեմն, յենթադրել, վոր «հողք երդոյ» վորոշ չափի հողաբաժիններ են։

Խոսելով վերև feod-«խոստակ»-ի մասին, մենք մատնացույց եյինք արել, վոր հիշյալ հողամասերը հատկացվել եյին գյուղական հոգևորականությանը վորպես «խոստակ»-ներ, այսինքն՝ ժառանգական ոգտատիրության իրավունքով (dominium utile): Նույն հողերի նկատմամբ գերագույն սեփականության իրավունքը (dominium directum) պատկանել է յեկեղեցուն։ Հողատիրության այդ ձևը, ինչպես վերև տեսանք համապատասխան կանոնների քննությունից, պայմանական եր. ուստի՝ յեթե հոգևորականների «ծառայությունն» անհնարին եր դառնում նրանց տգիտության կամ ծանր հանցավորության պատճառով՝ յեկեղեցին իրավունք ուներ «խոստակ»-ները յետ գրավել և տալ «արժանավոր»-ներին։

Պարզ է, ուրեմն, վոր ավատականությունն այնքան խոր արմատներ է ունեցել նախարարական Հին Հայաստանում, վոր անգամ գյուղական հոգևորականության անտեսական ապահովումը հողամասերով հարմարեցված է յեղել ավատական ընդհանուր կարգերին։ Հոգևորականությունը վոչ միայն ապահարկ է համարվել «ազատ»-ների նման, այլ և ավատատու յե յեղել, ինչպես և «ազատ»-ների հոծ բազմությունը։

Հայաստանի նախարարական կազմակերպության ազդեցությունը հայ յեկեղեցու վրա, ինչպես տեսնում ենք, յեղել է ավելի մեծ և ավելի խորաթափանց, քան միջնադարյան ֆեոդալական Արևմուտքում։

Աւշագրավ է այդ տեսակետից նաև այն, վոր հայ յեկեղեցին հոգևորականության գույքային անհավասարությունը համարել է որինական։ Դվինի ժողովի հինգերորդ կանոնում

պատճառաբանվում է այդ նրանով, որ յեկեղեցու ժառանգությունն «իբրև զազատություն» է. ակնարկվում է դրանով, որ նույն անհավասարությունն առանձնահատուկ է յեղել և «ազատ»-ների դասին։

«Վասն շնորհի և ժառանգութեան — ասված է հիշյալ կանոնում — սահմանեցաք. թէ ի սկզբանէ որպէս հրաման ի սրբոյն Գրիգորէ է լեալ՝ նոյնպէս և եղիցի. որոյ շատ է ժառանգութիւնն՝ զշատն կերիցէ, որոյ սակաւ՝ զսակաւն կալցի, և մի ըստ ծխոյ բաժանեսցեն զշնորհն, զի զժառանգութիւն սրբոյ եկեղեցւոյ իբրեւ զազատութիւն է, զոր երանելոյ սրբոյն Գրիգորի և Թագաւորին մերոյ Տրդատայ զատուցեալ էն։ Արդ՝ իւրաքանչիւր ոք զհարանց ժառանգութիւնն կալցի և սրբոյ եկեղեցւոյ պաշտամանն հպատակ կացցէ և վարդապետին ի հնազանդութեան՝ ամենայն յօժարութեամբ» (տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 123)։

Բացի ավանդներում և ագարակներում հոգևորականության տված հողերից յեկեղեցին ունեցել է նաև ուրիշ կալվածներ, որոնց մասին կան մի քանի կարևոր վկայություններ Ագաթանգեղոսի և Փավստոսի պատմություններում։

Ագաթանգեղոսի հաղորդած տեղեկությունների համաձայն՝ հայ յեկեղեցին քրիստոնեության տարածման սկզբնական իսկ շրջանում ստացել էր հեթանոսական մեհյանների ոսկին, արծաթը, նաև գյուղերը և կալվածները։

1. «Զդաստակերտսն և զսպասաւորսն քրմօքն հանդերձ [«Անահտական դիցն», «Տրի գից» — Արտաշատում] և նոցին գետնովքն եւ սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան» (Տփղիս 1909, ԾԸ, 781, էջ 406)։

2. «Եւ զգեօղն [Թորդան] ամենայն դաստակերտօքն հանդերձ եւ սահմանօքն յանուն եկեղեցւոյն նուիրէին» (ԾԹ, 784, էջ 408)։

3. «Եւ զաւանն ամրականաւն հանդերձ [«ամուր տեղին Անի»] ի ծառայութիւն եկեղեցւոյն նուիրէին» (ԺԹ, 785, էջ 409).

4. «Եւ զգանձս երկոցուն մեհենացն [«Անահտական»՝ «յԵրէզն աւանի» և «Արամազդայ»՝ «ի Թիլն աւանի»] աւարեալ ժողովեալ՝ ի նուէր սպասուց սուրբ եկեղեցւոյն Աստուծու թողուին տեղեօքն հանդերձ» (ԺԹ, 786, էջ 410).

5. «Եւ զգանձսն մթերեալս [«Մրհական մհհինին»՝ «ի Բագայառիճն»] աւար հարկանէին և աղքատաց բաշխէին եւ զտեղիսն նուիրէին եկեղեցւոյ» (ԺԺ, 790, էջ 412)։

Փավստոսը, խոսելով Արիստակեսի թաղման մասին, վկայում է, որ «տարան զնա ի Ծոփաց գաւառէ, և եդին զնա յԵկեղեաց գաւառի ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ» (Վենետիկ 1889, III, Բ, էջ 6)։ Նույն պատմիչը, նկարագրելով Ներսես կաթողիկոսի թունավորումը և թաղումը, վկայում է դարձյալ, որ կաթողիկոսի մարմինը «բարձին յաւանէն ի Խախ գեղջէ, ուր գործն կատարեցաւ, տարան ի Թիլն յաւանն յիւր գեաղն» (V, ԻԴ, էջ 223)։ Իբրև կաթողիկոսական կալվածներ հիշվում են Փավստոսի մոտ Աշտիշատը և Ամոք գյուղը (տես IV, ԺԴ, էջ 117 և VI, Զ, էջ 274)։ Իսկ Հովհաննես կաթողիկոսը հաղորդում է, որ Արամոնք գյուղը Կոտայքում «սեպհական էր տան կաթողիկոսարանի նախ քան զշարշարանս սրբոյն Գրիգորի յարքայէն Տրդատայ նմա իսկ հոգեցատուր պայմանաւ ընձեռեալ, որոյ և յետկար վճռան պահի մինչև ցայսօր ժամանակի» (Թիֆլիս 1912, էջ 104—105)։

Ինձ թվում է, որ Արշակունյաց ժամանակ ոչ միայն Թիլը, Աշտիշատը, Ամոքը և Արամոնքը, այլ և Ագաթանգեղոսի մոտ հիշված բոլոր մեհենական կալվածները գանվել են Գրիգոր Լուսավորչի տոհմի տնօրինության տակ։

Թեև յեկեղեցականների կալվածատիրության մասին

մատենագրական աղբյուրների տեղեկությունները խիստ աղքատիկ են և կցկտուր, սակայն պատահական այդ վկայություններից անգամ կարելի յե կռահել, վոր բացի կաթողիկոսական տնից խոշոր կալվածներ ունեցած պիտի լինեյին նաև մյուս յեպիսկոպոսությունները։

Յեվ իրավի, Փավստոսի պատմելով՝ Խոսրով Կոտակի թագավորության ժամանակ, յերբ բնաջինջ եյին արվել Մանավազյանների և Որդունիների նախարարական տոհմերը, նրանց կալվածները ստացել եյին Աղբիանոսը և Բասենի յեպիսկոպոսը։

> «Եւ ետ [Խոսրով] ղաւտնն և զբուն գահոյից գեւղն նահապետին Մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի յեկեղեցի՝ զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառական հանդերձ՝ որ շուրջ զնոքօք էր, որ կայ ի կողմանս գետոյն Եփրատայ։ Եւ ետուն զբուն գեւղն Որդունւոց, որոյ անուն էր Որդորու. ուստի եպիսկոպոս Բասանու ամենայն սահմանօքն հանդերձ, որ ինքն իսկ է յերկրին Բասանու» (III, Դ, էջ 10)։

Փավստոսի մի ուրիշ վկայությունից հայտնի յե դարձյալ, վոր Հոհան յեպիսկոպոսը, Փառեն կաթողիկոսի վորդին, խաղ ու կատակով զվարճացնում եր Հայոց թագավորներին և փոխարենը ստանում նրանցից գյուղեր և ագարակներ։

> «Սոյն Յոհան եպիսկոպոս — պատմում է Փավստոսը — որդի Փառինայ, յորժամ երթայր առ թագաւորն Հայոց, խաղակատակ լինէր նոցա. որպէս խաղալով զանձն իւր կրթէր յագահութեան. որում ծարաւեալ պապաքեալ փափաքէր, սակայն միհանէսյ (˚) այն էին նորա։ Ի չորք անկեալ յոտս և ի ձեռս սողէր առաջի թագաւորացն, և զուղտու զձայն ածէր կառաչելով, զօրէն ուղտու այնպէս փարելով։ Ընդ կառաչելն ապա մի մի բան խառնելով առնէր ի ձայն կառաչելոյն, ասելով՝ թէ ուղտ եմ, ուղտ եմ, և զարքայի զմեղս

բառնամ. դի՛ք ի վերայ իմ զմեղս արքայի, թող բառնամ՝ Իսկ Թագաւորքն զմուրճակս գիւղաց կամ զագարակաց գրեալ եւ կնքեալ՝ դնէին ի վերայ ողինն Յոհաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց. և ի Թագաւորացն Հայոց ստացաւ իւր գեւղս եւ ագարակս եւ գանձս յուղտն լինելոյ և զմեղսն բառնալոյ ըստ բանիցն» (VI, Ժ, էջ 277—278)։

Ինքն ըստ ինքյան պարզ է, որ հոգևորականության տնօրինության տակ գտնվող հողային եկեղեցապատկան սեփականությունը ժամանակի ընթացքում պետք է անընդհատ աճեր ու բազմապատկվեր, որովհետև եկեղեցին շարունակ ստանում էր իբրև նվեր նոր հողեր և կալվածներ, ինչպես առանձնապես շեշտված է այդ Սահակ կաթողիկոսի ԾԱ կանոնում։

«Իշխանք զգեւղս, զդաստակերտս և զգանձս ոսկւոյ և արծաթոյ — ասված է այդ կանոնում — այլք յանդաստանաց և ի պատճառաց հանդերձից պատուականաց, ոմանք վասն անձանց փրկութեան, կէսք յաղագս սիրելեաց և ծնողաց և վախճանելոց հատուցանեն հատուցմունս, զարդ և պայծառութիւն կազմելով հոգւոց և մարմնոց» («Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 45)։

Նման նվիրատվության մասին, որ ստացել էին եկեղեցիները և քահանայապետները Մանուել սպարապետից, հաղորդում է, օրինակ, Փավստոսն իր պատմության հետևյալ հատվածում՝

«Բազում մասունս յընչից իւրոց տայր յեկեղեցիս և ի վկայանոցս, և բազում գանձս տայր ցքահանայապետսն. և ապա ինքն մեռանէր» (V, ԽԴ, էջ 266)։

Եկեղեցական կալվածներից պետք է տարբերել կաթողիկոսների և մյուս հոգևորականության այն անշարժ գույքը, որ պատկանել է նրանց իբրև անձնական սեփականություն։ Սահակ կաթողիկոսի անձնական սեփականությանն է վերաբերվում, օրինակ, Ղազար Փարպեցու հետևյալ վկայությունը՝

«Եւ վասն զի ոչ գոյր իւր արի որդի, բայց մի՛
այն դուստր մի, զոր էր տուեալ կնութեան Համազաս-
պայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի, որ
ծնաւ ի Համազասպայ երիս արու որդիս, զսուրբն
Վարդան և զսուրբն Հմայեակ և զերանելին Համազաս-
պեան. որոց ետ և կնքեաց սուրբ այրն Աստուծոյ Սա-
հակ զստացուածս գեօղից իւրոց եւ ագարակաց, եւ որ
ինչ միանգամ էր իւր՝ ետ նոցա ի ժառանգութիւն և
վաւակի նոցա մինչև ցյաւիտեան» (I, ԺԸ, էջ 37)։

Հայ յեկեղեցին, վոր հարուստ եր հողերով և կալված-
ներով, ունեք և ուրիշ արտոնություններ։

Ֆինանսական տեսակետից յեկեղեցուն յենթարկված եր
ամբողջ յերկիրը, վորը տալիս եր նրան տասանորդ, պտուղ
և հաս։ Արշակունյաց ժամանակ կաթողիկոսներին եր հանձ-
նըված, ինչպես վերև տեսանք, «մեծի դատաւորութեան գոր-
ծակալութիւն»-ը, և հետագա դարերում ես յեկեղեցին միշտ
ել ունեցել եր դատաստանական իրավասության ամենալայն
իրավունքներ։ Այդ ես, անշուշտ, յեկամուտի կարևոր մի
աղբյուր եր։

Շատ պարզ ե, վոր յեկեղեցու տնտեսական այս ուժը
հիմք եր ծառայելու նաև նրա քաղաքական հզորությանը։

Յեկեղեցու այս զորեղացումը, նրա հողատիրության
անընդհատ աճումը, պետք ե, բնականաբար, առաջ բերելին
մեծ դժգոհություն և հարուցանեյին աշխարհական իշխանու-
թյունների բուռն դիմադրությունը։ Ինչպես Արևմտյան Յեվ-
րոպայում Կարոլինգյան Կարլ Մարտելլի ժամանակ, նաև
միջնադարյան մի շարք մյուս յերկիրներում, նույնպես և
Նախարարական Հայաստանում՝ յեկեղեցական և վանքապատ-
կան հողերի կուտակման դեմ ձեռք եյին առնվել կտրուկ
միջոցներ։

Փավստոսի վկայությունից հայտնի յե (V, ԼԱ, էջ
234—237), վոր Պապ թագավորը գյուղական յեկեղեցիներին
հատկացված յոթնական հողաբաժիններից հինգը գրավել եր
«յարքունիս»։ Բացի այդ՝ նա հրամայել եր վերացնել տա-

սանորդի և պտղի յեկեղեցական տուրքերը և վոչնչացնել Ներսես կաթողիկոսի հիմնած բարեգործական զանազան հաստատությունները։ Սակայն Պապի ձեռք առած այդ միջոցները կրում եյին միայն ժամանակավոր բնույթ։ Պապից հետո յեկեղեցու դրությունը նորից սկսել եր ամրանալ թե տնտեսապես և թե քաղաքականապես։

Արշակունյաց թագավորության անկումից հետո՝ պայքարը յեկեղեցու տնտեսական ու քաղաքական զորեղացման դեմ շարունակվել ե նաև մարզպանության շրջանում։

Սասանյան Պարսկաստանը չեր կարող, բնականաբար, հանդուրժել հոգևոր դասի ազդեցության աճումը, վորովհետև կուլտուրապես հայ յեկեղեցին սերտորեն կապված եր Արևմուտքի հետ[1]։ Յեվ իրավի, Հազկերտ Բ-ի քաղաքականությունը, ինչպես վերև տեսանք, ուղղված եր քրիստոնեական հոգևորականության արտոնյալ իրավունքների և, մասնավորապես, նրա հարկային ազատության դեմ։

Ուշագրավ ե սակայն և խիստ հետաքրքիր, վոր մարզպանության նույն շրջանում վոչ միայն Պարսկաստանը, այլ և ինքը հողատեր հայ ազնվականությունը մաքառել ե հոգևորականների դեմ, ուզեցել և տեր ու տնորեն դառնալ յեկեղեցական շահավետ հաստատությունների և ձգտել ե նույն իսկ հարկատու դարձնել յեկեղեցական ստորին պաշտոնեությունը, ժխտելով նրա ապահարկությունը ե «ազատութիւն»-ը։

Հայ ազնվականության ու հոգևորականության այս հակամարտությունն ու սուր կռիվը շեշտված են պարզ ու վորոշ Դվինի ժողովի 9-րդ, 10-րդ և 11-րդ կանոններում։

---

[1] Ուշագրավ ե սակայն, վոր նույն Պարսկաստանը բոլորովին այլ վերաբերմունք ե ունեցել հայ յեկեղեցու հանդեպ Դվինի 555 թվի ժողովից հետո, վորի վորոշմամբ հայ յեկեղեցին մերժել եր Քաղկեդոնի ժողովը և անջատվել բյուզանդական յեկեղեցուց։ Այս ժողովից հետո, ինչպես հայտնի յե, հարկահավաքումն անգամ մարզպանական Հայաստանում հանձնարարված ե յեղել Ներսես Բ. կաթողիկոսին և հայ հոգևորականության (տես Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, եջ 396)։

Իններորդ կանոնում ասված է, որ իրանց յերգերի ու մարդկանց բաժանման ժամանակ «ազատ»-ներն աշխատում են յեկեղեցու ժառանգավորներին «ի ծառայութիւն և ի ստրկութիւն արկանել», իսկ վոմանք էլ հափշտակում են առաջնորդների իշխանությունը և իրանք են բաժանում կամայականորեն «զշնորհս եկեղեցւոյ»։ Տասներորդ կանոնը հաղորդում է, վոր «ազատ»-ներից վոմանք յենթարկում են իրանց իշխանությանը վանքերը և նշանակում ու արձակում վանականներին, անտես առնելով առաջնորդների իրավունքները։ Տասնումեկերորդ կանոնը վկայում է դարձյալ, վոր «ազատ»-ներից վոմանք իրանց իշխանության տակ են առնում տկարանոցները, նշանակում են գործակալներ «ի կերակուրս և յըմպելիս», հարկ են պահանջում «ողորմելի եղբայր»-ներից և նեղում նրանց «կռռով և պահակութեամբ»։

Կալվածատեր ազնվականների միջամտությունը յեկեղեցական գործերում, ինչպես և վանքերի ու այլ յեկեղեցական հաստատությունների յենթարկումը նրանց իշխանության, հաճախակի մի յերևույթ եր միջնադարյան նաև ուրիշ յերկիրներում։

Այս խնդիրն այնքան հետաքրքիր է ու կարևոր ֆեոդալական շրջանի հարաբերությունների ու բարքերի լուսաբանության համար, վոր մենք ավելորդ չենք համարում մեջ բերել վերոհիշյալ վկայություններն ընդարձակ բովանդակությամբ։

1. «Կանոնք Դունայ ժողովոյն», Թ, հրատ. Մխիթար վարդապետի և Սիրական Տիգրանյանի, Վաղարշապատ 1905, եջ 19—21՝

«Յորժամ ազատք գիւղեանց զերդ և զմարդ բաժանեն՝ յոլովք չարակնութեամբ առնեն, զծառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն եւ ի ստրկութիւն արկանել, մոլեալք և մոլորեալք ի քրիստոնէական հաւատոյս..... Արդ եթէ ոք ազահութեան ակամբ հայեսցի և զազատս մանկունս եկեղեցւոյ ի բաժին եւ ի վիճակ

ծառայութեան արկցեն, *այնպիսիքն ի սուրբ Լուսաւորչի օրհնութենէն և ի մերմէ ժողովոյս հեռի եղիցին և մի եղիցի իշխանութիւն վարդապետի և քահանայից զայն-պիսեաց պատարագն օրհնել։ Այլ և* ոմանք յազատաց ըստ իւրաքանչիւր կամաց բաժանեն զշնորհս եկեղեցւոյ, եւ զառաջնորդաց զիշխանութիւն եւ զգործ յափշտակեն, *և վարդապետաց հրամանի և մեր կանոնիս ունկնդիր չլինին. այնպիսի յանդգնեալքն, որք գործեն զտարա-հաճելիսն Աստուծոյ, հեռի եղիցին ի սրբոց և ի մեր օրհնութենէն»*.

*2. Նոյնը, Ժ, էջ 21–22՝*

«Ոմանք յազատաց ի վերայ վանաց իշխանութիւն առնեն եւ զվանական՝ զոր կամին հանեն եւ արկանեն, *որ չէ արժան և օրէն. և* ոմանք ընտանեօք ի վանսն նստին՝ *արհամարհեալ զեկեղեցեաւն Աստուծոյ՝ անպատ-կառելի անամօթութեամբ. արդ եթէ լուեալ մերս հրա-մանի՝ դարձցին և թողցեն յառաջնորդս զտեսչութիւն եկեղեցւոյն կարգել և յօրինել ըստ հաճոյից Աստուծոյ. այնպիսեացն յառաջագոյն գործելեացն յանցանաց թո-ղութիւն լիցի և ի մեր միաբան ժողովոյս օրհնեալ եղիցին, ժողովրդեամբ և պտղաբերութեամբ և ուխտա-ւորեալ ընծայիւք նուիրելովք երթիցեն ի վանսն և աղօ-թեսցեն, որպէս արժան է յիւրեանց հարանց վաստակս, բայց ժլատութեամբ մի իշխեսցեն, զի եղիցին օրհնեալ յԱստուծոյ և ի մեր ժողովոյս»*.

*3. Նոյնը, ԺԱ, էջ 22–23՝*

«Ոմանք յազատաց ի վերայ տկարանոցաց իշխանու-թիւն առնեն եւ որպէս ի կենդանեաց հարկս պահանջեն եւ ի կերակուրս եւ ըմպելիս զիւրեանց գործակալս մա-տուցանեն, կռով եւ պահակութեամբ[1] նեղեն *և զողոր-*

---

[1] *«Կռով և պահակութեամբ» մեր ուղղածն է փոխանակ «կռուով և պատուհասիւ», տե՛ս այդ մասին «Հայաստանի արքունի հարկերը սարդ-պանութեան շրջանում», Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, 1926, № 1, էջ 39։*

մեզի եղբարսն չարչարեն անխղճաբար. որում պարտ և արժան էր հոգալ և խնամել յիւրաքանչիւր վաստակոց. ի կալոյ և ի հնձանէ և յամենայն արմտեաց տալ մասն և բաժին և մխիթարել զսիրտս նոցա և բժշկել զվէրս նոցա, զի եղիցին արժանաւորք մեծաց վարձուց և պարգևաց ի փառաւոր գալստեան Որդւոյն Աստուծոյ»։

«Ազատ»-ների միջամտությունը յեկեղեցական գործերում բացատրվում է մասամբ նրանով, վոր յեկեղեցիները, վանքերը և յեկեղեցական այլ հաստատությունները կառուցվում եյին կամ պահպանվում մեծ մասամբ ազնվական տոհմերի միջոցներով, վորոնք այդ հաստատությունների նկատմամբ ունեյին հսկողության և հովանավորության պարտականություններ, հավանորեն, նաև հատուկ իրավունքներ, վոր միջնադարյան արևմտյան յերկիրներում անվանվում եր patronat։ Փարպեցու վկայություններից, որինակ, գիտենք, վոր հինգերորդ դարի վերջերում Եջմիածնի Կաթուղիկե յեկեղեցու նկատմամբ Վահան Մամիկոնյանն ունեցել է խնամակալության և տնորինության իրավունքներ[1]։

Ֆեոդալական միջավայրի ազդեցությամբ յեկեղեցական կազմակերպությունը, ինչպես տեսնում ենք, թե նախարարական Հայաստանում և թե միջնադարյան Յեվրոպայում յենթարկվել եր գրեթե նման կերպարանափոխման։

Հայ հոգևորականության համար բնորոշ եր սակայն, վոր նա հավասարեցված լինելով «ազատ»-ների դասին, իր կենցաղի ու վարքուբարքի վերաբերմամբ յենթարկվել եր մեծ չափով զինվորական այդ ազնվականության ազդեցության։

Զինվորական այդ դասի անդամներն եյին հաճախ, վոր հոգևորական եյին դառնում և ստանձնում բարձր պաշտոններ յեկեղեցու ղեկավարության մեջ, նաև վանքերում։ Մինչև հոգևորական ձեռնադրվելը զինվորական եր, ինչպես հայտնի յե, Ներսես Ա. կաթողիկոսը։ Նրա հայրը և հորեղբայրը Աթա-

[1] Տես «Թուղթ Վահանայ Փարպեցւոյ», Տփղիս 1904, եջ 196—198։

նագինեսը և Պապը՝ չկամեցան ստանձնել իրանց հոր հոգե-վորական բարձր պաշտոնը և գերադասեցին մնալ զինվորա-կան ծառայության մեջ։ Կորյունի վկայությունից հայտնի յե նույնպես, վոր Մեսրոպ-Մաշթոցը հոգևորական դառնա-լուց առաջ դիվանագրի պաշտոնով ծառայում եր արքու-նիքում և առաջադեմ եր նաև զինվորական արվեստում։

Թե վորքան մեծ ե յեղել զինվորական կենցաղի ազդե-ցությունը յեկեղեցականների վրա՝ յերևում ե Փավստոսի հետաքրքրական մի տեղեկությունից։ Նրա պատմելով՝ չոր-րորդ դարում Ջավեն կաթողիկոսը կարգադրած ե յեղել, վոր քահանաները հագնեն զինվորական զգեստ։ Ուշագրավ ե նաև այն, վոր հոգևորական դասի անդամները, վորոնք մեծ մասամբ «խոստակդար» եյին և համարվում եյին իրավապես «ազատաց տոհմ»-ում, թողնում եյին հաճախ իրանց կարգը և ծառայում հեծելազորքի մեջ։ Հայտնի յե նույնպես, վոր հայ յեկեղեցին՝ դեմ լինելով հոգևորականության զինվորա-մոլ այդ բարքերին, համաձայն յեկեղեցական ժողովների հատուկ կանոնների արգելում եր թե, ընդհանրապես, զին-վորների սպասավորությունը յեկեղեցիներում և թե վերո-հիշյալ սովորությունները։

Հին հոգևորականության ավատական կենցաղի առանձ-նահատուկ այդ կարգերը, վոր հետևանք եյին նախարարա-կան միջավայրի և զինվորական ազնվականության ազդե-ցության, այնքան կարևոր մի փաստ ե, վոր անհրաժեշտ ենք համարում մեջ բերել այդ մասին մեզ ծանոթ կարևո-րագույն վկայությունները։

1. Փաւստոս, IV, Գ, եջ 69՝

«Այլ ի ժամանակին յայնմիկ էր [Ներսէս] ի վարս զինուորութեան ի գործակալութեան, սիրելի սե-նեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն ի ներքոյ և արտաքոյ»։

2. Նույնը, III, ԺԳ, եջ 35՝

«Այլ [Պապ և Աթանագինէս] իւրեանց ժամանակի

դարուն նմանեալք, և պանձացեալք յիւրեանց յան-ցաւոր սնոտի ի մարմնաւոր տոհմականութիւնն ազ-գականութեան, զինուորական զվարսն ընտրեցին»։

3. Կորիւն, Պատմութիւն վարուց և մահուան Մեսրո-պայ վարդապետի, Վենետիկ 1894, էջ 13—14՝

«Ի մանկութեան տիսն վարժեալ [Մաշթոց]՝ հել-լենական դպրութեամբն, եկեալ հասեալ ի դուռն Ար-շակունեաց թագաւորաց Հայոց Մեծաց, կացեալ յար-քունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին առ հազարապետութեամբն աշխարհիս Հա-յոց՝ Առաւանայ ուրումն։ Տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականացն»։

4. Փաւստոս, VI, Բ, էջ 271՝

«Զի ամենայն խնամնայից ուսոյց [Ջաւէն] առնել հանդերձ զինուորաց»։

5. «Կանոնք Դունայ ժողովոյն», հրատ. Մխիթար վար-դապետի և Սիրական Տիգրանյանի, էջ 12 (կան. Զ)՝

«Ոմանք յուխտէ եկեղեցւոյ զկարգ եւ զպաշտօն թո-ղին եւ զհեծելութիւն ստացան. արդ եթէ դառնան ի չար ճանապարհէն՝ օրհնեալք են ի Տեառնէ և ընկալեալք ի մէնջ. ապա թէ ոչ՝ իշխանութիւն լիցի վարդապետին զշնորհս եկեղեցւոյն հանել յայնպիսեացն և արժանաւոր քահանայից և պաշտօնէից մերձաւորաց տալ»։

6. «Կանոնք Սահակայ», հրատ. Արս. Ղլտճյանի, Զ, էջ 18՝

«Այլ զտգէտս և զզինուորս ամենևին իսկ պարտ է որոշել ի շնորհէն վայելից»։

7. Նույնը, ԽԶ, էջ 40՝

«Արդ մի՛ ոք զայսպիսի տեսչութիւնս զինուորաց կամ տգիտաց ումեք հաւատասցէ»։

8. Նույնը, ԽԸ, էջ 43—44՝

«Եւ դուք յընչասիրութիւն և ի կաշառս կործանիք, և զգարշելիս և զպատուիրազանցս և զզինուորս և զար-

*զէտս հաւատարիմ համարիք ի գործ սպասաւորութեան եկեղեցւոյ».*

*9. «Կանոնք Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», հրատ. Ա. Ղլաճյանի, ԺԲ, եջ 110—111՝*

«Եւ մի զձեւ զինուորաց հանդերձի ունել *և ի կարգէ պաշտօնէից կալ».*

*Հմմտե նաև «Կանոնք Սիմէոնի Աղուանից կաթուղիկոսի», հրատ. Ա. Ղլտճյանի, Բ, Գ, Դ, եջ 203—204։*

*Ամփոփելով մեր ասածները՝ կարող ենք յեզրակացնել, վոր հայ յեկեղեցու ֆեոդալականացումը նախարարական Հայաստանի ուշագրավ յերևույթներից մեկն է։ Յեկեղեցական դասի հզորությունը թե Հայաստանում և թե միջնադարյան Յեվրոպայում հիմնված է յեղել կալվածատիրության վրա։ Հայ հոգևորականությունը, հավասարեցված լինելով «ազատ»-ների դասին, Արշակունյաց ժամանակ ունեցել է ապահարկության նման արտոնություններ, ինչպես և ազնվականների իշխող դասը։ Ուշագրավ են մասնավորապես յեկեղեցական պաշտոնների ժառանգական լինելը վորոշ տոհմերում, ինչպես և* feod-*«խոստակ»-ների գոյությունը, վորոնք ժառանգական ոստատիրության իրավունքով տրվում եյին հոգևորականներին։*

*Այս վերջին յերկու առանձնահատկությունները հայ յեկեղեցու նախարարականացման ամենացայտուն ցուցանիշներն են։*

## 7. «ՇԻՆԱԿԱՆ»-ՆԵՐԸ ԵՎ «ՌԱՄԻԿ»-ՆԵՐԸ

*Վերև մենք տեսանք, որ ֆեոդալիզմի շրջանում տնտեսապես և քաղաքականապես առաջնակարգ և գերիշխող դեր էր կատարում խոշոր կալվածատիրությունը։ Նույն շրջանում՝ իբրև արտադրության հիմնական ճյուղ՝ գերակշռող նշանակություն ուներ, բնականաբար, գյուղատնտեսությունը։ Գյուղացիությունն էր, անշուշտ, կամ շինականությունը բնակչության այն արտադրող և աշխատող շերտը, որ ապրուստի միջոցներ էր հայթայթում կալվածատեր ազնվականության և հանդիսանում Հին Հայաստանի տնտեսության գլխավոր նեցուկը։*

*Շինական դասի սոցիալական-տնտեսական վիճակը Հին Հայաստանում հայոց ներքին կյանքի ամենադժվար ուսումնասիրելի խնդիրներից մեկն է։ Մատենագրական աղբյուրները տալիս են այս դասի մասին պատահական և խիստ աղոտ ու անորոշ վկայություններ։ Աղբյուրների այդ մութ ու վիճելի ակնարկները քննության են առնված «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում» ընդարձակ իմ աշխատության մեջ (տե՛ս Պետական Համալսարանի Գիտական Տեղեկագիր, № 1, Երևան 1925, էջ 3—45)։ Նույն աշխատության մեջ մանրամասն խոսել ենք նաև «ռամիկ»-ների մասին։*

*Այստեղ մենք անհրաժեշտ ենք համարում մեջ բերել հիշյալ աշխատության հիմնական եզրակացությունները մի քանի կարևոր լրացումներով։*

*Կանգ առնենք նախ «ռամիկ» տերմինի վրա, որի ստուգաբանությունը, ծագումը և բուն իմաստը, ինչպես ցույց ենք տվել վերոհիշյալ մեր աշխատության մեջ (էջ*

22—25), սխալ են մեկնված նորագույն ուսումնասիրու-թյուններում։

Ուղիղ պետք է համարել, անտարակույս, Հյուբշմանի բացատրությունը։

Պրոֆ. Հ. Հյուբշմանը «ռամիկ» բառը թարգմանում է „gemeines Volk, gemein, weltlich, Laie“ և կարծում է, որ հայերեն «ռամ» և «ռամիկ» փոխառություն են պարթևերենից (=*ramik) և համապատասխանում են նոր պարսկերեն ram և rama բառերին, որ նշանակում են «խումբ, հոտ» (Armenische Grammatik, էջ 233)։ Համաձայն այս բացատրության «ռամիկ»-ի սկզբնական նշանակությունը պետք է լինի՝ հասարակ կամ խաժամուժ ժողովուրդ։ Եվ իրավի՝ հենց այս նշանակությամբ գործ է ածված «ռամիկ»-ը պատմական ու մատենագրական աղբյուրներում։

Նույն աղբյուրների քննությամբ շատ պարզ որոշվում է, որ «ռամիկ»-ները կազմել են Հին Հայաստանի բնակչության ստորին խավը և որպես այդպիսին հակադրվել են, ինչպես և «շինական»-ները, «նախարար»-ներին, «սեպուհ»-ներին, «ազատ»-ներին, նաև հոգևորականներին ու «ոստանիկ»-ներին։

Նրանց ստորադաս այդ դրությունը երևում է հետևյալ վկայություններից.

1. Ղազար Փարպեցի, II, ԼԴ, էջ 64 (Տփղիս 1904)՝

«Եւ զորոց գիտէր [Վասակ] զհոլովումն ի վատթար կողմն, և ոչ ուղղակի ի խորհուրդ ուխտապահութեանն՝ ի տանուտերացն Հայոց և ի սեպհացն, որք էին երևելագոյնք, և յայլ ռամիկ բազմութենէն՝ զայնս արգելեալ առ իւր պահէր».

2. Մովսէս Խորենացի, II, ՂԲ, էջ 246 (Տփղիս 1913)՝

«Սա [Տրդատ] յետ հաւատոցն որ ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբք բացափայլեալ՝ ևս քան զևս յաճախէր որ ինչ յաղագս Քրիստոսի գործ և բան. սաստելով և հաւանեցուցանելով զմեծամեծ նախարարսն և զամենայն բազմութիւն ռամկին».

3. *Ղազար Փարպեցի*, II, ԽԱ, *եջ 73՝*

*«Բանզի բազմութիւն փախստէիցն հայոց, նախարարք և սեպուհք, ոստանիկք և* ռամիկք, *դիմեալ ի յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Հմայեակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ»*.

4. *Նույնը*, III, ՀԱ, *եջ 128՝*

*«Եւ առեալ ընդ իւր զնախարարսն և զազատս և* զայլ ամենայն ռամիկն»։

*Ուշադրության արժանի յե այս և ուրիշ շատ վկայությունների մեջ, վոր ամեն անգամ յերբ սոցիալական ավելի բարձր դասերի կողքին հիշատակվել են ռամիկները, միանգամայն ավելորդ ե յեղել հիշել նրանց հետ միասին նաև շինականներին։ Յեվ այդ շատ լավ հասկանալի յե։ «Ռամիկ» բառն ինքն արդեն նշանակում եր հասարակ ժողովուրդ և մատնանշում եր ժողովրդի ամբողջ բազմությունը, վոր չեր պատկանում ազնվական կամ հոգևորական դասերին։ Նույն բառի տակ շատ պարզ ե, վոր արդեն իսկ հասկացվում եր և շինականությունը։*

*Վոր շինականները «ռամիկ մարդիկ» եյին, այդ պարզ յերևում ե մի քանի վկայություններից, վորոնց մեջ նրանց «ռամիկ» լինելն առանձնապես շեշտված ե.*

1. *Փաւստոս*, III, *ԻԱ, Վենետիկ 1889, եջ 54՝*

*«Ապա առաւել ժողովեցան ի մի ժողով միաբանութեանն մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. Նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք, բայց ի զօրավարացն, այլ և* ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն».

2. *Խորենացի*, III, *Է, եջ 263՝*

*«Եւ զգաւառս իշխանութեան նորա սրով դատի [Մանաճիհր] յանխնայ, ոչ միայն զմարտիկս, այլ և* զռամիկ շինականս».

Շինականների «ռամիկ» լինելը, ինչպես տեսնում ենք, միանգամայն անվիճելի չէ։

Բայց կարելի՞ է արդյոք դրանից հետևցնել, ինչպես այդ անում են բանասերները, որ «ռամիկ» բառը և «շինական»-ը հոմանիշներ են և գործ են ածվել սոցիալական միևնույն դասի համար։

Այս յեզրակացությունը, որ սովորական է ու ընդհանուր բանասիրական ու պատմական բազմաթիվ աշխատություններում, թվում է ինձ, որ հիմնավոր չէ։ «Ռամիկ» Հին Հայաստանում կոչվել են ո՛չ միայն շինականները, այլ և քաղաքների բնակչության ստորին խավերը։

Ղազար Փարպեցին պատմում է, որ Վահան Մամիկոնյանը, ստանալով Դվին քաղաքում իր մարզպանության հրովարտակը, գնում է իսկույն եկեղեցի։

> «Առեալ զհրովարտակն — ասում է Փարպեցին — խնդրէր վաղվաղակի անդրուվար՝ երթալ ի տունն Աստուծոյ։ Եւ լուեալ զայս մարդկանն որ ի քաղաքին էին, գրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ, նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց, արանց և կանանց, ծերոց և աղայոց, այլ և հարսունք անգամ յառագաստաց, մոռացեալ առ վայր մի առ խնդին զամօթ հարսնութեան՝ դիմեալ ընթանալին յեկեղեցին» (III, ՂԹ, էջ 178)։

«Ռամիկ»-ները, որ հիշատակված են այս հատվածում, ո՛չ թե բացառապես «շինական»-ներն են, այլ քաղաքի բնակչության ստորին խավերը՝ արհեստավորները, թերևս նաև մանր առևտրականները և այլն, որոնք՝ շինականներից միանգամայն տարբեր՝ սոցիալական հատուկ դասակարգեր էին։

Նույն այս նշանակությունն ունի «ռամիկ»-ը նաև Հովհաննես կաթողիկոսի պատմության հետևյալ հատվածում.

> «Զայսու ժամանակաւ ահագին իմն յեղակարծումն ժամու սաստիկ շարժմանց եղելոց ի գիշերի ի Դվին

> *քաղաքի՝ բաղում սասանումն և սարսափումն և դղըրդումն և կործանումն զընակչօք քաղաքին զեղեալ, հիմն ի վեր տապալէր։ Վասն զի առհասարակ ի վայր փլուզեալ զպատուար պարսպացն և զապարանս գլխաւորացն և զտունս ռամկաց՝ իբրև զհրիզուտ վայրս առապարաց յական թօթափել տեսանէր» (Թիֆլիս 1912, եջ 162)։*

*Այս վկայության մեջ ևս խոսքը, անշուշտ, քաղաքաբնակ հասարակ ժողովրդի տների մասին ե և վոչ շինականների։*

*Մեր այս քննությունից, ինչպես և Հյուբշմանի վերոհիշյալ ստուգաբանական մեկնությունից, կարծում եմ, կարելի չե հետևցնել, վոր «ռամիկ» բառը սկզբնական իր նշանակությամբ մոտավորապես համապատասխան պիտի լիներ գերմաներեն* Menge, Masse *և ռուսերեն* толпа, масса *բառերին, վոր հաճախ գործ են ածվել հասարակ, խաժամուժ ժողովրդի իմաստով։*

*Ուշադրության արժանի չե այդ տեսակետից, վոր վոսկեդարյան շրջանի հայերեն թարգմանություններում «ռամիկ» բառը մեծ մասամբ համապատասխանում ե հունարեն* dêmos *և* demotês *բառերին, վորոնք հետքրիստոնեական մատենագրության մեջ ունեցել են նույնպես, գլխավորապես, խառնիճաղանճ բազմության, ամբոխի ու հասարակ ժողովրդի իմաստ։*

*Ուրեմն՝ ինչպես տեսնում ենք, «ռամիկ»-ը վոչ թե հոմանիշ ե «շինական» բառի, այլ նրա նշանակությունն ավելի ընդարձակ ե ու ընդհանուր։*

*«Ռամիկ» կարող եյին անվանվել վոչ միայն «շինական»ները, այլ և, ընդհանրապես, ժողովրդի ամբողջ բազմությունը, լիներ նա գյուղացի թե քաղաքացի, յեթե նա չեր պատկանում ազնվական կամ հոգևորական դասերին։*

*Վորովհետև Հին Հայաստանը, գլխավորապես, յերկրագործական ու գյուղացիական յերկիր եր, շատ բնական ե,*

վոր այստեղ «ռամիկ»-ների ստվար մեծամասնությունը կազմում եյին «շինական»-ները։

Անցնենք այժմ «շինական»-ների դրության վերլուծման Հին Հայասաանում։

«Շինական»-ների սոցիալական դրության մասին պատմական ու մատենագրական աղբյուրների տեղեկությունները թեև շատ քիչ են ու անորոշ, սակայն այդ տեղեկություններից իսկ յերևում է, վոր «շինական»-ները, լինելով Հին Հայաստանում առանձին դաս (сословие, Stand, état), կազմել են յերկրի գլխավոր հարկատու ուժը։

Ուշադրության արժանի յե առանձնապես, վոր Դվինի իններորդ կանոնում յեկեղեցականների «ազատութիւն»-ը հակադրվում է «շինական»-ների անազատ դրության, վոր անվանվում է «ծառայութիւն», «ստրկութիւն» կամ «բաժին և վիճակ ծառայութեան»։

Վերև մենք ասացինք, վոր «ծառայ» և «ծառայութիւն» բառերը գործ են ածվել Հին Հայաստանում զանազան նշանակությամբ։ Նրանք, նախ և առաջ, պետական ու նախարարական կյանքի հատուկ տերմիններ են, վոր ցույց են տալիս ամեն մի ստորին դասի կապը և կախումն ավելի բարձր դասից։ «Ծառայութիւն» եյին անվանվում այն բոլոր պարտականությունները, վոր ունեյին հայ Արշակունիների գերիշխանության տակ գտնվող նախարարները թագավորի և «ազատ»-ներն իրանց «տէր»-երի հանդեպ։ Ինչպես և միջնադարյան Յեվրոպայում, նրանք «ծառայ» եյին անվանվում վասսալի իմաստով։ Նույն բառերը նշանակում եյին նաև ստրուկ և ստրկություն, սպասավոր և սպասավորություն, ուստի և թարգմանական մատենագրության մեջ նրանք համապատասխանում են հունարեն doulos, therapôn. douleia բառերին։ Իբրև հատուկ տերմիններ Հին Հայաստանի նախարարական կազմակերպության, նրանք կարող են համեմատվել, ինչպես ցույց է տվել Նիկ. Ադոնցը, ֆեոդալական Յեվրոպայի servus, servitium և Ռուսաստանի слуга, служба բառերի հետ (Армения в эпоху Юстиниана, եջ 459)։

*Աղբյուրների վկայություններից դժվար չէ տեսնել, որ ազնվական դասի «ծառայություն»-ը Հին Հայաստանում իր էությամբ տարբեր է եղել շինական դասի «ծառայություն»-ից։*

*Մինչդեռ «ազատ»-ների և «նախարար»-ների «ծառայությունն» ունեցել է մոտավորապես վասսալական հպատակության բնույթ և այդ «ծառայութեան» գլխավոր հիմքը կազմել են նրանց զինվորական պարտականությունները, «շինական»-ների «ծառայութեան» բուն էությունը կազմել են, ընդհակառակը, հարկատվությունը, գուցե և նրանց անձնական որոշ պարտականությունները կալվածատեր «ազատ»-ների, «նախարար»-ների ու արքունի իշխանության հանդեպ, որ դեռևս մութն են և կարոտ են հատուկ քննության։*

*Իմ կարծիքով, «շինական»-ների «ծառայութեան» տնտեսական այդ կողմը շատ լավ արտահայտված է հայոց հնագույն մատենագրության ուշագրավ մի դարձվածքի մեջ, որը մինչև այժմ դեռ բավարար կերպով մեկնված չէ։*

*Փավստոս Բյուզանդը, նկարագրելով Հայաստանի ապստամբ ծայրագավառների նվաճումը Մուշեղ Մամիկոնյանի ձեռքերով, նրանց բնակչության մասին մի քանի անգամ կրկնում է հետևյալ դարձվածքը. «Եւ զբնակիչս երկրին ի հարկի ծառայութեան կացուցանէր» (Վենետիկ 1889, V, Թ, էջ 214). «ի հարկի ծառայութեան Թագաւորին Հայոց Պապայ զամենեսեան առ հասարակ կացուցանէր» (Փաւստոս, V, ԺԹ, 217). «և ինքեանք կային ի հարկի ծառայութեան» (Նույնը, V, ԺԸ, էջ 217)։*

*Նիկ. Ադոնցը ենթադրում է, որ «ի հարկի կացուցանել» կամ ավելի լրիվ՝ «ի հարկի ծառայութեան կացուցանել» նշանակում է ոչ թե հարկ դնել* („наложить дань"), *այլ հնազանդեցնել* („привести в подчинение", „заставить подчиниться", *տես* „Армения в эпоху Юстиниана", *էջ 480)։ Այս ենթադրությունը ես համարում եմ միանգամայն անհաջող։ Նիկ. Ադոնցը հենց ինքը շատ ճիշտ դիտել է, որ Փավստոսը երկու ուրիշ հատվածում «ի հարկի կացուցանէր» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանէր» դարձվածքների փոխարեն ունի՝ «հարկ դնէր հացորդացն».*

1. «Հարկանէր Մուշեղ սպարապետն — պատմում է նա — և զայս գաւառս ապստամբեալս յարքայէն Հայոց, զԿորդուս և զԿորդիս և զՏմորիս. առնոյր զերէր և աւերէր, դնէր հարկ մնացորդացն, և առնոյր պանդանդս» (V, Ժ, էջ 214).

2. «Եւ զկողմանսն Մարաց, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց, հարկանէր զնոսա մեծապէս. և գերէր զբազումս ի նոցանէն, և մնացորդացն դնէր հարկս, և առնոյր պանդանդս» (V, ԺԱ, էջ 214)։

Այս և համապատասխան նախորդ հատվածների համեմատությունից արդեն պարզ յերևում է, որ «ի հարկի կացուցանէր» կամ «ի հարկի ծառայութեան կացուցանէր» դարձվածքները գործ են ածված Փավստոսի մոտ հարկ դնելու և վրա հնազանդեցնելու իմաստով։

Նորայր Բյուզանդացին, քննության առնելով Փավստոսի նույն դարձվածքների իմաստը, յենթադրում է, որ վոսկեդարյան թարգմանությունների խմբերից մեկում փոխանակ «ի հարկի ծառայութեան կացուցանեմ» կայ «արկանեմ ընդ հարկաւք ծառայութեան» (Գ. Թագ. Թ, 21) կամ «ածեմ ի հարկատուս» (Բ. Մնաց. Ը, 8. տես «Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք», Տփղիս 1900, էջ 367)։ Այս համեմատությունները ևս ցույց են տալիս, վոր մեր յեզրակացությունը վերոհիշյալ դարձվածքների մասին միանգամայն ճիշտ է։

Իմ կարծիքով, «ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն»-ը հատուկ ու առանձին մի տերմին է, վորով վորոշվում եր «շինական»-ների «ծառայութեան» հիմնական բնույթը։ «Ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն»-ը, լինելով «շինական»-ների գլխավոր պարտականությունը, տարբերվել է «նախարար»-ների ու «ազատ»-ների «ծառայութիւն»-ից հատկապես նրանով, վոր նրա սոցիալական-տնտեսական հիմքը կազմել է հարկատվությունը, վորից ազատ են յեղել ազնվական արտոնյալ դասերը։

Արդ՝ չնայած «շինական»-ների «ծառայությունն» անվանվել է «ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն», աղբյուրների վկայություններից դժվար չէ նաև կռահել, որ ազնվականների զինվորական կամ «գործակալ»-ական «ծառայութիւն»-ը, նմանապես և հոգևորականների «ծառայութիւն»-ը, համարվել են «ի սպասու ծառայութիւն», իսկ ստրուկներինը՝ «ի ստրկաց կարգի ծառայութիւն» կամ «ծառայութիւն ստրկութեան»։

«Ծառայութիւն»-ների այս տարբեր բնույթը և հատուկ բովանդակությունն ակնարկված են մատենագրական հետեվյալ վկայություններում.

1. Փաւստոս, III, Ե, էջ 11՝

«Քանզի ոչ երկրաւոր զաւակի ցանկացեալ էր [Յուսիկ], այլ այնպիսումն՝ որ ի սպասաւորութիւն սպասու պաշտամանն ծառայութեան տեառն կացցեն».

2. Նույնը, IV, Բ, էջ 68՝

«Թող զնահապետս մեծամեծս և զտանուտեարս՝ որք գործակալք միայն էին ինն հարեւր բարձ, որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեանն բազմականացն կարգելոց, թող զոտնկայս գործակալութեանն սպասու».

3. Նույնը, V, ԼԱ, էջ 237՝

«Եւ զայն ի սպասու կացուցանէր [Պապ] յիւր ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն».

4. Եղիշէ, I, էջ 18—19 (Վենետիկ 1864)՝

«Եւ անմեղութեամբ ոչ գիտացեալ զերկդիմի միտս Թագաւորին, խաղացին գնացին յիւրաքանչիւր աշխարհաց լրջմտութեամբ և անտրտում խնդութեամբ և տիրասէր խորհրդովք, կատարեալք զսպաս զինուորութեան աներկբայ վաստակովք».

5. Ղազար Փարպեցի, III, ՂԶ, էջ 176՝

«Իսկ յաղագս տէրութեանն Արծրունւոյն Թող

վայր մի, զի գիտասցեն մարդիկն [թէ] որ ի տոհմէն են, ապա ինչ արժանաւորապէս ցուցանել առ մեզ և վաստակս ինչ յօգուտ Արեաց աշխարհիս վաստակել»․

6. Խորենացի, II, Ծ, էջ 178՝

«Զի վասն միոյ քինի ոչ է օրէն դիւցազանց՝ զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն, կամ ծառայեցուցանելով ի ստրկաց կարգի պահել»․

7. Փաւստոս, III, ԺԴ, էջ 41՝

«Եւ ոչ երբէք պակասեսցէ լուծ չար ստրկութեան ծառայութեանն ի պարանոցաց ձերոց»։

«Ի հարկի ծառայութեան» մասին շատ հետաքրքիր է Ղազար Փարպեցու վկայությունը, որը սակայն վերաբերվում է ոչ թե Պարսկական Հայաստանին, այլ Պարսկական Ասորեստանի Շափուլ կոչված գավառին։

Խոսելով Աբրահամ Խոստովանողի ու Խորեն յերեցի մասին, Փարպեցին պատմում է, որ Պարսից Հազկերտ Բ. թագավորը (439—457 թ.) հրամայում է, որ նրանք հանձն առնեն պատվել կրակը, իսկ յեթե ոչ՝

«Պատուհաս կրեսցեն խեղութեամբ, և երթեալ յԱսորեստան մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսըն, և ի հարկի կայցեն մինչև ցվախճան իւրեանց» (II, ԾԸ, էջ 105)։

Որովհետև սրանք համառում են և չեն կատարում թագավորի հրամանը, ուստի և, ինչպես վկայում է Փարպեցին՝

««Կտրեալ զերկոցունց զականջսն՝ ետուն տանել յԱսորեստան, ի գաւառն որ անուանեալ կոչի Շափուլ, կալ անդ նոցա ի հարկի և առնել մշակութիւն արքունի» (II, ԾԸ, էջ 106)։

Այստեղ Խորեն յերեցը մի քանի տարուց հետո մեռնում է, իսկ Աբրահամ յերեցը տեղացի քրիստոնյաների օգնությամբ ազատվում է ու վերադառնում Հայաստան։

Փարպեցու վկայության մեջ կարևոր է առանձնապես այն, որ Աբրահամ Խոստովանողի ու ընկերոջ մշակության

վիճակն անվանվում է «ի հարկի» կացություն «մինչև ցվախճան»։

Նրան ազատելու համար տեղացի քրիստոնյաները վոչ թե փրկանք են տվել, ինչպես կարծում է Գարագաշյանը («Քննական պատմութիւն Հայոց», մասն Դ, Թիֆլիս 1895, էջ 209), այլ, հավանաբար, յերաշխավորել են վճարել Նրանից հասանելիք հարկը։

> «Իսկ երանելի երէցն Աբրահամ — ասում է Փարպեցին — երաշխաւորութեամբ հաւատացելոց աշխարհին, որք գտանս իւրեանց և զարարս փոխանակ ընդ հարկի Նորա գրեցին յարքունիս ցվախճան Նորա, և կատարեցին զկարգեալսն անվեհեր յաղագս Նորա» (II, ԾԸ, էջ 106)։

Անհավանական չի լինի յենթադրել, վոր հավատացյալների այս յերաշխավորությունն ունեցել է համերաշխիքի բնույթ (круговая порука)։

Ուրեմն՝ ինչպես տեսնում ենք, Աբրահամ Խոստովանողը, լինելով Ասորեստանում «ի հարկի» ծառայության մեջ, գտնվել է հարկատու ալնպիսի վիճակում, վորին կապված է յեղել մինչև ցմահ և վորից ազատվելու համար անհրաժեշտ է յեղել հավատացյալ բնակչության համերաշխիքն այն հարկերի համար, վոր Նրանից ստացվելու յեր մինչև Նրա վախճանը։

Փարպեցու վկայությունը վերաբերվում է Ասորեստանում գտնվող «արքունի մշակներին» և պարզ չէ, թե արդյոք այս «արքունի մշակները» սովորական արքունի գյուղացիներն եյին, թե աքսորվածների հատուկ մի խումբ։ Վերջին յենթադրությունն ինձ թվում է անհավանական։ Փարպեցու վկայության բովանդակությունից յերևում է, վոր «արքունի մշակք» անվան տակ կարելի յե հասկանալ արքունի գյուղացիներին, վորոնց գլխավոր պարտականությունը յեղել է «ի հարկի» ծառայությունը։

Արդ՝ ամենակարևորը նույն վկայության մեջ այն է, վոր հարկատու այդ դրությունից անկարելի յե յեղել կամո-

վին դուրս գալ, այլ անհրաժեշտ է յեղել նախապես յերաշ-
խավորել արքունի բոլոր հարկերի վճարումը։ Կարելի յե,
ուրեմն, յենթադրել, վոր արքունի գյուղացիներին թույլա-
տրված է յեղել հարկային պարտականությունների ապա-
գնումը և այդ տեսակետից նրանց իրավական դրությունը
նման է յեղել արևմայան կոլոնների դրությանը։

Թեև Փարպեցու վկայությունը վերաբերվում է Պարս-
կական Ասորեստանին, բայց, ինչպես կտեսնենք, Հին Հա-
յաստանում ևս «շինական»-ները, գտնվելով «ի հարկի ծա-
ռայութեան» վիճակում, իրավունք չեն ունեցել ինքնակամ
կերպով թողնել այդ ծառայությունը և, ըստ յերևույթին,
ժառանգաբար կապված են յեղել իրանց զբաղմունքին, հողին
ու հարկատու դրությանը։

Սոցիալական ու տնտեսական ներքին կարգերի համե-
մատումը Հայաստանում և Պարսկաստանում ինքնին հե-
տաքրքիր մի խնդիր է, վորը, իհարկե, դեռ կարոտ է հիմ-
նավոր ու լուրջ ուսումնասիրության։

Հին Հայաստանը, վոր Արշակունյաց թագավորության
ժամանակ մեծ չափերով յենթարկվել էր Պարթևական Պարս-
կաստանի քաղաքական և կուլտուրական ազդեցությանը,
շատ հավանական է, վոր իր սոցիալական-տնտեսական կեն-
ցաղով բավական նման պիտի լիներ հարևան Պարսկաս-
տանին։ Սասանյան Պարսկաստանի տիրապետության շրջա-
նում այդ նմանությունը կարող էր ավելի ևս մեծ լինել,
վորովհետև մարզպանական Հայաստանը յենթարկված էր
Պարսկաստանի անմիջական իշխանությանը։

Այս տեսակետից, հին իրանական ներքին կյանքի լու-
սաբանությունն ունի նշանակություն նաև Հին Հայաստանի
համար։

Դժբախտաբար, շինական դասի դրության խնդիրը, թե
Պարթևական և թե Սասանյան Պարսկաստանում, փաստական
տեղեկությունների աղքատության պատճառով նույնքան
անորոշ է, ինչպես և Հին Հայաստանում։ Դրական ու հաս-
տատուն արդյունքներ ստացվել են առ այժմ, գլխավորա-

պես, լեզվագիտության մեջ, և նորագույն այդ ուսումնասիրություններից երևում է, որ հին հայերենում գյուղացիության վերաբերյալ սոցիալական ամենակարևոր տերմիններն իսկ, ինչպես՝ շեն, շինական, ռամիկ, անազատ և այլն, փոխառություն են պարսկերեն կամ ավելի ճիշտ՝ պարթևերեն լեզվից։

Տեսնենք այժմ՝ հնարավոր չէ՞ արդյոք գեթ հավանական ընդհանուր գծերով որոշել «շինական»-ների իրավական դրությունը Հին Հայաստանում։

Պրոֆ. Ի. Ջավախովը, քննության առնելով այս խնդիրը, հանգել է այն եզրակացության, որ «շինական»-ներն ազատ չեն եղել, այլ ստորադրված են եղել ազնվականներին։ Նրա եզրակացության գլխավոր ու միակ հիմքն այն է, որ մատենագրական աղբյուրներում «շինական»-ները հակադրըվել են «ազատ»-ներին և անվանվել «անազատ» (Государственный строй древней Грузии и древней Армении, էջ 134)։

Իմ կարծիքով, Ջավախովի մատնացույց արած միակ այս ապացույցն ամուր ու հաստատուն չէ։

Միանգամայն ուղիղ է, որ «շինական»-ները Հին Հայաստանում եղել են «ազատ»-ներին հակադիր առանձին դաս և նրանք նույն իսկ աղբյուրներում կոչվել են հաճախ «անազատ»-ներ, սակայն այդ փաստն ինքնին դեռ բավական չէ, որ նրանց կարելի լինի համարել ոչ ազատ այդ բառի այժմյան իրավական իմաստով։ «Ազատք» և «անազատք» թեև թարգմանվել են ռուսերեն՝ свободные և несвободные, սակայն այդ թարգմանության դեմ կարող են լինել լուրջ առարկություններ։ Ավելի ուղիղ կլինի այդ բառերը թարգմանել „азаты“ և „неазаты“:

Անթույլատրելի է, ընդհանրապես, հայոց իրավական ու սոցիալական հին տերմինները, ինչպես՝ «անազատ», «ազատ», «սեպհական» «սեպհականութիւն», «նախարար», «նախարարութիւն» և այլն՝ թարգմանել կամ լուսաբանել այդ բառերի ժամանակակից աշխարհաբար իմաստի համեմատ, այլ հարկավոր է ամեն անգամ որոշել իրավական

այն հատուկ բովանդակությունը, որ նրանք ունեցած պիտի լինեն Հին Հայաստանում։

«Շինական»-ների «անազատ» լինելը, այսինքն՝ «ազատ»-ների դասին չպատկանելը՝ դեռևս ապացույց չէ նրանց ճորտական վիճակի։ Հին Ռուսաստանում, օրինակ՝ «սմերդները» (смерды), որոնք նույնպես իբրև առանձին դաս հակադրըրվել են ազնվական ավելի բարձր դասերին և եղել են երկրի գլխավոր հարկատու ուժը, իրավական իրանց դրությամբ եղել են ազատ։

Որպես զի կարելի լինի ցույց տալ «շինական»-ների անազատ լինելն այդ բառի այժմյան հասկացողությամբ, անհրաժեշտ է, ինչպես տեսնում ենք, ուսումնասիրել նրանց իրավական դրության վերաբերյալ նյութերը շատ ավելի մանրազննին կերպով, քան այդ արել է Ի. Ջավախովը։

Հիմնական խնդիրը, որ հարկավոր է դեռ լուծել «շինական»-ների վերաբերմամբ այն է, թե արդյոք նրանք յեղե՞լ են կապված հողի հետ, ինչպես միջնադարյան ճորտերը, և արդյոք նրանց կախումը կալվածատեր ազնվական դասից տնտեսական է եղել միայն, թե նաև անձնական։

Մատենագրական աղբյուրները, դժբախտաբար, հնարավորություն չեն տալիս քննության առնել ու լուսաբանել այդ խնդիրը հանգամանորեն, իր բոլոր մանրամասնություններով, ինչպես այդ արված է նորագույն ուսումնասիրություններում Բյուզանդիայի, Արևմտյան Եվրոպայի և Ռուսաստանի գյուղացիության նկատմամբ։ Աղբյուրների մեջ կան միայն կողմնակի մի քանի ցուցումներ, որոնցից, իմ կարծիքով, կարելի չէ հետևցնել, որ նախարարական Հայաստանում ևս «շինական»-ները գտնվել են, ընդհանուր առմամբ, ճորտանման վիճակում։

Այդ ցուցումներից ամենից ուշագրավը է Դվինի ժողովի հետևյալ կանոնը.

Կանոնք Դունայ, Վաղարշապատ 1905, հրատ. Մխիթար վարդապետի և Սիրական Տիգրանյանի, Թ, եջ 19՝

«Յորժամ ազատք զխւրեանց զերդ և զմարդ բա-

ժանեն՝ յոլովք չարակնութեամբ առնեն, զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան ի ծառայութիւն և ի ստրկութիւն արկանել, մոլեալք և մոլորեալք ի քրիստոնէական հաւատոյս»։

Դվինի այս կանոնից պարզ երևում է, որ երդերն ու մարդիկ եղել են ժառանգական բաժանման առարկա, ուստի և հավանական է ենթադրել, որ նույն այդ գույքը կարելի յե եղել նաև գնել, վաճառել, ընծայել, կտակել և այլն։ Միանգամայն պարզ է նաև, ինչպես երևում է նույն կանոնի շարունակությունից, որ երդերի ու մարդկանց այս բաժանումը վերաբերվում է «ազատ»-ներին պատկանող «շինական»-ներին։

Արդ՝ ի նկատի ունենալով, որ «շինական»-ները համարվել են կալվածատեր ազնվականության հատուկ գույքը, ինչպես և նույն կանոնի հետաքրքիր ակնարկները «շինական»-ների «ծառայութեան» և «ստրկութեան» մասին, վերոհիշյալ իմ աշխատության մեջ («Դիտողություններ», էջ 33) ես հավանական եյի համարել, որ «շինական»-ները պետք է լինեյին ճորտացած և կապված հողին։

Թադ. Ավդալբեգյանն իր «Հաս, սակ ու բաժ» աշխատության մեջ (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, № 1, Յերևան 1926, էջ 55—56) մատնացույց է անում այս առթիվ, որ «դերդ և զմարդ» բաժանելը սովորական երևույթ է նաև այժմյան Պարսկաստանում, սակայն գյուղացիք այնտեղ հարկատու յեն, բայց ճորտ չեն։ Այս առարկությունն, իմ կարծիքով, համոզիչ չէ, որովհետև վերոհիշյալ կանոնում ակնարկվում է նաև «շինական»-ների «ստրկութեան» գրությունը։

Դվինի իններորդ կանոնը, որ Մխիթար Գոշի խմբագրությամբ մեջ է բերված նաև «Դատաստանագրքում» (հրատ. Վահան ծ. վարդ. Բաստամյանցի, Վաղարշապատ 1880, Մասն Ա, ՃԶ, էջ 215—216), քննության են առել

նաև Կարստը և Խ. Սամվելյանը[1], և նրանք ել, հիմնվելով այդ կանոնի բովանդակության վրա, հանգել են այն եզրակացության, որ «շինական»-ները գանվել են ճորտական դրության մեջ։ Խ. Սամվելյանի կարծիքով՝ «շինական»-ները մասամբ մոտիկ նմանություն ունեյին բյուզանդական իրավունքին հայտնի coloni adscriptitii կամ ἐναπόγραφοι անվանած գյուղացիների հետ» (եջ 299)։ Իսկ Կարստը «շինական»-ներին համապատասխան է համարում hörig (зависимый) կոչված կիսաճորտ գյուղացիներին (եջ 44)։

Որ գյուղական «երդ»-երը որպես հատուկ գույք պատկանել են ազնվականներին՝ այդ յերևում է նաև Մովսես Կաղանկատվացու վկայությունից Աղվանից Վաչե արքայի մասին։ Այս արքան, հրաժարվելով գահից, խնդրում է Պարսից Պերոզ Թագավորից տալ իրան սեպհական իր բաժինը, որ ստացել եր հորից։

> «Իսկ սա հաճեցաւ — պատմում է Կաղանկատվացին — միայն զսեպհականն առնուլ բաժին իւր, զոր ի հօրէն էր առեալ հազար երդ, առ զայն ի Թագաւորէն և նստաւ ի նմա միայնակեցօք հանդերձ» (I, Ժ, հրատ. Մ. Էմինի, Մոսկվա 1860, եջ 14, համեմատե «Եղիշէի վարդապետի, Վասն Վարդանաց և հայոց պատերազմին», Վենետիկ 1864, VIII, եջ 353)։

Այս վկայության մեջ ևս «երդ»-երը, ուրեմն և նրանց մեջ ապրող յերդավորները, համարվում են հատուկ գույք, որ Վաչեն իբրև սեպհական բաժին ստացել եր իր հորից։

Իմ կարծիքով «շինական»-ների իրավական դրությունը կարող է վերաբերվել նաև Ղազար Փարպեցու հետևյալ վկա-

---

[1] Տես J. Karst, Sempadscher Kodex, zw. Band, Strassburg 1905, եջ 44—45 և Խ. Սամվելյան, Մխիթար Գոշի դատաստանագիրքն, Վիեննա 1911, եջ 297—299։ Այս յերկու աշխատությունը չեն հիշատակված շինականության վերաբերյալ վերոհիշյալ իմ ուսումնասիրության մեջ, որովհետև այս աշխատությունները ստացվեցին արտասահմանից 1925 Թվից հետո։

յությունը, վոր գտնվում ե նրա Վահան Մամիկոնյանին գրած «Թուղթի» մեջ.

Ղազար Փարպեցի, Տփղիս 1904, եջ 188՝

> «Արդ՝ զառաջին կելոյն իմոյ զվարս տէր Ներսեհ և Հրահատ Գամսարական գիտեն. զՄիւնեացն՝ յառաջագրեալ եպիսկոպոսն աշխարհին։ Եւ դու յայց ելեալ խնդրել զիս, և գտեալ յաշխարհին յայնմ՝ ածեր ի տուն, ոչ իբրև զաղքատ զոք ի կազմածէն և ի մանկտւոյն, և ոչ իբրև օտար զոք ի քէն և կամ զծառայ ուրուք. քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս։ Իսկ որ զատոյցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս և ազատութեան եղև մեզ առիթ, տէր Ազան՝ քո տեառն քեռի էր»։

Կարևոր այս վկայությունը, թվում ե ինձ, վոր սխալ ե մեկնված Զարբանալյանի «Հայկական հին դպրության պատմության» մեջ։ Հիմնվելով այս հատվածի վրա, Զարբանալյանը հնարավոր ե համարել յեզրակացնելու, վոր Ղազար Փարպեցին «ընտիր և ազնուական ցեղէ էր» (Վենետիկ 1897, եջ 392)։ Իսկ Փարպեցու այն վկայությունը, վոր նա Գուգարաց Աշուշայ բդեշխի տանը սնվել ու դաստիարակվել ե Վահան Մամիկոնյանի ու նրա յեղբայրների հետ («Թուղթ», եջ 188), առիթ ե տվել նրան նույն իսկ յենթադրելու, վոր Փարպեցին, հավանաբար, ազգական ե յեղել Մամիկոնյանների տոհմին։

Գրիգոր Խալաթյանցը ևս Փարպեցուն համարում ե «ազատ կամ յազգէ ազնուաց», «որդի առն ունևորի» և հնարավոր ե համարում նրա «մերձավոր կամ հեռավոր ազգակցությունը» Մամիկոնյանների հետ (տե՛ս «Ղազար Փարպեցի և գործք նորին», Մոսկվա 1883)։

Այս յենթադրություններից և վոչ մեկը հավանական չե։

Վերոհիշյալ հատվածում «ոչ օտար զոք ի քէն» խոսքերով Փարպեցին ակնարկում ե, վոր ինքն օտար չե Վահանին, իբրև նրա սննդակիցը մանկության հասակում։ Վոր

այդ խոսքերը չեն կարող այլ կերպ հասկացվել և հիմք ծառայել Փարպեցու ազնվական ծագման, այդ ավելի քան պարզ յերևում ե նույն հատվածի վերջին պարբերությունից, վորի մեջ Փարպեցին իր ծագման մասին վկայում ե, վոր իրան, հոգևորական դարձնելով, ծառայությունից զատուցել և ազատության առիթ ե յեղել Տեր Ալանը, Վահան Մամիկոնյանի քեռին։

Ցեթե Փարպեցին «ազատ»-ների կարգն ե անցել հոգեվոր կոչում ընդունելուց հետո, սակայն միևնույն ժամանակ, ինչպես ինքն ե վկայում, չե յեղել «ծառայ ուրուք», վոչ ել «աղքատ ոք ի կազմածէն և ի մանկտւոյն»[1], կարելի յե, իմ կարծիքով, յենթադրել, վոր նա յեղել ե, հավանաբար, շինական Փարպի գյուղից։

Փարպեցու ռամկական այս ծագման մի ակնարկ կարելի յե թերևս համարել նրա «Թուղթ»-ի նաև հետևյալ վկայությունը (եջ 197)՝

> «Դարձեալ այլ շոգմոգ բանիւք զալրացուցանել զքեզ, տէր, ընդ իս փութային, թէ «Մանուկ մի՝ հոգաբարձ տեղւոյն չկարէ առնել»։

Փարպեցու ծագման մասին այս նոր ու կարևոր յենթադրությամբ վոչ միայն վորոշվում ե նրա շինական ծագումը, այլ և լուսաբանվում ե «շինական»-ների իրավական դրության հետաքրքիր մի առանձնահատկությունը։

Վորպես զի Փարպեցին կարողանար հոգևորական դառնալ և ստանալ «ազատութիւն», վոր հատուկ եր յեկեղեցականներին, ինչպես տեսնում ենք, հարկավոր ե յեղել նրան «ծառայութիւն»-ից «զատուցանել»։ Ցեթե «շինական»-ները լինեյին ազատ՝ դժվար թե հարկավոր լիներ նրանց ազատագրումը նախկին «ծառայութիւն»-ից։

Փարպեցու վկայության այս նոր մեկնությունը, ինչպես

---

[1] «Ծառայ» Փարպեցու այս հատվածում նշանակում ե ըստ իս ստրուկ, իսկ «մանկտի» համապատասխանում ե, հավանորեն, ֆեոդալական Ռուսաստանի „ОТРОК" կամ „ЧАДЬ" տերմիններին։

և վերոհիշյալ մյուս վկայությունները, մոտավորապես պարզում են «շինական»-ների սոցիալական ընդհանուր դրությունը Հին Հայաստանում։

Ըստ յերևույթին, նրանք իբրև «անազատ»-ներ հարկատու հատուկ «ծառայությամբ» կապված են յեղել իրանց հողի և տերերի հետ։ Նրանց «ծառայության» մանրամասնությունները թեև մութ են մնում ու անհայտ, սակայն ընդհանուր գծերով կարծես թե հաստատվում է, վոր նրանց «ի հարկի ծառայության» վիճակն ունեցել է, հավանաբար, վորոշ չափով ճորտության բնույթ։

Հավանական է նույնպես, վոր շինականությունը, լինելով իր մեջ պարփակված առանձին դաս, վորից դուրս գալը հնարավոր է յեղել, ինչպես տեսանք, կալվածատիրոջ համաձայնությամբ, իր իրավունքներին ու պարտականություններին կապված եր մնում ժառանգաբար։ Ինչպես «ազատ»-ների դասի մեջ ժառանգական է յեղել զինվորական ծառայությունը, հոգևորական դասի մեջ՝ քահանայական պաշտոնը, այնպես ել շինական դասի համար, ըստ յերևույթին, ժառանգական յեղած պիտի լիներ նրա հատուկ հարկատու «ծառայութիւն»-ը։

Ուշագրավ է, վոր սոցիալական նման վիճակում յեղել են նաև Սասանյան Պարսկաստանի գյուղացիները, վորոնց մասին մի քանի կարևոր տեղեկություններ տալիս է Տանսարը Տաբարիստանի թագավորին գրած իր նամակում (տես հրատար. և թարգման. Դարմեստետերի, Journal Asiatique, I, եջ 210 շարուն. և 513 շարուն.)։ Խրիստենսենի կարծիքով, այդ նամակը գրված պիտի լինի Խոսրով I-ի հաղթություններից հետո 557—570 թվականներին (տես L'empire des Sassanides, Kobenhavn 1907, եջ 112)։

Տանսարն իր այդ նամակում մատնանշում է, վոր Պարսկաստանում «ամեն մեկը պետք է զբաղվեր այն գործով, վորի համար Աստված նրան ստեղծել եր» (տես Christensen, L'empire des Sassanides, եջ 46, նաև „Lettre de Tansar au roi de Tabaristan“, եջ 215 և 520)։ Ընդհանրապես, փոխադը-

բումը մի դասից մյուսն արգելված ե յեղել, սակայն կարող եր այդ տեղի ունենալ բացառաբար և միայն այն դեպքում՝ յերբ գյուղացին աչքի յեր ընկնում առանձին իր ընդունակություններով։ «Այդ դեպքում — վկայում ե Տանսարը — ղեկուցանում ին այդ մասին թագավորին և յերկար հարց ու փորձից հետո մոգպետների և հերպետների մասնակցությամբ՝ յեթե սրանք ընդունում եյին թեկնածուի արժանիքը, փոխադրում եյին նրան ուրիշ դասի մեջ» (տես Christensen, եջ 46, նաև Tansar, եջ 214 և 519)։

Հիմնվելով Տաբարիի վկայության վրա (տես Th. Noeldeke, Tabari, Leyden 1879, եջ 122)՝ Քրիստենսենը յենթադրում ե նաև, վոր Սասանյան Պարսկաստանում գյուղացիները, լինելով անազատ, ամրացված եյին կալվածատիրոջ հողին և պարտավոր եյին կատարել նրա մոտ «կոռ»-ի աշխատանքներ (Christensen. եջ 46)։

Գյուղացիության ճորտական այդ դրությունը Սասանյան Պարսկաստանում, ինչպես և նրանց դասային փակ ու կաստայական վիճակը, թվում ե ինձ, կարևոր դարձյալ ցուցմունքներ են, վոր անուղղակի կերպով հաստատում են «շինական» դասի կացության նման պայմանները նաև նախարական Հին Հայաստանում։

«Շինական»-ների սոցիալական դրության պարզաբանումն այնքան կարևոր խնդիր ե, վոր ավելորդ չի լինի մեջ բերել նաև մատենագրական աղբյուրների մի քանի կողմնակի վկայությունները՝ իբրև նեցուկ և կռվան վերոհիշյալ յեզրակացության։

Մովսես Խորենացին, նկարագրելով իր «Ողբի» մեջ հայ ժողովրդի զանազան խավերի արատավոր բարքերը, ժողովրդականների մասին ասում ե հետևյալը.

> «Ժողովրդականք վէսք, ստահակք, մեծախօսք, անվաստակք, արբեցողք, վնասակարք, փախչողք ի ժառանգութենէ» (III, ԿԸ, Տփղիս 1913, եջ 364)։

Մ. Եմինը «փախչողք ի ժառանգութենէ» թարգմանել

„чуждающийся духовного звания“, իսկ Խորեն ծ. վարդ. Ստեփանեն, հետևելով Նրան, թարգմանել է՝ «յեկեղեցական կոչումից փախչող»[1]։

Այս թարգմանությունները միանգամայն անհաջող են ու անիմաստ։ Հոգևոր կոչումը, ինչպես հայտնի չէ, կապված էր տնտեսական ու սոցիալական այնպիսի արտոնությունների հետ, որ անհեթեթ կլիներ կարծել, իբր թե այդ կոչումից ժողովրդականները տրամադիր կլինեյին խուսափել։

Հանգուցյալ միաբան Գալուստ Տեր-Մկրտչյանը, որքան հիշում եմ, «փախչողք ի ժառանգութենէ» խոսքերը վերագրում էր «շինական»-ներին և յենթադրում, որ «ժառանգութեան» տակ պետք է հասկանալ այն հողը և «շինական ծառայութեան» այն ծանր վիճակը, որից «շինական»-ներն աշխատել են խուսափել ու ազատվել փախուստի միջոցով։ Այս յերևույթը, ինչպես գիտենք, ճորտական գյուղացիության համար սովորական է յեղել նաև ուրիշ յերկիրներում։ Ցեթե միաբանի մեկնությունն ընդունելի համարվի, այդ դեպքում՝ «շինական»-ների մասին վերոհիշյալ մեր յենթադրությունը հաստատված կլինի նաև Խորենացու վկայությամբ։

«Փախչողք ի ժառանգութենէ» խոսքերից կարելի կլինի հետևցնել, որ «շինական»-ները, լինելով «անազատ», գտնվել են Խորենացու ժամանակ ճորտական վիճակում։ Այդ դրությունը, ինչպես տեսնում ենք, անվանված է «ժառանգութիւն», ուստի և պետք է յենթադրել, որ «շինական»-ների հատուկ «ծառայութիւն»-ը կրել է ժառանգական բնույթ, ինչպես և Սասանյան Պարսկաստանում։

Վերջերս Հ. Ներսես Ակինյանը, համարելով «Ողբի» հեղինակ Ղևոնդ յերեցին, յենթադրել է, որ «փախչողք ի ժառանգութենէ» խոսքերը վերաբերվում են այն հայ Նա-

[1] Տես История Армении Моисея Хоренского, новый перевод Н. Эмина, Москва 1893, եջ 215, և «Մովսէս Խորենացու հայկական պատմութիւն», թարգմ. Խ. ծ. վարդ. Ստեփանեյի, Ս. Պետերբուրգ 1869, եջ 350 և ծանոթ. 814, եջ 290։

խարարներին, վորոնք ութերորդ դարի յերկրորդ կեսի ար-հավիրքների ժամանակ թողել եյին իրանց «ժառանգութին»-ները և փախել Բյուզանդիա[1],

Այս յենթադրությունը, իմ կարծիքով, հավանական չե, վորովհետև Խորենացու «Ողբի» մեջ «փախչողք ի ժառան-գութենէ» ասված ե վոչ թե իշխանների, այլ ժողովրդական-ների մասին։ Բացի այդ՝ «փախչողք ի ժառանգութենէ» մեջ ե բերված «Ողբի» մեջ իբրև նման մի արատ, ինչպես և ժողովրդականների ստահակությունը, արբեցողությունը և մյուս բացասական մակդիրները. իսկ նախարարների «ժա-ռանգութին»-ից փախչելն այնպիսի մի արատ չեր, վոր կարելի լիներ հիշել մյուս հատկանիշների կողքին։

Վոր նախարարների դաղթը դժվար ե համարել արա-տավոր մի թերություն՝ այդ պարզ յերևում ե հենց Ակի-նյանի մատնանշած Ղևոնդի համապատասխան հատվածից։

> «Ասացից և վասն պատմելին այնմիկ — ասում ե Ղևոնդը — զոր նախ առաքէր Աբդլա յաշխարհս Հայոց, որում Ծալէհ կոչէին. որ էր այր անօրէն և արիւնահեղ, յորմէ բազումք զգուշացեալ անձնապահ լինէին. քանզի ոչ կարէին յանժամ այնպիսի նեղութեան տանել։ էին ոմանք ի նախարարացն Հայոց, որք մերժեալ լքին զժառանգութիւնս իւրեանց և փախստեայ անկան յաշ-խարհն Յունաց, ապաւինեալք առ կայսրն Կոստանդին» («Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս. Պետ. 1887, ԼԲ, եջ 133)։

Շատ պարզ ե, վոր «Ողբի» մեջ «փախչողք ի ժառան-գութենէ» չի կարող վորևե կապ ունենալ Ղևոնդի այս վկա-յության հետ, վոչ ել ունենալ այն նշանակությունը, վոր այդ խոսքերին վերագրել ե Ակինյանը։

«Շինական»-ների հողի հետ կապված լինելն ակնարկ-

---

[1] Տես Հ. Ներսես վ. Ակինյան, Մատենագրական հետազոտություն-ներ, հատոր Գ, Վիեննա 1930, եջ 169։

*ված է, հավանորեն, նաև Փավստոսի և Խորենացու հայտնի վկայությունների մեջ Արշակավան քաղաքի մասին։*

*Այդ քաղաքը հիմնել էր Արշակ Թագավորը Կոգովիտ գավառում և, վորպես զի քաղաքը բազմամարդ բնակչություն ունենա, հիշյալ պատմիչների ասելով, նա հրաման էր տվել իր յերկրի բոլոր տեղերում, վոր գան այդտեղ ամեն տեսակ վոճրագործներ և հանցավորներ, վորոնք ազատ կլինեն դատից ու պատասխանատվությունից։*

*Գարագաշյանի*[1] *և Սամվելյանի*[2] *կարծիքով՝ այս ոտարոտի ու անհասկանալի հրամանը մի պարզ ակնարկ է, վոր Հին Հայաստանում ևս գոյություն է ունեցել ապաստանի իրավունքը, վորը համեմատական իրավագիտության մեջ անվանվում է* Asylrecht: *Իսկ Լեոն*[3] *և վերջերս նաև Մարկվարտը*[4] *յենթադրում են, վոր Արշակավան էյին փախել, հավանորեն, վոչ միայն մարդասպանները, ավազակները, գողերը և սրիկաները, այլ և, գլխավորապես, ճորտ գյուղացիները (ըստ Մարկվարտի՝* „hörige Bauern“): *Ուշագրավ է այս տեսակետից Խորենացու հետևյալ վկայությունը.*

> *«Եւ նախարարացն Հայոց ժողովեալ — ասում է Խորենացին — դիմեցին ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանի, և հարին զնա սրով սուսերի յառնէ մինչև ցկին, բայց ի տղայոց ստնդիացաց. քանզի դառնացեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրեանց և յանցաւորաց»* (III, *Իէ, Տփղիս 1913, էջ 289)։*

*Վոր «ծառայից իւրեանց» խոսքերը կարող են այս հատվածում վերաբերվել «շինական»-ներին՝ այդ միանգամայն*

---

[1] *Ա. Մ. Գարագաշյան, Քննական պատմություն Հայոց, Բ, էջ 11—12.*

[2] *Խ. Սամվելյան, «Արյան վրեժ և փրկանք», տես Ազգագրական Հանդես, Թիֆլիս 1903,* X, *էջ 278—280։*

[3] *Լեո, Հայոց պատմություն, Թիֆլիս 1913, էջ 623։*

[4] Markwart, Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, *էջ 62*։*

հնարավոր է և հավանական։ Ցեվ չեթե ընդունելի համարվի այս բացատրությունը՝ պետք է, անշուշտ, նաև չենթադրել, վոր «շինական»-ները գտնվել են ճորտական վիճակում։

Հավանական համարելով ճորտական գյուղացիության գոյությունը հին Հայաստանում, չպետք է, իհարկե, կարծել, վոր Հայաստանի վողջ գյուղացիությունը նախարարական զանազան յերկրաշրջաններում ունեցել է կատարելապես միակերպ ու նույնանման վիճակ։

Հայաստանի նման նախարարական մի յերկրում, վորը բաժանված եր անջատ ու գրեթե անկախ իշխանությունների, շատ բնական է, վոր կըլինեյին «զանազան սովորութիւնք գաւառաց և աշխարհաց»։ Կարող եյին նույն իսկ լինել ճորտական գյուղացիությունից դուրս նաև ազատ գյուղացիության մնացորդներ։

Վոր գյուղերի ու «շինական»-ների իրավական ու տնտեսական դրության մեջ կարող եյին լինել տարբերություններ, այդ մենք կարող ենք գուշակել Խորենացու ուշագրավ մի վկայությունից։ Հանդիմանելով նախնի հայերի անիմաստասիրությունը, վորոնք թերացել են գրի առնել տալու իրանց ժամանակվա պատմական անցքերը, Խորենացին կարծում է, վոր չէ կարելի արդարացնել նրանց, ասելով՝ վոր իբր թե շարունակ զբաղված են յեղել կռիվներով և կամ չեն ունեցել դիր ու դպրություն։

«Այլ ոչ արդարև այսոքիկ կարծեցեալ լինի. քանզի դտանին և միջոցք լեալ պատերազմացն, և գիր Պարսից և Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց, եւ և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց[1], և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ

---

[1] «Գիւղից և գաւառաց, եւ իւրաքանչիւր տանց առանձնականութեանց և հանուրց հակառակութեանց և դաշանց» Խորեն Ստեփանեն թարգմանել է «զանազան գյուղերի, գավառների և առանձին տների վեճեր ու դաշինքներ» (տես Նրա աշխարհաբ. թարգմանությունը, էջ 8, համեմատ նաև Էմինի ռուսերեն թարգմանությունը, էջ 4)։ Այս թարգմանությունների մեջ անտես է արված «առանձնականութեանց» բառը, վորի իմաստը չի հասկացվել։

գտանին անբաւ գրուցաց մատեանք. մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն» (I, Գ, Տփղիս 1913, եջ 11)։

Խորենացու այս հատվածի մեջ մութ և անհասկանալի յե համարվել, գլխավորապես, «առանձնականութիւն» բառը։

Պրոֆ. Նիկ. Մառը «առանձնականութեանց և հանուրց հակառակութեանց և դաշանց» թարգմանել ե „о частных (личных) и общих тяжбах и примирениях“[1]: Պրոֆ. Նիկ. Ադոնցը, համաձայն չլինելով Նիկ. Մառի հետ, կարծում ե, վոր «առանձնական» եյին դառնում այն «սեպուհ»-ները, վորոնք բաժանվում եյին ընտանիքից ու ստանում իրանց ժառանգական բաժինը։ Ուրեմն՝ «առանձնականութիւն», նրա կարծիքով, նշանակում ե և ցույց ե տալիս «սեպուհ»-ների «առանձնական» դրությունը, վորի պատճառով ծագում եյին վեճեր և հակառակություններ[2]։

Իմ կարծիքով, այս յերկու յենթադրություննել վիճելի յեն։

«Առանձնականութիւն» բառը, ինչպես կարելի յե տեսնել հունաբան թարգմանություններից, համապատասխանում ե հունարեն idiôma բառին ե, ամենայն հավանականությամբ, նշանակում ե՝ առանձին, հատուկ վիճակ կամ առանձնահատկություն։ Խորենացին ուզում ե, ըստ յերևույթին, ասել, վոր գյուղերի, գավառների ու առանձին տների (տոհմերի) դրությունը յեղել ե հաճախ «առանձնական» ու տարբեր և նրանց այդ առանձնահատուկ վիճակի, ինչպես և հակառակությունների ու դաշինքների համար, յեղել են իր ժամանակ «անբաւ գրուցաց մատեանք», վորոնք գրված են յեղել հունարեն կամ պարսկերեն։

Գավառների ու գյուղերի մասնակի «առանձնականութիւն»-ները, վոր գոյություն են ունեցել ֆեոդալական յերկրներում գրեթե ամեն տեղ, չեն կարող, իհարկե, բացասել

[1] Տես Журнал Минист. Нар. Просв. 1908, եջ 2։

[2] Армения в эпоху Юстиниана, եջ 475։

*մինչ նախարարական իրավակարգի ընդհանուր հուլթյունը, մինչև շինական գասի հոծ բազմության իրավական դրության գլխավոր հատկանիշները՝ «ի հարկի ծառայութիւն»-ը և ճորտական վիճակը, որոնք իրենց հիմնական գծերով, ըստ յերևույթին, միևնույն բնույթը պիտի ունենային նախարարական Հայաստանի բոլոր շրջաններում։*

*Իսկ գյուղացիության իրավական ու տնտեսական դրության մասնակի տարբերությունները և առանձնահատկությունները, որ հավանական է յենթադրել նաև նախարարական Հայաստանում, դժբախտաբար, մնում են մութ փաստական տեղեկությունների բացակայության պատճառով։*

*Հետաքրքիր է սակայն, որ մատենագրական աղբյուրների մեջ «շինական»-ներն անվանվում են յերբեմն «ընակք» (Ագաթանգեղոս, ԺԲ, 131, եջ 75), «ձեռատունկք» կամ «ձեռասունք» (Նույնը, ԺԲ, 131, եջ 75 և 76), «կրտսերք» (Փարպեցի,* III, *ՂԵ, եջ 173), բայց թե արդյոք տարբեր եյին սրանք իրենց իրավական դրությամբ՝ այդ մնում է միանգամայն անորոշ։*

*Ավելի ևս ուշագրավ է Փավստոսի հետևյալ վկայությունը՝*

> *«Բայց Պապայ ի բուն ի կնոջէն ոչ մնաց, այլ էր նորա հարճ մի ի գաւառէն Տարօնոյ, ի Հացեաց գեղջէ* կարճազատացն» (III, *ԺԹ, եջ 49)։*

*Յեթե «կարճազատացն» այս ընթերցվածն աղճատված չէ, այդ դեպքում՝ կարելի կըլինի յենթադրել, որ բացի «անազատ շինական»-ներից գոյություն են ունեցել Հին Հայաստանում նաև «կարճազատ» գյուղացիներ։ Բայց թե ինչով եյին տարբերվում «կարճազատ»-ներն «անազատ»-ներից՝ այդ դարձյալ պարզ չէ մատենագրական վկայությունների աղքատության պատճառով։*

*«Շինական»-ների ու «ազատ»-ների կենցաղային տարբեր կացության մասին հետաքրքիր են Յեղիշեյի վկայությունները, որոնց մեջ համեմատության է առնված նրանց*

*առօրյա կյանքը։ Նկարագրելով «ազատ»-ների ու նրանց կանանց կրած նեղությունները կրոնական հալածանքների շրջանում, Եղիշե պատմագիրն ասում է, որ*

> *«Ոչ երբէք այնուհետև առաւել տէր քան զծառայ և ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ վշտացեալ» (Վենետիկ 1864, III, էջ 115)։*

*Մի ուրիշ տեղ, շեշտելով հայոց աշխարհի փափկասուն տիկնանց թշվառ ու դժբախտ դրությունը, նա դարձյալ համեմատում է նրանց այդ վիճակը «շինական»-ների առօրյա կյանքի հետ, որը նա համարում է վշտամբեր ու տանջալից։*

> *«Ոչ ինչ յիշեցին ամենևին — ասում է Եղիշեն — զանուն փափկութեան մայրենի ազատութեանն, այլ իբրև մարդք՝ որ վշտամբերք լեալ իցեն անդստին ի շինական սովորութեանցն տանջելով վարեալ զկեանս աշխարհիս, անդրագոյնք ևս քան զնոսա յանձն առին զհամբերութիւն վշտաց» (Նույնը, VIII, էջ 355)։*

*Այս վկայությունների մեջ ուշագրավ է և այն, որ առաջին հատվածում «վշտացեալ» է անվանված «գեղջուկ»-ը, իսկ յերկրորդում՝ «վշտամբեր» է անվանված «շինական»-ը։*

*Նորագույն մի քանի աշխատություններում անհաջող մի փորձ է արված «շինական»-ներին և «գեղջուկ»-ներին իրարից զանազանելու իբրև իրանց ծագումով և տնտեսական ու իրավական դրությամբ տարբեր դասեր[1]։ Միանգամայն անընդունելի ու անհիմն մի կարծիք է այդ, որ բոլորովին հիմնավորված չէ փաստական որևէ համոզիչ վկայություններով։ «Շինական» և «գեղջուկ» բառերը, ինչպես յերևում է թե այս և թե ուրիշ բազմաթիվ վկայություններից, պարզապես, հոմանիշներ են, որ գործ են ածվել սոցիալական միևնույն դասի համար։*

*Փարպեցու անուղղակի մի վկայությունից կարելի յե ըստ իս կռահել, որ իրանց արտաքինով ու հագուստով*

---

*1 Տես Բահաթրյան, Անձնական և հողային իրավունքը Հին Հայաստանում և Հ. Մուսայելյան, Անդրկովկասի հողային պայմանները, Վաղարշապատ 1910, էջ 15։*

*«շինական»-ները տարբերվել են «ազատ»-ներից* (III, Հէ, *էջ 142 — «քանզի ձևդ ձեր և կերպարան ազատս կարծեցուցանէ զձեզ»)։*

*Այդ ավելի քան հավանական է, վորովհետև նույն զանազանությունը «շինական»-ների ու «ազատ»-ների մեջ յեղել է նաև Սասանյան Պարսկաստանում։ Տանսարը վերոհիշյալ իր նամակում պարզ վկայում է, վոր այդ տարբերությունն ակներև եր նրանց հագուստի, բնակարանի, կանանց ու ընտանիքի նկատմամբ* (Christensen, *էջ 45 և* „Lettre de Tansar au roi de Tabaristan“, *էջ 222 և 527)։*

*Այն արհամարական վերաբերմունքը, վոր ուներ գյուղացիական դասի հանդեպ զինվորական ազնվականությունը միջնադարյան Յեվրոպայում, նկատելի յե նաև հայկական աղբյուրներում։*

*Այդ արհամարանքը վորոշակի արտահայտված է, որինակ, Յեղիշեյի հետևյալ վկայության մեջ.*

> *«Բայց ի ժամ բազմականացն կարծիք իմն եղեն ի միտս սրբոցն վասն երիցու միոյ, որ էր ընդ նոսա ի սուրբ կապանսն.* զի ի մէջ չինական մարդկան կեցեալ էր, *և ոգիտագոյն ևս էր ի գրոց մխիթարութենէ» (Վենետիկ 1864, Ը, էջ 270—271)։*

*Ինչպես ֆեոդալական գրեթե բոլոր յերկրներում, այնպես էլ Հայաստանում, «շինական»-ներն իբրև «անազատ»-ներ, գտնվելով ճորտական դրության մեջ, դատարանի վճռով յենթարկվել են մարմնական պատիժների, վորոնցից ազատ են յեղել ազնվականները։ Պարզ ու վորոշ վկայված է այդ Շահապիվանի ժողովի կանոններում։ Պոռնկության համար սահմանված է յեղել, որինակ, Շահապիվանի ժողովի Գ. կանոնում հետևյալ պատիժը.*

> *«Եթէ ազատ է և գան չէ մարթ հարկանել, ի տուգանն և յապաշխարութիւնն յաւելցեն. մ դրամ կարոտելոց, ք տարի ապաշխարութիւն. և զպղծութիւնն այլ մի՛ ևս գործեսցէ. ապա մտցէ յեկեղեցի և ընդ ըն-*

*կերս խառնիցի։ Ապա թէ շինական է,* գան յոլով արբցէ, *ճ դրամ տուգան տացէ յեկեղեցի և յաղքատս բաշխեսցեն, և տարի մի ի պղծութենէն հեռացեալ՝ մտցէ յեկեղեցի և ընդ ընկերս խառնեսցի» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս 1914, էջ 63). Համեմատե նաև կանոն Թ, էջ 67։*

*Հավանական համարելով «շինական»-ների ճորտական դրությունը Հին Հայաստանում, անհրաժեշտ է, ինարկե, գոնե մոտավոր կերպով վորոշել նրանց իրավական այդ դրության բովանդակությունը և առանձնահատկություն- ները։*

*Պետք է ասել, վոր ճորտ* (hörig, зависимый, colonus, leibeigen, крепостной) *և ճորտություն* (Hörigkeit, зависимость, Leibeigenschaft, крепостничество) *բառերը խիստ ճապաղ ու առաձգական գաղափարներ են, վորոնց տակ հասկացվել են տնտեսական ու իրավական բավական տարբեր դրություններ։ Ճորտությունը հաճախ այնքան մեղմ է լեղել, վոր շատ քիչ է տարբերվել ազատ գյուղացիների դրությունից, իսկ յերբեմն այնքան ծանր է յեղել, վոր շատ մոտ է յեղել կատարյալ ստրկության։ Ճորտերի առաջին տեսակին պատկանում եյին, օրինակ, Բյուզանդական կայսրության կոլոնները, վորոնք անձնապես ազատ եյին, բայց կապված եյին հողին* (glebae, terrae adscripti, servi terrae ipsius) *և չունեյին տեղափոխման իրավունք. իսկ յերկրորդ տեսակին պատկանում եյին ռուսական* крепостной*-ները և գերմանական* leibeigen *կոչված ճորտերը, վորոնց դրությունը խիստ ծանր է յեղել, մանավանդ* XVIII *դարում։*

*Տարբերելու համար այդ յերկու կարգի ճորտերին՝ մենք նպատակահարմար ենք համարում կոլոններին և* hörig *կամ* зависимый *կոչված ճորտերին անվանել* կիսազատ ճորտեր, *իսկ* leibeigen *կամ* крепостной *կոչվածներին՝* ստրկանման ճորտեր:

*Հիմնական պատճառը ճորտական վիճակի այս զանազանության, ինչպես ցույց են տվել նորագույն ուսումնա-*

սիրությունները, յեղել է, գլխավորապես, տնտեսական։

Ճորտական գյուղացիության վիճակը մեծապես կախված է յեղել ագրարային յերկու իրարից տարբեր սիստեմներից, վոր անվանում են Grundherrschaft և Gutsherrschaft: Grundherrschaft է կոչվում սենյորական կազմակերպությունը, յերբ սենյորը ստանում է իր գյուղացիներից զանազան տուրքեր ու հարկեր, բայց ինքը չունի իր սեպհական մեծ տնտեսությունը, իսկ Gutsherrschaft՝ յերբ սենյորը թեև նույնպես ստանում է իր գյուղացիներից տուրքեր ու հարկեր, այլ նրա յեկամուտի գլխավոր աղբյուրը վոչ թե այդ վճարումներն են, այլ նրա ինքնուրույն խոշոր տնտեսությունը, վորը նա օգտագործում ու մշակում է ճորտական իր գյուղացիների պարտադիր աշխատանքով։

Ագրարային առաջին կարգի յերկրներ եյին Ֆրանսիան և արևմտյան Գերմանիան, իսկ յերկրորդ կարգի՝ արևելյան Գերմանիան, Լեհաստանը և Ռուսաստանը։

Ցենթադրվում է, վոր ագրարային կազմակերպման այս զանազանությունը ճորտական գյուղացիության իրական դրության վրա ունեցել է իր վորոշ ակներև ազդեցությունը։ Յեվրոպայի արևմտյան յերկրներում ճորտական գյուղացիության իրավական ու տնտեսական դրությունը, ընդհանուր առմամբ, ավելի մեղմ է յեղել, քան Յեվրոպայի արևելյան յերկրներում, ուր միևնույն գյուղացիությունը վոչ միայն վճարել է զանազան տուրքեր ու հարկեր, այլ և իր ամբողջ ընտանիքով ու ամենամեծ չափերով շահագործվել է նաև իբրև ձրի աշխատող ուժ։

Սենյորական ինքնուրույն խոշոր տնտեսությունների զարգացումը և գյուղացիության պարտադիր ձրի աշխատանքի անչափ շահագործումը տեղի եյին ունենում, գլխավորապես, ապրանքային տնտեսության աճման ժամանակ, յերբ ցորենը և գյուղատնտեսության մյուս արտադրությունները ծախվում եյին մեծ քանակությամբ ներքին շուկայում կամ արտահանվում դուրս իբրև ապրանք։

Գիտական վերոհիշյալ տեսությունն ագրարային յերկու

տարբեր սխեմի մասին, վորոնցով մեծապես պայմանավորված է լեզել ճորտության տնտեսական ու իրավական դրությունը, ունի նշանակություն թե Հին Հայաստանի և թե, ընդհանրապես, ամեն մի յերկրի համար, ուր գոյություն է ունեցել ճորտական գյուղացիություն՝ ստորադրված կալվածատեր ազնվական դասի իշխանությանը։

Վերոհիշյալ բաժանման տեսակետից, թվում է ինձ, վոր Հին Հայաստանի կալվածատիրական սիստեմը համապատասխան պետք է ընդունել Grundherrschaft կոչված սենյորական կազմակերպությանը։

Պատմական աղբյուրներից բնավ չի յերևում, վոր նախարարներն իրանք ես լեզած լինեյին գյուղատնտեսներ և ունեցած լինեյին սեպհական ու ինքնուրույն խոշոր տնտեսություններ։ Նրանց յեկամուտի գլխավոր աղբյուրը կազմել են, հավանաբար, «շինական»-ներից ստացված տուրքերը և հարկերը։ Ամեն անգամ յերբ մատենագրական աղբյուրների մեջ խոսք է լինում «նախարար»-ների ու «շինական»-ների փոխհարաբերության մասին, հիշվում է միշտ «շինական»-ների հարկատվությունը և «նախարար»-ների հարկապահանջությունը։

Փավստոս պատմագիրը, խոսելով Աշտիշատի ժողովում սահմանված կանոնների մասին, առաջ է բերում, օրինակ, Ներսես կաթողիկոսի հետևյալ պատվերը.

> «Եւ ամենայն աշխարհին պատուիրէր, և գլխովին թագաւորին, առ հասարակ ամենայն մեծամեծացն, և ամենեցուն՝ որ ոք ի վերայ ընկերին ունիցին իշխանութիւն, գութ ունելով ընդ իւրեանց ծառայս և ընդ կրսերս և ընդ աշակերտս, և սիրել իբրև զընտանիս, և մի անարժանս և աւելի տարապայմանս հարկօք նեղել քան զչափն. յուշ առնելով, զի և նոցա տէր գոյ յերկինս։ Սոյնպէս և ծառայից պատուիրէր՝ կալ յարդարն հնազանդութեան իւրեանց տերանց, զի ի տեառնէ լինիցի նոցա վարձք» (Վենետիկ 1889, IV, Դ, էջ 77—78)։

Սահակ կաթողիկոսի ԼԸ կանոնում վանքերի մասին ասված է, որ

> «ազատ յամենայն հարկապահանջ իշխանաց սահմանս ընկալաւ և անդս» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 35)։

Այսպես և ուրիշ վկայությունների մեջ շեշտվում է շարունակ հարկապահանջությունը, որպես կալվածատիրության հիմնական յեկամուտ։

Փավստոսի վերոհիշյալ վկայության մեջ հետաքրքիր է այն, որ թագավորին ու իշխաններին պատվեր է տրվում՝ «մի անարժանս և աւելի տարապայմանս հարկօք նեղել քան զչափն»։ Ներսես Պարթևի այս պատվերը, որ կարող է կանոնական մի վորոշում լինել, ընդունված Աշտիշատի ժողովում՝ հավանական է, որ գործադրված պիտի լիներ յեկեղեցական, գուցե և, ընդհանուր առմամբ, նաև արքունի ու նախարարական գյուղացիության նկատմամբ։

Ցեթե մատենագրական աղբյուրների ոգնությամբ հաջողվի անվիճելի կերպով ցույց տալ, որ «շինական»-ների պարտականությունները կախված չեն յեղել Հին Հայաստանում կալվածատեր ազնվականության քմահաճ կամայականությունից, այլ հաստատուն կերպով վորոշված են յեղել որենքով, յեկեղեցական կանոններով կամ սովորույթով, շինական դասի դրության վորոշման համար այդ փաստն ինքնին կունենա խոշոր նշանակություն։ Յեվրոպական ֆեոդալիզմի ուսումնասիրություններից հայտնի յե, որ ամեն անգամ, յերբ ճորտական գյուղացիության հարկերն ու պարտականություններն առաջուց պայմանավորված՝ հաստատուն ու վորոշ են յեղել, նրանց իրավական ու տնտեսական դրությունը յեղել է համեմատաբար մեղմ ու տանելի, իսկ յերբ նրանց հարկերն ու պարտականությունները կախված են յեղել կալվածատերերի կամայականությունից, նրանց վիճակը յեղել է խիստ ծանր՝ իրավազուրկ ու գրեթե ստրկական։

Ներքև մենք կտեսնենք, որ Հին Հայաստանի «շինական»-ներին չպետք է համարել իրավազուրկ, ինչպես եյին

ստրկանման ձորտերը։ Իմ կարծիքով, ոչ միայն նրանց իրավունքները, այլ և պարտականությունները յեղել են, ընդհանուր առմամբ, վորոշ ու հաստատուն։

Նրանց իրավական դրությունը հասկանալու համար՝ անհրաժեշտ ե, նախ և առաջ, ուշադրություն անել յերկրի տնտեսական զարգացման աստիճանը։ Արշակունիների, ինչպես և մարզպանության ժամանակ, թվում ե ինձ, վոր խոշոր առևտուրը և առևտրական կապիտալը չեյին կատարում Հայաստանում առանձին մեծ դեր գյուղատնտեսության նկատմամբ։

Ուշադրության արժանի յե այդ տեսակետից, վոր Արշակունյաց տոհմի անդամներին, նաև մարզպաններին ու զորքերին, նրանց ռոճիկը, այսինքն՝ որապահիկը և պարենը, տրվել ե կենսամթերքներով, ինչպես այդ յերևում ե մատենագրական աղբյուրների հետևյալ վկայություններից.

1. Խորենացի, II, Ը, եջ 118՝

«Եւ քանզի բազում ունէր ուստերս [Վաղարշակ]՝ պատշաճ վարկաւ ոչ ամենեցուն առ իւր կալ ի Մծբին. վասն որոյ առաքէ զնոսա բնակել ի գաւառն Հաշտենից, և ի ձորն նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տարօնոյ. ի նոսա թողլով զգէնս ամենայն, հանդերձ յաւելուածով մսից առանձինն եւ ռոճկաց կարգելոց յարքունուստ»։

2. Նույնը, II, Հէ, եջ 216՝

«Նա և զԱրշակունիսն, զմեկուսացեալսն ի Թաղէն և յԱյրարատն բնակելոյ, կարգէ [Արտաշիր] ի նոյն տեղիս մսիւք եւ ռոճկօք, որպէս և էինն»։

3. Նույնը, II, ՁԱ, եջ 223՝

«Եւ Տրդատ ընկալաւ զնա [զՄամգոնն], բայց ընդ իւր ի պատերազմ ոչ էառ յերկիրն Պարսից. այլ ետ տեղի աղխի նորա և ռոճիկ ի կերակուր, փոփոխելով տեղի ի տեղւոջէ ցբովանդակ ամս»։

4. Փաւստոս, V, ԼԸ, եջ 253՝

*«Սոյնպէս և մարզպանին Սուրէնայ կարգէին* ճասս եւ կօշիկս եւ զպիտոյս ռոճկացն. *սոյնպէս և տասն հազարացն* դարման եւ կերակուր *ըստ պիտոյից».*

*5. Ղազար Փարպեցի,* III, *ՂԸ, էջ 177՝*

*«Մարզպանն պարսիկ որ երթայ յաշխարհն՝ կնաւ երթայ և որդւովք, դրամբ և սիրելովք, ծառայիւք և աղախնեօք. և այնք ամենեքեան թէ զԱրեաց տեառն* զռոճիկ ուտեն՝ *չէ սակաւ ծախսն, և թէ* զաշխարհին ուտեն՝ *շատ վտանգ հասանէ աշխարհին մարդկանն։ Իսկ նա [Վահան] թէ լինի՝* զիւր տանն համբար ուտէ».

*6. Փաւստոս,* IV, *ԺԹ, էջ 133՝*

*«Թագաւորն Արշակ հրաման տայր՝ յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր, Արտագերս անուն։ Եւ զգաւառն* յուտեստ ի պաշտօնութիւն համբարաց *Թողոյր բերդին, վասն զի կարի ամուր էր բերդն այն»։*

*Որ վերոհիշյալ հատվածներում «ռոճիկ» բառը՝ համաձայն իր ստուգաբանության (= պրս.* rōzi *«օրական ուտեստ», պհլ.* *rōtschīk, *տես* Hübschmann, Armenische Grammatik, *էջ 234, համեմատ նաև Աճառյան, Հայերեն արմատական բառարան)՝ գործ է ածված վոչ թե դրամական, այլ պարենային հատուցումների համար, այդ կարելի յե կռահել նաև Հին Կտակարանի գրաբար թարգմանությունից, վորի մեջ «ռոճիկ» համապատասխանում է հունարեն* σῖτος, ὀψώνια, τὰ δέοντα *և* Χορηγία *բառերին։*

*Հավանական է, ուրեմն, յենթադրել, վոր գերակշռող նշանակություն է ունեցել պատմական այս շրջանում բնական տնտեսությունը։*

*Այդ է, ըստ յերևույթին, գլխավոր պատճառը, վոր գոյություն չեն ունեցել հնագույն այս շրջանում վոչ ճորտական դաժան այն իրավունքը, վոր* XV—XVI *դարից սկսած հետզհետե գոյացել ու զարգացել եր, գլխավորապես, արևելյան Յեվրոպայում, վոչ էլ այդ յերկրների* крепостной *կամ* leibeigen *կոչված սրտկանման գյուղացիությունը, վոր ամենա-*

մեծ չափերով յենթարկված է յեղել կալվածատեր ազնվականության քմահաճ ու անողոք շահագործման։

«Շինական»-ների ճորտական «անազատ» վիճակը չպետք է, ուրեմն, հասկանալ իբրև գերմանական Leibeigenschaft, այլ իբրև ժառանգական հպատակություն (Erbunterthänigkeit) և կախումն իրանց ազնվական տերերից, գլխավորապես, հարկային ու տնտեսական։

Շահապիվանի ժողովի կանոններից, թվում է ինձ, կարելի յե յեզրակացնել, վոր «շինական»-ները ունեցել են պատմական այս հնագույն շրջանում անձնական իրավունքներ։ Այդ տեսակետից նրանց դրությունը կարելի յե մոտավորապես համապատասխան համարել Բյուզանդական կայսրության կոլոնների և արևմտյան Գերմանիայի hörige անվանված գյուղացիների դրությանը։

«Շինական»-ների իրավական այդ դրության վորոշման համար կարևոր են, օրինակ, Շահապիվանի ժողովի կանոններում հետևյալ հատվածները.

1. Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, Գ, եջ 62—63՝

«Եթէ ոք կին ունիցի և պոռնկեսցի.... Եթէ ազատ է և գան չէ մարթ հարկանել, ի տուգանն և յապաշխարութիւնն յաւելցեն. մ դրամ կարօտելոց, ը տարի ապաշխարութիւն, և պղծութիւնն այլ մի՛ ևս գործեսցէ. ապա մտցէ յեկեղեցի և ընդ ընկերս խառնիցի։ Ապա թէ շինական է, գան յոլով արբցէ, ճ դրամ տուգան տացէ յեկեղեցի և յաղքատս բաշխեսցեն և տարի մի ի պղծութենէն հեռացեալ՝ մտցի յեկեղեցի և ընդ ընկերս խառնեսցի»։։

2. Նույնը, Դ, եջ 64՝

«Եթէ ոք զկինն թողցէ զորդւոյ մայր առանց բանի պոռնկութեան, և կամ թէ արատ ինչ չար ի մարմնի չիցէ, այլ որ եթէ այրն շնաբարոյ իցէ և այլում ակն եդեալ իցէ, դատաստանն այս լիցի, զտուն և զկեանս և զորդիս և զհող և զջուր և զամենայն ինչ բաժանես-

ցեն հասարակաց, զկէսն կնոջն առցեն. և թէ կամք են այր ի տուն ածել, ինքն համարձակ ածցէ, զբաժինն կալցեն և զաքքունի հարկն ողջ արասցեն։ Եւ այրն որ իթող, է ամ ապաշխարեսցէ և յեկեղեցի տուգան տացէ, թէ ազատ է յ[1] դրամ, թէ շինական է, զանալի լիցի ե ճ դրամ յեկեղեցի տուգանեսցի, փոխանակ օրհնութեամբ զամուսնութիւնն խոտելոյ».

3. Նույնը, Ե, եջ 64՝

«Եթէ կին ոք արար և ամուլ պատահեաց, և այրն հանցէ զնա վասն ամլութեան, որ ինչ կնոջն կարասի բերեալ է ի տուն, թէ աղախին, թէ անասուն, թէ հանդերձ, թէ ոսկի արծաթ, առնուլ իշխան է և գնալ։ Եւ եթէ քան զամլութիւնն այլ արատ չգտցի, մարդն տուգան ևս տացէ կնոջն վասն անարգանացն, թէ ազատ է ռմ դրամ, և թէ շինական ռ».

4. Նույնը, Է, եջ 66՝

«Այր առեանկ առնիցեն, կալցեն զկինն և անգէն տացեն ցհայր և ցմայր իւր և տուգանեսցին փոխանակ անարգանացն, եթէ ազատ է ռմ դրամ, եթէ շինական է ռ».

5. Նույնը, Թ, եջ 67՝

«Որք ի հարցուկս երթան, կամ ի դիւթել, տուգան կալցեն և կարօտելոց տացեն, եթէ ազատ է մ դրամ, եթէ շինական է՝ զան արբցէ ժբ կրկին, ճ դրամ տուգան կալցեն և կարօտելոց տացեն».

6. Նույնը, Ժ, եջ 68՝

«Որք լոկ դիւթեն և ոչ կախարդեն, եթէ այր, եթէ կին, որ ի դիւթութեան գտցին ժբ կրկին զան արբցեն, խանձեսցեն, մրեսցեն, յոսկր արկցեն և յուր-

---

[1] Վորովհետև բոլոր դեպքերում «ազատ»-ների ու «շինական»-ների վճարապարտության հարաբերությունը 2 առ 1 է, ուստի և Թ. Ավդալբեգյանն այս միակ ու անհավանական բացառությունը վերացնելու համար յենթադրում է, վոր կարող է այստեղ յ ու մ տառերի շփոթում լինել (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, № 3, Յերևան 1928, եջ 61)։

կանոց տացեն ը ամ աղասցեն գողեացն. և զինչ և հրամայեսցեն՝ գործել։ Ապա եթէ ազատ է և ի գողեանոց չերթայ շ դրամ տացէ գողեացն և բ ամ յիւրում յեկեղեցւոջ յապաշխարութեան կացցէ և հաղորդեսցի, և այլ մի՛ ևս մեղանչիցէ».

Հմմտե նաև ԺԱ կանոն, եջ 68։

Այս կանոններից պարզ յերևում ե, վոր «շինական»-ներն ունեցել են իրանց հատուկ գույքը, վոր նրանք իրավունք են ունեցել տալ իրանց զավակներին կամ թողնել ժառանգներին։ Հանցանք գործելիս, ինչպես տեսնում ենք, նրանք յենթարկվել են քրեական ու յեկեղեցական պատիժների։ Ուշադրության արժանի յե, վոր «ազատ»-ների վճարելիք դրամական տուգանքները յերկու անգամ ավելի յեն յեղել քան «շինական»-ներինը, և միայն յերկրորդ վկայության մեջ «ազատ»-ների վճարելիք տուգանքը յ դրամ ե, իսկ «շինական»-ներինը՝ ճ դրամ։

Տուգանքների համեմատական այս հարաբերությունը կարող ե, իմ կարծիքով, ուշագրավ մի նշան համարվել, վոր «շինական»-ների տնտեսական դրությունը պետք ե յեղած լիներ համեմատաբար բարեկեցիկ։

Նույն կանոններից դժվար չե նաև հետևցնել, վոր «շինական»-ները, պատկանելով «անազատ»-ների դասին, իրավաբանորեն չեն գտնվել ստրկության վիճակում, այլ նրանք միայն ծանր հանցագործության դեպքերում ուղարկվել են գողենոց կամ ուրկանոց և աշխատել այնտեղ վորպես «աղախին» կամ ստրուկ։ «Ազատ»-ները, վորոնց չեր կարելի ուղարկել գողենոց, միևնույն հանցանքների համար գողենոցին վճարել են վորոշ տուգանքներ։

«Շինական»-ներն իրավունք են ունեցել հայց տալու և դատվելու յեկեղեցական դատարաններում։ Հավանական ե, վոր նույն իրավունքները նրանք ունեցած կլինեյին նաև աշխարհական դատարաններում։ Նրանք կարող եյին, բացի այդ, ամուսնանալ առանց կալվածատիրոջ համաձայնության։

Սահակ Պարթևին վերագրված ԻԶ կանոնում ամուսնու-

*թյունը ծնողների անգամ ընդդատությամբ համարվում է անթույլատրելի։*

> *«Իսկ կատարելոց — ասված է կանոնում — որոց զմիմեանս ոչ իցէ տեսեալ, ի հաճոյս իւրեանց, պսակ մի իշխեսջիք դնել՝ առանց քննութեան և ցնոսին ինքեանս հարցանելոյ. զուցէ ընդդատութեամբ ծնողաց յակամայ հաւանեալ իցեն. և զայնպիսի հարսանիս մի իշխէք յանձն առնուլ, զի մինչև ցայսօր յայդպիսի անկարգութենէ բազում վնասք գնացին յաշխարհիս՝ հոգևոր և մարմնաւոր» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 26)։*

*Տուգանքների վերաբերյալ վերոհիշյալ վկայություններից առանձնապես կարևոր է յերրորդ վկայությունը, վորի համաձայն ամուսնական կնոջից բաժանվելու դեպքում «ազատ»-ները վճարել են իրանց կանանց «վասն անարգանացն» յերկու անգամ ավելի տուգանք, քան «շինական»-ները։ Անարգանքի համար վճարվող այս տուգանքների տարբերությունը, ինչպես տեսնում ենք, մեծ չէ։*

*Հին Ռուսաստանում բարձր դասի մարդկանց խոշտանգման համար պահանջվել է 12 գրիվնա, իսկ սմերդների, վոր համարվում են ազատ գյուղացիներ, 3 գրիվնա։ Պրոֆ. Սերգեևիչի կարծիքով՝ տուգանքների այս հարաբերական չափն արտահայտություն է սմերդների սոցիալական ցած ու նվաստ դրության*[1]*։*

*Հին Անգլիայում իրավունքների խախտման համար* eorl*-երին վճարում էյին յերկու անգամ ավելի, քան ազատ գյուղացիներին՝* ceorl*-երին։* VII *դարից սկսած, յերբ գյուղացիների դրությունը դառնում էր Անգլիայում հետզհետե ճորտական, ազնվականների արժեքն աստիճանաբար բարձրացել է և նրանք գնահատվել են 3, հետո 6, իսկ* XI *դարում արդեն մոտ 10 անգամ ավելի, քան գյուղացիները*[2]*։*

---

[1] В. Сергеевич, Русские юридические древности, т. I, изд. второе, С.-Петербург 1902, *էջ 184։*

[2] Кулишер. Лекции по истории экономического быта Западной Европы. Петроград 1918, *էջ 41։*

Նույն անհամաչափությունը գոյություն ե ունեցել ֆեոդալական նաև ուրիշ յերկիրներում, ուր գյուղացիությունը գտնվել ե ճորտական ծանր վիճակում։ Վրաստանում, որինակ, XIV—XV դարերում բարձր ազնվականի արյան գինը յեղել ե 20.000, միջին ազնվականի 12.000, իսկ գյուղացունը միայն 400 դանգ[1]։

Այս համեմատություններից պարզ յերևում ե, վոր հինգերորդ դարում «շինական»-ների պատիվը և անձը գնահատվել ե Հին Հայաստանում բավական բարձր։

Այդ տեսակետից, ինչպես տեսնում ենք, նրանց դրությունը հավասար ե յեղել անգլիական ազատ գյուղացիության՝ ceorl-երի դրությանը և յերկու անգամ ավելի նպաստավոր ե յեղել, քան ռուսական սմերդներինը։ Այս փաստը, իմ կարծիքով, նորից կարևոր ու ուշագրավ մի նշան ե «շինական»-ների թե տնտեսական և թե իրավական համեմատաբար ավելի բարեկեցիկ ու բարձր կացության, քան ֆեոդալական այն յերկրներում, ուր գոյություն են ունեցել ճորտության ծանր տեսակները։

Յեվ իրոք, ինչպես տեսանք, նրանք ունեցել են, հավանորեն, ընտանեկան, ընչական, ժառանգական իրավունքներ, վորոնցից հաճախ զրկված են յեղել արևելյան Յեվրոպայի սարկանման ճորտերը։

Դվինի ժողովի կանոններում կա նույն իսկ հետաքրքիր մի ակնարկ, վորից, իմ կարծիքով, անհավանական չի լինի յեզրակացնել, վոր նրանք կարող եյին գնել անշարժ գույք։

> «Եւ զկէս շնորհին և զհող և զջուր բովանդակ — ասված ե Դվինի ութերորդ կանոնում — սրբոյ եկեղեցւոյն թողցէ վախճանեալ քահանայն և կին նորա. ամենայն իսկ շնորհն մերձաւորացն եղիցի՝ եթէ ոչ որդիս կամ թոռունս ունիցին, զի չվայելէ զսրբոյ եկեղեցւոյ զժառանգութիւնն յարժանաւոր մերձաւորացն օտարա-

---

[1] А. С. Френкель, Сборник законов грузинского царя Вахтанга VI, Тифлис 1887, տես Законы Агбуги, էջ 96, 98 և ն.։

*ցուցանել և տալ հեռաւոր օտարաց։ Բայց եթէ անկա-ւորացն կամաւորութեամբ վաճառել իսկ թողացուցէ վարդապետն՝ և* զայն մի՛ շինականի ումեք, *այլ յուխտէ եկեղեցւոյն, թէև հեռաւոր իցէ» (հրատար. Մխիթար վարդապետի և Ս. Տիգրանյանի, էջ 16—17)։*

*Թեև այս կանոնի մեջ ասված է հատկապես, վոր քահանայի անշարժ գույքը չպետք է վաճառվի վորևէ «շինական»-ի, այլ միայն հոգևորական դասի անդամներին, սակայն, քանի վոր «շինական»-ները հիշատակվում են իբրև հավանական գնորդներ, պարզ է վոր արգելված չէ յեղել նրանց գնել անշարժ գույք և ունենալ հատուկ «քսակագին» հողեր։*

*Հետաքրքիր է ու ուշագրավ, վոր Սասանյան Պարսկաստանում ևս օրենքները պետք է նախապես կանխեյին, վոր ազնվականների անշարժ գույքը չանցներ գյուղացիների ձեռքը (տես* Christensen, L'empire des Sassanides, *էջ 25 և 26, նաև* „Lettre de Tansar au roi de Tabaristan“, *էջ 222 և 527)։*

*Մատենագրական աղբյուրների վկայություններից յերևում է նույնպես, վոր «շինական»-ներն ուշադրության են առնվել յերբեմն ֆեոդալական Հայաստանի քաղաքական կենցաղում։*

*Այդ մասին կարևոր են աղբյուրների հետևյալ վկայությունները.*

*1. Փաւստոս,* IV, *ԾԱ, էջ 165՝*

*«Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեանն թագաւորութեանն Հայոց. և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծամեծք նախարարք կուսակալք կողմնակալք գաւառատեարք դործակալք և* դաստապետք շինականաց».

*2. Ղազար Փարպեցի,* II, *ԼԶ, էջ 67՝*

*«Իսկ նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ ոչ երբեք դադարէր* գրել շինականի առ իշխանս եւ շինականս *և քահանայս աշխարհիս Հայոց».*

3. Ագաթանգեղոս, ԺԲ, էջ 76՝

«Տրդատիոս Հայոց Մեծաց արքայ. առ աշխարհս և առ գաւառս, առ նախարարս և առ զօրս և առ շի-նականս և առ ամենեսին ողջոյն».

Հմմտե նաև Ագաթանգեղոս, ԺԲ, էջ 73։

Հիմնվելով վերև առաջ բերված վկայությունների ու ակնարկների վրա՝ կարելի յե ըստ իս հավանական համարել, վոր «շինական»-ները պատմական հնագույն այս շրջանում չեն ունեցել այն ստրկանման կախումն իրանց տերերից, ինչպես leibeigen ու крепостной կոչված գյուղացիները։ Նրանք բյուզանդական կոլոնների և Սասանյան Պարսկաստանի գյուղացիության նման կապված են յեղել, հավանորեն, իրանց հողին ու հարկատու ծառայությանը։ Ինչպես Բյուզանդիայում և Սասանյան Պարսկաստանում՝ նրանց արգելված ե յեղել դուրս գալ ինքնակամ իրանց դասից և մտնել ուրիշ դասերի մեջ։ Հայտնի յե, վոր կոլոնները կարող եյին ընդունվել տեղական յեկեղեցիների կղերականության մեջ իրանց տերերի հաճությամբ[1]։ Կալվածատիրոջ այդ թույլտվությունը բնական ե յենթադրել նաև Հին Հայաստանում։

Կոլոնների մասին հայտնի յե նույնպես, վոր նրանք իրավունք չեն ունեցել վարել վորևե պետական պաշտոն՝ նույն իսկ ստորին կարգի[2]։

Իմ կարծիքով, նույնը յեղած պիտի լիներ նաև Հին Հայաստանում։ Շահապիվանի ժողովի ԺԶ-րդ կանոնում ասված ե, վոր

«առանց գաւառի եպիսկոպոսին չիշխէ լինել եպիսկոպոս կամ երէց, կամ ազատ ոք դատաւորաց» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ղլտճյանի, էջ 76)։

Այս հատվածում, ինչպես տեսնում ենք, հիշվում են իբրև դատավորներ հատկապես «ազատ»-ները։ Վերև մենք

---

[1] Տես Кулаковский Ю.л., История Византии, т. I, Киев 1918, էջ 73։

[2] Նույնը, էջ 73։

*նույնպես տեսանք, վոր թե Արշակունյաց «ոստան»-ում և թե նախարարական շրջաններում նաև ուրիշ պետական պաշտոններ վարել են վորպես «գործակալ»-ներ, գլխավորապես, «ազատ»-ները։*

*Պատմական աղբյուրների վերոհիշյալ վկայությունները, թեև դրանք, մեծ մասամբ, պատահական ու անուղղակի ակնարկներ են և կարող են առանձին վերցրած համոզիչ չլինել, սակայն իրանց ամբողջությամբ վորոշում են ընդհանուր գծերով «շինական»-ների իրավական դրությունն Արշակունյաց և մարզպանական շրջանում։*

*Փաստական մեր դիտողություններից յերևում է, վոր պատմական այս շրջանում գոյություն չեր ունեցել Հայաստանում այն ծանր ստրկանման ճորտությունը* (Leibeigenschaft, крепостничество), *վոր համեմատաբար նոր ժամանակներում առանձնահատուկ է յեղել, գլխավորապես, արևմտյան Յեվրոպային։*

*«Շինական»-ների «անազատ» կոչվելը չպետք է, ուրեմն, հասկանալ այն իմաստով, իբր թե նրանք յեղել են ստրուկ կամ իրավազուրկ։ Նրանք «անազատ» են անվանվել, իբրև «ազատ»-ներից տարբեր ու «ազատ»-ներին հակադիր մի դաս։*

*Իբրև յեզրակացություն մեր քննության՝ կարող ենք ըստ իս նաև հավանական համարել, վոր «շինական»-ները հնագույն այս շրջանում կարող եյին իրանց իրավական դրության հիմնական գծերով համապատասխան լինել բյուզանդական կոլոններին, Սասանյան Պարսկաստանի գյուղացիության և գերմանական* hörig *կոչված գյուղացիներին։ Իսկ այս կարգի գյուղացիության համեմատաբար մեղմ վիճակը, վոր տարբեր եր ստրկանման ճորտությունից, մենք վերև բնորոշեցինք իբրև կիսազատ ճորտություն։*

*Ուրեմն՝ Հին Հայաստանի «շինական»-ները համաձայն մեր դիտողությունների յեղել են պատմական հնագույն այս շրջանում* կիսազատ ճորտեր (= hörig *կամ* зависимый):

*«Շինական»-ների տնտեսական կենցաղի նկատմամբ Հին Հայաստանում քննության արժանի խիստ կարևոր մի*

հարց կա, որ մինչև այժմ, որքան ինձ հայտնի յէ, հիմնավոր կերպով հարուցված չէ յեղել հայագիտական նորագույն ուսումնասիրություններում։

Այդ՝ համայնական հողատիրության խնդիրն է, որ ինչպես յենթադրում են, համատարած ու ընդհանուր յերևույթ է յեղել պատմական զարգացման սկզբնական շրջանում։

Վոր համայնական հողատիրությունը գոյություն ունեցած պիտի լիներ նաև Հին Հայաստանում, այդ նրա անցյալ կյանքի համայնական-տոհմային հնագույն շրջանի համար անժխտելի յէ։

Բայց Նախարարական Հայաստանում ես դժվար թե հողատիրության, նախնական կարգերն իսպառ ու անհետ կորած լինեյին։ Վորքան էլ այդ կարգերը հեղաշրջված ու փոփոխված լինեյին Հայաստանի ֆեոդալական նոր պայմաններում, ավելի քան հավանական է, որ պատմական հետագա այս շրջանում ևս նրանցից մնացած պիտի լինեյին վորոշ հետքեր։

Անհավանական չէ նույն իսկ, որ նախկին համայնական-տոհմական կյանքի ֆեոդալացումից հետո համայնական հողատիրությունը՝ վորպես յերկրագործական արտադրության ձև՝ կարող էր հարմարեցված լինել կալվածատիրական նոր պայմաններին և վորոշ տեղերում պահպանած լինել իր գոյությունը, կրելով իր հիմնական բովանդակության մեջ վոչ այնքան խոշոր փոփոխություններ։

Ցեթե Հին Գերմանիայի ու յեվրոպական մյուս յերկիրների նկատմամբ համայնական հողատիրության նախկին տեսությունները այժմ վերաքննության են յենթարկվում, այդ չի վերաբերվում բնավ վոչ Հին Հայաստանին, վոչ էլ Մերձավոր Արևելքի յերկիրներին։ Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալականացման պրոցեսն առաջ եր յեկել Հռոմեական կուլտուրական մեծ պետության քայքայման շրջանում, իսկ Հին Հայաստանում և հարևան յերկիրներում Նախարարական-ավատական կազմակերպությունը ծնունդ էր առել համայնա-

կան-տոհմական կենցաղի աստիճանական զարգացման ընթացքում։

Միանգամայն բնական ե, վոր այստեղ տոհմական նախորդ շրջանից մնացած ժառանգությունը շատ ավելի մեծ պիտի լիներ և ավելի ցայտուն կերպով արտահայտված, քան Արևմտյան Յեվրոպայում։

Հայոց պատմության մատենագրական աղբյուրները, ինչպես տեսանք, չունեն հայոց ներքին կյանքի թե այս և թե նման խնդիրների մասին պարզ ու վորոշ տեղեկություններ։ Նրանց մեջ կան սակայն միջանկյալ ակնարկներ, վորոնք ըստ իս ուշագրավ վորոշ նշաններ են, վոր համայնական հողատիրության վերապրումներ գոյություն ունեցած պիտի լինեյին Հին Հայաստանում թե Արշակունյաց թագավորության ժամանակ և թե Նրա անկումից հետո։

Մովսես Խորենացին, խոսելով Արշակունի Տիգրան թագավորի մասին, պատմում ե, վոր

> «Ընկեալ առ նա կանխագոյն իւրոյ ազգին Արշակունեաց, որ էին ի կողմանս Հաշտենից՝ ասեն. — Ընդարձակեա մեզ զժառանգութիւնս, զի նեղ է. քանզի բազմացաք յոյժ։ — Եւ նա հրամայէ ոմանց ի նոցանէ երթալ ի գաւառն Աղիովտի և Առբերանւոյ։ Իսկ սոցա առաւել ես բողոք կալեալ առ արքայ, թէ առաւելագոյն նեղ է մեզ՝ ոչ ինչ ունկնդիր լինի Տիրան, այլ հաստատեալ վճիռ՝ ոչ այլ ժառանգութիւն տալ նոցա, բայց զոր ունէին՝ հաւասար երեսն յիշխանսն։ Զոր բաժանեալ ըստ մարդաթուի՝ գտաւ պակաս ժառանգութիւն բնակողացն Հաշտենից. վասն որոյ բազումք ի նոցանէ եկին ի գաւառն Աղիովտի և Առբերանւոյ» (II, կբ, Թիֆլիս 1913, եջ 193)։

Նիկ. Ադոնցը «Հայաստանը Յուստինյանի ժամանակ» վերոհիշյալ իր գրքում այս վկայության մեջ հավաստի ու արժեքավոր ե համարում հողի բաժանման սովորությունն ըստ մարդաթվի, վոր ընդունված ե յեղել Արշակունիների ընտանիքում։

«Միևնույն սկզբունքները — ասում է նա — որ գործադրվել են արքայական տան մեջ, գոյություն են ունեցել նաև իշխանական ընտանիքներում. ուստի և պատմագրի մատնանշած բաժան հողատիրության սովորությունն ունի իր ուժը նաև իշխանական միջավայրի համար։ Բայց այս երևույթը չի վերաբերվում Արշակունիների ժամանակին, ինչպես յենթադրում է պատմագիրը, այլ այստեղ մենք գործ ունենք իրան Խորենացուն ժամանակակից կարգերի հետ, որ նա վերագրել է հնագույն ժամանակներին։ Ժառանգական կալվածքի բաժանումն ընտանիքի անդամների մեջ արտահայտություն է սեպուհական իրավունքի։ Այդ իրավունքը զարգացել եր, ըստ յերևույթին, վեցերորդ դարում» (Армения в эпоху Юстиниана, եջ 474)։

Նիկ. Ադոնցի այս յենթադրությունից հետևում է, որ Հայաստանում նախարարական տոհմերի մեջ նախ տիրող և յեղել միաժառանգության ու մայորատի սկզբունքը։ Արշակունյաց թագավորության անկումից հետո միայն սկսել է հետզհետե փոխվել ժառանգության այս կարգը և վեցերորդ դարում զարգացել է արդեն բաժան ու անջատ՝ «սեպուհական» հողատիրությունը։ «Սեպուհական» կամ «սեպհական» անվանվել են այնուհետև այն հողաբաժինները, որ ժառանգում եյին «սեպուհ»-ները, այսինքն՝ նախարարական տոհմերի «սեպուհ» կոչված անդամները։

Նիկ. Ադոնցը յենթադրում է, ուրեմն, որ Խորենացու վերոհիշյալ վկայությունը վերաբերվում է նախարարական միջավայրում տեղի ունեցող ժառանգական հողաբաժանումներին։

Խորենացու մութ ու անորոշ վկայության այս կերպ մեկնումը, թեև շատ հետաքրքիր է ու հրապուրիչ, սակայն ունի առարկելի կետեր և թվում է ինձ խիստ վիճելի։

Նախ և առաջ, դժվար է համաձայնել Նիկ. Ադոնցի հետ, որ Հայաստանում «սեպուհական» ժառանգման զարգացումը տեղի յեր ունեցել վեցերորդ դարում։

Վեցերորդ դարից դեռ շատ առաջ «սեպհական» կալվածներ հիշատակվում են Փավստոսի պատմության մեջ, որը գրել է իր աշխատությունը հինգերորդ դարի առաջին կեսում։ Խոսելով Մերուժան Արծրունու ու Վահան Մամիկոնյանի ապստամբության ու կրոնափոխության մասին, Փավստոսը հաղորդում է, որ

«ատրուշանս շինէին ի բաղում տեղիս, և զմարդիկ հնազանդէին օրինացն Մազդեզանց, և բազում յիւրեանց սեփհականսն շինէին ատրուշանս, և զորդիս և զազգայինս իւրեանց տային յուսումն Մազդեզանցն» (IV, ԾԹ, Վենետիկ 1889, եջ 184)։

Նույն Փավստոսի վկայությամբ՝ Մերուժանը խոստանում է Շապուհ արքային՝

«Թէ իցէ և կարասցէ յաղթել Շապուհ Հայոց, և ունել զաշխարհն, և ինձ դարձ լիցի յիմ աշխարհն և յիմ տունն, նախ ես՝ ասէ՝ շինեցից ատրուշան յիմում տանն սեպհականին» (IV, ԻԳ, եջ 144)։

Նիկ. Ադոնցի վերոհիշյալ լուսաբանությունն առարկելի յե նաև այն տեսակետից, որ մատենագրական աղբյուրների մեջ «սեպհական» և «սեպհականութիւն» անվանվում են ոչ միայն «սեպուհ»-ների բաժան ու անջատ հողաբաժինները, այլ և, ընդհանրապես, թե Արշակունյաց, թե կաթողիկոսության և թե ազնվականության անբաժան ու տոհմային կալվածները։

Այս յերկրորդ նշանակությամբ գործ են ածված «սեպհական» ու «սեպհականութիւն» հետևյալ վկայություններում.

1. Ղազար Փարպեցի, I, Ը, եջ 11՝

«Եւ զբնիկ սեպհական կալուածի ազգին Արշակունեաց զքաղաքն Վաղարշապատ, զբնակութիւն ոստանի Արշակունի թագաւորացն, զբարձրաբերձ շինուածս անթիւ ապարանացն».

2. Խորենացի, II, ԺԲ, եջ 122՝

«Իսկ զՀերակլեայն զառնապատկերն, որ արարեալ

էր ի Սկիւղեայ և ի Դիպլինոսէ կրետացւոյ, զՎահագն իւրեանց վարկանելով նախնի՝ կանգնեցին [Վահունիք] ի Տարօն, յիւրեանց սեպհական գիւղն յԱշտիշատ»։

3. Խորենացի, II, հէ, եջ 203՝

«Ասէ ապա [Ագաթանգեղոս] և զգալն Անակայ ննջմամբ ... ր խոստմունս Արտաշրի, որ ասացն, եթէ «զքուն պատուական գձեր սեպհական Պահլաւն, զայն անդրէն ի ձեզ դարձուցից, և զքեզ թագաւ փառաւորեցից»։ Վասն որոյ յանձն առեալ Անակայ՝ սպանանէ զԽոսրով»։

4. Մովսէսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից աշխարհի, հրատ. Մ Էմինի, Մոսկվա 1860, I, ԻԱ, եջ 49՝

«Եւ ապա այնուհետև ամենայն եպիսկոպոսք գիւ րաքանչիւր իշխանութեան զերիցունս և զսարկաւագունս և զբոլոր ուխտ եկեղեցւոյ հանդերձ տէրունեան նշանաւ խաչին առեալ միաբանութեամբ և յոյժ փութով ժողովեցան ի սեպհական գիւղն տէրունի՝ յանուանեալն Գիւտական»։

5. Նոյնը, II, ԺԴ, եջ 127՝

«Զի ստացաւ հայր իմ զաշխարհս զայսոսիկ երեսին՝ Աղուանից, Լփնաց և Ջողայ յիւր սեպհական ժառանգութիւն յաւիտենական»։

Անկախ այս խնդրից՝ վիճելի չէ թվում ինձ նաև Նիկ. Ադոնցի հիմնական այն յեզրակացությունը, վոր իբր թե Խորենացու վերոհիշյալ հատվածի մեջ ակնարկված է ժառանգական գույքի բաժանման կարգը նախարարական ընտանիքի անդամների, այսինքն՝ «սեպուհ»-ների մեջ։

Ամենաուշագրավը և կարևորը Խորենացու վկայության մեջ վոչ այնքան նրա պատմական կողմն է, վոր ավելի քան վիճելի չէ, վոչ այն, վոր Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառներում տեղի չեն ունեցել հողաբաժանում Արշակունյաց տոհմի աճած ու բազմացած սերունդների մեջ, այլ, գլխավորապես, հողաբաժանման այն հատուկ կարգը՝ «հա-

ւասար» և «ըսա մարդաթուի», վորը, ըստ յերևույթին, գոյություն է ունեցել Հայաստանի իրական կենցաղի մեջ և, հավանաբար, հենց Խորենացու իսկ ժամանակ։

Նիկ. Ադոնցի յենթադրությունը, վոր այդ կարգը վերաբերվում է «սեպուհական» անջատ հողատիրության, ավելի քան վիճելի յե։ Դժվար է խիստ ընդունել, վոր նախարարական ընտանիքների անդամները կարող եյին տոհմային հողերը ժառանգել «հուասար» և «ըստ մարդաթուի»։ Յեթե այդ այդպես լիներ, այդ դեպքում՝ ժառանգատու նախարարների բազմանդամ ընտանիք ունեցող վորդիները պետք է ստանային մի քանի անգամ ավելի մեծ հողաբաժիններ, քան նրանց ամուրի վորդիները։ Ժառանգության բաժանման այս կարգը խիստ արտասովոր է ու անորինակ կալվածատեր ազնվական դասի համար։

Հողերի «հուասար» և «ըստ մարդաթուի» բաժանումը, վորքան հայտնի յե, վոչ թե «սեպուհական» ժառանգության, այլ համայնական հողատիրության վորոշ կարգ է։

Ճիշտ է, Խորենացու վկայության մեջ պարզ ասված է, վոր հողաբաժանումը Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառներում տեղի յե ունեցել Արշակունյաց տոհմում, սակայն նրա վկայության մեջ ամենից կասկածելի կետը հենց այն է, վոր նա համայնական հողատիրության վերաբերվող հատուկ կարգերը վերագրել է նաև Արշակունյաց տոհմի աճած ու բազմացած ժառանգներին։

«Հուասար» և «ըստ մարդաթուի» հողաբաժանման սկըզբունքը յեղել է, ըստ յերևույթին, Խորենացու ժամանակ իրական ու հանրածանոթ մի փաստ, և ինձ թվում է, վոր Խորենացու վկայության մեջ մատնանշված կարևոր այդ փաստը կարող է ընդունվել, վորպես ուշագրավ մի ակնարկ, վոր Հին Հայաստանում գոյություն են ունեցել, հավանաբար, համայնական հողատիրության վորոշ կարգեր և «հուասար» հողաբաժանումն «ըստ մարդաթուի»։

Խորենացու նույն այդ վկայությունը մեկնելիս ի նկատի

պետք է ունենալ նաև այն, որ նա թագավորական սերունդ է համարել «ոստանիկ»-ների դասը։

Այս կարևոր հանգամանքը հիմք կարող է ծառայել ենթադրելու, որ նրա վկայությունը վերաբերվում է իրոք ոչ թե Արշակունյաց տոհմի աճած սերունդներին, այլ «ոստանիկ» դասին։

Վերև մենք տեսանք, որ «ոստանիկ» են անվանվել Արշակունյաց բուն երկրի «ազատ»-ները, որոնցից կազմված գունդն անվանվել է «արքունի» կամ «յարքունի տանէ»։ Դժբախտաբար, աղբյուրների վկայություններից չի որոշվում, թե այդ «ոստանիկ» ազատների դասին չէ՞ն պատկանել արդյոք նաև ազատ գյուղացիներ, որոնք կարող էին գոյություն ունեցած լինել Հին Հայաստանում։

Խորենացու ակնարկած «հաւասար» և «ըստ մարդաթուի» հողաբաժանումը նոր ու հավանական լուսաբանություն կստանար, եթե կարևոր այս խնդրի մասին գտնվեր մատենագրական աղբյուրների մեջ հաստատուն որևէ մի ցուցում կամ ակնարկ։

Որ համայնական հողատիրությունը տարածված երևույթ է եղել և գոյություն է ունեցել նաև Հին Հայաստանի հարևան երկիրներում՝ այդ մասին կարևոր մի վկայություն ունի Ստրաբոնն իր «Աշխարհագրության» մեջ (Geographia, Lib. XI, cap. III, տես Латышев, Известия древних писателей греческих и латинских о Скифии и Кавказе, СПБ, 1890, էջ 140)։

Խոսելով Վրաստանի սոցիալական կազմակերպության մասին՝ Ստրաբոնը վկայում է, որ

> «գույքերը նրանց [այսինքն՝ Իբերիայի բնակչության] ընդհանուր են ըստ տոհմերի. կառավարում է և տնօրինում յուրաքանչյուր գույք [ամեն մի տոհմի] ավագը»։

Հիմնվելով Ստրաբոնի այս վկայության վրա՝ Ջավախովը ենթադրում է, որ առաջին դարում Քրիստոսից հետո Վրաստանում դեռևս գոյություն չէ ունեցել մասնավոր սեփ-

հականություն և գույքերը համարվել են տոհմական ընդ-
հանուր սեփականություն։ Այս գույքերի կառավարումը
տոհմի ավագ անդամի տնօրինությամբ, Ջավախովի կարծի-
քով, մի պարզ ցուցումն է, որ նույն գույքերի օգտագործ-
ման ձևը յեղել է համայնական-տոհմական (տես Государ-
ственный строй древней Грузии и древней Армении, եջ 9)։

Դժվար չէ կռահել, որ նման կազմակերպություն ունե-
ցած պիտի լիներ Հին Հայաստանն իր զարգացման հնագույն
տոհմական շրջանում, ուստի և միանգամայն հնարավոր է,
որ նաև հետագա դարերում համայնական հողատիրության
որոշ կարգեր կարող էյին պահպանված լինել ֆեոդալական
Հայաստանում։

Բացի Խորենացու ակնարկած «հաւասար» և «ըստ մար-
դաթուի» հողաբաժիններից, Ագաթանգեղոսի մոտ ևս, ինչպես
վերև տեսանք, հիշատակվում են «չորս չորս հողս յամենայն
ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ»
(ՃԺԹ, եջ 436), որ հատկացվել էյին հոգևորականներին
նրանց հոգևոր «ծառայութեան» համար։ Հիմնվելով Ագա-
թանգեղոսի հունարեն թարգմանության վրա, որի մեջ «հողս
երդոյ» թարգմանված է arouras, վերև յես յենթադրել էյի,
որ «հողք երդոյ» այն հատուկ հողաբաժիններն են, որոնք
ավաններում և ագարակներում տրվել են «երդ»-երին։

Յեթե իմ այս բացատրությունն ընդունելի համարվի՝
այդ դեպքում՝ որոշվում է հողաբաժանության նաև մի այլ
կարգ, որ գոյություն է ունեցել Հին Հայաստանում Արշա-
կունյաց թագավորության ժամանակ և որը, հավանաբար,
հարատևած պիտի լիներ նաև Արշակունյաց հարստության
անկումից հետո։

Արդ՝ յեթե ուղիղ է մեր այս յենթադրությունը, որ
հողաբաժանման վերոհիշյալ կարգերը պահպանված են յեղել
ֆեոդալական Հայաստանում՝ կարելի է նաև որոշել, թե
վո՞րն է գրաբար լեզվի մեջ այն հատուկ բառը, որ ունեցել
է գյուղացիական հողաբաժնի իմաստ։

Ն. Ադոնցը վերոհիշյալ իր աշխատության մեջ կար-

ծում է, որ գյուղացիական հողաբաժինն անվանվել է Հին Հայաստանում «կեանք, արար» կամ «կալուած»։ Հատկապես «կալուած» բառը նա համապատասխան է համարում ֆեոդալական շրջանի tenure բառին (տես Армения в эпоху Юстиниана, էջ 480)։

Նույն այդ բառերը, որ ունեն գյուղացիական հողաբաժնի իմաստ, գործ են ածվել, նրա կարծիքով, նաև իշխանական ու յեկեղեցական կալվածների համար։

Իր այս կարծիքն ապացուցանելու համար նա մատնացույց է անում Եղիշեյի պատմության հետևյալ հատվածը.

Եղիշէ, Վենետիկ 1864, էջ 231—232՝

«Եւ եթէ ոք ի հեռի աշխարհ ուրեք գնացեալ իցեն, ունիմ իշխանութիւն յարքունուստ, ասէ մարզպանն, եթէ յաղատաց իցեն, եթէ ի շինականաց իցեն, եթէ յեկեղեցւոյ, զինչ կեանս և թողեալ իցէ, եկեսցեն և կալցեն զիւրաքանչիւր զարարս. երդմամբ կնքէր և առաքէր ի կողմանս կողմանս։ Որ և բաղումք իսկ եկին և ժողովեցան, և կալան զիւրաքանչիւր կալուածս»։

Թե ինչու այս հատվածում «կեանք, արար, կալուած» պետք է նշանակեն գյուղացիական հողաբաժին (крестьянский надел)՝ ինձ համար այդ միանգամայն մութ է և անհասկանալի։ Ընդհակառակը՝ այդ լուսաբանությունը թվում է ինձ ամենից քիչ հավանական, որովհետև հատվածի բովանդակությունից պարզ յերևում է, որ «կեանք, արար» ունեցել են վոչ միայն «շինական»-ները, այլ և «ազատ»-ները։

Սխալ է ու անհիմն, իմ կարծիքով, Նիկ. Ադոնցի նաև այն պնդումը, վոր իբր թե «կեանք, արար, կալուած» ունեն նույնանման նշանակություն։

«Արար» և «կեանք», ինչպես ցույց են տալիս մեր հին մատենագրության մի շարք վկայությունները, ունեն վոչ թե անշարժ գույքի իմաստ, այլ շարժական։

Աբրահամ Խոստովանողի «Վկայք Արևելից» յերկում

«արար» բառը գործ է ածված հենց այդ նշանակությամբ։ Յեզանդուխտի վկայաբանության մեջ մոգպետը, կամենալով հրապուրել քրիստոնյա կնոջը, հրամայում է՝

«Զի զերանելին Եզանդուխտ տարեալ անցուցանիցեն առ դրաւք ապարանից իւրոց, և ցուցցեն նմա զամենայն արարս նորա, և զբազմութիւն ծառայից նորա և զաղախնանց, զի հանցեն առաջի նորա, զի տեսանելով զբազմութիւն ստացուածոց նորա, հաւանեսցի լինել նմա կնութեան» (Էջմիածին 1921, էջ 162)։

Շատ պարզ է, որ «արարս» այս հատվածում ոչ թե մոգպետի հողաբաժիններն են, այլ ապարանքում գտնվող շարժական գույքն։

Նույն իմաստն ունի «արար» բառը նաև Ղազար Փարպեցու Թղթի մեջ՝

«որ նման գայլոց յարձակեցան յարարս իմ և գիշատեցին յանխնայ, տեսեալ զիս՝ եթէ մերժեցայ յաչաց քոց» (Տփղիս 1904, էջ 197)։

Յեղիշե պատմագիրը ևս, որից վկայություն է բերել Աղոնցը, «արար»-ը, ըստ յերևույթին, հասկացել է նույնպես իբրև շարժական գույք իր պատմության մի ուրիշ հատվածում.

«Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա [Վասակի] — վկայում է Յեղիշեն — որ մինչև զհարց և զհաւուց և զիւր արարս և զզարդս կանանց ևս եդ ի վերայ և ետ և տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի» (Վենետիկ 1864, էջ 246)։

Իմ կարծիքով, «զհարց և զհաւուց և զիւր արարս» խոսքերով ակնարկված են այստեղ ոչ թե Վասակի ու նրա նախնիքների հողերը կամ անշարժ գույքերը, այլ շարժականը։

Ավելի որոշ է «կեանք» բառի նշանակությունը, որը նույնպես չունի ոչ հողաբաժնի իմաստ, ոչ էլ անշարժ գույքի։ Նրա բուն նշանակությունը պարզ յերևում է Ավե-

տարանի գրաբար թարգմանությունից, ուր «կեանքը» համապատասխանում է հունարեն bios, լատին. victum և ռուս. пропитание բառերին։ Ուրեմն՝ «կեանք» բառը, ինչպես տեսնում ենք, ունեցել է շարժական գույքի և հատկապես՝ կենսամթերքների իմաստ։

Վոր «կեանք» բառը չեր կարող ունենալ հողի կամ հողաբաժնի նշանակություն, այդ յերևում է նաև Շահապիվանի ժողովի հետևյալ կանոնից.

> «Եթէ ոք զկինն թողցէ զորդւոյ մայր առանց բանի պոռնկութեան, և կամ թէ արատ ինչ չար ի մարմնի չիցէ, այլ որ եթէ այրն շնաբարոյ իցէ և աչլում ակն եդեալ իցէ, դատաստանն այս լիցի, զտուն և զկեանս և զորդիս և զհող և զջուր և զամենայն ինչ բաժանեսցեն հասարակաց, զկէսն կնոջն տացեն» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, եջ 64)։

Միանգամայն պարզ է, իմ կարծիքով, վոր «կեանք»-ն այստեղ գործ է ածված շնացողի շարժական գույքերի համար, վորովհետև առանձին հիշատակված է կանոնում նաև նրա «հող» և «ջուր»-ը։

Ինչպես տեսնում ենք, վոՙչ «կեանք»-ը և վոՙչ էլ «արար»-ը չունեն այն նշանակությունը, վոր նրանց վերագրել է Ադոնցը։ Պետք է, ուրեմն, յենթադրել վոր նրա մատնանշած Յեղիշեյի վկայության մեջ ևս «կեանք» և «արար» ունեն շարժական գույքի իմաստ կամ նշանակում են, ընդհանրապես, գույք կամ ինչք, բայց վոՙչ գյուղացիական հողաբաժին։

Անհավանական ու անընդունելի պետք է համարել Ադոնցի կարծիքը նաև «կալուած» բառի մասին։

«Կալուած», ճիշտ է, համապատասխանում է ֆրանսերեն tenure բառին, սակայն այդ նմանությունը քերականական է միայն ու արտաքին, մինչդեռ նրանց բովանդակությունն ու իմաստը բոլորովին տարբեր են։ Tenure ֆեոդալական Ֆրանսիայում մատնանշում է հողերի տիրապետության յեղանակները (tenures à cens, tenures à champart, tenures

roturières, tenures villaines), *իսկ Հայաստանում «կալուած»-ը, ինչպես յերևում է մատենագրական վկայություններից, չի ունեցել այդպիսի հատուկ իմաստ, այլ ընդհանուր մի բառ է, վոր գործ է ածվել զանազան տեսակ անշարժ գույքերի համար։ Վոսկեդարյան գրաբար թարգմանություններում, սովորաբար, նա համապատասխանում է հունարեն* kataschesis *բառին, վոր նշանակում է ունեցվածք, ստացվածք կամ տիրություն* (имущество, имение, владение): *Հայոց մատենագրության հնագույն յերկերում և վոչ մի դեպք ինձ հայտնի չէ, վոր «կալուած» բառն ունենար գյուղացիական հողաբաժնի հատուկ նշանակություն։*

*Բայց մի՞թե չէ պահպանվել գրաբար լեզվի մեջ ուրիշ վորևէ մի բառ գյուղացիական հողաբաժնի նշանակությամբ։*

*Յեթե ճիշտ է մեր յենթադրությունը, վոր հողաբաժանության վերոհիշյալ կարգերը գոյություն են ունեցել Հին Հայաստանում, շատ պարզ է, վոր հողաբաժնի համար հատուկ վորևէ մի բառ գործածված պիտի լիներ հին հայերենում։ Յեվ այդ հատուկ բառը, թվում է ինձ, վոր կա իրոք գրաբարում, միայն թե քրիստոնեության շրջանում նա ստացել է նաև տարբեր նշանակություն։*

*Յես հավանական եմ համարում, վոր գյուղացիական հողաբաժինը կոչվել է Հին Հայաստանում վոչ թե «կեանք, արար, կալուած», ինչպես այդ յենթադրել է Նիկ. Ադոնցը, այլ «վիճակ»։*

*Քրիստոնեության շրջանում, ինչպես հայտնի յէ, «վիճակ» և «վիճակաւոր» բառերը գործ են ածվել կղեր և կղերականի փոխարեն (հունարեն* klêros *և* klêrikos): *Այդպես եյին անվանվում հոգևորականությունը և հոգևորականները, վորովհետև «Գործք Առաքելոց»-ի վկայությամբ, Մատթեվոսն առաքյալ եր ընտրվել վիճակի միջոցով («Գործք Առաքելոց», Ա, 23—26)։*

*Վոր «վիճակ» բառն ունեցել է հողաբաժնի նշանակություն, այդ յերևում է հայոց հնագույն մատենագրության մի շարք հատվածներից։*

«Վիճակ» բառի տակ Հայկազյան լեզվի Նոր բառգրքում առաջ է բերված Մխիթար Գոշի Ցերեմիայի մեկնությունից հետևյալ վկայությունը՝ «վիճակ զանգաստանս սովոր են ասել. և մեք սովոր եմք գժողովուրդս վիճակ կոչել»։ Այս վկայությունը պարզ ցույց է տալիս, որ «վիճակ»-ը, սովորաբար, գործ է ածվել անդաստանների, այսինքն՝ արտերի կամ վարելահողերի համար։ Հենց նույն այդ իմաստն ունի «վիճակ»-ը Հին Կտակարանի հայերեն թարգմանության զանազան հատվածներում. օրինակ՝

1. «Տացէ ինձ զայն կրկին, որ է ի վիճակի ագարակի իւրոյ» (Ծն. ԻԳ, 9).

2. «Եւ ասէ Աբիսողոմ ցծառայս իւր, գիտէք զվիճակ գետնոյ Յովաբայ, լի գարւով մօտ է առ իս, երթայք այրեցէք զնա հրով» (Թագ. Բ, ԺԴ, 30)։

«Վիճակ» բառի գործածությունը գյուղացիական հողաբաժնի համար հաճախակի մի երևույթ է եղել նաև Արևմտյան Եվրոպայի և Ռուսաստանի գյուղական համայնքներում։ Ֆրանկների Lex Salica օրենսդրական գրվածքում գյուղացիական հողաբաժիններն անվանվել են sors, գերմանական երկիրներում՝ Loos, Հունաստանում և Հռոմեական կայսրության հելլենականացման ենթարկված մասերում klē-ros, Հին Ռուսաստանում՝ жеребье:

Ինչպես տեսնում ենք, այս տերմինները միևնույն նշանակությունն ունեն և միանգամայն համապատասխանում են հին հայերեն «վիճակ» բառին։ Պետք է ենթադրել, որ այս բառը համայնական հողատիրության հնագույն շրջանի տերմին է։ Հավանական է նաև, որ նախնական այդ շրջանում հողերի պարբերական վերաբաժանումները կատարվել են վիճակարկությամբ և այդ, ըստ երևույթին, սովորական մի կարգ է եղել գյուղական նախնական համայնքներում։

Պրոֆ. Ջավախովը վերև հիշված իր աշխատության մեջ ենթադրում է, որ Հին Հայաստանում և Վրաստանում,

ինչպես նաև Արևելքի ուրիշ ազգերի մոտ, պետական ու սոցիալական կազմակերպության վերաբերյալ տերմինները ծագել են, մեծ մասամբ, համայնական-տոհմական նախորդ շրջանից։ Օրինակ՝ լերկրային բոլոր միավորները, ամենափոքրից սկսած մինչև ամենամեծը, անվանվել են «տուն». «տանուտէր» բառը, որ սկզբում ունեցել է տոհմապետի իմաստ, հետագայում գործ է ածվել նախարարական տոհմերի նահապետների, վարչական պաշտոնյաների և նույն իսկ թագավորի համար։

Ինձ թվում է, որ համայնական-տոհմական հնագույն շրջանի նման տերմիններից է նաև «վիճակ» բառը, որն ունեցել է սկզբում համայնական հողաբաժնի իմաստ, իսկ հետո ստացել է և ուրիշ նշանակություններ։

Ուշադրության արժանի չէ, որ նույն այս «վիճակ» բառը Հին Կտակարանի գրաբար թարգմանության մեջ համապատասխանում է հունարեն schoinismos, schoinisma բառերին, որ նշանակում են՝ չափում լարի, չվանի միջոցով կամ լարով, չվանով չափված հողաբաժին։

Նյութից մի փոքր շեղվելով, ավելորդ չեմ համարում այստեղ հիշել, որ Թովմա Արծրունին, նկարագրելով թե ինչպես Բուղայի ժամանակ, Վասպուրականի նվաճումից հետո, այնտեղ հաստատվում էր մահմեդականների գաղթականությունը, պատմում է, որ

> «սկսան այնուհետև աներկիւղ համարձակութեամբ սփռել տարածանել ի վերայ երեսաց երկրիս ամենայն ազգքն Տաճկաց, որ ելեալ էին զհետ նորա ընտանեօք իւրեանց, և ձեռնամուխ եղեն բաժանել զերկիրն յինքեանս. և արկանէին վիճակս և լարս ձգէին ի վերայ սահմանաց և բնակէին յամուրս աշխարհիս աներկիւղս» (III, Ե, Ս. Պետերբուրգ 1887, էջ 151—152)։

Ցեթե ի նկատի առնվի, որ այս անցքերը տեղի յեն ունեցել Բուղայի արշավանքի ժամանակ 852—853 թվականներին, իսկ Թովմա Արծրունու պատմությունը գրված է,

հավանաբար, տասներորդ դարի քառասնական ՝թվականներին, դժվար թե առանց վերապահության կարելի լինի ընդունել, որ մահմեդական գաղթականության մեջ հողաբաժանումն իսկապես տեղի չի ունեցել ճիշտ այն յեղանակով, ինչպես վկայում է Թովմա Արծրունին։ Թովմա Արծրունու պատկերավոր ու նկարագրական շարադրության մեջ կարող է, հավանաբար, արտահայտված լինել ոչ թե իրական ու պատմական յեղելությունը, այլ հողաբաժանության այն ծանոթ ու սովորական կարգը, վիճակարկությամբ ու լարաձգությամբ, որ գոյություն է ունեցել նրա ժամանակ Հայաստանում։

Յես այդ չեմ պնդում, բայց և չեմ համարում անհավանական ու անհնարին։

Համենայն դեպս, վերոհիշյալ փաստը, որ հունարեն schoinismos և schoinisma թարգմանվել են «վիճակ» բառով, կարևոր ու ուշագրավ մի ակնարկ է, որ «վիճակ» բառը կապ է ունեցել հողաբաժանության հետ, որովհետև գործ է ածվել, ըստ յերևույթին, այնպիսի հողամասերի համար, որոնք չափված և որոշված են յեղել լարաձգությամբ։

Հիմնվելով այս և մյուս մեր ասածների վրա, ինձ թվում է, կարող ենք յեզրակացնել, որ Հին Հայաստանում գյուղացիական հողաբաժինները անվանվել են ոչ թե «կեանք, արար, կալուած», այլ «վիճակ», որը, ինչպես տեսանք, իր նշանակությամբ համապատասխանում է sors, klêros, Loos և жеребье բառերին։ Այս վերջին բառերի նման «վիճակ»-ը ևս, հավանաբար, հատուկ մի տերմին է, որ տոհմական հնագույն ժամանակները գործ է ածվել համայնական հողատիրության միջավայրում։

«Շինական»-ները, ստանալով կալվածատեր ազնվականներից հատուկ հողաբաժիններ, վճարելու էին նրանց զանազան տուրքեր, որոնց մասին, դժբախտաբար, մատենագրական աղբյուրները չեն տալիս և ոչ մի վկայություն։

«Շինական»-ներն էին, անշուշտ, այն արտադրող հիմնական դասը, որի աշխատանքն ապրուստի միջոցներ էր

հայթայթում թե կալվածատեր ազնվականության և թե հոգևորականության։

Ինչպես և ֆեոդալական Եվրոպայում, նույնպես և Հին Հայաստանում, ազնվականները, հոգևորականները և «շինական»-ները յերեք գլխավոր դասերն եյին, վորոնցից առաջինը՝ իբրև գերազանցորեն զինվորական ուժ՝ պատերազմում եր, յերկրորդը՝ աղոթում և յերրորդը՝ աշխատում։

«Շինական»-ները հարկատու յեն յեղել վոչ միայն կալվածատիրոջ, այլ և արքունիքին։

Արքունի այդ հարկերի մասին կան միայն մարզպանության շրջանում հիշատակություններ, գլխավորապես, Յեղիշեյի պատմության մեջ, վոր մենք քննության եյինք առել «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում» մանրաքնին մեր աշխատության մեջ (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, Յերևան 1926, № 1, եջ 3—44)։

Խոսելով Հայաստանում Հազկերտ Բ-ի ժամանակ (439—457 թ.) տեղի ունեցած աշխարհագրի մասին, Յեղիշեն հարկերի ծանրության մասին հաղորդում է հետևյալը.

> «Բանզի ուստի արժանն էր առնուլ հարիւր դահեկանաւ չափ, կրկին առնուին. սոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին, ոչ միայն շինաց, այլ և աւերակաց։ Նա բնավ ով իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից և հարկաց լերանց և դաշտաց և մայրեաց։ Ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինարար յափշտակելով. մինչև ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ, զի՞որդ շէն կայցէ աշխարհն» (Վենետիկ 1864, եջ 40)։

Արդ՝ Սասանյան Պարսկաստանի հարկերի ու ֆինանսական տնտեսության լուսաբանության համար, ինչպես հայտնի յե, գլխավոր ու հիմնական աղբյուրն է Տաբարիի պատմությունը։ Ընդունելով, վոր Պարսկական Հայաստանի արքունի հարկերը նման պիտի լինեյին մյուս մարզերի հար-

կերին, այս աղբյուրի վկայությունները, բնականաբար, մեծ կարևորություն են ստանում նաև Պարսկական Հայաստանի համար։

Տաբարիի հաղորդած տեղեկությունների համաձայն[1] Խոսրով Նուշիրվանից առաջ (531—579 թ.) Պարսկաստանի թագավորները, սովորաբար, առնում էին առանձին շրջաններից, որպես հողային տուրք՝ բերքի $^1/_3$-ը, $^1/_4$-ը, $^1/_5$-ը կամ $^1/_6$-ը, նայած ոռոգման ու հողի մշակույթին։ Բացի այդ՝ նրանք առնում էին նաև որոշ գումար գլխահարկ։ Պերոզի որդին Կավատը (488—531 թ.) իր թագավորության վերջում կարգադրած է յեղել, որ հողաչափություն կատարվի դաշտային ու լեռնային հողերի, որպես զի կարելի լինի ճշտիվ որոշել հողային հարկերը։ Այդ հողաչափությունը, որ սկսվել էր Կավատի ժամանակ, շարունակվել է ու ավարտվել Խոսրով Նուշիրվանի ժամանակ, որը կարգադրած է յեղել համարել նաև մարդկանց ու հաշվել արմավենիների ու ձիթենիների քանակը։

Այնուհետև՝ այս աշխարհագրից հետո, որոշված է յեղել հարկերի չափը։

Ամեն մի garib հողից[2], որի վրա ցանված էր ցորեն կամ գարի՝ որոշված է յեղել պահանջել 1 դրամ հողահարկ, մեկ garib խաղողի այգուց՝ 8 դրամ ևն.։ Գլխահարկ վճարելու էին բոլորը՝ 20 տարեկանից մինչև 50 տարեկանը՝ բացի ազնվականներից, մեծամեծներից, զինվորներից, որոշ հոգևորականներից և թագավորության պաշտոնյաներից։ Ամեն մի անձից առնում էին 12, 8, 6 կամ 4 դրամ՝ համաձայն հար-

---

[1] Տե՛ս Th. Noeldeke, Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sasaniden, Leyden 1879, էջ 241—247։

[2] 1 garib հողը = 1470,87$^1/_2$ քառակուսի մետրի, տես Decourdemanche, Traité pratique des poids et mesures des peuples anciens et des Arabes, Paris 1909, էջ 65 և 90։ Christensen-ը 1 garib հողը յենթադրում է 2.400 քառ. մետր, տես L'empire des Sassanides, էջ 57, իսկ Alf. Kremer-ը՝ 1169,64 քառ. մետր, տես Culturgeschichte des Orients B. I, էջ 98-99։

կատուի կարողության։ Գլխահարկի սովորական տարածված չափը յեղել է, ըստ յերևույթին, 4 դրամ։ Հարկերը գանձվում եյին մաս մաս, տարին յերեք անգամ, յուրաքանչյուր քառամսյակում տարեկան հարկի 1/3 մասը։

Տաբարիի այս տեղեկություններից յերևում է, որ հողային բնական տուրքերը վերածվել եյին հողային դրամական հարկերի վեցերորդ դարի առաջին կեսում։

Հարկատվության այս փոփոխությունը, որ տնտեսագիտության մեջ կոչվում է commutatio, կարևոր մի ցուցումն է թե դրամական շրջանառության համեմատական աճման և թե Սասանյան Պարսկաստանի տնտեսական զարգացման։

Հիմնվելով Տաբարիի վերոհիշյալ տեղեկությունների վրա՝ Ադոնցը „Армения в эпоху Юстиниана“ իր ուսումնասիրության մեջ (եջ 481—485) քննության է առել Յեղիշեյի վկայությունները, համեմատելով Պարսկական Հայաստանի հարկերն այն ընդհանուր հարկերի հետ, որոնք ընդունված են յեղել Սասանյան Պարսկաստանում, իսկ հետագայում նաև Արաբական խալիֆատում։

Ինչպես հայտնի յէ, Սասանյան Պարսկաստանում գոյություն են ունեցել յերկու տեսակ հիմնական հարկեր՝ հողային հարկ և գլխահարկ։ Նույն հիմնական հարկերը յեղել են նաև Հռոմեական կայսրության մեջ՝ tributum soli և tributum capitis, որոնք Դիոկլետիանի բարենորոգումից հետո անվանվել են՝ capitatio terrena և capitatio humana կամ plebeia։

Բաղդատելով Յեղիշեյի մոտ հիշատակված հարկերը հիմնական ու սովորական այս հարկերի հետ, Ադոնցը ավելի քան հավանական է համարում, որ «բաժ»-ը համապատասխան կարող է լինել հողային հարկին, իսկ «սակ»-ը՝ գլխահարկին։ Նա հնարավոր է համարում, որ Յեղիշեյի «մուտ»-ը և «հաս»-ը հոմանիշներ են պարսկերեն «սակ»-ի և «բաժ»-ի, և գործածական են յեղել հայկական միջավայրում։

Վերոհիշյալ իմ ուսումնասիրության մեջ յես ես հանգել եյի նույնպես այն յեզրակացության, որ Յեղիշեյի վկա-

*յության մեջ հիշատակված են մի քանի այլ հարկերի հետ նաև Սասանյան Պարսկաստանի հիմնական հարկերը՝ հողայինը և գլխահարկը, սակայն առաջինն անվանված է վոչ թե «բաժ», վոր ունեցել է մաքսային հարկի նշանակություն, այլ «հաս», իսկ յերկրորդը, ինչպես ճիշտ յենթադրել է Ադոնցը, կոչվել է «սակ»* [1]։

*«Շինական»-ների տնտեսական կացության ամենակարևոր խնդիրներից մեկն է նաև «կոռ»-ի խնդիրը պատմական հնապույն այս շրջանում։*

*Այս խնդիրը ևս մանրամասն քննված է վերև հիշված իմ աշխատության մեջ (էջ 37—44)։*

*Վոր «կոռ»-ը գոյություն ունեցած պիտի լիներ Հին Հայաստանում՝ այդ պարզ յերևում է Դվինի 645 թվի ժողովի ԺԱ կանոնից։*

*Այս վկայությունը, վոր ամենահինն է ու կարևորը, անհայտ է մնացել մինչև այժմ, վորովհետև «կոռ»-ի վերաբերյալ հատվածը կանոնում աղճատվել ու փոփոխման է յենթարկվել տգետ գրիչների կողմից։ Աղճատումն ակներև է դառնում, յերբ դեմ առ դեմ ենք դնում Դվնի ժողովի ԺԱ կանոնը և Մխիթար Գոշի Դատաստանագրքի Բ. մասի ԾԳ կանոնը, վորը Դվնի ժողովի նույն կանոնն է Գոշի խմբագրությամբ.*

Դվնի ժողովի ԺԱ կանոնը

*«Ոմանք յաղատաց ի վերայ ակարանոցաց իշխանութիւն առնեն, և որպէս ի կենդանեաց՝ հարկս պահանջեն և ի կերակուրս և յըմպելիս զիւրեանց գործակալս մատուցանեն,* կառով եւ պատուհասիւ *նեղեն, զողորմելի եղբարսն չարչարեն անխղճաբար» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 127—128)։*

Մխիթար Գոշ, Բ, ԾԳ, էջ 412

*«Ոմանք ի ակարանոցս իշխանութիւն առնեն և հարկս եւ կերակուրս և ըմպելիս պահանջեն բռնութեամբ, և զիւրեանց գործակալս ի վերայ գումարեն եւ* կառով եւ պահակութեամբ *նեղեն եւ զողորմելի եղբարսն չարչարեն անխղճաբար»։*

---

[1] *Թադ. Ավդալբեգյանը վերոհիշյալ իմ աշխատության առթիվ գրած իր հոդվածում (տես «Հաս, սակ ու բաժ», Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, Յերևան 1926, № 1, էջ 45—96) իմ այս յենթադրությունների նկատմամբ բերում է մի շարք առարկություններ։ Իմ կարծիքով, այդ առարկությունները հիմնավոր ու համոզիչ չեն, ուստի և իմ յենթադրությունները հավանական են թվում ինձ նաև այժմ։*

Այս համեմատությունից պարզ յերևում ե, վոր Դվինի կանոնում բնագիրն աղճատված ե և «կռուով եւ պատուհասիւ» խոսքերը, վոր անտեղի են ու անհարմար, ծագել են «կոռով և պահակութեամբ» ուղիղ ընթերցվածի աղավաղումից։ Մխիթար Գոշը, անկասկած, ունեցել ե ձեռքի տակ Դվինի կանոնի բնագիրն առանց այդ աղճատման։ Կարծում եմ, վոր այս սրբագրության դեմ և վոչ մի առարկություն չե կարող լինել, վորովհետև աղճատումն ակներև ե ու անվիճելի։

Այս ուղղումը սակայն հին հայոց ներքին կյանքի լուսաբանության տեսակետից ունի խիստ մեծ նշանակություն, վորովհետև Դվինի կանոնի վկայությամբ հաստատապես վորոշվում ե, վոր «կոռ»-ը գոյություն ե ունեցել Հայաստանում վոչ միայն Բագրատունյաց ու հետագա շրջաններում, այլ և 645 թվին։

Յեթե այդ այդպես ե, ուրեմն, կարելի յե նաև յենթադրել, վոր «կոռ»-ը գոյություն ունեցած պիտի լիներ Հայաստանում մարզպանության և, հավանորեն, նաև Արշակունյաց թագավորության շրջաններում։

Կարևոր ե այստեղ հիշել, վոր «կոռ»-ը մարզպանության ժամանակ գոյություն ե ունեցել նաև Սասանյան Պարսկաստանում։ Այդ մասին Տարարիի պատմության մեջ կա ուշագրավ մի վկայություն։ Խոսելով յերկարատև սովի ու ժողովրդի ծանր դրության մասին Սասանյան Պերոզ թագավորի ժամանակ (457—484 թ.)՝ Տաբարին հաղորդում ե, վոր Պերոզ թագավորը «նամակների միջոցով հայտարարում ե իր ամբողջ ժողովրդին, վոր ազատում ե նրան հողային հարկից և գլխահարկից, հանրոգուտ նպատակների համար ծանրություններից և կոռից, վոր նրանց շնորհում ե լիակատար ազատություն և հրամայում ե, վոր նրանք հոգան ու մտածեն իրանց սնունդի և պահպանության մասին» (տես Noeldeke, Tabari, եջ 112)։

Վերոհիշյալ վկայություններում, «կոռ»-ն, անտարակույս, այն պարտադիր աշխատանքներն եյին, վորոնք,

*ինչպես միջնադարյան* corvea-*ն, գերմ.* Frohndienst-*ը և ռուս.* барщина-*ն, կատարվելու էյին ձրի կալվածատիրոջ մոտ։*

*Իմ կարծիքով, միանգամայն սխալ է ու անհիմն Կարստի յենթադրությունը, վոր իբր թե «կոռ»-ը Հայաստանում, ինչպես և արևելյան սլավոնների ու ռուսների մոտ, առաջ է յեկել բյուզանդական ազդեցությամբ և իբր թե այդ է պատճառը, վոր հայկական «կոռ»-ը և, ընդհանրապես, հարկային սիստեմը նմանություն ու ազգակցություն ունեն արևելյան սլավոնականի ու, մոտավորապես, ռուսականի հետ, վորոնք նույնպես յենթարկվել են Բյուզանդիայի ազդեցությանը* (Karst, Sempadscher Kodex, II, *եջ 12)։*

*Այդ յենթադրությունը ճիշտ չէ, վորովհետև թե ինքը ֆեոդալիզմը և թե նրա առանձնահատուկ տնտեսական կարգերը՝ ազատ գյուղացիության ճորտացումը և ոգտագործումը, վորպես աշխատող ձրի ուժ, վոչ թե իրավական փոխառություններ են, ինչպես լեզվի վորոշ բառապաշարը, այլ ամեն մի յերկրի տնտեսական ու ներքին զարգացման արդյունք։*

*Հայկական «կոռ»-ը չէ կարող Բյուզանդիայի ազդեցությամբ առաջ յեկած լինել նաև այն պատճառով՝ վոր «կոռ»-ի գոյությունը Բյուզանդական կայսրության մեջ նրա ֆեոդալականացումից առաջ, վոր տեղի յե ունեցել շատ ավելի ուշ քան Հայաստանում, գրեթե անհայտ մի խնդիր է և հաստատուն կերպով դեռ ապացուցված չէ։*

*«Կոռ»-ի բովանդակությունը և տեվողությունը հնագույն այս շրջանում մնում են, դժբախտաբար, անորոշ։*

*Սակայն ի նկատի առնելով հայ «շինական»-ների համեմատաբար բարեկեցիկ դրությունը հինգերորդ դարում, ինչպես կարելի յեր յեզրակացնել Շահապիվանի ժողովի կանոններից, նաև աչքի առաջ ունենալով բնական տնտեսության գերակշռող դերն այս շրջանում, ինչպես և կալվածատիրական խոշոր տնտեսությունների բացակայությունը, ինձ թվում է, վոր «կոռ»-ը պատմական այս շրջանում կարող եր ավելի մեղմ յեղած լինել, քան Բագրատունյաց ու հետագա ժամանակներում։*

Դվինի 645 թվի ժողովի ԺԱ կանոնում, ինչպես վերև տեսանք, հիշատակված է բացի «կոռ»-ից նաև «պահակութիւն»-ը։ «Պահակութիւն»-ն, ինչպես յերևում է այդ բառի այժմյան իսկ նշանակությունից, ըստ յերևույթին, պարտադիր ձրի աշխատանքներն եյին՝ պահպանության ու հսկողության, վոր գոյություն են ունեցել նաև Արևմտյան Յեվրոպայում։

Վոր «պահակութիւն»-ը «կոռ»-ի հատուկ մի տեսակն է յեղել վոչ միայն յոթերորդ, այլ և հինգերորդ դարում, այդ կարելի յե գուշակել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, վորի մեջ հունարեն aggareuō (լատին. angario) բառի դիմաց, վոր գործածական եր պարտադիր ձրի աշխատանքների համար, հայերենն ունի «պահակ ունել» (Մատթ. Իէ, 32, Մարկ. ԺԵ, 21) կամ «տարապարհակ վարել» (Մատթ. Ե, 41) համապատասխան թարգմանությունը։

«Կոռ»-ի նշանակության վերաբերմամբ կա մի ընդհանուր հարց ևս, վոր հարկավոր է պարզել։

Ֆրանսիական corvée-ն և գերմանական Frohndienst-ը, ինչպես հայտնի յե, ունեցել են ընդարձակ իմաստ և գործ են ածվել նաև պետական ու հասարակական բնույթ ունեցող աշխատանքային պարտականությունների համար։ Այդպիսի աշխատանքներ եյին որինակ, ճանապարհների շինությունն ու նորոգումը (corvée des routes), փոխադրական միջոցների հայթայթումը ևն։ Ռուսաստանում, ընդհակառակը, барщина կոչվել են միայն այն պարտադիր ձրի աշխատանքները, վոր կատարվել են կալվածատիրոջ ոգտին։

Հայկական «կոռ»-ը ունեցել է, ինչպես մատնացույց ենք արել վերոհիշյալ մեր ուսումնասիրության մեջ, նույնպիսի ընդարձակ իմաստ, ինչպես corvée-ն և Frohndienst-ը։

«Շինական»-ների իրավական ու տնտեսական դրությունը, ինչպես տեսնում ենք մատենագրական աղբյուրների աղքատիկ ու պատահական նյութերի այս քննությունից, թեև շատ կողմերով մնում են մութ ու մասամբ ել վիճելի, սակայն ընդհանուր գծերով բավականաչափ վորոշվում են իբրև սոցիալական մի յերևույթ՝ նման ու համապատասխան գյուղացիության դրությանը ֆեոդալական մյուս յերկիրներում։

## 8. ՔԱՂԱՔՆԵՐԻ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ, ԱՐՀԵՍՏԱՎՈՐՆԵՐԸ ՑԵՎ ՍՏՐՈՒԿՆԵՐԸ

*Հին Հայաստանի քաղաքների, ինչպես և Հայաստանի միջով անցնող տարանցիկ առևտրի խնդիրը, մանրամասն ուսումնասիրված է ռուսերեն իմ ընդարձակ աշխատության մեջ՝* „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен" (Эривань, 1930)։

*Այստեղ մենք նույն խնդիրը քննության ենք առնելու համառոտաբար, ինչ չափով վոր առևտրի ու քաղաքների զարգացումն Արշակունյաց թագավորության և մարզպանության շրջաններում պարզում ու լուսաբանում է նախարարական կազմակերպության էության ու առանձնահատկությունները։*

*Թե Արշակունյաց թագավորության և թե մարզպանության ժամանակ Հայաստանի միջով, ինչպես ցույց ենք տվել վերոհիշյալ մեր աշխատության մեջ, անցել է տարանցիկ առևտրի հյուսիսային գիծը և այդ ճանապարհով փոխադրվել են չինական մետաքսը և ուրիշ թանգարժեք ապրանքներ, վորոնք Չինաստանից և Միջին Ասիայից արտահանվում էյին դեպի Սև ծովի նավահանգիստները։*

*Տարանցիկ առևտրի հենց այդ գծի մոտ են գտնվել Հին Հայաստանի առևտրական նշանավոր քաղաքները՝ Արտաշատը, Դվինը, Ցերվանդաշատը, Զարեհավանը, Զարիշատը և Թեոդոսուպոլիսը։*

*Առանձնապես կարևոր է նաև այն, վոր Արտաշատը և հետո Դվինը, ինչպես այդ հայտնի յե Յուստինիանի օրենսգրքի 408/9 թվի կայսերական էդիկտից* (Cod. Justin. IV, 63,4), *յեղել են միջազգային առևտրի կենտրոններ։ Նույն վկայության բովանդակության քննությունից կարելի յե*

հետևցնել, վոր համաձայնությունն այդ մասին Սասանյան Պարսկաստանի հետ կայացել եր, հավանորեն, 387 թվի դաշնադրությամբ՝ Հայաստանի բաժանումից հետո։ Ուշագրավ այս փաստը, վոր հենց Հայաստանի բաժանումից հետո Արտաշատը ճանաչված է յեղել իբրև միջազգային առևտրի գլխավոր վայրերից մեկը, կարևոր մի ակնարկ է, վոր նա նույն միջազգային նշանակությունն ունեցած պիտի լիներ նաև Արշակունյաց թագավորության ժամանակ։

Իբրև հատուկ մի վայր, ուր թույլ եր տրված առևտուր անել յերկու կողմի վաճառականներին, Արտաշատը, իսկ հետո Դվինը, բնականաբար, ստացած պիտի լինեյին միջազգային կենտրոնների բնույթ։

Պրոկոպիոսի վկայությամբ, առևտրականներն ապրում եյին Դվինի շրջակա բազմամարդ գյուղերում, վոր գտնվում եյին իրար մոտ։

> «Հնդկաստանից, հարևան Վրաստանից, Պարսկաստանի գրեթե բոլոր ժողովրդներից, նաև հռոմեական վորոշ մասերից — ասում է Պրոկոպիոսը — բերում եյին Դվին ապրանքներ և այստեղ վաճառում» (De bello persico, II, 25)։

Դվինը, վորպես ապրանքների մթերանոց և առևտրական փոխանակության վորոշված վայր, յեղել է, անշուշտ, Սասանյան Պարսկաստանի գլխավոր մաքսային կենտրոններից մեկը։

Բյուզանդական կայսրության կողմից միջազգային այս առևտրի վրա հսկողություն ունեյին հատուկ պաշտոնյաներ, վոր կոչվում եյին comites commerciorum (Cod. Justin. IV, 63,6)։ Մենանդրի պատմությունից հայտնի յե նույնպես, վոր առևտրական հաղորդակցության այս վայրերն անվանվել են dekateutēria, այսինքն՝ «տասնորդարաններ»։ Կ. Գյուտերբոկը dekateutērion հունարեն բառից հետևցնում է, վոր «երկու պետութեանց համար ալ որոշուած էր ներմուծութեան մաքսը վաճառքի արժէքին տասը առ հարիւրը» (տես «Հանդէս Ամսօրեայ», 1910, հունվար, եջ 16)։

*Չնայած միջազգային այդ առևտրի կարևոր նշանակությանը Հին Հայաստանի տնտեսական կյանքում՝ տարօրինակ է խիստ, որ հայ մատենագրական աղբյուրները կատարելապես լուռ են և մունջ և չունեն աղոտ անգամ վկայություններ այդ առևտրի, Հայաստանի քաղաքների ներքին կացության և նրանց առևտրական կամ արհեստագործ բնակչության մասին։*

*Ուշադրության արժանի է մանավանդ, որ առևտրականները և արհեստավորներն առանձնապես չեն մատնանշվում նաև աղբյուրների այն վկայություններում, որոնց մեջ հիշատակված են նախարարական Հայաստանի մյուս դասերը և համայն բնակչությունը։*

*Այդ պարզ ու որոշ երևում է, օրինակ, հետևյալ վկայություններից.*

*1. Ագաթանգեղոս, ԺԲ, էջ 73՝*

*«Տրդատ արքայ Հայոց Մեծաց, առ մեծամեծս և առ իշխանս և առ նախարարս և առ գործակալս և առ այլ մարդիկդ, որ ընդ իմով իշխանութեամբ էք, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս,* առ ազատս եւ առ շինականս, *միանգամայն իսկ առ ամենեսեան, ողջոյն».*

*2. Փաւստոս,* V, *Լ, էջ 233՝*

*«Եւ սգային [զՊապ]* ամենայն ազատք եւ շինականք *ծաղէ ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց, ազատք և շինականք՝ ամենայն բնակիչք տանն Թորգոմայ, հայ լեզուն առ հասարակ».*

*3. Նոյնը,* III, *ԻԱ, էջ 54՝*

*«Ապա առաւել ժողովեցան ի մի ժողով միաբանութեանն մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. նախարարք մեծամեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք, բայց ի զօրավարացն,* այլ եւ ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն».

*4. Գիրք Թղթոց, «Թուղթ Հայոց ի Պարսս», Թիֆլիս 1901, էջ 42՝*

«Յամենայն Հայաստան աշխարհէս, յեպիսկոպոսաց, յերիցանց, և ի վանականաց. յազատաց եւ ի շինականաց, առ ձեր ուղղափառ սրբութիւնդ, սիրովն Քրիստոսի ուրախանալ».

5. Փարպեցի, III, ՂԹ, էջ 178՝

«Եւ լուեալ զայս մարդկանն որ ի քաղաքին էին, գրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ, նախարարաց եւ ազատաց, ոստանկաց եւ ռամկաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց եւն».

Հմմտե նաև Ագաթ. ԺԲ, էջ 71 և 76, Փաւստոս IV, ԾԱ, էջ 165, V, ԻԳ, 221, Եղիշէ III, էջ 97 և 114, Է, էջ 231, Ը, 337, Փարպեցի II, ԽԱ, էջ 73, III, ՀԱ, էջ 128, Գիրք Թղթոց, էջ 130 եւն :

Christensen-ի ասելով՝ քաղաքացիները և արհեստավորներն աղբյուրների մեջ չեն հիշատակվում առանձին նաև Սասանյան Պարսկաստանում, այլ նրանք և յերկրագործները միացած են միշտ այս վերջին դասի մեջ, վոր անվանվում է vâstryo fšuyôns (տես L'empire des Sassanides, էջ 19)։

Նույնը մենք նկատում ենք հայկական ֆեոդալիզմի հնագույն այս շրջանում. այստեղ ևս, ինչպես վերև տեսանք, քաղաքաբնակ հասարակ ժողովուրդը և արհեստավորները «շինական»-ների հետ միասին կազմում եյին «ռամիկ» դասը։

Վաճառականների չհիշատակվելը մատենագրական աղբյուրներում ունի Հայաստանում նաև մի այլ պատճառ։

Ռուսերեն մեր աշխատության մեջ մենք մատնանշել եյինք, վոր Տիգրան Մեծի, ինչպես և Արշակունյաց թագավորության ժամանակ, նաև, հավանորեն, մարզպանության շրջանում, Հին Հայաստանի առևտրական կյանքում ղեկավարող դեր եյին կատարում վոչ թե իրանք հայերը, այլ սեմական գաղթականությունը, գլխավորապես, հրեաները և ասորիները։

Թե վորքան մեծ է յեղել այդ գաղթականության առևտրական դերը Հին Հայաստանում՝ այդ յերևում է, ի միջի

այլոց, գրաբար լեզվի բառապաշարից, վորի մեջ ամենաստվորական տերմինները, վորոնք կապ ունեն վաճառականության հետ, ինչպես՝ «գաղութ», «շուկայ», «խանութ», «հաշիւ» են՝ փոխառություններ են ասորերենից (տես „О торговле и городах Армении“, էջ 69)։

Սեմական այդ գաղթականության մասին Փավստոսը և Խորենացին ունեն նաև ուղղակի ցուցումներ հետևյալ վկայություններում՝

1. Փաւստոս, IV, ԻԴ, էջ 146՝

«Եւ առին աւերեցին [Շապուհ Բ-ի զորքերը 364—367 թ.] զմեծ քաղաքն Տիգրանակերտ, որ էր ի գաւառին Աղձնեաց յիշխանութեան բդեշխին. քառասուն հազար երդ, զայն նոյնհետայն ի գերութիւն խաղացուցին».

2. Նոյնը, IV, ԾԵ, էջ 176՝

«Եւ յետ այսորիկ եկին ի քաղաքն մեծ յԱրտաշատ, և առին զնա, և կործանեցին զպարիսպ նորա. առին անտի զգանձս մթերեալս՝ որ կային, և գերեցին զամենայն քաղաքն։ Եւ խաղացուցին ի յԱրտաշատ ի քաղաքէ ինն հազար տուն երդ հրէայս, զոր ածեալն էր գերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ յերկրէն Պաղեստինացւոց. և քառասուն հազար երդ հայ, զոր յԱրտաշատ քաղաքէ խաղացուցին».

3. Նոյն, IV, ԾԵ, էջ 177՝

«Առնուին և զՎաղարշապատ քաղաք. քանդէին բրէին զքաղաքն ի հիմանց տապալէին, և խաղացուցանէին յայնմ եւս քաղաքէ իննևտասն երդս հազար»[1].

4. Նոյնը, IV, ԾԵ, էջ 177՝

«Առնուին և զմեծ քաղաքն զԵրուանդաշատ, և խաղացուցանէին անտի երդս քսան հազար հայ, և

---

[1] Մ. Աբեղյանը կարծում է, վոր այս հատվածի վերջում բնագիրն աղավաղված է։ Սկզբնական բնագրում հիշված են յոդել, հավանորեն, թե հայ և թե հրեա գերիների թվերը (տես «Հայ ժողովրդական առասպելները» Վաղարշապատ 1901, էջ 560)։

երդս երեսուն հազար հրեայ. *և զքաղաքն ի հիմանց տապալեալ բրեալ յատակէին»*.

*5. Նոյնը, IV, ԾԵ, եջ 177՝*

*«Ապա առնուին և զքաղաքն Բագրևանդայ Զարեհաւան, և խաղացուցանէին անտի հինգ հազար երդ հայ, և* ութ հազար երդ հրեայ. *և զքաղաքն ի հիմանց տապալէին յատակէին»*.

*6. Նոյնը, IV, ԾԵ, եջ 177՝*

*«Առնուին և զքաղաքն մեծ Զարիշատ՝ որ էր ի գաւառին յԱղիովտի,* չորեքտասան հազար երդ հրեայ. *և տասն հազար երդ հայս. և զնա ի հիմանց քանդեալ ապականէին»*.

*7. Նոյնը, IV, ԾԵ, եջ 177՝*

*«Առին և զամուր քաղաքն Վան, որ է ի գաւառին Տոսպայ, և հրձիգ արարեալ, քակէին զհիմունս նորա. և խաղացուցանէին անտի երդս հինգ հազար հայ, և ութ և տասն հազար երդս հրեայս։*

*Զայս ամենայն բազմութիւն հրէից, զոր գերեցին տարան յերկրէն հայոց, ածեալ էր յերկրէն Պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց Տիգրանայ ի ժամանակին՝ յորժամ գերեաց նա և ած ի Հայս զքահանայապետն Հրէից զՀիւրկանոս զառաջին ժամանակաւ։ Եւ էած մեծ արքայն Տիգրան զամենայն զհրէութիւնն զայն բնակեցոյց ի քաղաքսն Հայոց յիւրում զարուն ի ժամանակին»*.

*8. Նոյնը, IV, ԾԵ, եջ 178՝*

*«Ապա առին և զնա [զՆախճաւան] քանդեցին. անտի երդս հայս երկուս հազարս, և* հրեայ երդս վեցտասան հազարս *անտի խաղացուցին գնացուցին ամենայն գերութեամբն հանդերձ»*.

*9. Խորենացի, II, ԺԶ, եջ 130՝*

*«Իսկ թագաւորն Հայոց Տիգրան* զգերութիւնն հրէից նստուցեալ յԱրմաւիր *և յաւանին Վարդգէսի, որ ի վերայ Քասաղ գետոյ»*.

10. Նույնը, II, ԺԹ, էջ 135՝

«Եւ կապեալ զՀիւրկանոս ածեն Տիգրանայ հանդերձ գերութեամբն. և Տիգրան հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զգերին Հրէից որ ի Մարխասցւոց՝ ի քաղաքն Շամիրամայ».

11. Նույնը, II, ԽԹ, էջ 177՝

«Եւ յարուցանէ [Արտաշէս] ի քաղաքէն Երուանդայ զգերութիւն Հրէիցն, որ փոխեալ էին անդր յԱրմաւրայ, և նստուցանէ զնոսա յԱրտաշատ».

12. Նույնը, II, ԿԵ, էջ 199—200՝

«Ցորում [յաւանին Վարդգէսի] և Տիգրանն միջին յԱրշակունեաց նստոյց զհասարակ առաջնոյ գերութեանն Հրէից. որ եղև քաղաքագիւղ վաճառօք։ Այժմ այս Վաղարշ պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ, և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք».

13. Նույնը, III, ԼԵ, էջ 300՝

«Ի նմին ժամու եհաս հրաման ի Շապհոյ արքայէ, զի քանդեալ աւերեսցեն զամրութիւն ամենայն քաղաքաց, և զՀրեայս խաղացուսցեն ի գերութիւն, եւ զայն Հրեայսն, որ նոյին ծրէութեան օրինօք կային ի Վանն Տոսպայ, զորս ածեալ էր Բարզափրանայ Ռըշտունւոյ յաւուրս Տիգրանայ. զորս բնակեցոյց Շապուհ յԱսպահան։ Գերեցին եւ զայն Հրեայսն որք յԱրտաշատ եւ ի Վաղարշապատ, զորս ածեալ էր նոյն Տիգրանն արքայի, որք յաւուրս սրբոյն Գրիգորի և Տրդատայ հաւատացեալ էին ի Քրիստոս»։

Այս վկայություններն մեջ, ինչպես մատնացույց եյի արել ռուսերեն իմ աշխատության մեջ, կան ժամանակավրիպումներ և պատմական բացահայտ սխալներ, սակայն սեմական բնակչության գաղթեցման փաստը Հայաստան միանգամայն հավաստի յե և անժխտելի։

Անհնարին ե, օրինակ, Հյուրկանոս քահանայապետի գերումը Տիգրան Մեծի ժամանակ, վորի մահն ընկնում ե 56 թվին Քրիստոսից առաջ։ Հրեական պատմագիր Հովսեպոս

Փղավիոսի արժանահավատ վկայություններից հայտնի չէ, որ Հյուրկանոս քահանայապետին գերի էին վերցրել 40 թվին Քրիստոսից առաջ և տարել ոչ թե Հայաստան, այլ Բաբելոն։

Սեմական բնակչության գաղթեցումը հավանական է ոչ միայն Տիգրան Մեծի արշավանքների ու նվաճումների շրջանում, այլ և նրա որդու Արտավազդի թագավորության ժամանակ (56—33 թ. Քր. առաջ)։

Կրասսոսի պարտությունից հետո (53 թվին), ինչպես հայտնի չէ, պարթևները դաշնակից հայերի հետ միասին պատերազմներ էին վարում Ասորիքում։ 40 թվին նրանք նույնիսկ ներս ընկին խուժել Հրեաստան և վերցրել բազմաթիվ գերիներ, որոնց հետ էր նաև Հյուրկանոս քահանայապետը։ Գերիների մի մասը տրված է չեղել, հավանորեն, դաշնակից հայերին, որոնք պարթևների հետ միասին մասնակցել էին այդ արշավանքներին։

Ուրեմն՝ միանգամայն հնարավոր է, որ բացի «առաջնոյ գերութեանն Հրէից», որոնք տեղափոխված են չեղել Հայաստան Տիգրան Մեծի ժամանակ, կարող էին լինել նաև գաղթականներ չերկրորդ գերման, որոնք սակայն փոխադրված են չեղել Հայաստան ոչ թե Տիգրան Մեծի նվաճումներից հետո, ինչպես մատնանշում են Փավստոսը և Խորենացին, այլ նրա հաջորդի՝ Արտավազդի ժամանակ (տես „О торговле и городах Армении“, էջ 68—69)։

Ոտարականների վերոհիշյալ գաղութները, ինչպես չերևում է Փավստոսի վկայություններից, գտնվել են առևտրական կենտրոնավայրերում։ Նրանց «երդ»-երի թվերը կարող են, անշուշտ, Փավստոսի մոտ չափազանցված լինել, սակայն աներկբայելի չէ, որ նրանք կազմել են քաղաքների բնակչության ստվար մասը։

Այդ գաղթական բնակչության իրավական դրության մասին հայկական աղբյուրները, դժբախտաբար, չեն տալիս նույն իսկ աղոտ տեղեկություններ։ Կարելի չէ միայն չենթադրել, որ կրոնական տեսակետից նրանք ապրել են

առանձնացած և ունեցել են, ըստ յերևույթին, իրանց հատուկ աղոթատները։

«Գիրք Թղթոց»-ի վկայություններից հայտնի յե, որինակ, վոր վեցերորդ դարում քաղաքաբնակ գաղութների բնակչության մի մասը կազմել են նեստորականները, վորոնք ունեցել են իրանց սեպհական յեպիսկոպոսը։

Այդ մասին ուշագրավ է առանձնապես «Տեառն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի Թուղթ մեղադրութեան առ եպիսկոպոսունսն» գրության հետևյալ վկայությունը (եջ 70)՝

«Վասն անիծեալ խուժկաց նեստորականաց՝ որ եկեալ բնակեցան յաշխարհիս մերում պատճառաւ վաճառականութեան, և այժմ չարահնար պղծալից անիծաբեր արուեստիւ իւրեանց ցոգիս մեր ազգեցին, մինչև իւրեանց պղծութեան հաւատոյ առաջնորդ չեպիսկոպոս ածեալ, և մեզ լուսաւոր և ուղղափառ հաստատուն հաւատոյս խոչընդակն կացուցանել, յառաջագոյն վասն Նորին իրաց, մեք և աշխարհիս մերոյ տանուտեարք և ազատք միաբանութեամբ ի ձեռն գրոյ հրաման արարաք վասն ձեր, փութապէս ի Դուին ի սուրբ եկեղեցիս ժողովելոյ»։

Քաղաքների խառն և այլազան բնակչության մասին ավելորդ չի լինի մեջ բերել նաև Դվինի անձնատրման ապահովագիրը յոթերորդ դարից, վոր հիշատակված է Բելազորու և Յաքուտի մոտ հետևյալ բովանդակությամբ՝

«Հանուն Աստուծո ամենաողորմածի։

Այս մի գրություն է Հաբիբ իբն Մասլամայի ուղղված Գվինի բնակիչներին՝ քրիստոնյաներին, մոգերին եւ հրեաներին, թե ներկաներին և թե բացականերին։

Ցես ապահովում եմ ձեր կյանքը, ունեցվածքը, ձեր յեկեղեցիները, աղոթատները և քաղաքի պարիսպները, ուստի կարող եք ապահով լինել։ Մենք հաստատուն կըպահենք այս դաշինքը ձեզ հետ, վորքան ժամանակ վոր հավատարիմ կըմնաք և կըվճարեք գլխահարկ ու հողահարկ։

Աստված վկա յե և Նրա վկայությունը բավական
ե։ Կնքված ե Հաբիբ իբն Մասլամայի կնիքով» [1]։

Ոտարազգի բնակիչների մեծ թիվը հայկական քաղաքներում և նրանց առևտրական դերիշխող դերն ուշադրության արժանի մի փաստ ե, վորով բացատրվում ե ըստ իս հայ մատենագիրների անհասկանալի լռությունը Հին Հայաստանի առևտրի ու վաճառականության մասին։

Ինձ թվում ե, վոր այդ ոտար գաղութները կողմնակի մի զանգված եյին Հին Հայաստանի ֆեոդալական կյանքում և ձևականորեն չեյին համարվում կարևոր ու անհրաժեշտ տարր նախարարական կազմակերպության։

Հավանական ե, իհարկե, վոր իրանք հայերը ևս վորոշ դեր կատարում եյին առևտրի ու վաճառականության մեջ, սակայն հնագույն այս շրջանում, ըստ յերևույթին, դեռևս չեր առաջացել առանձնապես շերտավորված կամ զորեղացած հայ առևտրական այն դասը, վոր հիշատակվում ե մատենագրական աղբյուրներում Բագրատունյաց շրջանում։

Խոսելով «շինական» դասի մասին՝ վերև մենք մի քանի անգամ շեշտել եյինք, վոր պատմական այս շրջանում գերակշռող եր Հին Հայաստանում բնական տնտեսության դերը։

Արդ՝ ինչպես հասկանալ այդ։ Կարելի՞ յե արդյոք դրանից հետևցնել, վոր առևտուրը և փողային շրջանառությունը չեն ազդել և չեն անդրադարձել նույն շրջանի տնտեսական կյանքի վրա։

Նման յենթադրությունները կլինեյին, իմ կարծիքով, ավելի քան անհավանական։

Ճիշտ ե, միջազգային տարանցիկ առևտուրը կարող եր և չունենալ խոր և անմիջական ազդեցություն գյուղական տնտեսության վրա, սակայն ներքին առևտուրը, վոր բավական զարգացած ե յեղել այս շրջանում, կարևոր մի ազդակ եր, վոր վորոշ չափով խախտում եր բնական տնտեսու-

[1] Տես Баладзори, Книга завоевания стран, текст и перевод П. К. Жузе, Баку 1927:

թյան հիմքերը և նպաստում դրամական շրջանառության ծավալման անգամ «շինական» տնտեսություններում։

«Շինական»-ները, ինչպես վերև տեսանք, իբրև արքունի հարկ վճարում էին մարզպանության շրջանում բացի հողահարկից նաև գլխահարկ, որի սովորական չափը որոշված էր մարդագլուխ 4 դրամ (տես «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», էջ 9—12)։ Շահապիվանի ժողովի կանոններից ևս դարձյալ հայտնի է, որ հանցապարտ «շինական»-ները վճարելու էին դրամական տուգանքներ. օրինակ՝ պոռնիկ «շինական»-ը՝ 100 դրամ, ամուլ կնոջ արձակող կամ աղջիկ առևանգող «շինական»-ը՝ 600 դրամ են։

«Շինական»-ների դրամական այս վճարումները ցույց են տալիս, անշուշտ, որ Պարսկական Հայաստանը տնտեսական իր զարգացման ու դրամական շրջանառության տեսակետից գտնվել է համեմատաբար բարձր աստիճանի վրա։

Ընդունելով բնական տնտեսության գերիշխող նշանակությունը Հին Հայաստանում, չպետք է, սակայն, աչքաթող անել, որ այդ տնտեսության կողքին աճում էին և զարգանում դրամական շրջանառության ու դրամական փոխանակության նոր ձևերը։

Իսկ տնտեսական այդ նոր ձևերն անուղղակի ապացույցներ են ինքնին ներքին շուկաների գոյության, որտեղ «շինական»-ները կարող էին վաճառել իրանց տնտեսության որոշ արտադրանքները։

Ինչպես և միջնադարյան Եվրոպայում՝ Հին Հայաստանում ևս առևտրական այդ փոխանակությունը տեղի էր ունենում, գլխավորապես, ֆեոդալական շրջանների կենտրոնավայրերում, որոնք դժվարամատչելի բերդեր էին ու ամրություններ և պատերազմի ժամանակ ծառայում էին իբրև պատսպարան շրջակա բնակչության համար։

Ենթադրում են նույնպես, որ հենց իրանք առևտրական հին քաղաքներն առաջ էին յեկել նախկին բերդերի ու ամրացած տեղերի մոտ, որոնք բնակավայրեր էին ազդե-

ցիկ մեծավորների։ Ուշագրավ է այդ տեսակետից, որ հին հայերենում «քաղաք» բառի սկզբնական նշանակությունն է՝ «պատնեշ, ամրություն»։

Նրա այդ նշանակությունը համապատասխանում է ռուսերեն городище բառին, ինչպես այդ պարզ յերևում է հետևյալ վկայություններից.

1. Եղիշէ, V, էջ 184 (Վենետիկ 1864)՝

«Եւ անդէն ի գաւառին գտեղի առեալ նորա, բանակ բոլորէր, փոս հատանէր, պատնէշ կանգնէր, շերտաւոր փակէր, ամրացուցանէր իբրև զքաղաք ամենայն պատրաստութեամբ».

2. Փաւստոս, V, ԼԳ, էջ 241՝

«Խորհէր ևս [Մուշեղ] ընդ իշխանսն Յունաց և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց. ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս զօրանիստ հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց եւս».

3. Նույնը, V, ԼԵ, էջ 243՝

«Այժմ [Մուշեղ] զհայ երկիրս խորհի լնուլ քաքա-քօք, և զօրանիստ առնէ բնակութեան զօրացն Յունաց»։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, գիտական այն նորագույն տեսությունը, որ քաղաքների ծագումը բացատրում է ավաններից, որոնք գտնվել են բերդերի, ամրոցների, բուրգերի և այլ ամրությունների շուրջը, կատարելապես հաստատվում է նաև հայկական աղբյուրների տվյալներով։

Լուսաբանել պատմական այս շրջանի ներքին առևտրի վերաբերյալ մանրամասնությունները, դժբախտաբար, հնարավոր չէ աղբյուրների ու նյութերի աղքատության պատճառով։

Նույնը պետք է ասել նաև արտաքին առևտրի մասին։

Կողմնակի մի քանի ցուցումներից կարելի յե միայն կռահել, որ Հին Հայաստանը, որի միջով անցնում եր հա-

մաշխարհային առևտրի հյուսիսային գիծը և վորի մայրաքաղաքը միջազգային առևտրի կենտրոնավայր եր, հավանորեն, ինքը ևս արտահանել ե արտաքին շուկաներն իր տնտեսության նաև սեպհական արտադրանքները։

Վերև մենք մեջ եյինք բերել Դվինի մասին Պրոկոպիոսի կարևոր մի տեղեկությունը, վորի մեջ նա վկայում ե, վոր Հայաստանի այդ կենտրոնավայրը ապրանքներ եյին բերում Հնդկաստանից, հարևան Վրաստանից և բոլոր ժողովրդներից, վորոնք գտնվում եյին Պարսկաստանի և Բյուզանդիայի իշխանության տակ։

Արդ՝ յեթե Դվինում վաճառվում եյին Վրաստանից և մյուս յերկիրներից բերված ապրանքները, շատ պարզ ե, վոր միջազգային այդ առևտրին մասնակից ե յեղել նախ և առաջ նաև ինքը Հայաստանը սեպհական իր արտադրության ապրանքներով։

Պրոֆ. Գ. Խալաթյանի կարծիքով՝ արտահանության գլխավոր առարկաներն եյին Հայաստանից—«ձիեր, ջորիներ, մետաղներ, ներկեր (գլխավորապես՝ այսպես կոչված «հայկական ներկը» սանդիկ, վոր նման եր ծիրանի ներկի), հացահատիկներ, գինի, յուղեր, նմանապես զանազան տեղական բանվածքներ»[1]։ Դժբախտաբար, Խալաթյանի այս ամփոփումը խիստ վիճելի յե, վորովհետև նրա յենթադրություններն արտահանության մի քանի առարկաների նկատմամբ հիմնավորված չեն և չեն հաստատվում աղբյուրների վկայություններով։

Վորքան մեզ հայտնի յե, վորոշ տեղեկություններ Հայաստանի արտաքին ապրանքափոխանակման մասին տալիս են, գլխավորապես, արաբական աղբյուրները, իսկ հնագույն մատենագիրները միջանկյալ կերպով միայն հիշատակում են յերբեմն այն հազվագյուտ առարկաները, վորոնք արտահանվել են Հայաստանից։

---

[1] Տես „Очерк истории Армении“, Москва 1910, եջ 170, նաև В. Брюсов, Летопись исторических судеб армянского народа, Москва 1918, եջ 32։

Պլինիոսը, օրինակ, իր «Բնական պատմության» մեջ հիշում է Հայաստանի հետևյալ բույսերը, ներկերը և քարերը՝ adamantis բույսը. laser՝ վոր հյութն էր laserpitium-ի, վորը բուսնում է Պարսկաստանում, Մեդիայում և Հայաստանում և իբրև բժշկական բույս՝ արտահանվում էր Հռոմ. Հայաստանում պատրաստվող մի ներկ, վորը նկարիչներն անվանում եյին orobitis. Հայաստանից ստացվող մի քար, վոր կոչվում էր armenium և ներկում chrysocolla-յի նման. alumen-շիբ և սրոցաքարեր[1]։

Բժիշկ Դիոսկորիդը, վոր ապրում էր առաջին դարում Քրիստոսից հետո, հաղորդում է, վոր «ամենալավ amomum-ը համարվում է հայկականը»[2], իսկ Թեսսալոնիկեցի մետրոպոլիտ Եվստաթիոսը, վորն օգտվել է հին աղբյուրներից, վկայում է, վոր հայերի մոտ արդյունահանվում եյին քարեր, վորոնցով փորագրում և պատրաստում եյին կնիքներ[3]։

Բժշկական բույսերի և «որդան կարմիր» ներկի մասին, վոր վաճառվում եյին և թերևս նաև արտահանվում, տալիս է մի քանի տեղեկություններ Ղազար Փարպեցին.

1. Ղազար Փարպեցի, I, է, եջ 9՝

«Անդ [յԱյրարատեան գաւառին] գտանին և ազգի ազգի արմատք բուսոց ի պէտս օգտակարութեան դեղոց, ըստ ճարտարագէտ ճանաչողութեան ստուգահմուտ բժըշկացն յօրինուածոցն, երագահաս ախտահալած սպեղանիք, և կամ արբմամբ՝ յերկարելոցն ի ցաւս պատահացուցանեն առողջութիւն».

2. Նույնը, I, է, եջ 10՝

«Նաև դարմանս եղէգնասեր բուսոցն ոչ ընդունայն սնուցանէ յինքեան ամենաբաղձ դաշտն Այրա-

---

[1] C. Plinii Secundi Naturalis Historiae, XIX, 15, 2. XXIV, 102, 2. XXXIII, 27. 1. XXXV, 28, 1 և 52, 2. XXXVI. 47, 1. տես հրատ. Littré, T. I—II, Paris 1883:

[2] Տես Латышев, Известия древних писателей о Скифии и Кавказе, I. С.-Петербург 1890, եջ 507։

[3] Տես նույնը, եջ 205։

րատոյ, այլ և ի նմանէ ծնեալ որդւոյն, ի զարդ կարմրատեսիլ գունոյ, ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւնս»։

Բացի օտար աղբյուրների և Փարպեցու մոտ հիշատակված ներկերից, բժշկական բույսերից և քարերից՝ հավանական է նույնպես, որ Հայաստանից արտահանվել են ձիեր, ջորիներ և գինիներ ոչ միայն Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության շրջանում (տես „О торговле и городах Армении", էջ 10—12), այլ և հետագա դարերում։

Կասկածելի չէ սակայն և անապացույց հացահատիկների և յուղերի արտահանումը Հայաստանից, որ մատնացույց է արված Խալաթյանի և Բրյուսովի մոտ։

Հնարավոր է, իհարկե, և ավելի քան հավանական, որ Հայաստանից դուրս են տարվել և վաճառվել բացի վերոհիշյալ առարկաներից նաև յերկրի տնտեսության ավելի ևական ու կարևոր արտադրանքները, սակայն այդ մասին մատենագրական աղբյուրների մեջ, որքան ինձ հայտնի չէ, չկան փաստական տեղեկություններ։

Համառոտ մեր այս դիտողությունները, որ հիմնված են աղբյուրների պատահական ու կցկտուր տեղեկություններ վրա, թեև չեն տալիս պարզ ու լրիվ պատկերը Հին Հայաստանի ներքին ու արտաքին առևտրի, սակայն, այնուամենայնիվ, նրանք հաստատում են այդ առևտրի կարևոր նշանակությունը Հայաստանի տնտեսական կյանքում և բացարում փողային շրջանառության այն լայն տարածումը պատմական այս շրջանում, որ վերև մատնանշել էյինք։

Վերև մենք ասացինք, որ հայ վաճառականության զորեղացումը հավանական է յենթադրել արաբական աշխարհակալության ժամանակ։ Իսկ այս շրջանում, հավանորեն, պարապել են վաճառականությամբ կողմնակի կերպով ֆեոդալական թե բարձր և թե ստորին դասերը։

Աղբյուրների մեջ ակնարկվում է, օրինակ, վաճառականությամբ պարապելու առանձին հակումը, որ ունեցել են քահանաները և անգամ վիճակավորները։

Ուշագրավ են այդ մասին հետևյալ վկայությունները.

1. «Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթուղիկոսի», Դ, տես «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ղլտճյանի, էջ 90՝

«Եթէ ոք ի քահանայից ի գնել կամ ի վաճառել կրթեսցին, կամ իշխանութեամբ իշխանաց վարձեսցին՝ հարկապահանջս լինելով և յոստիկանս կարգել աշխարհական գործոց, աստ գիրն, «առ նոսա զաւեր նոցա» եւն.

2. «Կանոնք Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», տես «Կանոնագիրք Հայոց», էջ 116՝

«Այլ ոմանք ծրաբոյժք եւ վաճառականք եւ վաշխառուք, փոխանակ կրօնաւորութեան՝ ընծայողք, յայսմհետէ դադարեսցեն և ապաշխարեսցեն զմեղսն, զոր մեղան, ապա թէ ոչ, յանդիման արժանի գործոցն պատիժս կրեսցեն».

3. Խորենացի, III, ԿԸ, էջ 364՝

«Վիճակաւորք հպարտք, զատարկակացք, զրաբանք, ծոյլք, ատեցողք արուեստից և վարդապետական բանից, սիրողք վաճառաց և կատակերգութեանց»։

Միանգամայն անբավարար են մատենագրական աղոտ ու պատահական վկայությունները նաև Հին Հայաստանի արհեստավորության մասին։

Անհրաժեշտ է նախ մատնանշել, որ հին հայերենում արհեստ և արվեստ բառերը իրարից չեյին տարբերում։ Թե արհեստով և թե արվեստով պարապողներին անվանում եյին «արուեստաւոր», սակայն յերբ առանձնապես մատնանշում եյին արհեստների հատուկ բնույթը՝ այս վերջիններն անվանում եյին յերբեմն՝ «ձեռական արհեստք» կամ «անբան արհեստք», իսկ արհեստավորներին՝ նաև «արուեստաւոր գործաւոր» կամ «արուեստագործ»։

Բացի սովորական արհեստներից Հին Հայաստանում, ինչպես և Աղվանքում, զարգացած ե յեղել նաև մետաղագործությունը, վորի մասին Ղազար Փարպեցին և Մովսես Կաղանկատվացին ունեն հետևյալ վկայությունները.

1. *Ղազար Փարպեցի, I, Է, էջ 10՝*

*«Որք ոչ միայն Երևելութեամբն ցուցանին, վե-րաբերեալ զշահաւորութիւն օգտից մարդկան, այլ առա-ւել յորդորախոյզ աշխատողացն՝ զառ ընդ երկրաւ ծած-կեալ օգուտս ուսուցանեն, գանձել անձանց շահս և զվայելս այսր աշխարհիս ի մեծութիւն թագաւորաց և ի հաստատութիւն հարկահանաց,* զոսկի եւ զպղինձ եւ զերկաթ եւ զպատուական քարինս. զոր ընկալեալ ար-ուեստով ձեռաց՝ *զարդարեն զթագաւորս մեծատեսիլ զար-դեօքն յօրինուածովքն, զոր ի խոյրսն և ի թագսն և ի հանդերձսն լուսկէհուռս պաճուճեալս ընդելուզանեն».*

2. *«Մովսեսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուա-նից աշխարհի», հրատ. Մ. Էմինի, Մոսկվա 1860, II, ԺԶ, էջ 131՝*

*«Առաքեաց [իշխանն հիւսիսոյ] գործակալս* ի վե-րայ ազգի ազգի արուեստագործաց. որք զգիտութիւն ոս-կէծնութեան եւ արծաթահանութեան եւ երկաթահանութեան եւ պղնձագործութեան *ունէին».*

3. *Խորենացի, I, ԺԶ, էջ 52՝*

*«Աստ իմն ակնակառոյց լեալ այրասիրտն այն և կաթոտն Շամիրամ, հրաման տայ չորից բիւրոց և եր-կուց հազարաց արանց անարուեստից գործաւորաց յԱսորեստանեայց և յայլոց իշխեցելոց, և վեց հազար իւրոց ընտրելոց* յամենայն արուեստաւոր գործաւորաց փայտի եւ քարի, պղնձոյ եւ երկաթոյ, *որք ամենեին կա-տարեալք իցեն յարուեստգիտութեան, ածել անխափան ի փափագեալ տեղին»։*

*Նիկ. Մառի կարծիքով, թե հին հայերը և թե կովկա-սյան մյուս ժողովուրդները կուլտուրական իրանց կյանքի վորոշ կողմերը, ի միջի այլոց, նաև մետաղագործությունը ժառանգել եյին հաբեթական ցեղերից, վորոնց մոտ մե-տաղագործության արհեստները զարգացած եյին դեռ հնա-գույն շրջանում (տես* „Кавказский культурный мир и Ар-

мения", Петроград 1915. էջ 30)։ Ուսուցչապետ Մառը յենթադրում է բացի այդ, որ արհեստներով և նյութական կուլտուրայի առարկաների զանազան տեսակ արտադրություններով զբաղվել են տարբեր ցեղեր և այդ որոշ տեղերում պահպանվել է մինչև մեր օրերը (տես նույնը, էջ 16)։ Նա ընդունում է նույնպես արհեստագործության ժառանգական լինելը, արհեստակցական յեղբայրությունների գոյությունը և ընտրական սկզբունքի կիրառումն այս կազմակերպություններում, որոնք հետագայում վերածվել են համքարությունների (էջ 17)։

Նիկ. Մառի այս յենթադրությունները հնարավոր ու հավանական կռահումներ են, որ կարոտ են սակայն վերահաստատման փաստական վկայությունների օգնությամբ։

Որ տնայնագործական արհեստները լայն կերպով տարածված են յեղել ոչ միայն «շինական»-ների, այլ և ազնվականների ընտանիքներում՝ այդ յերևում է Յեղիշեյի հետևյալ վկայությունից (Ը, էջ 359)՝

«Իսկ կանայք կապելոցն կամօք կալեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, և ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանդարգելեացն։ Մասամբք ի ձեռաց վաստակեցին եւ կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ թոշակ առնէին և տային տանել նոցա ի մխիթարութիւն»։

Արհեստների վերաբերյալ հիշատակությունը՝ որպես ապրուստի հայթայթման միջոց՝ մատնանշված է նաև Ագաթանգեղոսի պատմության մեջ և Սահակ կաթողիկոսի կանոններում.

1. Ագաթանգեղոս, ԺԳ, էջ 85—86՝

«Յայնմ ժամանակի գային հասանէին յերկիրն Հայոց [Գայիանէ ընկերօքն հանդերձ], յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կոչեն, ի նիստս թագաւորացն Հայոց։ Այնուհետև եկեալ

մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ. և կերակրէին ընչիւք իւրեանց ի վաճառաց քաղաքին. և ոչ ինչ այլ ինչ գոյր թոշակ ընդ նոսա զոր ունէին, բայց մի ոմն ի նոցանէ ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս, եւ տայ գինս ընդ կերակրոյ առաւել պարենի ռոճկի».

2. «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 52՝

«Այլ սակայն [պատասխանում են քրմերի որդիները Տրդատ թագավորին] մարմնաւորական կարիք որչափ եմք ի կենցաղոյս այսմիկ, ստիպէ մեզ ըստ պիտոյից տալ զդարմանս կերակրոց և զգեստուց և ղայլոց կարեաց չափաւորապէս. եւ ոչ ունիմք արուեստս գործակալութեան հնարից ինչ, առ ի պատրաստել նոքօք զպարէն ռոճկաց՝ և մեզ և որդւոց մերոց, դի զորքան ծառայէաք դիւաց, կերակրեալ լինէաք ի զոհից և ի պտղոց նոցա»։

Վերև մենք տեսանք, որ Հին Հայաստանի քաղաքների բնակչության մի ստվար մասը կազմում էին օտարազգի գաղթականները։ Ռուսերեն մեր աշխատության մեջ մենք մատնացույց էինք արել, որ հելլենիստական քաղաքների բնակչության գաղթեցումը Հայաստան տեղի չէր ունենում Հայաստանի հելլենականացման ու կուլտուրական զարգացման նպատակով։ Տեղահանված նոր բնակչությունը ոչ միայն նպաստել էր առևտրի բարգավաճման, այլ և արհեստների ու արդյունագործության։

Ավելի քան հավանական է ուրեմն, որ Հին Հայաստանի քաղաքաբնակ օտարազգիների մի խոշոր մասը բաղկացած պիտի լիներ որակյալ արհեստավորներից։

Հին Հայաստանի քաղաքներն իրանց բնակչության կազմով նման պիտի լինեյին ըստ իս Աղվանքի Պարթավ քաղաքին, որի «արուեստագործ բնակիչ»-ների մասին Սասանյան Պարսկաստանի տիրապետության վերջին շրջանում

Մովսես Կաղանկատվացին տալիս է հետևյալ կարևոր վկայությունը.

«Իբրև լուան զայս ամենայն պետք և իշխանք աշխարհիս Աղուանից, ի նոյն ինքն ի հրամանէ Խոսրովու Թողեալ զմեծ քաղաքն Պարտաւ, ելեալ գնացին ամրացան ի անդիս տեղիս. իսկ բազումք ի քրիստոնէից եւ ի ճեպանոտաց յարուեստագործաց բնակչաց քաղաքին, որք վասն անկարութեան իւրեանց ոչ կարացին զերծանել փախչել առաջի նոցա՝ մնացին անդէն ի քաղաքի անդ։ Եւ քահանայ ոմն, անուն Զաքարիա՝ այր սուրբ, որ էր վանական Պարտաւայ եկեղեցւոյ, հեզ և հանդարտ՝ եդ զանձն իւր ի վերայ նոցա. և երգմամբ և ազգի ազգի հնարիւք զերծոյց զրաղում անձինս քրիստոնէից աղօթիւք իւրովք երաշխաւորեալ նաև վաճառէից եւ ճեպանոտաց» (տես հրատ. Մ. Էմինի, Բ, Ժ, էջ 103)։

Ընդունելով վոր առևտուրը և արհեստները բավականաչափ զարգացած են յեղել Հին Հայաստանի քաղաքներում, չպետք է սակայն գերագնահատել քաղաքների նշանակությունը պատմական այս շրջանում և վերագրել նրանց տնտեսական ու քաղաքական այն մեծ դերը, վոր ունեյին Արևմտյան Յեվրոպայի քաղաքներն ուշ միջնադարում։

Օտարազգի գաղութները քաղաքներում չունեյին, բնականաբար, այն սոցիալական կշիռն ու նշանակությունը, վոր հետագայում Բագրատունյաց ժամանակ սկսել եր հետզհետե ձեռք բերել բնիկ հայկական բուրժուազիան։ Բացի այդ, պատմական այս շրջանի քաղաքները՝ անգամ Արտաշատը և Դվինը, վոր միջազգային առևտրի խոշոր կենտրոններ եյին, չեյին կորցրել իրանց գյուղական և յերկրագործական բնույթը և նրանց բնակչության մի ստվար մասը շարունակում եր զբաղվել յերկրագործությամբ։

Քաղաքների բնակչության իրավական դրության մասին մատենագրական հնագույն աղբյուրները չեն տալիս և վոչ մի տեղեկություն. միայն հետագա պատմիչների վկա-

յուԹյուններից կարելի չէ կռահել, վոր քաղաքացիներն ունեցել են ինչ վոր արտոնուԹյուններ, վոր մնում են սակայն մուԹ և անորոշ։

Խոսելով Վաղարշակ Թագավորի սահմանած կարգերի մասին՝ Խորենացին ակնարկում է, վոր քաղաքացիներն իրանց սոցիալական դրուԹյամբ ավելի բարձր են դասված լեղել քան գեղջուկները (II, Ը, եջ 117—118)՝

> «Հրաման տայ [Վաղարշակ] — ասում է Խորենացին — և քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել առաւել քան զգեղջկաց. և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս. և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարիլ, վասն բարեկարգուԹեան և աննախանձոտ կենաց, որ է շինուԹեան և խաղաղուԹեան կենաց պատճառք. և որ ինչ նման այսոցիկ»։

Կարևորն այս վկայուԹյան մեջ վոչ Թե նրա պատմական կողմն է, այլ քաղաքացիների արտոնյալ դրուԹյունը, վոր Խորենացու ժամանակ լեղել է, անշուշտ, իրական մի փաստ։

Հովհաննես կաԹողիկոսը ևս, խոսելով Զվարթնոց յեկեղեցու շինուԹյան մասին, հաղորդում է, վոր Ներսես Գ. կաԹողիկոսը՝

> «պարապ անձին գտեալ՝ զարտաքոյս հրաշակերտ եկեղեցւոյն, զոր ինք իսկ էր շինեալ՝ շուրջանակի պատուար պարսպով փակեալ ամրացուցանէր, յօրինեալ ի նմա յարկս բնակուԹեան ինքեան հաստահեղոյս կոփածոյ քարամբք։ Այլ եւ կարգեալ կացուցանէր ի նմա ամբոխութիւնս երգումարդաց ըստ պայմանի քաղաքականաց» (տես «Յովհաննու կաԹողիկոսի, ՊատմուԹիւն Հայոց», Թիֆլիս 1912, եջ 88)։

Ինձ Թվում է, վոր «երգումարդաց ըստ պայմանի քաղաքականաց» հատուկ այս արտոնուԹյունները գոյուԹյուն են ունեցել, հավանորեն, վոչ միայն մարզպանուԹյան, այլ և ԱրշակունյացԹագավորուԹյան ժամանակ։

Առևտրի ու արհեստների խնդիրը լուսաբանելուց հետո՝ մնում է մեզ քննության առնել նաև ստրկության հարցը, վորի գոյությունը Հին Հայաստանում ժխտվել է հաճախ հայագիտական նորագույն ուսումնասիրություններում։

Նույն այս խնդիրը մանրամասն լուսաբանված է Խ. Սամվելյանի «Մխիթար Գոշի Դատաստանագիրքը» աշխատության մեջ (Վիեննա 1911, էջ 308—318), սակայն այս ուսումնասիրության մեջ ստրկության գոյությունը և իրավական կացությունը հանգամանորեն քննված են վոչ թե Արշակունյաց թագավորության և մարզպանության ժամանակ, այլ ուշ միջնադարում։ Իսկ մեզ համար կարևոր է ստրկության ու ստրուկների դրության լուսաբանումը վոչ թե այդ, այլ նախարարական Հայաստանի հնագույն շրջանում։

Իհարկե, խոսք անգամ չի կարող լինել, վոր իբր թե Հին Հայաստանում գոյություն չեն ունեցել ստրուկներ և վոր Հայաստանն այդ տեսակետից բացառիկ մի յերկիր է յեղել Մերձավոր Արևելքում։

Ստրկությունը համատարած ու ընդհանուր մի յերևույթ եր հին աշխարհում, ուստի և ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր բացառություն չեր կարող կազմել նաև Հին Հայաստանը։

Յեվ իրավի՝ վոր հին հայկական կյանքում ևս ստրկությունն անխուսափելի յեր, ինչպես և մյուս յերկիրներում, այդ հաստատում են հենց մատենագրական հայ աղբյուրները, վորոնց մեջ ստրուկների մասին կան, ինչպես կտեսնենք, պարզ ու վորոշ վկայություններ, վոր հաճախ անտես են արվել նախորդ աշխատություններում։

Բայց նախ քննենք այն տերմինները, վոր հին հայերենում նշանակել են ստրուկ և ստրկություն։

Վերև մենք տեսանք, վոր նախարարական Հայաստանում «ծառայ» եյին անվանվում թե ստրուկները և թե ֆեոդալական սանդուխտի ստորադրյալ դասերն իրանց սենյորների կամ «տէր»-երի հանդեպ։ Մատենագրական աղբյուրների ուշադիր քննությամբ մենք մատնացույց եյինք արել

յերեք տարբեր տեսակի «ծառայութիւն»՝ «ի սպասու ծառայութիւն», «ընդ հարկօք» կամ «ի հարկի ծառայութիւն» և «ի ստրկաց կարգի» կամ «ստրկութեան ծառայութիւն»։

«Ծառայութիւն» և «ծառայ» տերմիններին այս վերջին իմաստով համապատասխանել են հին հայերենում նաև «ստրկութիւն» և «ստրուկ» բառերը։

Ուշագրավ է սակայն, որ «ծառայ» և «ստրուկ» անվանվել են այր ստրուկները, իսկ կին ստրուկները կոչվել են «աղախին»։ Ուրեմն՝ ստրուկ և ստրկություն գաղափարների համար գործ են ածվել հին հայերենում հետևյալ բառերը՝ «ծառայ», «ստրուկ», «աղախին» և «ծառայութիւն», «ստրկութիւն» ու «աղախնութիւն»։

Արդ՝ աղբյուրների վկայություններից միանգամայն պարզ է, որ «ծառայ» կամ «ստրուկ» և «աղախին» ունեցել են պատմական այս շրջանում ոչ միայն Արշակունիները, նախարարները և մյուս ազնվականները, այլ նաև հոգևորականները և քահանաները։

Իբրև ստրկատիրության տարածման ապացույց կարող են ծառայել մատենագրական հետևյալ վկայությունները.

1. Փաւստոս, IV, ԺԷ, էջ 127՝

«Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ես յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ումն անուն, և կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն.**Եւ էր ստրուկ ի ստրկաց արքունի**».

2. Խորենացի, I, ԺԲ, էջ 41՝

«Սմա [Սիսակայ] զմեծ մասն ընչից իւրոց տուեալ և **ծառայս անձինս բազումս**՝ սահմանս հատանէ նմա ժառանգութեան ի ծովէն ընդ արևելս **եւս**».

3. Նույնը, II, ԽԸ, էջ 175՝

«Եւ ապա աւար առեալ զգանձսն Երուազայ, և **ծառայս անձինս հինգ հազար**, նա և զընտիր ընտիր գանձուցն մեհենից՝ բերէ Արտաշիսի։ Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուազայ».

4. Ղազար Փարպեցի, III, ՀԲ, էջ 131՝

«Իսկ զայրն Մամիկոնեան զՎարդ ոչ միայն լոկ անձամբ, այլ և ծառայիւք, դրամբ և կազմածով, յամուր տեղեաց շահաստանին, ի բարձրաբերձ պարսպացն և յասպարափակ բազմութենէ պահապանացն, ընկալեալ իբրև զարծուի ի թևս իւր և ընդ բազում անցուցեալ օթևանս՝ ածեալ հասուցանէր խաղաղութեամբ ի յերկիրս Հայոց».

5. «Ողբք վասն չարեացն աշխարհիս Հայոց և վկայարան. Վահանայ Գողթնացւոյ», Վենետիկ 1854, էջ 40՝

«Թշուառական և չարասէր, առ զայդ ամենայն, և ծառայս եւ աղախնայս, և ձիս և ջորիս և ուղտս».

6. Եղիշէ, VII, էջ 235՝

«Նա և ի մէջ իսկ բերէր զամբաստանութիւն նորա Մուշկան Նիւսալաւուրտ, և յայտ առնէր պատերազմակից ընկերօքն իւրովք, որ և յետ վճարելոյ պատերազմին բազում արիւն ետ հեղուլ Վասակ. թէ որպէս սուտ երդմամբք խաբէր և իջուցանէր յամրոցաց անտի. էր՝ զոր կոտորէր և էր՝ զոր գերի տանէր զծառայս եւ զաղախնայս տէրունի».

7. Նոյնը, VII, էջ 247՝

«և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա [Վասակայ]».

8. «Կանոնք Շահապիվանի ժողովոյն», տես «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ղլտճյանի, Ե, էջ 64՝

«Եթէ կին ոք արար և ամուլ պատահեաց, և այրն հանցէ զնա վասն ամլութեան, որ ինչ կնոջն կարասի բերեալ է ի տուն, թէ աղախին, թէ անասուն, թէ հանդերձ, թէ արծաթ, առնուլ իշխան է և գնալ».

9. «Կանոնք Ներսիսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», տես «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, ԼԲ, էջ 115՝

«Քահանայք մի՛ արբեցողք և մի՛ հանգանակողք և մի՛ արծաթագին աղախնայս ստանալ և կամ ի կապենաց

պունկաց ի տունս տանել զգարշելիսն, զոր ոչ հրամայեն օրէնք»։

Բոլոր այս վկայություններում «ծառայ», «ստրուկ» և «աղախին» նշանակում են, իմ կարծիքով, ստրուկ։

Առանձնապես կարևոր են ութերորդ և իններորդ վկայությունները, որոնք թույլ են տալիս ենթադրել, որ ստրկատիրությունը սովորական երևույթ է եղել պատմական այս շրջանում։

Մատենագրական աղբյուրներում պարզ ու որոշ մատնանշված են նաև ստրկության գլխավոր աղբյուրները։

Աղբյուրներից ամենահիմնականը պետք է համարել, անշուշտ, գերեվարությունը, որի մասին հետաքրքիր ու խիստ կարևոր մի վկայություն ունի Անանիա Շիրակացին «Յաղագս հարցման և լուծման» գրվածքում (տես „Вопросы и решения“, изд. И. Орбели, Петроград 1918, եջ 26, ԻԱ հարցումն)՝

> «Ներսեհ Կամսարական որդի Արշաւրի, անուանակից և նախնի այսմ Ներսեհի, ի յաղթել պատերազմաւ Բահլճացն առնու գերի սատիկ յոյժ. և հասեալ ի դուռն արքունի ընծայեցուցանէ թագաւորին պարսից զհասարակ գերւոյն. և թուեալ զհասարակն՝ ես ընծայէ որդւոյ արքայի զեւթներորդ մասն. և հրաժարեալ ի նոցանէ, դառնայ յաշխարհն իւր և եկեալ ի տուն Դարիկալետի՝ յոյժ մեծարի ի նմանէ, ոչ որպէս զնտխարար, այլ որպէս զմի ոք ի թագաւորաց. և սա տայ նմա զութերորդ մասն գերւոյն. և եկեալ առ սպայապետն, զոր Խորասարանայ կոչեն, և առաւել ես ի նմանէ մեծարեալ՝ տալ նմա զչորեքտասաներորդ մասն գերւոյն. և ես յառաջ եկեալ՝ հասանէ յաշխարհ իւր, և ընդ առաջ լինի նմա եղբայր իւր կրտսեր Հրահատ, և տայ նմա զերեքտասաներորդ մասն գերւոյն. և ես յառաջ եկեալ՝ ընդ առաջ լինին նմա ազատք հայոց և տայ նոցա զիններորդ մասն գերւոյն. և եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցիսն զվեշտասաներորդ

մասն պկուոյն. և ենկեալ Սահակ աւագ եղբայր իւր՝ տայ նմա դքսաներորդ մասն պկուոյն. և իւր մնայ հինգ հարեր և եաւթանասուն անձն։ Արդ գիտես թէ ընդ ամենայն քանի՞ է լեալ»։

Հարցման լուծումից իմանում ենք, վոր իր Հրահատ յեղբորը տվել էր Ներսեհը 60 գիրի, «աղատ»-ներին՝ 80, Վաղարշապատի յեկեղեցիներին՝ 40 և իր Սահակ եղբորը՝ 30 գիրի։

Շիրակացու այս վկայությունը վոչ միայն ցույց է տալիս ստրկության հիմնական աղբյուրը, այլ և հաստատում է նույնպես, վոր ստրուկներ ունեցել են բացի ազնվականներից նաև յեկեղեցիները։

Ստրկության մի ուրիշ կարևոր աղբյուր էր վաճառքը և գնումը, վորի մասին կան վորոշ վկայություններ Շահապիվանի ժողովի և «Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» կանոններում.

1. «Կանոնք Շահապիվանի ժողովոյն», Զ, հրատ. Ղլտճյանի, էջ 65՝

«Եթէ ոք կին յանէ ելանիցէ, կալցեն և անդրէն յայր իւր տացեն, և մանաւանդ, որ վարձկանօք իցէ վարձեալ և ոչ բոզարար, թէպէտեւ վաճառեսցի եւ յաղախնութիւն կայցի».

2. «Կանոնք Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի», հրատ. Ղլտճյանի, Գ, էջ 108՝

«Եգին ոմանք և զվաշխս դահեկանաց իւրեանց, կէսք վաճառեցին ընկերաց իւրեանց որպէս ծառայս և այլքն ետուն վարձանս կանանց իւրեանց ամբարշտեալք ի բռնութեան, անարժանութեամբ անձանց իւրեանց մեղանս».

3. Համմտև նաև նույնը, կանոն ԼԲ, էջ 115։

Մատենագրական աղբյուրների վկայություններից պարզվում է նույնպես, վոր Հին Հայաստանում ևս, ինչպես և Ռուսաստանում ու միջնադարյան Յեվրոպայում, ստրուկ

*էյին դառնում նաև ազատ մարդիկ, վորոնք չէյին կարո վճարել իրանց պարտքերը։*

*Ստրկության այդ յերրորդ աղբյուրը պատկերավոր կերպով նկարագրված է, օրինակ, Հովհան Մանդակունու «Վասն փոխոց և վաշխից» ճառի հետևյալ հատվածում.*

> *«Եւ որպէս երկրագործքն յաղագս անձրևաց աղաչեն և մաղթեն յԱստուծոյ վասն սերմանցն և լիութեանց աշխարհի, իսկ վաշխաժողովն կարօտութիւն և տարակուսանս և սովս սաստիկս և հարկապահանջս աշխարհի ըղձանայ, զի ի գործ և ի շահ վաշխիցն ինչքն անկանիցին։ Ի ժամ փոխոցն տալոյ զուարթերես կեղծաւորի. և յորժամ ժամադրութիւն վաշխիցն հասանիցէ, տեսանելով զչքաւորութիւն և զտարակուսութիւն պարտապանին՝ ոչ ողորմի, և ոչ երդմանն հաւատայ մաղթողին, ոչ խոնարհի յաղաչանս վարանեցելոյն. այլ դժոխեալ անխոնարհելի և անհաշտ,* եւ իւր ծառայ զփոխառուն համարի փոխատուն» *(տես «Յովհաննու Մանդակունւոյ հայոց հայրապետի, Ճառք», յերկ. տպ., Վենետիկ 1860, եջ 65—66)։*

*Ստրուկների աշխատանքից օգտվել են, ինչպես յերևում է վերոհիշյալ վկայություններից, գլխավորապես, ընտանիքներում։*

*Բայց Խորենացու պատմության մեջ կան մի քանի ակնարկներ, վորոնցից կարելի յե թերևս կռահել, վոր գերիներին բնակեցրել են յերբեմն գյուղերում և օգտագործել նրանց յերկրագործական աշխատանքների համար։ Ազոտ ակնարկներ այդ մասին գտնվում են Խորենացու հետևյալ վկայություններում.*

*1. Խորենացի, II, ԽԸ, եջ 175՝*

> *«Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ, զոր գերեացն ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ի Թիկանց Մասեաց, ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտն».*

2. Նույնը, II, Ը, եջ 112՝

«Բանզի ոչ ասեն նահապետաց ազգին՝ Մուրացեան տէր, այլ Մարացւոցն տէր։ Եւ թողու ի վերայ նորա ղամենայն շէնս, որք ի գերութենէն Մարաց».

3. Նույնը, II, ԾԴ, եջ 183՝

«Հրամանաւ Արտաշիսի բնակէ [Սմբատ] ի Տմորիս, որ այժմ կոչի Կորդրիք, ի յԱլկի նստուցեալ ղբազմութիւն գերւոյն»։

Խորենացու այս վկայությունները մեկնելիս՝ ի նկատի պետք է ունենալ վոչ թե նրանց պատմական ճշտությունը, այլ գերիների բնակեցումը գյուղերում, վոր կարող է իրական փաստ լինել նախարարական Հայաստանի կենցաղում։

Յեթե հնարավոր լինի ապագայում հիմնավորել մեր դիտողությունն ավելի հաստատուն փաստերով՝ այդ կարող է թերևս լինել մի ցուցանիշ, վոր Հին Հայաստանում ևս գոյություն են ունեցել ստրուկ գյուղացիներ, վորոնք սոցիալական իրանց կացությամբ տարբերվել են, հավանորեն, «շինական»-ներից։

Ընդունելով ստրկության գոյությունը Նախարարական Հայաստանում՝ չպետք է, իհարկե, նրա նշանակությունը գերագնահատել և համարել ստրկական աշխատանքը հիմնական ու առաջնակարգ ազդակ Հայաստանի տնտեսական զարգացման։

Հին Հայաստանում, ինչպես և արևելյան մյուս յերկիրներում, ստրկությունը բնավ չի խաղացել այն դերը, վոր նրան սխալմամբ վերագրել է Բորյանը վերջերս լույս տեսած իր աշխատության մեջ (տես Б. А. Борьян, Армения, международная дипломатия и СССР, Москва 1929, часть I, եջ 72—111)։ Մրանդամայն պարզ է, վոր Նախարարական Հայաստանի տնտեսության հիմքը կիսազատ «շինականն» էր և վոչ ստրուկը, վորի տնտեսական դերը պետք է համարել յերկրորդական։

Ստրկությունը Հին Հայաստանում չի կարող, անշուշտ, համեմատվել իր ծավալով և իր տնտեսական նշանակությամբ

Հին Հունաստանի կամ Հռոմի ստրկության հետ, ուր ստրուկները կազմում եյին բնակչության ստվար մեծամասնությունը և գլխավոր արտադրող տարրն եյին վոչ միայն արդյունագործության մեջ, այլ նաև գյուղատնտեսության։

Ստրուկների իրավական դրության մասին պատմական այս շրջանում մեզ վոչինչ հայտնի չե։

Կարելի յե սակայն վստահորեն պնդել, վոր ստրուկների դրությունը չեր կարող առանձնապես ծանր լինել նախարարական Հայաստանի տնտեսական այն պայմաններում, վոր վերև մատնանշել եյինք։

Ստրկական աշխատանքի շահագործման աստիճանը և ձևը, ինչպես հայտնի յե, կախված են յեղել յուրաքանչյուր յերկրի տնտեսական միջավայրից և ապրանքափոխանակության նվազ կամ լայն զարգացումից։

Վերև մենք տեսանք, վոր պատմական այս շրջանում թեև զարգանում եյին Հայաստանում թե առևտուրը և թե դրամական շրջանառությունը, սակայն վոչ այն մեծ ծավալով, ինչպես Հունաստանում կամ Հռոմում։ Ֆեոդալիզմի այս շրջանում գերակշռող նշանակություն ուներ Հայաստանում բնական տնտեսությունը։ Իրանք հայ նախարարները, վոր մեծ մասամբ զինվորականներ եյին, չունեյին, ինչպես ասացինք, սեպհական ու ինքնուրույն խոշոր տնտեսություններ։ Բացի այդ՝ ցորենը և գյուղատնտեսության մյուս արտադրանքները դեռևս չեյին դառել լայն շուկայի ապրանք այնպիսի չափերով, ինչպես Բագրատունյաց ժամանակ։

Հասկանալի յե, վոր տնտեսական այս պայմաններում չկար դեռևս ստրկական աշխատանքը շահագործելու այն խթանը, վոր գոյություն ուներ ապրանքային ու փողային տնտեսության լայն զարգացման շրջաններում։

Այդ ե նաև պատճառը, վոր պատմական այս շրջանում ստրուկների իրավական դրությունը մենք յենթադրում ենք համեմատաբար ավելի մեղմ քան հանրապետական Հռոմում կամ կապիտալիստական յերկրներում։

---

## 9. ՀԱՅԿԱԿԱՆ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ԾԱԳՈՒՄԸ ԵՎ ՏԵՎՈՂՈՒԹՅՈՒՆԸ

*Նախարարական կազմակերպության ծագումը և սկիզբը կարևոր մի խնդիր ե, վոր կարոտ ե հատուկ լուսաբանության։*

*Ինչպես հայտնի յե, ֆեոդալիզմի զարգացումն Արևելքում և Արևմտյան Յեվրոպայում՝ տեղի յե ունեցել միանգամայն տարբեր պայմաններում։ Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալիզմն առաջ եր յեկել Հռոմեական կայսրության անկումից հետո իբրև հետևանք նախկին պետական կազմակերպության քայքայման, իսկ Արևելքում նա հետզհետե զարգացել եր տոհմային կյանքի կազմալուծման և կերպարանափոխման ընթացքում։*

*Ի նկատի ունենալով ֆեոդալիզմի ծագման այս տարբեր պայմանները՝ նորագույն ուսումնասիրություններում տոհմային կենցաղից առաջացած ֆեոդալիզմն անվանում են առաջնական ֆեոդալիզմ, իսկ միջնադարյան Յեվրոպայինը՝ կրկնված ֆեոդալիզմ։*

*Համաձայն այս բաժանման Հին Հայաստանի նախարարական կազմակերպությունը կարող ենք բնորոշել, անշուշտ, իբրև առաջնական ֆեոդալիզմ։*

*Կառուցված լինելով կենպարանափոխվող տոհմային կյանքի հիմքերի վրա՝ նախարարական կազմակերպությունը, բնականաբար, պահպանած պիտի լիներ իր մեջ տոհմային նախորդ կարգերի բազմաթիվ մնացորդներ։*

*Ուշագրավ ե այս տեսակետից, վոր Հին Հայաստանի պետական ու սոցիալական կազմակերպության վերաբերյալ տերմինները, ինչպես մանրամասն պարզաբանված ե այդ*

պրոֆ. Ջավախովի „Государственный строй древней Грузии и древней Армении" աշխատության մեջ (էջ 77—136), ծագել են, մեծ մասամբ, տոհմատիրական նախորդ շրջանից։

«Ազգ» բառը, օրինակ, որ սկզբնապես նշանակում էր տոհմային խմբակցություն, հետագայում գործ է ածվել նախարարական շրջանների և անգամ համայն Հայաստանի բնակչության համար՝ «ազգն Աղձնեաց», «ազգն Սիւնեաց տոհմին», «ազգն աշխարհին Հայոց», «ազգն տանն Հայոց երկրին» են։

Տոհմային կենցաղի շրջանում «տուն» էր անվանվում ամեն մի տոհմի բնակատեղին, իսկ հետագայում «տուն» են կոչվել յերկրային բոլոր միավորները, ամենափոքրից սկսած մինչև ամենամեծը, թե նախարարական «տէրութիւն»-ները և թե Արշակունյաց ամբողջ պետությունը՝ «տուն Աղձնեաց», «տուն Գողթան», «տուն Թագաւորութեան Հայոց», «տուն Հայոց երկրին» են։

Նմանապես և «տանուտէր» բառը, որ սկզբում ունեցել է տոհմապետի իմաստ, հետագայում գործ է ածվել նաև նախարարական շրջանների նահապետների և նույն իսկ թագավորի համար։

Վերև մենք տեսանք, որ սոցիալական ամենասովորական տերմինները, ինչպես «նախարար», «նահապետ», «սեպուհ», «ազատ», որ փոխառություններ են պարթևերենից, բոլորն էլ ծագում են դարձյալ տոհմային նախորդ շրջանից։

Նախարարությունների տոհմային հիմքերը, տոհմային միջավայրի շերտավորումը, դասերի առաջացումը և Հայաստանի ֆեոդալականացման ընթացքը քննության են առնված Նիկ. Ադոնցի „Армения в эпоху Юстиниана" աշխատության մեջ (տես գլ. XIV, Родовые основы нахарарства, էջ 389—426)։ Այս աշխատության մեջ Նիկ. Ադոնցը, հենվելով Քսենոփոնի վկայությունների վրա (տես Anabasis, IV, 1—6), Արմենիայի սոցիալական դրությունը 401—400 թ. Քր. առաջ բնորոշում է իբրև տոհմատիրական։

Քսենոփոնն Արմենիան անվանում է «ընդարձակ ու բա-

ընկեցիկ» յերկիր, քաղաքականապես բաժանված յերկու մասի։ Հարավից Կենտրիտես գետը (Արևելյան Տիգրիսը, վոր այժմ կոչվում ե Բոհտան-սու), վորպես բնական սահմանագիծ՝ բաժանում եր Արմենիան Կարդուխների յերկրից։ Արմենիայի այս մասում իշխում եր Որոնտասը, վորի զորքը բաղկացած եր վոչ միայն արմեններից, այլ և մարդերից ու խալդայներից։ Կենտրիտես գետի աջ ափի մոտ, մոտավորապես այժմյան Սղերդի շրջանում, Քսենոփոնի ասելով՝ արմենների գյուղեր չկային պատերազմների պատճառով Կարդուխների դեմ։

Գետից մոտ 5 փարսախ կամ 27 կիլոմետր հեռավորության վրա՝ հույները մտել են մի մեծ գյուղ, ուր տների մեծամասնության վրա յեղել են աշտարակներ։ Այդ գյուղն ունեցել ե սատրապի բնակության համար հատուկ մի դղյակ։

Շարժվելով այստեղից դեպի հյուսիս՝ հույներն իջել են Մշո դաշտը, վոր համարվել ե Արևմտյան Արմենիայի մասը և գտնվել ե Տիրիբազի իշխանության տակ։

Քսենոփոնի նկարագրությունների մեջ ուշագրավ ե այն, վոր նա Արմենիայում չի հիշատակում և վոչ մի քաղաք. հույները գետերի հովիտներում տեսել են միայն բազմաթիվ գյուղեր, վորոնց տնտեսական վիճակը յեղել ե միանգամայն բարգավաճ ու բարեկիր։

Գյուղերի մի մեծ խումբ հիշում ե Քսենոփոնը Տելեբոաս կամ Մեղ գետի շուրջը և մի ուրիշ խումբ՝ Տելեբոաս գետից 15 փարսախ կամ մոտ 80 կիլոմետր դեպի արևելք։ Գյուղերի այս վերջին խումբը գտնվել ե ամրոցի շուրջը։ Այստեղ հույները գտել են ամեն տեսակ պաշարեղեն՝ մսացու անասուններ, հաց, հին անուշահոտ գինիներ, չամիչ, զանազան ընդեղեններ, նաև խոզի ճարպ, քնջութ, գառն նշի և բևեկնի յուղ ու սրանցից պատրաստված անուշահոտ յուղ։

Արածանի գետի ակունքների մոտ, այժմյան Դիադին-Բագավանի շրջանում, հույներն իջևանել եյին արմենների գյուղերում, վորոնց նկարագիրն առանձնապես հետաքրքրական ե։

Այստեղ նրանք, հասնելով մի գյուղ, աղբյուրի մոտ ամբության առաջ հանդիպել էին ջուր տանող գյուղացի կանանց, իսկ ամրության մեջ՝ գյուղապետին (kômarchês)։ Այս շրջանի գյուղերում — պատմում է Քսենոփոնը —«տները գետնափոր էին, մուտքը ջրհորի բերնի նման, իսկ ներքևն ընդարձակ։ Կենդանիների համար հատուկ մուտք կար փորված, իսկ մարդիկ իջնում էին ցած սանդուղքներով»։ Տների մեջ հույները գտնում են առատ պաշարեղեն՝ ցորեն, գարի, ընդեղեններ և կարասներում գարուց պատրաստված խմիչք, նաև այծեր, ոչխարներ, եզներ, կովեր, հավեր և խոզեր։ Քսենոփոնն առանձնապես հիշում է նաև արմենների ձիերը, որոնք պարսկական ձիերից թեև փոքր էին, բայց շատ ավելի կայտառ։

Քսենոփոնի այս վկայություններից պարզ երևում է, որ արմենները եղել են նստակյաց ու հողագործ ժողովուրդ և երկրագործական մշակույթի տեսակետից կանգնած են եղել զարգացման համեմատաբար բարձր աստիճանի վրա։

Հերոդոտն անվանում է արմեններին polyprobatoi «հարուստ անասուններով» (V, 49), ուստի պետք է ենթադրել, որ նրանք զբաղվել են նաև խաշնարածությամբ։

Պաշարեղենի առատությունը և քաղաքների բացակայությունը կարող են անուղղակի մի նշան համարվել, որ Քսենոփոնի ժամանակ Արմենիան գտնվել է բնական տնտեսության զարգացման շրջանում։ Քաղաքների բացակայությունը և երկրի նահապետական դրությունը թույլ են տալիս նաև կարծելու, որ բնակչության դասակարգային շերտավորումը գտնվել է դեռևս սկզբնական իր շրջանում։

Հերոդոտի և Քսենոփոնի վկայություններից երևում է նույնպես, որ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ հայկական լեռնաշխարհի սահմաններում ապրում էին դեռ այլևայլ ոտար ցեղեր։

Արմենիան, Հերոդոտի վկայությամբ (V, 49, և V, 52), գտնվել է կիլիկեցիների և մատիենների միջև։ Կիլիկեցիների կողմից Արմենիայի սահմանն է եղել Եփրատ գետը, իսկ

արևելքում նա սահմանակից է յեղել մատիենների յերկրին։ Յեփրատից սկսած մինչև Մատիենե Արմենիայի տարածությունը յեղել է մոտ $56^1/_2$ փարսախ՝ մոտավորապես 300 կիլոմետր։ Հերոդոտի վկայություններից կարող ենք հետևցնել, վոր նրա ժամանակ արմենական գաղթականությունը տարածված եր արդեն ստորին Արածանիի և վերին Տիգրիսի շրջաններում՝ այժմյան Խարբերդի ու Դիարբեքիրի վիլայեթներում։

Իսկ ըստ Քսենոփոնի՝ Արմենիայի սահմաններն են յեղել՝ հարավ-արևելքում՝ Կենտրիտես գետը, իսկ հյուսիս-արևելքում՝ Դիադին-Բագավանի մոտ գտնվող շրջանները։ Քսենոփոնի ժամանակ Արածանի կամ Արևելյան Յեփրատ գետի վերին հոսանքը և ակունքները գտնվել են արդեն Արմենիայի սահմաններում։

Հերոդոտի ու Քսենոփոնի այս տեղեկություններն Արմենիայի մասին պարզ ցույց են տալիս, վոր Աքեմենյան Պարսկաստանի աշխարհակալության ժամանակ արմենական գաղթականությունը կարողացել եր գրավել միայն մի քանի շրջաններ և այդ շրջաններում, ինչպես դժվար չե կռահել աղբյուրների վկայություններից, արմենների հետ միասին ապրել են նույնպես խալդեր, մարդեր, արամայեցիներ և, հավանորեն, նաև ուրիշ ցեղեր։

Հայկական լեռնաշխարհի արևմտյան, հյուսիսային և արևելյան մասերում ևս ապրում եյին դեռ զանազան այլ ցեղեր, վորոնք հիշատակված են մասամբ Հերոդոտի և Քսենոփոնի յերկերում։

Քսենոփոնի վերոհիշյալ յերկից գիտենք, վոր նահանջող հույներն հայկական բարձրավանդակի հյուսիս-արևմտյան կողմում՝ Ճորոխ գետի ուղղությամբ և ավելի հյուսիս դեպի Տրապիզոն՝ անցել եյին խալյուբների, տաոքների, սկյութենների, խալդերի, մակրոնների, կոլխերի, տիբարենների և մոսինոյկների յերկիրներով, վորոնք ազատ են յեղել և պարսից թագավորությունից միանգամայն անկախ։ Նույն կողմերում ապրել են նաև հեսպերիտներն ու փասիաններն,

վորոնք սակայն գտնվել են Տիրիբազի իշխանության տակ։

Հայկական լեռնաշխարհի սահմաններում, ինչպես վկայում է Հերոդոտը (III, 94 և VII, 79), գտնվել է պարսից պետության տասնևութերորդ սատրապությունը, վորի բնակիչներն եյին ալարոդները (ուրարտացիները), սասպևյրները (հավանորեն Սպերի շրջանում) և մատիեննները (Ատրպատականի կողմերում)։ Բացի այս ցեղերից աղբյուրների մեջ իբրև հայկական լեռնաշխարհի բնակիչներ հիշատակվում են նաև մոսխեր, ուտիներ, միկեր, պակտիներ, կարդուխներ և ուրիշ ցեղեր։

Այս ցեղերի մեծագույն մասը, վոր իրանց ծագմամբ պատկանում եյին, գլխավորապես, հաբեթական, իրանական ու սեմական լեզվախմբերին և հետագա դարերում ձուլվել եյին, մեծ մասամբ, արմենների հետ, ինչպես ճիշտ դիտել է Նիկ. Ադոնցը, գտնվել են կուլտուրական և սոցիալական զարգացման տարբեր աստիճանների վրա։

Վերոհիշյալ ժողովուրդներից խալդերը կամ ուրարտացիները, վոր հիմնադիր եյին հզոր պետության, ունեցել են, ինչպես հայտնի յե, բավական բարձր քաղաքակրթություն։ Նրանց քաղաքակրթությունից մնացել են մինչև այժմ բերդերի և տաճարների ավերակներ, ժայռերի մեջ փորված շինություններ, ջրանցքներ ու ջրաբաշխական կառուցվածքներ, կավից և մետաղից պատրաստված զանազան իրեր, նաև բազմաթիվ սեպագիր արձանագրություններ։

Տարբերությունները զանազան ցեղերի կուլտուրական-կենցաղային զարգացման պարզ յերևում են Քսենոփոնի նկարագրություններից։

Կարդուխների մասին, օրինակ, Քսենոփոնը հաղորդում է, վոր նրանք ապրել են գեղեցիկ տներում, վոր կահավորված են յեղել բազմաքսինակ պղնձե ամաններով։ Հույներն այդ տներում գտել են առատ պաշար, նաև գինի, վոր պահվում եր ծեփված հորերում։ Կենտրիտես գետի մոտ գտնվող գյուղում տների մեծագույն մասը, ինչպես տեսանք, ունեցել են աշտարակներ։ Իսկ Դիադին-Բագավանի շրջանում արմենա-

կան գյուղերի տները, վորոնց նկարագրությունը մեջ ենք բերել վերև, յեղել են գետնափոր։

Կենցաղային այս տարբերությունները մի ակնարկ են, անշուշտ, վոր միակերպ չեր կարող լինել նաև սոցիալական կենցաղը ցեղային զանազան խմբավորումներում։

Ստրաբոնի վկայությամբ, Արմենիայի ընդարձակումը և վերոհիշյալ ցեղերի մեծագույն մասի նվաճումը տեղի յեն ունեցել Անտիոքոս Մեծի Արտաշես և Զարեհ զորավարների ժամանակ, վորոնք Անտիոքոս Մեծի պարտվելուց հետո (Մագնեսիայի մոտ 189 թվին Քր. առ.) անցել եյին հաղթող հռոմայեցիների կողմը և դառել անկախ թագավորներ, առաջինը՝ Արտաշատի կողմերում, իսկ յերկրորդը՝ Ծոփաց, Անձիտի, Ոդոմանտիսի և մի քանի ուրիշ գավառներում (XI, 14,5)։

> «Սրանք — ասում է Ստրաբոնը — ընդարձակել եյին իրանց յերկիրների սահմանները և գրավել հարևաններից հետևյալ շրջանները. մեդացիներից՝ Կասպիանեն, Փավնիտիսը և Բասորոպեդան, իբերներից՝ Պարիադրեսի լեռնալանջերը, Խորձենեն և Գոգարենեն, վոր գտնվում է Կուր գետի մյուս կողմում, խալիբներից ու մոսինոյկներից՝ Կարենիտիսը և Դերքսենեն, վոր սահմանակից են Փոքր Հայքին կամ նրա մասերն են, կատաոններից՝ Ակիլիսենեն և Անտիտավրոսի կողմերը գտնվող յերկիրը և ասորիներից՝ Տամորիտիսը» (Strab. XI, 14,5):

Այս բոլոր շրջանների բնակչության ձուլումն արմենների հետ տեղի յե ունեցել, անշուշտ, յերկար դարերի ընթացքում, ուստի և Ստրաբոնի տեղեկությունը, վոր իր ժամանակ ընդարձակված այս Արմենիայի մեջ բոլորը համալեզու եյին, այսինքն՝ խոսում եյին հայերեն, կարելի յե ընդունել միայն վորոշ վերապահությամբ։

Նիկ. Ադոնցը տոհմային կենցաղի կազմալուծումը յենթադրում է հենց այս մեծ նվաճումների շրջանում Արտաշեսի և Զարեհի ժամանակ։

«Տոհմային հարաբերությունների ժամանակաշըր-
ջանը — ասում է Ադոնցը — վերջանում է քաղաքական
հուզմունքների ընթացքում, վոր տեղի ունեցան Զա-
րեհի ու Արտաշեսի ժամանակ։ Հենց այս ժամանակնե-
րում դրվելու յե տոհմային կազմակերպության քայքա-
յումը և սոցիալական նոր հարաբերությունների հղա-
ցումը։ Հեղաշրջման եությունն արտահայտվում եր սո-
ցիալական զանգվածի շերտավորումով և դասայնության
հիմքերի առաջացմամբ» (տես Армения в эпоху Юсти-
ниана, եջ 406)։

Նիկ. Ադոնցը ճշտիվ վորոշում է այս հեղաշրջման վոչ
միայն սկզբնավորման, այլ և ավարտման ժամանակաշըր-
ջանը։

«Տոհմային հարաբերությունների կազմալուծու-
մը — ասում է նա — վորին ուղեկցում եր դասայնու-
թյան առաջացումը հանձին իշխանավորների, հետագա
տիրող իշխանների, ավարտվում է Տիգրան Մեծի փո-
թորկալից ժամանակաշրջանում։ Պատերազմական ժա-
մանակի տագնապը ստեղծում է մի մթնոլորտ, վոր
նպաստավոր է տոհմային հարաբերությունների փո-
խանցման դասայինի» (եջ 410)։

Նիկ. Ադոնցը, ինչպես տեսնում ենք, տոհմային կենցաղի
շրջանը յենթադրում է Հայաստանում մինչև յերկրորդ դարի
սկիզբը Քր. առաջ, այնուհետև՝ մինչև Տիգրան Մեծը (94—
56 թ. Քր. առ.) նա դնում է տոհմային կենցաղի կազմա-
լուծումը, համարելով այդ փոխանցման շրջան, իսկ Տիգրան
Մեծի ժամանակ ավարտվել է, նրա կարծիքով, այդ փոխան-
ցումը և կազմակերպվել են հետզհետե Հայաստանի նախա-
րարությունները։

Տոհմային կազմակերպության քայքայման ու Հայաս-
տանի նախարարականացման ժամանակագրական այս շրջա-
նաբաժանումները հակասում են այն փաստական աղոտ տե-
ղեկություններին, վոր հայտնի յեն մեզ պատմական աղ-
բյուրներից. ուստի և վիճելի յեն ու անհավանական։

Ադոնցն աչքաթող ե արել նաև սեպագիր արձանագրությունների կարևոր տվյալները։

Արձանագրությունների ընթերցումից հայտնի յե, վոր խալդական գերիշխանության տակ նախարմենական իսկ շրջանում գտնվել են տոհմա-ցեղային բազմաթիվ խմբավորումներ, վորոնց մեջ տեղական ցեղապետները և տոհմապետները յեղել են հաճախ տիրական իրավունքներով ոժտված իշխանավորներ։ Հավանական ե նաև, վոր սենյորական-վասսալական հարաբերություններ, վորոնք կարոտ են դեռ հատուկ ուսումնասիրության, կարող եյին գոյություն ունեցած լինել խալդական թագավորության մեջ։

Ուրեմն՝ սոցիալական վորոշ շերտավորում տոհմա-ցեղային խմբակցությունների մեջ, ինչպես և ֆեոդալականության վորոշ սաղմեր, կարող եյին առանձնահատուկ լինել հենց խալդական մեծ պետության։

Պարզ ե վոր տոհմա-ցեղային այս խմբավորումները, յենթարկվելով արմենների իշխանության, պահպանած պիտի լինեյին իրանց նախկին սոցիալական կենցաղը։

Առարկելի յե նաև Ադոնցի վերոհիշյալ լուսաբանության հենց հիմնական փաստարկումը։

Մատնանշելով «պատերազմական ժամանակի տագնապը» վորպես կարևոր մի գործոն, վորը նպաստել ե սոցիալական շերտավորման, Ադոնցն աչքաթող ե անում, վոր համառ ու յերկարատև կռիվներ տեղի եյին ունենում վոչ միայն Արտաշեսի ու Տիգրան Մեծի ժամանակ, այլ և դրանից առաջ՝ արմենների. առաջշարժումների ու հաստատման ժամանակ նորանվաճ յերկրում։

Նոր յեկվորների լարված ու հարատև կռիվների մասին տեղական խալդերի ու կարդուխների հետ կարևոր տեղեկություններ պահպանվել են, ինչպես հայտնի յե, Քսենոփոնի „Kyroupaideia“ և „Anabasis“ յերկերում։ Ուստի խիստ հավանական ե, վոր արդեն այս հնագույն շրջանում կարելի յե յենթադրել տոհմային հարաբերությունների վորոշ բեկում և տոհմապետների ու առաջնորդների իշխանության ու հեղինակության ուժեղացում։

Նոր յերկիրների գրավումը, տեղական ցեղերի նվաճումը և նրանց յենթարկումը նվաճողների իշխանության չեյին կարող չթողնել իրանց ազդեցությունը տոհմային հարաբերությունների վրա և նպաստելու եյին, անտարակույս, արմենների մոտ ևս տոհմապետների ու ցեղապետների իրավունքների ու իշխանության ընդարձակման։ Միևնույն ժամանակ, տնտեսական անհավասարությունը, վոր ստեղծվում եր հաղթված ժողովուրդների ստորադրմամբ նվաճողներին, հավանորեն, արմենների տիրապետության հնագույն իսկ այս շրջանում վերածվում եր քաղաքական ու իրավական անհավասարության և նպաստում, ըստ յերևույթին, դասերի կազմակերպման։

Սոցիալական շերտավորման այս առաջացումը բացատրելիս՝ չպետք ե, իհարկե, գերագնահատել «պատերազմական ժամանակի տագնապի» և նվաճումների նշանակությունը։ Անհրաժեշտ ե նույնպես ի նկատի ունենալ յերկրի տնտեսական դրությունը և տնտեսական այն հեղաշրջումը, վոր տեղի ունեցավ Սելևկյանների ժամանակ։

Հին Հայաստանի առևտրի ու քաղաքների վերաբերյալ ռուսերեն մեր աշխատության մեջ մենք մատնացույց եյինք արել, վոր հելլենիստական շրջանի տնտեսական հեղաշրջումը զարկ եր տվել նաև Հին Հայաստանի տնտեսական զարգացմանը։

Այդ զարգացման պարզ նշաններն եյին Փոքր Հայքում և Ծոփքում կտրված սեպհական դրամները, փողային շրջանառության զարգացումը և առևտրական հնագույն քաղաքների հիմնադրումը Ծոփքում։ Հելլենիստական տիպի այս քաղաքների հիմնումն ինքնին կարևոր մի փաստ ե, վոր ցույց ե տալիս սոցիալական շերտավորման ուժեղացումը։ Առևտրի ու դրամական շրջանառության զարգացման շնորհիվ կարևոր նշանակություն եր ստանում դրամական կապիտալը։ Այս նոր ուժը, յեթե անգամ նրա դերը յերկրորդական ու մակերևութային համարենք Հին Հայաստանի եկոնոմիկայի բնական-տնտեսական հիմքերի նկատմամբ, անխուսափելի

կերպով պետք է ազդեր սոցիալական հարաբերությունների վրա և արագացներ տոհմային հասարակության քայքայումը, որ սկսվել էր արդեն նախընթաց շրջանում։

Իսկ տոհմային կազմակերպության այս քայքայման և դասերի աստիճանական ծագման հետ սերտ կապված է Հին Հայաստանի նախարարությունների գոյացման հարցը։

Հավանական է, անշուշտ, որ տնտեսական ու իրավական որոշ ստորադասումների զարգացումը, որը մենք անվանում ենք ֆեոդալական, տեղի յեր ունենում տոհմային կարգերի կազմալուծման հետ զուգընթաց։

Իսկ յեթե այդ այդպես է, ուրեմն, տոհմային ձևերի բեկումը և դասերի ու ֆեոդալիզմի ծագումը Հին Հայաստանում պետք է դնել վոչ թե Արտաշեսի, Զարեհի և Տիգրան Մեծի ժամանակ, ինչպես այդ յենթադրել է Ադոնցը, այլ նախորդ ավելի հնագույն շրջանում։

Հիմնվելով վերոհիշյալ մեր դիտողությունների վրա՝ կարելի յե յեզրակացնել, որ արդեն նախարտաշեսյան շրջանում, արմենների նվաճումների ու տիրապետության սկզբնական իսկ ժամանակ, հավանական է յենթադրել ցեղապետների ու տոհմապետների իշխանության վորոշ ընդարձակում և ազնվականության ու ֆեոդալականացման աստիճանական զարգացում վոչ միայն նախարմենական ցեղային զանգվածներում, այլ և արմենական տոհմային խմբավորումներում։

Հավանական է նույնպես, վոր Արտաշեսի ու Զարեհի անկախ թագավորությունները, վորոնց ընդարձակման մասին հիշել ենք վերև Ստրաբոնի տեղեկությունները, ունեցել են արդեն ֆեոդալական կազմություն և նախարարականության հիմքեր։

Հետագայում այդ կազմակերպությունը կարող եր, հավանորեն, վորոշ փոփոխություններ կրած լինել, յենթարկվելով հայ Արշակունիների ժամանակ պարթևական ազդեցության, սակայն նրա հետագա այդ ձևավորումը, վոր յենթադրաբար և իր ժամանակվա հասկացողությամբ լուսաբա-

նել է Խորենացին իր պատմության մեջ (II, Զ, Է, Ը, էջ 108—118), չի վերաբերվում, անշուշտ, նախարարությունների գոյացման և զարգացման, որ տեղի էին ունեցել նախարշակունյան շրջանում։

Հայկական նախարարությունները, որ Հայաստանի պատմական անցյալում ունեցել են հիմնական նշանակություն, պահպանվել էին, ինչպես հայտնի է, թե արաբական, թե Բագրատունյաց և թե հետագա շրջաններում։

Նիկ. Ադոնցի կարծիքով, «նախարարական կազմակերպությունը գոյություն է ունեցել Հայաստանում հին ժամանակներից մինչև մոնղոլական արշավանքները» (տես Армения в эпоху Юстиниана, էջ 236)։

> «Ինչպես ամեն մի երևույթ — ասում է Ադոնցը — որ զարգանում է տեղի ու ժամանակի պայմաններում, նույնպես և նախարարությունը փոխել է հաճախ իր բնույթը և անցել զարգացման տարբեր փուլերով։ Նախարարական կարգերը, որ մշակվել էին Արշակունիների ժամանակ, ընդհանուր առմամբ շարունակվել էին անփոփոխ նաև Սասանյանների և Յուստինիանի շրջանում։ Մոտավորապես 628 թվից սկսած, երբ մարզպանական կամ տանուտիրական Հայաստանի մեծագույն մասն անցել էր կայսրների իշխանության տակ և երբ պարսիկները վերջնականապես հրաժարվել էին այդ երկրից, սկսվել է արշակունյան ձևի նախարարության քայքայումը։ Արաբների խիստ ու սկիզբներում թշնամական քաղաքականությունը նախարարության նկատմամբ նպաստում էր այդ քայքայման» (նույնը, էջ 236)։

Ադոնցի այս ընդհանրացումները մի քանի կետերում սխալ են ու անընդունելի։

Մենք ոչ մի ապացույց չունենք, որ 628 թվից հետո կամ արաբական տիրապետության սկզբնական շրջանում սկսված լիներ նախարարական հին կարգերի քայքայումը։ Ընդհակառակը՝ պատմական տեղեկություններից որոշակի

հայտնի յե, վոր մինչև յոթերորդ դարի վերջերն արաբների քաղաքականությունը նախարարությունների հանդեպ վոչ միայն չե յեղել խիստ ու թշնամական, այլ յեղել ե միան- գամայն մեղմ ու նախարարությունների զորեղացման հա- մար ավելի քան նպաստավոր։ Կարելի յե հաստատապես պնդել, վոր արաբների նվաճած յերկրներից և վոչ մեկը չե ունեցել այն բացառիկ ինքնավար իրավունքները, վոր տրված են յեղել նախարարական Հայաստանին։

652 թվին, ինչպես վկայում ե Սեբեոսը, Թեոդորոս Ռշտունին և մյուս նախարարները հաշտության դաշինք յեն կնքել Մուավիայի հետ, վորի համաձայն Հայաստանը դառնում եր ինքնավար մի յերկիր և ստանում քաղաքական հատուկ իրավունքներ։

> «Եւ ի նմին ամի — ասում ե Սեբեոսը — ապըս- տամբեցին հայք և ի բաց կացին ի թագաւորութենէն յունաց՝ և հնազանդեցան ի ծառայութիւն արքային Իսմայէլի, եդին ուխտ ընդ մահու, և ընդ դժոխոց դա- շինս կռեցին Թէոդորոս Ռշտունեաց տէր՝ ամենայն իշխանաւքն Հայոց ի բաց ընկեցեալ զաստուածային դաշնաւորութիւն։ Արդ՝ խաւսէր ընդ նոսա իշխանն Իսմայէլի և ասէր. «Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ իս և ընդ ձեզ որչափ ամաց և դուք կամիջիք, և ոչ առնում ի ձէնջ սակ զերբեամ մի. ապա յայնժամ տաջիք երդմամբ, որչափ և դուք կամիջիք. և հեծեալ կալէք յաշխարհիդ ԺԵ հազար. և հաց յաշխարհէն տուք, և ես ի սակն արքունի անգարեմ. և զհեծեալսն յԱսո- րիս ոչ խնդրեմ, բայց այլուր և հրամայեմ, պատրաստ լիցին ի գործ. և ոչ արձակեմ ի բերդորայն ամիրայս, և ոչ տաճիկ սպայ՝ ի բազմաց մինչև ցմի հեծեալ։ Թշնա- մի մի մտցէ ի Հայս, և եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր՝ արձակեմ ձեզ զաւրս յաւգնականութիւն որչափ և դուք կամիջիք։ Եւ երդնում ի մեծն Աստուած՝ եթէ ոչ ստեմ» (տես «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», հրատ. Ք. Պ., Պետերբուրգ 1879, ԼԵ, էջ 138)։

Նախարարությունները զորեղ եյին ֆեոդալական իրանց ներքին կացությամբ վոչ միայն 652 թվից հետո, այլ և Բյուզանդական տիրապետության քսանուհինգամյա նախորդ շրջանում։

628 թվից մի քանի տարի հետո՝ Ասորիքում սկսվել եյին, ինչպես հայտնի յե, արաբական խալիֆատի մեծ կռիվները Բյուզանդիայի դեմ և կայսրությունը հայկական նախարարությունների հանդեպ չեր կարող, բնականաբար, վարել ուժեղ ձեռքի քաղաքականություն, այլ աշխատելու յեր ոգտագործել Հայաստանի զինվորական ուժը, վարելով այստեղ մեղմ ու զուսպ քաղաքականություն։

Մատենագրական աղբյուրների վկայություններից յերևում ե նույն իսկ, վոր արաբական արշավանքներից առաջ՝ Բյուզանդական պետության անզորության պատճառով՝ Հունահայաստանը գտնվել ե անտերունչ վիճակում։ Թողնված լինելով իրանց բախտին՝ նախարարությունները չեյին կարողացել համախմբվել և պաշտպանվում եյին արտաքին հարձակումներից վոչ թե ընդհանուր միացյալ ուժերով, այլ, մեծ մասամբ, անջատ ու առանձին։

Անիշխանական այս դրությունը, վոր մատնանշվում ե մատենագրական յերկերում, սխալ կլինի, անշուշտ, հասկանալ իբրև նախարարությունների կամ նախարարական կարգերի քայքայում։

Այդ քայքայում եր միմիայն կայսրության գերագույն իշխանության, նաև զորական միացյալ ուժի, իսկ նախարարությունները և կալվածատեր ազնվականությունը մնում եյին դասային իրանց արտոնյալ դրության մեջ, սակայն ավելի ևս ինքնիշխան ու զորեղ, քան առաջ։

Հետաքրքիր ե խիստ, վոր այս խառն ու անտերունչ շրջանում կալվածատեր ազնվականները, ինչպես հայտնի յե Դվինի ժողովի կանոններից, ձգտել են ընդլայնել իրանց տնտեսական իշխանությունը։ Նրանք աշխատել են տեր ու տնորեն դառնալ վանքերի ու յեկեղեցական յեկամտաշատ հաստատությունների և փորձել են անգամ «զժառանգաւորս»

կամ «ղաղատ մանկունս եկեղեցւոյ» դարձնել հարկատու և «ի ծառայութիւն և ի ստրկութիւն արկանել» (տես «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյանի, կան. Թ, Ժ, ԺԱ, էջ 126—128)։

Թե այս և թե նման վկայություններից կարելի յե ըստ իս կռահել, վոր Հայաստանի նախարարական կազմակերպությունը, վորն իր հիմնական գծերով մնում եր այս շրջանում անխախտ, փոխվում եր միայն ազնվական կալվածատիրության ու զինվորականության զորեղացման և ստորադրյալ մյուս դասերի քմահաճ շահագործության ուղղությամբ։

Սխալ պետք ե համարել, անշուշտ, և Ադոնցի վերոհիշյալ յենթադրությունը հայկական ֆեոդալիզմի տևողության մասին։

Ադոնցի պնդումը, վոր նախարարական կազմակերպությունը գոյություն ե ունեցել Հայաստանում մինչև մոնղոլական արշավանքները, այսինքն՝ մինչև տասնուերեքերորդ դարի յեռեսնական թվականների վերջերը, պարզապես մի թյուրիմացություն ե, վոր հակասում ե մեր ունեցած պատմական անժխտելի տեղեկություններին։

Հայ պատմագիրների վկայություններից մենք գիտենք, վոր Հայաստանի ֆեոդալական իշխանությունները հենց իրանք հոժարարար անձնատուր եյին յեղել նոր նվաճողներին և յենթարկվել նրանց իշխանության։ Հայտնի յե նույնպես, վոր մոնղոլները նպատակահարմար եյին համարել պահել վրացական և հայկական ֆեոդալական կազմակերպությունը և թողնել ֆեոդալների ձեռին նրանց կալվածները և իշխանությունը։

Ֆեոդալական կազմակերպությունը նրանք ոգտագործեցին իբրև տեղական վարչության պատրաստի ապարատ, իսկ ֆեոդալների զինվորական ուժերը նրանք ծառայեցրին իրանց՝ վորպես ոժանդակ զորք հետագա արշավանքներում։

Հայաստանի զինվորական ուժի մշտական այս մասնակցությունը մոնղոլական հեռավոր ու անընդհատ արշավանքներին, ինչպես և մոնղոլական շրջանի չափազանց ծանր

հարկերը, ուժասպառ էին արել ֆեոդալական Հայաստանը և սկիզբ էին դրել նրա անկմանը։

Իսկ մոնղոլական տիրապետությունից հետո, 14-րդ դարի կեսերից սկսած, երբ Հայաստանը Ջելայիրյանների, Չոպանյանների, Լանկթեմուրի, Ղարա-Ղոյունլու և Ակ-Ղոյունլու Թուրքմենների ժամանակ անվերջ կռիվների, ավերածությունների թատերաբեմ էր դառել, հայկական ֆեոդալիզմն ապրում էր արդեն իր ծանր հոգեվարքը և այնքան էր արյունաքամ եղել, որ չուներ այլևս քաղաքական որևէ կշիռ ու նշանակություն։

Ավելի քան հավանական է, ուրեմն, որ հայկական ֆեոդալիզմի վերջնական քայքայումը պետք է կենթադրել ավերումների, փախուստի, մեծ ղաղթերի ու ամայացման հենց այս խռովահույզ շրջանում։

Իսկ հետագայում Պարսից և Օսմանցոց տիրապետության ժամանակ՝ նախկին ֆեոդալիզմից մնացել էին, ինչպես հայտնի է, միայն մի քանի բեկորներ՝ հայ լուսավորչական եկեղեցին, որ ուներ դարձյալ խոշոր կալվածներ, և հին կալվածատեր ազնվականության հյուծված ու թուլացած մնացորդները, որ գտնվում էին, գլխավորապես, հյուսիսարևելյան Հայաստանի լեռնային շրջաններում։

Մեծ սխալ կլինի, անշուշտ, հայկական ֆեոդալիզմի այս քայքայումը համեմատել և համապատասխան ընդունել Արևմտյան Եվրոպայի ֆեոդալիզմի քայքայման։

Արևմտյան Եվրոպայում ֆեոդալիզմի կազմալուծումը հետևանք էր տնտեսական կյանքի զարգացման՝ քաղաքների աճման ու բուրժուազիայի զորեղացման, իսկ Հայաստանում հայկական ֆեոդալիզմի անկումը տեղի էր ունենում ավերածությունների, քաղաքների ամայացման և տնտեսական բարեկեցության քայքայման պայմաններում։

Հայկական ֆեոդալիզմի քայքայմամբ ֆեոդալիզմը Հայաստանում վոչ թե վերանում էր, այլ փոխարինվում պարսկական և օսմանյան յուրահատուկ ֆեոդալիզմով։

Դեռևս արաբական աշխարհակալության շրջանում պարս-

կա-արաբական մահմեդականությունը հաստատվել էր թե Հայաստանի քաղաքներում և թե բուն յերկրի զանազան մասերում, գլխավորապես, Վանա լճի շուրջը գտնվող հարավային շրջաններում։

Սելջուկյան արշավանքներից հետո հայկական բարձրավանդակի հարավային և արևմտյան ավերված ու ամայացած մասերը, ինչպես և Հայաստանի գրեթե ամբողջ միջնաշխարհը, անցել էին հետզհետե մահմեդական իշխանությունների ձեռքը։

Վրաստանի աշխարհակալության ժամանակ թեև Զաքարյանները կարողացել էին վերագրավել Հայաստանի մեծագույն մասը և հաստատել այստեղ հայկական նոր իշխանություններ, սակայն նրանց ժամանակ Հայաստանում կողք կողքի ապրում էին հայերի հետ միասին նաև թուրքական և հնագույն շրջանի քուրդական, արաբական և պարսկական ցեղերը։

Այնուհետև՝ յեկվոր այս բնակչությունը շարունակ աճել է թե մոնղոլական տիրապետության ժամանակ և թե հետագա դարերում, որովհետև պարբերաբար Հայաստան են գաղթել թուրքական նաև նոր ցեղեր։

Շատ բնական է, որ հայկական խոշոր կալվածատիրությունը հարկադրված էր լինելու զիջել աստիճանաբար իր դիրքերը յեկվոր գաղթականության։ Հասկանալի յե նույնպես, որ արաբական տիրապետության հնագույն շրջանից սկսած ի հաշիվ հայկական խոշոր կալվածատիրության զարգանալու յեր Հայաստանում օտար տարրերի կալվածատիրությունը, որը մեծ նվաճումներ էր արել, գլխավորապես, թուրք-թաթարական արշավանքներից հետո՝ 11—15-րդ դարերում։

Հայկական ֆեոդալիզմը, որի աստիճանական ծագումը մենք յենթադրում ենք նախարտաշեսյան շրջանում և վերջնական քայքայումը 14—15-րդ դարերում, յեղել է, անտարակույս, Հայաստանի անցյալի հիմնական առանցքը նրա

պատմական զարգացման գրեթե բոլոր շրջաններում մինչև Պարսից ու Ոսմանցոց տիրապետությունը։

Ֆեոդալիզմի այդ բացառիկ յերկար տևողությունը պարզ մի չափանիշ է, անշուշտ, Հայաստանի տնտեսական հետամնացության և տնտեսական առաջադիմության այն պայմանների բացակայության, վորոնք վերջ եյին դրել ֆեոդալիզմի գոյության Արևմտյան Յեվրոպայում։

Վերև մենք տեսանք, վոր Հին Հայաստանի միջով անցել է համաշխարհային տարանցիկ առևտրի հյուսիսային գիծը և վոր այդ հանգամանքը մեծապես նպաստել է Հայաստանի քաղաքների զարգացման։

Արդ՝ *ինչով* բացատրել, վոր Հին Հայաստանի քաղաքները ֆեոդալիզմի նկատմամբ չեն կատարել նույն հեղաշրջող դերը, վոր ունեցել եյին ուշ միջնադարում Արևմտյան Յեվրոպայի քաղաքները։

Այդ խիստ հետաքրքիր, բայց դժվար ու բարդ մի խնդիր է, վոր կարոտ է դեռ հատուկ ուսումնասիրության։

Հիմնական պատճառներից մեկը, վոր ինձ հավանական է թվում, քննության է առնված Հին Հայաստանի առևտրի ու քաղաքների զարգացման վերաբերյալ ռուսերեն իմ աշխատության մեջ (տես „О торговле и городах Армении". եջ 71—75)։

Ռուսերեն այդ գրքում մատնացույց է արված, վոր տնտեսական հարատև զարգացման տեսակետից Հին Հայաստանը գտնվել է խիստ աննպաստ պայմաններում շնորհիվ իր բուֆերական աննպաստ դրության։ Լուկուլլոսի և Պոմպեոսի մեծ հաղթություններից հետո՝ Հայաստանը, ինչպես հայտնի յե, դառել եր բուֆեր պետություն Հռոմի և Պարթևաց թագավորության միջև։

Հին Հայաստանի չարաբաստիկ այդ դրությունը Արևմուտքի և Արևելքի մրցող մեծ պետությունների միջև, վոր շարունակվել է նաև բյուզանդական-սասանյան և բյուզանդական-արաբական շրջաններում, գլխավոր հենց պատճառներից մեկն է, վոր անդրադարձել է նրա բարեկեցության

*վրա և խիստ անբարեհաջող ազդեցություն ունեցել Նրա քաղաքական ու ներքին զարգացման վրա։*

*Վ. Գուրկո-Կրյաժինի կարծիքով՝ մրցող այդ մեծ պետությունների բախումն ունեցել է իր հիմքում տնտեսական խոր պատճառներ, իսկ Հայաստանը կատաղի այդ պայքարում կատարել է հաճախ զինադաշտի միայն դեր։ Կռվող պետությունների համար այդ զինադաշտին տիրապետելը խիստ կարևոր էր և պայմանավորված էր վոչ միայն այն հանգամանքով, վոր Հայաստանում գտնվում էր անդրասիական ճանապարհի կողմնակի ճյուղերից մեկը, այլ, գլխավորապես, այդ յերկրի ռազմագիտական նշանակությամբ։*

*«Շնորհիվ իր ֆիզիկական-աշխարհագրական պայմանների — ասում է Գուրկո-Կրյաժինը — Հայաստանը միշտ յեղել է իբր հսկայական բնական մի միջնաբերդ և իշխել է շրջակա յերկրների վրա։ Մի կողմ թողնելով Նրա առանձին լեռնակույտերի բարձրությունը (Արարատի, Արագածի, Բինգյոլ-դաղի, Ղարաբաղի և ուր.), նույն իսկ Նրա հովիտներն ունեն մի քանի հազար ֆուտնաչափ բարձրություն ծովի մակերևույթից։ Բացի այդ՝ այս ահագին բարձրավանդակը հարևան Իրանականի նման շրջապատված է ամեն կողմից իբր բերդային պատնեշով, վոր կազմված է Հայկական և Պոնտական Տավրոսի վիթխարի լեռնազանգվածներից և Անդրկովկասյան «պայտից»։ Շնորհիվ դրան՝ Հայաստանը, իրոք, ներկայացնում է իրանից բնական մի բերդ՝ շրջապատված բոլոր կողմերից անմատչելի վորմերով։ Յեվ հենց այս հանգամանքը տալիս էր այդ յերկրին բոլոր դարերում առաջնակարգ ստրատեգական նշանակություն, վորովհետև նրան տիրացողն իշխում էր Կուր գետի հովիտների, Ադրբեյջանի տափաստանների, Միջագետքի հարթությունների և, վերջապես, Անատոլիայի դաշտավայրերի և իրանց բարձրությամբ աննշան բարձրավանդակների վրա» (տես* В. Гурко-Кряжин, Прошлое и настоящее советской Армении, „Новый Восток“, 1927, кн. 16—17):

Հայկական բարձրավանդակի հենց այս ռազմագիտական նշանակությամբ բացատրում է Գուրկո-Կրյաժինը Հայաստանի պատմության խաչաձևումը և միավորումը համաշխարհային պետությունների պատմության հետ, նաև այն համառ, կատաղի կռիվները, որ հազարավոր տարիների ընթացքում վարել են այստեղ մեծ պետությունները Հայաստանին տիրանալու նպատակով։

> «Հենց նույն այս փաստը — ինչպես ճիշտ մատնացույց է անում Գուրկո-Կրյաժինը — կասեցրել է միշտ և աղճատել Հայաստանի պատմական զարգացման ընթացքը, յենթարկելով նրան հարևան, ավելի հզոր պետությունների քաղաքական-տնտեսական շահերին»։

Ցեվ իրավի, ինձ թվում է, կարելի չէ դրականապես պնդել, որ քաղաքական տեսակետից Հայաստանի նշանակությունը և գործունեությունը կախում է ունեցել շարունակ հարևան մեծ պետություններից, և սրանք են գաղտնի կամ հայտնի համաձայնությունների միջոցով վճռել կանխորոք նրա պատմական ճակատագիրը։

Պոմպեոսի հաղթությունից հետո՝ Հայաստանը, ինչպես հայտնի չէ, ճանաչվելով «բարեկամ ու դաշնակից հռոմեական ժողովրդի», գտնվել է գրեթե մեկ դար Հռոմի ազդեցության շրջանակում։

Այնուհետև՝ վաթսունական թվականներին Քրիստոսից հետո, պարթևների ու հռոմայեցիների յերկուստեք համաձայնությամբ, հաստատվել եր Հայաստանում հայ Արշակունիների թագավորությունը, որ գտնվում եր Հռոմի անվանական գերիշխանության տակ։

Դարձյալ հատուկ դաշնագրությամբ Հայաստանը 387 թվին բաժանել եյին իրար մեջ Բյուզանդիան և Սասանյան Պարսկաստանը։

Այս բաժանումից հետո՝ աշխարհակալական կռիվը Արևմտքում ընդունել եր արտաքուստ կրոնական գունավորում։ Հայկական լեռնաշխարհի ստրատեգական կարևորության

պատճառով՝ կռվող մեծ պետությունները՝ Բյուզանդիան և Սասանյան Պարսկաստանը՝ խիստ համառ պայքար եյին մղում այստեղ յերկրի ներսում, նպատակ ունենալով միախառնել իրանց հետ նրա բնակչությունը կրոնական ու կուլտուրական ձուլման միջոցով։

Այս յերկարատև պայքարում ֆեոդալական հայ շրջանները, վորոնք բաժանումից հետո պահպանել եյին նախարարական իրանց հին կազմակերպությունը, կարողացան պաշտպանել իրանց ներքին ինքնուրույնությունը։ Սոցիալական-քաղաքական ու կրոնական-կուլտուրական իր ինքնուրույնությունը պահպանելու համար նախարարական Հայաստանը՝ թե քաղաքական և թե ինքնապաշտպանման նկատառումներով՝ բաժանվեց բյուզանդական յեկեղեցուց և ընդունեց միաբնակների յեկեղեցու դավանանքը։ Միանգամայն հասկանալի յե, վոր միաբնակ հայ յեկեղեցու հանդեպ, վորը թշնամի յեր քաղկեդոնականության, Սասանյան Պարսկաստանն ունենալու յեր հանդուրժող ու բարյացակամ վերաբերմունք։

Հունա-հռոմեական Արևմուտքի կռիվներն իրանական Արևելքի դեմ, վոր սկսվել եյին առաջին դարում Քրիստոսից առաջ, շարունակվել են ընդհատումներով մոտ յոթը դար։ Այդ կռիվները, վոր վեցերորդ դարում և յոթերորդ դարի սկիզբներում հաճախակի եյին դառել և ստացել կատաղի բնույթ, այնքան եյին ուժասպառ արել նրանց, վոր վոչ Բյուզանդիան վոչ ել Սասանյան Պարսկաստանը չկարողացան կասեցնել արաբական հաղթական արշավանքները և Առաջավոր Ասիայում հաստատվեց այնուհետև արաբական խալիֆայության իշխանությունը։

Այդ համառ կռիվների ժամանակ Հայաստանը, լինելով հաճախ պատերազմների մարտադաշտ, ստացել ե ծանր ու անբուժելի հարվածներ։ Նա պարբերաբար ավերվել ու կողոպտվել ե, բնակչությունը սրի մատնվել կամ գերվել, իսկ քաղաքները յենթարկվել են հիմնահատակ կործանման։ Պարբերաբար կրկնվող այդ ավերածություններից հետո անհրա-

ժեշտ է յեղել տոկուն աշխատանքով վերակառուցել քարու-
քանդ արված յերկիրը, կործանված քաղաքները և նորից
վերականգնել նախկին բարեկեցությունը։

Հին Հայաստանի տնտեսական ու ներքին կյանքի զար-
գացման վրա այդ ծանր ու պարբերական աղետներն ունե-
նալու եյին ըստ իս բացասական ազդեցություն։

Նրանք արգելք եյին յերկրի բարեկեցության անընդ-
հատ ու հարաճուն առաջադիմության, առաջ եյին բերում
յերկարատև կանգառում, իսկ յերբեմն, բացարիկ ծանր ու
հարատև ցնցումներից հետո և, գլխավորապես, առևտրական
հարաբերությունների ընդմիջումների ժամանակ, Հայաստանի
տնտեսական զարգացումը հետ եր մղվում իր առաջավոր
դիրքերից։

Այդ զարգացումը, վոր գտնվել է հաճախ տնտեսական
ու առևտրական հարաբերությունների և քաղաքների բար-
գավաճման համեմատաբար բարձր մակարդակի վրա, ար-
տաքին արհավիրքների պատճառով հետ է շպրտվել և վեր-
սկսվել բնական տնտեսության զորեղացման հետադարձ հիմ-
քերի վրա։

Յեթե Հայաստանի տնտեսական զարգացումը յերևակա-
յենք գծագրորեն, կըստացվի, իմ կարծիքով, վեր ու վայր
ձգվող կեռմանաձև մի գիծ, վոր արտահայտում է Հայաս-
տանի արտասովոր յերերուն դրության, բայց հատկանշային
չե բոլորովին յեվրոպական յերկիրների զարգացման համար
միջին դարերում։

Յեթե չլինեյին տնտեսական զարգացման այդ աննպաստ
պայմանները, թվում է ինձ, վոր քաղաքային տնտեսությունը,
աստիճանաբար ուժեղանալով, կարող եր Հայաստանում ևս
հետզհետե կազմալուծել նախարարական հին կարգերը, առաջ
բերելով տնտեսական, սոցիալական ու քաղաքական նոր հա-
րաբերությունների զարգացում։

Նման փոփոխման վորոշ նշաններ, ինչպես մատնանշել
ենք ռուսերեն մեր աշխատության մեջ („О торговле и го-
родах Армении", եջ 148—149), նկատելի յեն Բագրատու-

նյաց թագավորության ժամանակ, յերբ Հայաստանի խոշոր առևտրական քաղաքները հասել եյին իրանց զարգացման ամենաբարձր աստիճանին։

Արձանագրությունների տեղեկություններից յերևում ե, վոր այս շրջանում դրամական շրջանառությունը տարածվել եր ամբողջ յերկրում ամենամեծ չափերով։ Մեր հին աշխատություններից մեկում մենք ցույց եյինք տվել, վոր 10-րդ դարի և 11-րդ դարի առաջին կեսի տուրքերից շատերը յեղել են դրամական (տես «Հայաստանի պատմությունը Թուրք-թաթարական արշավանքների շրջանում», Յերևան 1922, եջ 93—94)։

Սյունյաց Սուփան իշխանի 901 թվի Մաքենյաց վանքի արձանագրության մեջ ասված ե.

> «Եւ ետու զսեփական տեղն մեր ի սա, որ ըստ անուան եկեղեցւոյս Աստուածածին ասի, ամենայն սահմանաւք՝ լերամբ և դաշտիւ, և ետու որս ձկանց, զԲողաշէն սեղանոյն, և ութն հարիւր դրամ ի Դեղձանագետոյ ղապալէն, երկուհարիւր դրամ ի Կաթկայ, երեքհարիւր յիսուն յԱնմեռէն, որ լինի ումծ դրամ ՌՅԾ. (տես «Վիմական տարեգիր», կազմ. Կ. Կոստանյանց, Ս. Պետերբուրգ 1913, եջ 5, հմմտե նաև «Ստեփաննոս Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս 1911, եջ 179)։

Նմանապես՝ Շապուհ Բագրատունին, Հայոց Աշոտ թագավորի վորդին, 903 թվի Վանեվանի արձանագրության մեջ ասում ե.

> «Եւ ետու հինգ գեղոց սահման՝ Կոթաքարն, Աղարոյ վանսն, Շաւառնահողն, Գետամէջն, Կթանոցն, Գետավանաց ծովն, երկուհարիւր վաթսուն դրամ ի Կոթաքարէն, հինգհարիւր երեսուն ի Բրտեննեացն, վեցհարիւր վաթսուն յԱղարոյ վանացն ծովէ, իննհարիւր իննսուն ի Կարբին գետերէն և ի Նաւերէն» («Վիմական տարեգիր», եջ 6 և Ստեփ. Օրբել. Լէ, եջ 182)։

*Գագիկ Շահնշահը 1010 թվի Մաստարայի արձանագրության մեջ հայտնում է.*

> *«կամ եղև ինձ Գագկայ Շահինշահի, որդւոյ Աշոտոյ, թողուլ զՄաստարայի հարկին զաւելորդն զռ. և ածի եռ» («Վիմական տարեգիր» էջ 13)։*

*Այս արձանագրությունների բովանդակությունից կարելի յե նաև յեզրակացնել, վոր վերև հիշատակված տուրքերի մի մասը գյուղական տուրքեր են, վոր ստացվում եյին դրամով։*

*Արիստակես Լաստիվերտցու վկայություններից ես հայտնի յե, վոր դրամական տնտեսության աճման ու խորացման հետ զուգընթաց ուժեղացել եր այս շրջանում վաշխառուական կապիտալի դերը և ծանրացել բնակչության ստորին խավերի դրությունը.*

> *«Բայց յորմէ հետէ մտին յեկեղեցիս մեր Սեքարայիք (°) և Պիհառնացիք — վկայում է Լաստիվերացին — և արդարութեան օրէնքն յանիրաւութիւն դարձաւ, և յարգի եղև արծաթսիրութիւն քան զաստուածսիրութիւն, և մամոնայն քան զՔրիստոս՝ յայնժամ ամենայն համեստութիւն կարգաց ղառածեալ՝ յանկարգութիւն դարձաւ։ Իշխանք սորա [Արծն քաղաքի] գողակիցք եղեն գողոց, վրիժագործք և արծաթոյ ծառայք. դատաւորք սորա կաշառառուք և վասն կաշառաց գողանայրին զիրաւունս. և դատաստան որբոց ոչ առնէին, և զիրաւունս այրեաց ոչ խոնարհէին։ Վաշխից և տոկոսեաց օրէնք եդան և ցորենոյ բազմապատկութիւն, որով երկիր պղծի և արգելու զարգանդ առ ի տալոյ զպտուղ ի ժամու իւրում առ ի կերակուր մարդկան։ Որ խաբէր զընկերն՝ պարծէր իմաստուն զոլ, և որ յափշտակէր՝ ասէր, Ես հզօր եմ։ Զտունս տնակից աղքատացն և զսահմանս անդաստանաց նոցա յափշտակէին մեծատունքն, և չկաթէր ի լսելիս նոցա աստուածապատուէր անէծքն դրեալք ի ձեռն Մովսեսի ծառայի*

*տեառն՝ «Անիծեալ է, ասէ, որ յափշտակէ զարտս ընկերին» («Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912, ԺԲ, էջ 79–80)։*

*Նկարագրելով Անի քաղաքի ավերածությունը և կոտորածը 1064 թվին՝ նույն հեղինակը վաշխի մասին տալիս է պատկերավոր կերպով նաև հետևյալ տեղեկությունը.*

*«Այլ և ի ճարպոյ անիրաւութեան ի նմա գործելոցն տոչորեցաւ բարձրաշէն և գեղեցկայարմար ապարանքն, և եղև ամենայն բնակութիւնն իբրև հողաբլուր. և վաշխն և նենգութիւնն որ ի նմա խափանեցաւ։ Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, և ի քրտանց տնանկաց փարթամանան, և ի վաշխից և յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն. և ինքեանք զմիտս իւրեանց անողորմ ունելով առ աղքատս և տնանկս՝ միայն հեշտութեան և փափկութեան սպասեն, և ի գործոց աղտեղութեան ոչ խորշին, այլ միայն արբեալ լինին ի ցանկութեանցն որ զնոսա ըմբռնեալ ունի» (Նույնը, ԻԴ, էջ 166—167)։*

*Ուշագրավ է նաև այն, որ հենց այս շրջանի համար մենք ունենք տեղեկություններ ապստամբությունների մասին, որ տեղի են ունեցել տասներորդ դարի առաջին քառորդում[1]։*

*Որ Բագրատունյաց թագավորության ժամանակ որոշ բեկումն էր առաջացել փողային տնտեսության ու ապրանքային փոխանակության զարգացման ուղղությամբ և միաժամանակ ուժեղացել էր բնակչության ստորին խավերի անողոք շահագործումը՝ այդ լերևում է ըստ իս նաև Արիստակես Լաստիվերտցու կրոնա-բարոյական դատողություններից նախկին ժամանակների առաքինի բարքերի ու յերանավետ կյանքի մասին, որ նա հակադրում է իր ժամանակվա*

---

[1] *Տես «Յովհաննու կաթուղիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912, էջ 258—259։*

*անիրավ ու արծաթասեր բարքերին և փարթամ ու շվայտ կենցաղին։*

*Ժամանակակից աղբյուրների բոլոր այս վկայությունները հավանական ու ուշագրավ ակնարկներ են, որ այս շրջանում Հայաստանի տնտեսական կյանքը վերակառուցվում էր նոր հիմքերի վրա։*

*Կարելի է, հետևապես, ենթադրել, որ Բագրատունյաց շրջանի քաղաքների արագ բարգավաճումը, առևտրի, արհեստների ու արդյունագործության մեծ զարգացումը, ինչպես և հարուստ և ազդեցիկ հայ առևտրական ու բուրժուական դասակարգի աստիճանական զորեղացումը, Հայաստանում ևս հետզհետե նպաստելու էին տնտեսական, սոցիալական ու քաղաքական նոր հարաբերությունների առաջացման, և միանգամայն հնարավոր է, որ այստեղ ևս ֆեոդալիզմը կքայքայվեր ներքուստ, եթե Բագրատունյաց Հայաստանի զարգացման այս ընթացքը չընդհատվեր Սելջուկյան արշավանքների ժամանակ։*

*Թռուցիկ այս ենթադրությունները Հայաստանի տնտեսական զարգացման առանձնահատկությունների և հայկական ֆեոդալիզմի հարատևության մասին նախնական ընդհանուր դիտողություններ են, որ կարոտ են, անշուշտ, մանրամասն ու հատուկ ուսումնասիրության։*

## 10. ՀԱՅ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԵՎ ԿԵՆՏՐՈՆԱԽՈՒՅՍ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԵՐՔԻՆ ՊԱՅՔԱՐԸ

*Արշակունյաց Հայաստանի քաղաքական պատմության էական կողմերից մեկը կազմում էր, ինչպես հայտնի է, թագավորական իշխանության համառ ու արյունահեղ պայքարն ընդդեմ կենտրոնախույս ու ապստամբ նախարարությունների։*

*Այդ պայքարի մասին փաստական առատ տեղեկություններ հայտնի են մեզ միայն Արշակունյաց թագավորության քրիստոնեական շրջանի համար, գլխավորապես, Փավստոսի պատմությունից։ Այդ տեղեկությունները թեև գունավորված են ու անգամ խեղաթյուրված ի նպաստ կղերական ու Մամիկոնյան կուսակցության, սակայն, բարեբախտաբար, Փավստոսի չափազանցությունները և սխալ տեղեկությունները կարելի է հաճախ ուղղագրել Ամմիանոս Մարկելլինոսի վկայությունների օգնությամբ։*

*Հիմնական այս երկու աղբյուրի քննական ուսումնասիրությամբ, ինչպես ցույց է տվել պրոֆ. Մարկվարտը, Արշակունիների պայքարը նախարարությունների դեմ ստանում է բոլորովին նոր լուսաբանություն։*

*Ինքն ըստ ինքյան հասկանալի է, որ Արշակունյաց Հայաստանում էլ, ինչպես և միջնադարյան Եվրոպայի ֆեոդալական միապետություններում, թագավորական իշխանության ու ֆեոդալական հզոր ու ինքնուրույն տերությունների քաղաքական ձգտումները երբեմն իրար ընդդեմ էին ու հակադիր։*

*Հայ Արշակունիները, որոնց գերիշխանության տակ գտնվում էին բդեշխությունները և մյուս նախարարու-*

թյունները, պետք է, անշուշտ, ամեն կերպ ձգտեյին ընդլայնելու իրանց թագավորական իշխանությունն ու իրավունքները և ստեղծելու ֆեոդալական կենտրոնացած ու զորեղ մի պետություն, իսկ ֆեոդալական վերոհիշյալ իշխանությունները շահագրգռված եյին, ընդհակառակը, վոչ միայն պահելու, այլ և ընդարձակելու իրանց անջատ ու անկախ իրավունքները։

Փավստոսի և Ամմիանոս Մարկելլինոսի վկայություններից յերևում է, վոր նախարարական պառակտումները և արյունահեղ խռովությունները նույնքան զորեղ եյին Արշակունյաց ժամանակ, ինչպես և հետագա շրջաններում։

Հայաստանի սահմանակից մեծ պետություններն ոգտվում եյին, ինչպես հայտնի յե, հայ իշխանությունների ներքին այդ յերկպառակություններից և աջակցում ու հովանավորում խռովարարներին։ Սասանյան Պարսկաստանը և Բյուզանդական կայսրությունը չեյին կարող, բնականաբար, հանդուրժել Հայաստանի միացումն ու զորեղացումը, ուստի և իրանք եյին հաճախ յերկպառակում յերկիրը և պաշտպանում իրանց քաղաքականության հլու և հաճելի, խռովարար ու ըմբոստ իշխաններին։

Գտնվելով Արևելքի և Արևմուտքի մշտական ընդհարումների շեմքին և լինելով միջազգային պայքարի ու մրցությունների առարկա, Հայաստանը, բուֆերական իր այդ դրության պատճառով, չեր կարող, բնականաբար, իր ձեռքն առնել իր սեպհական ճակատագրի տնորինումը, այլ նրա քաղաքական վիճակը կարգավորում եյին միշտ, ինչպես վերև ասացինք, շահագրգռված մեծ պետությունները։

Շատ պարզ է, վոր Արշակունիներին դժվար պիտի լիներ քաղաքական այս պայմաններում ստեղծել ֆեոդալական զորեղ ու կենտրոնացած մի պետություն։

Առաջին յերեք դարում Քրիստոսից հետո Արշակունիների ու նախարարությունների փոխհարաբերությունները մեզ միանգամայն անհայտ են աղբյուրների բացակայության պատճառով։ Արշակունյաց թագավորության քաղաքական

ներքին անցքերը հայտնի յեն մեզ միայն Խոսրով Կոտակից (հավան. 330—339 թ.) սկսած։

Սրա թագավորության ժամանակ նկարագրված է Փավըստոսի մոտ «Մանաւազենից և Որդունւոց» նախարարությունների արյունահեղ կռիվը, վոր ինքնին արդեն մի ապացույց է Խոսրով Բ-ի հեղինակության և թագավորական իշխանության թուլության։

> «Եւ զայն ժամանակաւ — պատմում է Փավստոսը — յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անզանէին ընդ միմեանս, մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ և տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց իրաւանց։ Եւ պղտորէին զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանաւազեան տոհմին և միւս ես նահապետն Որդունւոց տոհմին։... Ապա առաքեցին թագաւորն Խոսրով և մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպատուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս ի մէջ նոցա, խնդրել ի հաշտութիւն խաղաղութեան։ Երթեալ հասանէր ի մէջ նոցա երանելին Աղբիանոս, զնոսա ուղղել նուաճել ընդ միմեանս հաշտեցուցանել։ Անարգեցին զնա և ոչ լուան բարեխօսութեանն եկելոյն. անգոսնեցին զյղելիսն և մեծաւ թշնամանօք արձակեցին զեպիսկոպոսն և առնուին աւերէին զտունն արքունի» (տես III, Դ, եջ 9)։

Փավստոսի պատմելով, նախարարական այդ հին տոհմերը թագավորի հրամանով սրի յեն անցկացրել և իսպառ բնաջինջ արել Մամիկոնյան Վաչե զորավարը։

Մեջ բերված վկայությունից կարելի յե, իմ կարծիքով, կռահել, վոր նախարարությունները, լինելով կենտրոնական իշխանությունից գրեթե անկախ, ըստ յերևույթին, մասնավոր պատերազմների վարումը համարել են իրանց որինական իրավունքը, իսկ թագավորական իշխանությունը համարել է այդ «մարտ պատերազմի առանց իրաւանց»։ Մասնավոր

կռվի հենց նույն իրավունքը, ինչպես հայտնի յե, իրանց արտոնությունն են համարել ֆեոդալական իշխանություն-ները նաև միջնադարյան Յեվրոպայում ու Անգլիայում, և այստեղ ևս թագավորական իշխանությունը, իրան զորեղ զգալով, չի ճանաչել ֆեոդալների այդ իրավունքը։

Խոսրով Բ-ը, ինչպես դժվար չե յեզրակացնել Փավստոսի վկայություններից, գտնվում եր հոգևորականության, Մա-միկոնյանների և նախարարական այն խմբի ազդեցության տակ, վոր համակրող եր ու կողմնակից հռոմեական կայս-րության։

Սասանյան Պարսկաստանը չեր կարող, բնականաբար, հանդուրժել Հայաստանի քաղաքականության այդ ուղղու-թյունը։ Յեվ, հավանորեն, հենց նրա ձեռնտվությամբ տեղի եյին ունեցել Բզնունյաց Դատարեն նահապետի դավաճա-նությունը և Աղձնյաց Բակուր բդեշխի ապստամբությունը, վոր հիշատակված են Փավստոսի պատմության մեջ (III, Ը, եջ 19—20 և III, Թ, եջ 21)։

Փավստոսի վկայությամբ՝ Խոսրով Բ-ը, վախենալով վոր նաև մյուս մեծ նախարարությունները կարող են դավաճա-նություն գործել կամ ապստամբել, հատուկ որենք եր սահ-մանել, վոր «բիւրաւորքն և հազարաւորքն» միան ու շրջին իր հետ և հեռու լինեն արքունի զորքերից։

Խոսրովի այս կարգադրությունը մի ապացույց ե դար-ձյալ նրա թագավորական իշխանության թուլության և նախարարությունների կենտրոնախույս ու խռովարար արա-մադրությունների։

> «Բայց յետ այսորիկ — վկայում ե Փավստոսը — ոչ դադարէին Պարսք ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. և նա դնէր օրէնս, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն, կայցեն առ արքա-յին և ընդ նմա շրջեսցին, և մի ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս արքունի։ Զի երկնչէր նա յերկմտութենէ նոցա, զի գուցէ զնոյն գործ Դատաբենայն գործիցեն

> և ապստամբ լինիցին ի նմանէ։ Բայց վստահ լինէր ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց Մեծաց և ի քաջ Վահան յԱմատունին» (տես III, Ը, էջ 20)։

Արշակունիների պայքարը կենտրոնախույս և ապստամբող նախարարությունների դեմ շարունակվել է նաև Տիրանի, Արշակ Բ-ի և Պապի ժամանակ։

Տիրանի թագավորության շրջանում (հավանորեն՝ 339—350 թ.), վորը յեկեղեցու և Մամիկոնյանների հանդեպ բռնել եր անկախ դիրք և աշխատում եր պահպանել թագավորական իշխանության հեղինակությունը, ներքին խռովությունները այնքան սաստկացել եյին, վոր յերկիրը հետզհետե մատնվել եր կատարյալ անիշխանության։

Փավստոսի մոտ, վոր կուսակցական պատմիչ ե Գրիգոր Լուսավորչի տոհմի և Մամիկոնյանների, պատմական այս շրջանի անցքերը ներկայացված են, անտարակույս, այլայլված ձևով, իսկ պատմական խոշոր դեմքերը, վոր հակառակորդ եյին հոռմեասեր կուսակցության, նկարագրված են, բնականաբար, ամենամռայլ ու քստմնելի գույներով։

Տիրանի թագավորության ժամանակ քաղաքական խոշոր դեր ե կատարել, ինչպես յերևում ե Փավստոսի վկայությունից, «մարդպետութեան» մեծ իշխանը, վորը, ինչպես վերև տեսանք, վոչ միայն վերակացու յեր արքունիքի և թագավորի կանանոցի, այլ և վերահսկող թագավորական ամրությունների ու բերդերի, նաև արքունի գանձերի ու կալվածների։ Փավստոսը շանթ ու թույն ե թափում այս մեծ իշխանի վրա և, գլխավորապես, նրան ե վերագրում թագավորության խանգարումը Տիրանի ժամանակ։

> «Բայց յայնմ յանմիտ թագաւորութեանն ժամանակի — պատմում ե Փավստոսը — ոչ միայն թշնամիք թշնամեաց և բարեկամք բարեկամաց և ընկերք ընկերաց դաւաճանութիւնս մատնութիւնս սկսան յարուցանել ի մէջ Հայաստան երկրին և բեւր ազգի ազգի

*թշնամութիւնս գործէին։ Վասն զի անկաւ ի նոսա խռովութիւն ի տեառնէ, այս պղծութեան և ոգի մոլորութեան. զի նախ միմեամբք քանդեալք աւերեցան վասն անօրէնութեան իւրեանց։ Բայց քան զամենեսին աւելի այր մի անօրէն և այսամուտ, որ աւելի ընդ ազգս նախարարացն գրգռէր զթագաւորն Տիրան։ Այս ինքն որ ունէր զպատիւն մեծի մարդպետութեանն, այր ներքինի՝ չարասիրտ չարախորհուրդ չարագործ, որում Հայր կոչէին։ Զբազումս ի նախարարացն ետ քսութեամբ առանց վնասու կոտորել և խանգարեաց զմեծ տէրութիւն թագաւորութեանն։ Մանաւանդ աւելի զերկու տոհմսն զաւագս տայր իւրով չարախօսութեամբն հանել ընդ սուր, և անունդ առնել միահաղոյն զտոհմսն Ռշտունեաց և զտոհմն Արծրունեաց. բառնայր ի միջոյ առանց ամենայն վնասու և յանցման, մինչ անգամ և զէգսն կոտորեցին ազգացն»* (III, *ժԸ, եջ 46—47)։*

*Քննության առնելով «մարդպետութեան» մասին Փավստոսի թե այս և թե մյուս վկայությունները, Մարկվարտը միանգամայն ճիշտ յենթադրում ե, վոր մարդպետները պետական նշանավոր անձնավորություններ եյին, վորոնք նպատակ եյին դրել իրանց վերականգնել Արշակունյաց թագավորության հին փայլը և թուլացնել բարձր ազնվականության ու յեկեղեցու ուժը։ Իրանց այդ նպատակին հասնելու համար նրանք արքունիք եյին գրավում նախարարական խոշոր կալվածները և իրագործում այդ ամենադաժան վճռականությամբ (տես* Markwart, Südarmenien und die Tigrisquellen, *եջ 155—156 և 61*—62*)։*

*Արծրունյաց ու Ռշտունյաց տոհմերի բնաջնջումը, վոր նկարագրված ե Փավստոսի վկայության մեջ, Մարկվարտը բացատրում ե նրանով, վոր նախարարական այդ տոհմերի յերկիրները գտնվելով Ատրպատականի, Աղիաբենեյի և Մոկքի սահմանների մոտ, ունեյին ռազմական մեծ կարևորություն, ուստի և այդ շրջաններն անհրաժեշտ ե համարվել յենթարկել*

Արշակունիների անմիջական իշխանության (տես նույնը, էջ 59*—60*)։

Նախարարությունների վոչնչացման և թագավորական յերկրի ընդարձակման նույն քաղաքականությունը վարել է Հայր մարդպետը նաև Արշակ Բ-ի թագավորության ժամանակ։

> «Եւ էր մարդպետն Հայր — վկայում է Փավստոսը — այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անհրաւ քան զառաջին Հայր անուն մարդպետսն։ Սա կոտորեաց զամենայն ազգս նախարարացն ի ժամանակս թագաւորութեանն Տիրանայ արքային. և սոյնպէս առ թագաւորութեամբն Արշակայ՝ ես չար քան զառաջինն գործել չար առ ամենայն մարդ» (IV, ԺԴ, էջ 116—117)։

Հավանորեն, հենց նույն այս Հայր մարդպետի ներշընչումներին պետք է վերագրել նաև Կամսարականների տոհմի կոտորածը, վոր հիշատակված է Փավստոսի հետևյալ վկայության մեջ.

> «Այլ ահա ի ժամանակին՝ յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս և ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին՝ որ տայր նմա զյանդիմանութեան զխրատն, այնուհետև ըստ կամաց չարութեանն իւրոյ գնացեալ լինէր նա [Արշակ]՝ և զբազումս ի նախարարացն կոտորեաց, զբազումս ազգատ արարեալ անճիտեաց և զբազմաց տունս հատանէր յարքունիս։ Բայց զտոհմն Կամսարականացն՝ որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ առնէր և զգաւառսն ունէր յոստան» (IV, ԺԹ, էջ 133)։

Հետաքրքիր է ու ուշագրավ, վոր նախարարական վերոհիշյալ տոհմերի փրկիչ հանդիսանում եյին գրեթե միշտ Մամիկոնյանները։

Դեռևս Խոսրով Կոտակի ժամանակ, յերբ բնաջինջ եր արվել Աղձնյաց Բակուր բդեշխի ամբողջ տոհմը, նրա պա-

տանի վորդիներից մեկը փախել և թագնվել էր Մամիկոնյան Վաչե զորավարի տանը և հետագայում դառել ժառանգ Աղձնյաց բդեշխության։ Արծրունյաց և Ռշտունյաց տոհմերի կոտորածի ժամանակ՝ արքունիք էյին բերել նույն տոհմերի յերկու ազատված յերեխաներին՝ Տաճատին և Շավասպին։ Փավստոսի պատմելով՝ թեև Տիրանը հրամայել էր նրանց փողոտել, սակայն Արտավազդ և Վասակ Մամիկոնյանները փրկել էյին այդ յերեխաներին և տարել իրանց հետ Տայք։ Նմանապես և Կամսարականների բնաջնջման ժամանակ՝ Մամիկոնյան Վասակ սպարապետը թագցրել և փրկել էր նույն տոհմից Սպանդարատ անունով մի փոքր յերեխա, վորը հետագայում ժառանգել էր իր տոհմի կալվածները։

Ավելորդ չեմ համարում մեջ բերել Փավստոսի համապատասխան վկայությունները, վոր խիստ կարևոր են Մամիկոնյանների քաղաքական դեմքը պարզելու համար։

1. Փաւստոս, III, Թ, եջ 21՝

«Բայց յորդւոցն Բակուր բդեշխի պատանեակ մի փախեաւ անկաւ առ զօրավարն Հայոց Վաչէ և անդ ապրեցաւ թագուցեալ ի տան նորա։ Որ առ յապա ժառանգ տան նորա լինէր։ Որ յայլում ժամանակի դարձաւ կալաւ զտունն իւր. որոյ անուն Խեշա կոչէր»։

2. Նոյնը, III, ԺԲ, եջ 47՝

«Յայնմ ժամանակի ի գայթակղի գտանէին ի դայեակս մանկունս փախստեայս, զՏաճատ որդի Մեհընդակայ ըՌըշտունւոյ և միւս ևս Շաւասպ որդի Վաչէի Արծրունւոյ՝ տղայք ստնդիայք զոր ածին առաջի թագաւորին։ Իբրև տեսանէր, տայր հրաման հանել փողոտել զմանկունսն. զի նոքա ևեթ ճետք մնացեալ էին յազգացն։ Եւ անդ դիպեալ Արտաւազդ և Վասակ, արք ի Մամիկոնեան տոհմէն, որք էին զօրավարք ամենայն զօրացն Հայոց, որք յարուցեալք անկան ի վերայ մանկանցն տղայոց, մէն մի յանթի հարեալք՝ ի դուրս գնացին. զէնն ի վեր առեալք, կռուոյ պատրաստէին՝

*ի վերայ այնց մանկանց մնուանել։ Զի թէպէտ և սնուցանէին նոքա զորդին զարքային զԱրշակ, սակայն զչարեալք ընդ գործ ժամանակին՝ թողին զսանն իւրեանց զԱրշակ և գնացին ի բաց ի բանակէն արքունի։ Եւ չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց. և անդ նստան ամս բազումս ընտանեօք իւրեանց և թողին զայլ զտուն իւրեանց։ Եւ սնուցանէին զայն մանկունսն՝ զՇաւասպն և զՏաճատ. և ետուն նոցա զդստերս իւրեանց ի կնութեան, ուստի դարձեալ միւսանգամ ազգն այն սերեցան, և ոչ խառնէին նոքա ի խորհուրդս Հայոց մինչև ի բազում ամս»։*

*3. Նույնը, IV, ԺԹ, էջ 133՝*

*«Բայց յազգէն յայնմանէ [Կամսարականաց] մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ, թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն Հայոց Վասակ, որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին»։*

*Այս վկայություններից կարևոր է, մանավանդ, երկրորդը, որից պարզ երևում է, որ Մամիկոնյանները ոչ միայն դեմ են եղել Տիրանի վճռական քաղաքականությանը կենտրոնախույս նախարարությունների նկատմամբ, այլ նույն իսկ պատրաստ են եղել զինված դիմադրություն ցույց տալ կենտրոնական իշխանության։*

*Մամիկոնյան Արտավազդ և Վասակ զորավարների մեկուսացումը Տայքի անառիկ ամրություններում, որ Փավստոսի մոտ պատմված է, բնականաբար, գունավորված ու մեղմացված ձևով, պետք է, անշուշտ, համարել խաղմարարություն և ապստամբություն Արշակունյաց իշխանության դեմ։*

*Միանգամայն ուղիղ է, ուրեմն, Մարկվարտի վերև մեջ բերված եզրակացությունը, որ չորրորդ դարում Մամիկոնյանները, ինչպես և Գրիգոր Լուսավորչի տոհմի կաթողիկոսները, պաշտպանել են միասին հայկական նախարարությունների շահերն ու արտոնությունները։ Իսկ ընդհա-*

կառակը, «մարզպետ»-ներն անհրաժեշտ են համարել սահմանել կենտրոնական զորեղ իշխանություն և Արշակունիների քաղաքական կշիռը և հեղինակությունը բարձրացնելու նպատակով՝ աշխատել են սանձահարել ու թուլացնել անջատ ու ինքնիշխան նախարարությունները։

Ինքն ըստ ինքյան հասկանալի չէ, վոր «մարզպետության» քաղաքական այդ ձգտումը. վորի նպատակն եր Արշակունյաց իշխանության տակ կազմակերպել ֆեոդալական կենտրոնացած զորեղ միապետություն, շատ ավելի նպաստավոր եր Հայաստանի պետական զորեղացման տեսակետից, քան նախարարական բնիկ «տէր»-երի պաշտպանության քաղաքականությունը, վորին հետամուտ եյին Մամիկոնյանները և Գրիգորյան տոհմի կաթողիկոսները։

Մարզպետները պայքար են մղել, ինչպես յերևում ե Փավստոսի վկայություններից, նաև կաթողիկոսական իշխանության և յեկեղեցական կալվածատիրության դեմ։

Հայտնի յե, որինակ, վոր Հայր մարզպետը սպառնացել եր Ներսեսին, վոր նա ամեն կերպ աշխատելու յե արքունիք գրավել Աշտիշատը, վորը յեկեղեցական կալված եր։

> «Դնէր թշնամանս— պատմում ե Փավստոսը—Տրդատայ արքայի, ի մեռեալս և կենդանեացն ի կեանս. ազգի և տակի և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հայոց։ Զիարդ, ասէ, զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է և ոչ արանց։ Եւ զսուրբ տեղեօքն քամահեալ արհամարէր և ասէր՝ եթէ զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի։ Եւ թէ ես Հայր մարզպետ կենդանի իցեմ և առ թագաւորաւն հասից, ասէ, որ ինչ աստ իցէ, զայն ի բաց փոխեցից. և որ աստ իցեն, ասէ, զնոսա հանից և զտեղիս արքունի սենեակ կազմեցից» (IV, ԺԳ, եջ 117—118)։

Հայտնի յե նույնպես, վոր յեկեղեցականության դեմ, վորը քաղաքականապես և տնտեսապես անչափ զորեղացել

եր Ներսեսի կաթողիկոսության շրջանում, վճռական ու կտրուկ միջոցներ եյին ձեռք առնվել Պապի թագավորության ժամանակ։ Ներսեսի հիմնած բարեգործական ու վանական անթիվ հաստատությունները, վորոնց պահպանության համար հարկավոր եյին հսկայական միջոցներ, նաև յեկեղեցական աճող կալվածատիրությունը և պաղի, տասանորդի ու յեկեղեցական մյուս յեկամուտները, վոր հիմք եյին դառել յեկեղեցու ու կաթողիկոսության անչափ զորեղացման, ըստ յերևույթին, թագավորական իշխանության համար համարվել են վտանգավոր և վնասակար։

Պապը, ինչպես հայտնի յե, անհրաժեշտ եր գտել փակել վերոհիշյալ հաստատությունները, վերացնել յեկեղեցական պարապուծ ուրքերը և կրճատել հոգևորականության արված հոգերը։

«Եւ զկարգս պաղոյն և զտասանորդացն — վկայում է Փավստոսը — որ ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի՛ ոք տացէ։...... Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն» (V, ԼԱ, եջ 235 և 237)։

Փավստոսի այս վկայությունը, ինչպես և վերև մեջ բերված փաստական նրա տեղեկությունները, թեև զունավորված են խիստ ի նպաստ յեկեղեցական ու Մամիկոնյան կուսակցության, սակայն, այնուամենայնիվ, պարզ ցույց են տալիս, վոր չորրորդ դարում հայ Արշակունիները վոչ միայն գիտակցել են իրանց թագավորական իշխանության զորե-

ղացման կարևորությունը, այլ և համառ պայքար են մղել այդ ուղղությամբ կենտրոնախույս նախարարությունների և նրանց դաշնակից յեկեղեցականության դեմ։

Յեթե Արշակունիների ջանքերն անհաջող եյին անցնում, դրա գլխավոր պատճառն այն եր, վոր հայկական լեռնաշխարհի, ինչպես և իրանց իսկ Արշակունիների քաղաքական կացության խնդիրը, միջազգային մի հարց եր, վորի լուծումը կախված եր վերջնական հաշվով աշխարհակալ մեծ պետությունների կամքից։

Մոտավորապես 337 թվին սկսվել եյին Սասանյան Պարսկաստանի մեծ կռիվները կայսրության դեմ և բնական ե, վոր կռվող այս պետություններն աշխատելու եյին դիվանագիտական և այլ միջոցներով ուժեղացնել Հայաստանում քաղաքական իրանց ազդեցությունը, հենվելով իրանց կողմնակից նախարարությունների վրա։

Հետաքրքիր ե խիստ, վոր պարսկական կուսակցությանը հարող նախարարությունները գտնվել են, գլխավորապես, Հայաստանի այն շրջաններում, վորոնք սահմանակից լինելով Պարսկաստանին, պարսկական հարձակումների վտանգը զգում եյին ավելի սուր կերպով, քան Հայաստանի արևմտյան շրջանները։ Ուշադրության արժանի յե նաև այն, վոր նույն այդ արևելյան շրջանները թե տնտեսապես և թե կուլտուրապես սերտ կերպով կապված եյին հարևան Պարսկաստանին։

Այդ տեսակետից, Արծրունիների պարսկական կուսակցության պատկանելը, ինչպես և Մամիկոնյանների հռոմեասեր քաղաքականությունը, բացատրվում են մասամբ նրանց յերկիրների աշխարհագրական տեղադրության ու տնտեսական շահերի առանձնահատուկ պայմաններով։

Միջազգային ու ներքին խռովահույզ այս ժամանակաշրջանում, յերբ իրանք Արշակունիները ևս հարկադրված եյին վարել տատանվող քաղաքականություն մեծ պետությունների հանդեպ, նախարարական Հայաստանի քաղաքական միաձուլումը հանդիպելու յեր, անշուշտ, անհաղթելի դժվարությունների։

Այժմ էլ, ինչպես և միշտ, նախարարական Հայաստանի քաղաքական ապագան վորոշվում էր պատերազմող մեծ պետությունների դաշինքներով, վոր կնքվել էյին 363 և 387 թվականներին։

363 թվին, Հուլիանոս Ուրացողի Տիգրոնի մոտ կրած պարտությունից հետո, Հովիանոս կայսրը հարկադրված էր հաշտություն խնդրել Շապուհից, վորի համաձայն անդրտիգրիսյան գավառները՝ Աղձնիքը, Մոկքը, Կորդուքը, Ծավդեքը և Ռեհիմենեն՝ տրվեցին Սասանյան Պարսկաստանին։ Հայաստանի ու Արշակունյաց թագավորության համար խիստ ծանր էր այդ դաշնագրության, մանավանդ, այն կետը, վորով կայսրությունը հրաժարվում էր ոգնել ու պաշտպանել Արշակ Բ-ին և Հայաստանն այսպիսով թողնվում էր իր բախտին։

Շատ պարզ է, վոր այս դաշինքից հետո անխուսափելի էյին թե Հայաստանում տեղի ունեցած աղետալի անցքերը և թե Արշակունյաց թագավորության քայքայումը։

387 թվին մի նոր դաշնագրով, ինչպես հայտնի յե, Պարսկաստանը և Հռոմեական կայսրությունը բաժանեցին Հայաստանն իրանց մեջ և կարճ ժամանակից հետո վերացրին նույնպես Արշակունիների թագավորական իշխանությունը։

Սակայն Հայաստանի նախարարական կազմակերպությունը մնաց գրեթե անխախտ նաև Հայաստանի բաժանումից հետո։

Հայ նախարարները, վորոնք յերկրի խոշոր կալվածատերերն էյին և իրական իշխողները, չէյին կարող, անշուշտ, հանդուրժել իրանց իրավունքների վերացումը նաև քաղաքական նոր պայմաններում։ Յեվ ամեն անգամ, յերբ Պարսկաստանի կամ Բյուզանդիայի քաղաքականությունն ուղղված էր լինում նրանց դարավոր արտոնությունների ու նախարարական կարգերի դեմ հին պայքարը, բնականաբար, նորից վերսկսվում էր և այդ պայքարը, ինչպես կտեսնենք, ստանում էր դարձյալ նախարարական ապստամբությունների բնույթ, վոր հաճախակի էյին նաև հետագա այդ գարաշրջանում։

## 11. ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՊԱՐՍԿԱԿԱՆ ՅԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Դեռևս բաժանումից առաջ, Արշակունյաց թագավորության քայքայման ընթացքում, Հայաստանից անջատվել էին և միացել հարևան պետություններին բդեշխությունները և ծայրագավառները։ Այնուհետև, համաձայն 387 թվի դաշնագրի, տեղի էր ունեցել, ինչպես ասացինք, նաև անդամատված ու փոքրացած Հայաստանի բաժանումը, որի գրեթե չորս հինգերորդ մասը ստացել էր Պարսկաստանը և միայն մեկ հինգերորդը՝ Հռոմեական կայսրությունը։*

*Ուշագրավ է առանձնապես, որ բաժանումից հետո Հայաստանի ֆեոդալական կազմակերպությունը և նախարարական ներքին կարգերը մնում էին անփոփոխ ինչպես Պարսկական, նույնպես և Բյուզանդական Հայաստանում։ Բաժանված յերկու մասում էլ ձևականորեն պահպանվել էր սկզբում անգամ Հայ Արշակունիների իշխանությունը, որոնք դառել էին հարկատու և վասսալ մեծ պետությունների։*

*Ինչպես հայտնի է, Արշակունիները թագավորել են հռոմեական բաժնում միայն մի քանի տարի, իսկ Պարսկական Հայաստանում մինչև 429 թիվը։*

*Զգուշավոր ու մեղմ այս քաղաքականությունը նախարարությունների հանդեպ բացատրվում է ըստ իս նրանով, որ յերկու պետությունն էլ ի նկատի յեն ունեցել Հայաստանի ստրատեգական ու ռազմական մեծ նշանակությունը և նպատակահարմար են համարել, պահպանելով նախկին նախարարությունների իրավունքներն ու արտոնությունները, օգտագործել նրանց զինվորական ուժերն իրանց նոր սահմանների պաշտպանության համար։*

*Ընդհանուր այս դիտողությունները հիմնավորելու և հայկական ֆեոդալիզմի հետագա վիճակը պարզելու համար՝ անհրաժեշտ է քննել նախարարությունների դրությունն առանձին առանձին՝ նախ Պարսկական և ապա Բյուզանդական Հայաստանում։*

*Որ 387 թվից հետո հայկական նախարարությունները դժգոհելու առիթ չեն ունեցել և, ընդհանուր առմամբ, գոհ են յեղել Պարսկաստանի տիրապետությունից, այդ ավելի քան հավանական է, վորովհետև 429 թվին նրանք, ինչպես հայտնի յէ, իրանք եյին հոժարակամ ցանկացել յենթարկվել Սասանյան Պարսկաստանի անմիջական իշխանության և իրանք եյին դիմել Պարսից թագավորին ու խնդրել վերջին հայ Արշակունի թագավորի՝ Արտաշեսի գահընկեցությունը։ Կարելի յէ ըստ իս վստահորեն յենթադրել, վոր զգալի փոփոխություններ չեյին յեղել Պարսկական Հայաստանի ներքին կազմակերպության մեջ նաև 429 թվից հետո։*

*Հայագիտական նորագույն յերկերում յենթադրվել է հաճախ, ինչպես, օրինակ, Գյուտերբոքի «Բյուզանդիոն և Պարսկաստան» աշխատության մեջ (թարգմ. Հ. Համբարյանի, Վիեննա 1911, եջ 99), վոր 429 թվից հետո Պարսկական Հայաստանը կորցրել եր իր ինքնավարության մնացորդները և միացվել Սասանյան Պարսկաստանին իբրև պարսկական մի նահանգ։*

*Այս պնդումը, իմ կարծիքով, ճիշտ չէ։*

*Արշակունի Արտաշեսի անկումից հետո, ինչպես վկայում է Յեղիշեն՝ «ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն»։*

> *«Զի թէպէտ և գանձն յարքունիս պարսկաց երթայր, — ասում է Յեղիշեն, — սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի» (Վենետիկ 1852, եջ 11)։*

*Յեվ իրոք, մատենագրական նաև ուրիշ վկայություններից հայտնի յէ, վոր Արշակունյաց վերջին թագավորի գահընկեցությունից հետո հայ նախարարները պահպանել*

էին անփոփոխ իրանց «տիրական» ու անգամ «գործակալական» իշխանության գրեթե բոլոր իրավունքները։ Մամիկոնյանները մնում էին դարձյալ իբրև Պարսկական Հայաստանի սպարապետներ, Վահան Ամատունուն հանձնված է լեզել «հազարապետութեան գործակալութիւն»-ը, իսկ դատավորության իշխանությունը, ըստ յերևույթին, մնացել եր բարձր հոգևորականության ձեռին։

Ուշադրության արժանի յե նույնպես, վոր Շահապիվանի 443 թվի ժողովի կանոնադրության մեջ հիշատակված են դարձյալ հետևյալ «գործակալութիւն»-ները՝

«Վասակայ Սիւնւոյ մարզպանութիւն Հայոց. Վահանայ Ամատունւոյ հազարապետութիւն և Վրվայ Խոռխոռունոյ մաղխազութիւն» (տես «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ղլտճյանի, եջ 59)։

Հենց ինքնին այն փաստը, վոր Շահապիվանի ժողովում, նախարարների ու «ազատ»-ների մասնակցությամբ, սահմանվել եյին պարտադիր կանոններ, վորոնք վերաբերվում եյին բացի հոգևորականներից նաև հանցապարտ աշխարհականներին՝ մի ապացույց է Յեղիշեյի վերոհիշյալ վկայության ճշտության։

Այս բոլորը, ուրեմն, պարզ ցուցմունքներ են, վոր 429 թվից հետո Պարսկական Հայաստանի նախարարական ինքնավար կազմակերպության մեջ գգալի փոփոխություններ չեյին յեղել։

Պարսկական Հայաստանի ներքին այդ կիսանկախ վիճակը և նախարարությունների հատուկ իրավունքները, վոր մատնացույց են արված նաև Գարագաշյանի «Քննական պատմության» մեջ (Մասն Դ, եջ 114), հարկավոր է աչքի առաջ ունենալ և առանձնապես ընդգծել, վորովհետև Վարդանանց և Վահանյանց շրջանի քաղաքական անցքերը ստանում են տարբեր լուսաբանություն, յերբ նկատի չի առնվում այս կարևոր հանգամանքը։

Ըստ իս հաստատ կարելի յե պնդել, վոր Հազկերտ Բ-ի (438—457 թ.) և նրան հաջորդող Պերոզի (457—484) խիստ

քաղաքականությունը մարզպանական Հայաստանի հանդեպ ուղղված է լեղել ոչ միայն քրիստոնեական յեկեղեցու, այլ և նախարարությունների արտոնյալ ու արտակարգ իրավունքների դեմ։ Այդ նոր քաղաքականությունը միանգամայն հասկանալի յե դառնում, յերբ նկատի յենք առնում փաստական այն դրությունը, վոր ստեղծվել եր այստեղ պարսկական մեղմ ու հանդուրժող նախկին քաղաքականության հետևանքով։

Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր Արևելքի ու Արևմուտքի մրցումը չեր վերացել Հայաստանի բաժանմամբ։ Վերջինս ծառայելու յեր դարձյալ իբրև ռազմադաշտ համառ ու յերկարատև կռիվների։ Բաժանումից հետոել այստեղ շարունակում եյին գործել ու պայքարել հունական ու պարսկական նախկին կուսակցությունները։ Հայ յեկեղեցին մնում եր դարձյալ կողմնակից Արևմուտքի, վորի հետ նա սերտ կապված եր կրոնով ու կուլտուրայով։

Սասանյան Պարսկաստանը, վոր իրազեկ եր, անշուշտ, Պարսկական Հայաստանի ներքին այս դրության, աշխատել և, ըստ յերևույթին, հենվելով պարսկական կուսակցության վրա, չեզոքացնել իրան թշնամի տարրերը և մեղմ ու. աստիճանաբար ուժեղացնել այստեղ իրանական կուլտուրան և պարսկական պետականության կարգերը։

Նրա համբերատար այդ քաղաքականությունը վոչ միայն չտվեց շոշափելի արդյունքներ, այլ, ընդհակառակը, Հազկերտ Ա-ի թագավորության ժամանակ (399—420 թ.) հայ յեկեղեցին ու հունասեր կուսակցությունը հայերեն նշանագրերի գյուտով կարողացել եյին ձեռք բերել գերօրինակ հզոր մի զենք, վորը, բնականաբար, նպաստելու յեր քրիստոնեության արմատացման ընդդեմ իրանիզմի։ Նաև վրացերեն ու աղվաներեն նշանագրերի գյուտը, վոր վերագրվում է նույնպես Մեսրոպին, դյուրացնելու յեր, անշուշտ, քրիստոնեության տարածումը հյուսիսում, վորով ապահովվում եր Հայաստանի թիկունքը պարսկական կրոնի և իրանական հեթանոսության վտանգից։

Հետաքրքիր է, վոր նույն Հազկերտ Ա-ը, վորի քաղաքականությունը բացառիկ կերպով նպաստավոր էր ու բարեհաճ քրիստոնեության վերաբերմամբ, գրերի գյուտից հետո անհրաժեշտ էր համարել ուժեղացնել Հայաստանում պարսկական ազդեցությունը և ուղարկել էր այդ նպատակով իր վորդուն Շապուհին՝ իբրև թագավոր ու հաջորդ Խոսրով Արշակունու (ըստ Մարկվարտի՝ 420 թվին)[1]։

Հազկերտ Ա-ի թաքուն նպատակը պարզաբանված է միանգամայն ճիշտ Ղազար Փարպեցու ընդարձակ մի վկայության մեջ, վորը կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ.

I, ԺԲ, էջ 18—19 (Տփղիս 1904)՝

«Եւ յետ մահուան Վռամայ արքային Պարսից թագաւոր էր Յազկերտ եղբայր Վռամայ որդի Շապհոյ ի վերայ աշխարհին Պարսից։ Եւ ոչ կամեցեալ Յազկերտի թագաւորեցուցանել ի վերայ աշխարհիս Հայոց յազգէն Արշակունեաց՝ թագաւորեցուցանէր ի վերայ սոցա զիւր զորդին, որում անուն էր Շապուհ, ըստ անուան հօր իւրոյ. խորհեալ չարաչար իմացմունս առնն ի միտս իւր. առաջին՝ զայս, եթէ աշխարհն Հայոց մեծ է և օգտակար, սահմանակից և դրակից է Յունաց իշխանութեանն, ընդ որոյ ձեռամբ բազումք են հնազանդեալք յազգէն Արշակունեաց. որոց գուցէ գորովեալ առ միմեանս ազգացն, ըստ օրինի եղբարց, որք ընդ մերով և ընդ Յունաց իշխանութեամբն են, և հաւանեալ երբէք սիրով ընդ միմեանս և եկեալք ի միաբանութիւն՝ խօսեսցին ի խաղաղութիւն ընդ թագաւորին Յունաց, և ընդ նորա հնազանդութեամբ յօժարեալք՝ ապստամբեսցին ի մէնջ։ Եւ որպէս կալեալ է զմեզ բազում անգամ յաշխատութեան՝ առաւել ևս յաւելուածով նոցա՝ անհանգիստ առնիցեն զմեզ պատերազմաւ։ Եւ երկրորդ՝

---

[1] Տես Մարկվարտ, «Պատմութիւն հայերէն նշանագրերու և վարուց Մաշտոցի», թարգմ. Հ. Ա. Վարդանյանի, Վիեննա 1913, էջ 59։

*զի յօրինացս մեր օտար են և անցողք, և միահաւան ունին զպաշտօն նոցա և զօրէնս։ Արդ՝ ի թագաւորել յազգէս մերմէ ի վերայ աշխարհին Հայոց՝ յամենայն այդպիսի կասկածանաց անհոգացեալ լինի թագաւորութիւնս մեր. և նոքա ցանկ երկիւղիւ և դողութեամբ ծառայեն մեզ և օտարոտիս ինչ և վնասակարս ինչ ոչ խորհին։ Ը զի և սովորութիւն առնուն յանկչել յօրէնս մեր, հանապազ խօսիւք ընդ միմեանս և ընդելական բարեկամութեամբ, ի գլօսմունս որսոց և ի խաղս, որ լինին ի միջի նոցա. այլ և ամուսնութեանց տուրևառիւք հաղորդեալք առ միմեանս՝ զատուցեալք այնուհետև որոշին ի սիրոյ նոցա և յօրինացն»։*

*Պարսկաստանի այս փորձն ես ապարդյուն անցավ, վորովհետև հենց 420 թվին սպանվեցին թե Հազկերտ Ա-ը և թե Շապուհը, վորը Տիզրոն եր դնացել իր հոր գահը ժառանգելու։*

*Հազկերտ Ա-ի հաջորդը՝ Վռամ Գոռը (420—438 թ.), թեև կողմնակից եր վճռական ու կտրուկ քաղաքականության, սակայն 420—421 թվերի անհաջող պատերազմը Բյուզանդիայի հետ հարկադրել եր նրան զիջումներ անել հատկապես Պարսկական Հայաստանում, վորը սահմանակից եր հաղթական կայսրության։*

*Այդ զիջումները վոչ անկեղծ եյին այժմ, վոչ ել հարատև։*

*Պատերազմի ընթացքում Պարսկաստանը հասկացել եր արդեն, վոր արևմտյան իր սահմանների պաշտպանությունը թույլ ե և անբավարար։*

*Ուշագրավ ե, վոր 420 թվին պարտություն եր կրել այստեղ հենց այն Միհր-Ներսեհը, վորը գլխավոր խորհրդատուն եր Հազկերտ Բ-ի*[1]։

---

[1] *Ուշադրության արժանի է այս տեսակետից Միհր-Ներսեհի մասին Փարպեցու հետևյալ վկայությունը՝ «Եւ էր Յազկերտի արքայի հազարապետ մի Միհրներսեհ անուն, այր չարահնար և դժնամիտ որոյ արկեալ ի միտս ի շատ ամաց զխորհուրդս անօրէնութեան. ի կործանումն և ի կորուստ թուլամիտ ոգւոց»* (11, Ի, էջ 39)։

Եթե Հազկերտ Բ-ի թագավորության սկզբնական շրջանում մարզպանական Հայաստանը մնաց իր արտոնյալ վիճակում՝ դրա պատճառն այն համառ կռիվներն էին, որ երկար տարիներ շարունակվեցին Պարսկաստանի արևելյան սահմաններում։ Կռիվները վերջանալուց հետո միայն Հազկերտ Բ-ը, ոգևորված իր հաջողություններով, Հայաստանի պարսկական բաժնում ևս սկիզբ դրեց վճռական ու նոր մի քաղաքականության, որը գործադրվեց այստեղ նաև Պերոզի թագավորության ժամանակ։

Հիմնվելով Փարպեցու և Եղիշեյի փաստական տեղեկությունների վրա, ինձ թվում է, կարելի չէ ենթադրել, որ պարսկական նոր քաղաքականությունը ունեցել է երկու հիմնական նպատակ։

Թե Հազկերտ Բ-ը և թե Պերոզը, Պարսկաստանի քաղաքական շահերի տեսակետից, նպատակահարմար ու անհրաժեշտ են համարել, որ հայ նախարարները, որոնք երկրի իշխաններն էին, ընդունեն պետական կրոնը և թույլ տան իրանց շրջաններում շինել ատրուշաններ և հաստատել մոգության դպրոցներ։

Տիրող ու սովորական կարծիքը, որ Հազկերտ Բ-ը ուզեցել է վերացնել Հայաստանում քրիստոնեական կրոնը և դարձնել կրակապաշտ բոլոր քրիստոնյաններին, պարզապես չափազանցություն է, որը չի հաստատվում անգամ այն իրական փաստերով, որ գունավորված ձևով նկարագրված են Փարպեցու ու Եղիշեյի երկերում։

Որ Հազկերտը չի ունեցել նման դիտավորություն՝ այդ ընդարձակ քննությամբ լուսաբանված է Գարագաշյանի «Քննական պատմության» մեջ։

Սխալ է նույնպես այն պնդումը, որ իբր թե Հազկերտի ցանկությունը բղխում էր կրոնական մոլեռանդությունից։

Կրոնական խնդիրներում Պարսկաստանը, անտարակույս, շատ ավելի համբերատար ու հանդուրժող պետություն էր,

քան Բյուզանդական կայսրությունը և միջնադարյան քրիստոնյա յերկիրները։

Պարսկաստանի բուն նպատակը, վոր զուտ քաղաքական եր, պարզ յերևում ե Միհր-Ներսեհի խոսքերից Փարպեցու հետեյալ վկայության մեջ.

II, ԻԱ, եջ 42—43 (Տփղիս 1904)՝

«Վասն զի դուք ինքնին գիտէք և ամենայն Արիք՝ զաշխարհն Հայոց, թէ որպէս մեծ է և պիտանի, և մօտ և սահմանակից է կայսեր իշխանութեանն, և զօրէնս և պաշտօն զնոյն ունի, զի կայսր զիշխանութիւն նոցա ունի։ Եւ եթէ և մերոց օրինաց ընտանեցուցանէք զնոսա, և ընդելնուն, և կարեն ճանաչել, եթէ ցայժմ մոլորեալք էին, և արդ ի ճանապարհ եկեսցեն՝ այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ և յօրինաց նորա և յաշխարհէն մերժին և հեռանան ի բաց։ Եւ լինի այնուհետև աշխարհն ընդ մեր սերտ սիրով և միաբանութեամբ։ Եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին՝ Վիրք և Աղուանք այնուհետև մեր իսկ են»։

Պարսկական քաղաքականությունն ուներ այժմ, ինչպես ասացինք, նաև մի այլ նպատակ։

Նա չեր կարող այլևս հանդուրժել հայ նախարարությունների արտոնյալ ու արտակարգ իրավունքները։ Ուստի և նա վճռել եր այժմ տարածել մարզպանական Հայաստանի վրա իր պետականության կարգերը, վոր պարտադիր եյին մյուս մարզերում։

Ինչպես հայտնի յե, Սասանյան Պարսկաստանում, վորի սոցիալական ու տնտեսական հատուկ կարգերն ու կառուցվածքը նման ու համապատասխան եյին ֆեոդալական Հայաստանի ներքին կազմակերպության, խիստ զորեղ եր պետության կենտրոնացումը։ Թագավորական իշխանությունն այստեղ տնօրենն եր ամբողջ յերկրի և իրական տերը ու հրամայողը ֆեոդալ իշխանավորների։

Իբրև ֆեոդալական զորեղ միապետություն՝ Պարսկա-

տանը, բնականաբար, ձգտում էր այժմ սահմանափակել նախարարական իշխանությունների ինքնուրույնությունը և յենթարկել նրանց թագավորական գահի անմիջական ազդեցությանը։

Հենց այս նպատակով՝ հին «գործակալութիւն»-ները, վորոնք արքունի պաշտոններ եյին և ժառանգական եյին նախարարական վորոշ տոհմերում, հանձնվում եյին այժմ պարսիկների կամ հավատարիմ հայ նախարարների։

Իսկ ավելի կարևոր փոփոխությունն այն եր, վոր նախարարական կիսանկախ յերկրների «նահապետ»-ները կամ «տանուտէր»-ները, վորոնց իշխանությունը զարձյալ ժառանգական եր, նշանակվում եյին կամ արձակվում Հազկերտ Բ-ի կամ Պերոզի բարեհայեցողությամբ։

Խախտվում եր այսպիսով տոհմային ժառանգականության այն հին կարգը, վոր հատուկ եր նախարարական Հայաստանին։

Վոր այս փոփոխությունը, վորն ուղղված եր նախարարական ամենաբարձր խավերի զարավոր իրավունքների դեմ, շահագրգռված շրջաններում առաջ եր բերելու հուզում և դժգոհություն՝ այդ ինքն ըստ ինքյան հասկանալի յե։

Փարպեցու և Յեղիշեյի մոտ այս դժգոհությունը պարզ կերպով արտահայտված ե, որինակ, հետևյալ վկայություններում.

1. Փարպեցի, III, ՀԵ, եջ 136 (Տփղիս 1904)՝

«Արդ՝ Հայոց աշխարհս որպիսի մեծ և պիտոյի աշխարհ է. և արդ ցոյց ինձ այր մի յայսպիսի աշխարհի, որ թէ առաւելաւ թագաւորութեամբ արժանաւորապէս հասեալ է ի տանուտէրութիւն. այլ որեար աւազակ և անպիտան, հացկատակք և վատտոհմիկք, որ գան գայնպիսի մեծ թագաւորութիւն խաբեն...»

2. Նույնը, III, ՀԵ, եջ 137՝

«Բայց այժ՝ զոր ձեր ի վատ տոհմէ և յանպիտան ի մարդկանէ աշխարհիս Հայոց իշխան կարգեալ էք՝ դոքա ըստ իւրեանց յետնութեան կորուսին յաշխար-

հէս Հայոց զքաջութիւն և զանուն բարի և զլաւութիւն»։

3. Նույնը, III, ՂԲ, էջ 167՝

«Վասն որոյ բարձեալ էր յաշխարհէն Հայոց և կորուսեալ վաստակք, միտք, քաջութիւն, տոհմակութիւն և արդարութիւն»։

4. Նույնը, III, ՂԲ, էջ 168՝

«զի զորեարն զայն, որ զամ մի Պերոզի յիւրում թագաւորութեանն ժողովթեամբ տէր է արարեալ, և այժմ զահ ունին և պատիւ, և յիւրաքանչիւր գաւառի իշխան են, և ձիոյ աէր են և զինու և գնդի՝ հրաման տուք, զի ժողովեսցին միարան ամենայն իւրեանց այրուձիով»։

5. Եղիշե, II, էջ 29 (Վենետիկ 1864)՝

«սկսաւ այնուհետև [Յազկերտ] յառաջ կոչել զկրսերս յաւագաց և զանարգս ի պատուականաց և զտգէտս ի գիտնոց և զանարիս ի քաջ արանց»։

Վարդանանց 450—451 թ. և Վահանյանց 481—484 թ. ապստամբությունները, ինչպես յերևում է վերոհիշյալ դիտողություններից, ունեցել են ավելի խոր պատճառներ, քան մինչ այժմ յենթադրվել եւ։ Թեև Փարպեցին և Եղիշեն աշխատել են տալ նրանց զուտ կրոնական բնույթ, սակայն միանգամայն պարզ է, վոր նրանց եությունը յեղել է, իրապես, նաև սոցիալական։

Առաջին իսկ ապստամբությունը ճնշելուց հետո՝ Պարսկաստանը կարողացել եր իրագործել քաղաքական իր դիտումները։

Թե «տանուտէրութեան» և թե «գործակալութեան» բարձր պաշտոնները հանձնվել եյին հետզհետե հավատարիմ մարդկանց, վորոնք հարկադրված են յեղել ընդունել զրադաշտական կրոնը։ Անդամ Վահան Մամիկոնյանը, վորը յերկրորդ ապստամբության գլխավոր առաջնորդն եր, Փարպեցու ասելով, «երթեալ ի դուռն՝ տկարանայր ի հաւատն» (III, ԿԵ, էջ 116)։

Վճռական այս քաղաքականությունը, վորը շարունակ-

*վեց յուսուն և հինգ տարի, արմատապես փոխում էր Պարսկական Հայաստանի կիսանկախ գրությունը և թուլացնում հունասեր կուսակցության և յեկեղեցու ազդեցությունը։*

*Վահանյանց տկար ու հուսահատական ապստամբությունը չէր կարող, ինարկե, վորևե նշանակություն ունենալ և փոխել ստեղծված կացությունը։*

*Այդ կացությունը սակայն, այնուամենայնիվ, փոխվեց և 484 թվին Վաղարշը (484—488 թ.) հիմնովին հրաժարվեց Հազկերտ Բ-ի և Պերոզի քաղաքականությունից։*

*Պարսկաստանը հենց այդ թվին, ինչպես հայտնի յե, ռոսկալի պարտություն եր կրել Հեփթաղների յերկրում, ուր սպանվել եյին Պերոզը, նրա զորավարները և պարսկական լավագույն զորքերը։ Այս ահռելի պատահարն եր, անշուշտ, պատճառը, վոր ահաբեկված ու ուժասպառ Պարսկաստանը ստիպված եր տեղի տալ և բավարարել ապստամբած հայ նախարարների պահանջները, վորոնցով վերահաստատվում եյին, մեծ մասամբ, նախարարական նախկին ընիկ կարգերը։*

*Հաշտության նոր այս պայմանագրի յերեք կետերը, վոր խիստ նպաստավոր եյին հայ նախարարությունների ու յեկեղեցու հետագա զարգացման համար, ավելորդ չեմ համարում մեջ բերել Փարպեցու ընդարձակ վկայության համաձայն։*

*Փարպեցի,* III, *ՁԹ, եջ 161 (Տփղիս 1904)*

*«Եւ է մին յերիցն՝ նախ և առաջին խնդիրս այս կարեոր և պիտանի. եթէ զհայրենի և զբնիկ օրէնս մեր ի մեզ թողցուք, և զՀայ այր զոք մի՝ մոգ ոչ առնէք, և ումեք յաղագս մոգութեան գահ և պատիւ չտայք, և զկրակարանն յաշխարհէս Հայոց ի բաց տանիք, և զեկեղեցւոյ թշնամանս յաղտեղի և յանպիտան մարդկանէ, որ ցայժմ լինէր, յայսմ հետէ մեզ չտայք տեսանել. և քրիստոնեայ մարդկան ե քահանայից զկարգ և զպաշտօնն քրիստոնէութեան համարձակութեամբ և աներկիւղ տայք պաշտել՝ ուր և կամին»..։*

*«Եւ երկրորդ խնդիրն այս է, թէ զմարդ ոչ իշխա-*

նաբար ճանաչէք, այլ իրաւաբար գիտել զլաւն և զվատ-թարն, ընտրել զպիտանին և զանպիտանն, իմանալ զտոհմիկն և զանտոհմիկն, ունել առ լաւն և պատուա-կանս՝ զքաջն և զօգտակարն, արհամարհել և առ ոչինչ համարել զվատն և զանպիտանն. սիրել զվաստակաւորսն և ատել զանվաստակն, ունել ի մօտ զիմաստունս և խորհուրդս առնել, և զամիտն ոչ մօտեցուցանել, այլ և ի հրապարակէ ևս հալածել»...։

Եւ երրորդ խնդիր մեր այս է. որ տէրն է Արեաց և աշխարհի Թագաւոր՝ կամիմք, զի ինքն տեսցէ իւրովք աչօք, և ինքն լուիցէ իւրովք ականջօք, և ինքն գի-տասցէ և ինքն խօսեսցի իւրով բերանով. և մի՛ այլոյ աչօք տեսցէ և այլոյ ականջօք լուիցէ և այլովք հա-նապազ գիտասցէ զմարդ լաւ և զանլաւ, և այլոյ բե-րանով խօսեսցի զպէտսն։ Յաղագս որոյ չլինի ուղիղ հայեցուածն, և ոչ արդար լսողութիւնն. այլ յոլով սուտ խօսքն ճանաչին և հրամանքն ընդունայն, և բնաւ այլ ընդ այլոյ լինի իմաստն ամենայն»։

Այս պայմանները, վոր ընդունել եր Պարսկաստանը, վերաբերվում են, ինչպես տեսնում ենք, բացի յեկեղեցուց նաև նախարարական կարգերին։

Պայմանագրի առաջին կետի համաձայն՝ քրիստոնեու-թյունը ճանաչվելու յեր Հայաստանում իբրև միակ որինական կրոն, վոչ մի հայ չպիտի ստիպեյին կրոնափոխ լինել և վոչ վոքի չպիտի տային դահ և պատիվ ուրացության համար։ Իսկ ամենակարևոր գիջումն այն եր, վոր Պարսկաստանը նույնիսկ համաձայնություն եր տվել, վոր Հայաստանում իսպառ վերացվեն կրակարանները։

Յերկրորդ կետի իմաստն այն ե, վոր Հայաստանում պետք ե հարգվեր տոհմիկության իրավունքը։ Պարսկաստանը համաձայնել եր ճանաչել և ընտրել տոհմիկը, լավը, քաջը և վաստակավորը ու արհամարհել անտոհմիկը, վատը և ան-պիտանը։ «Տանուտեր»-ների ու «գործակալ»-ների ընտրու-

*թյունը պետք է, ուրեմն, կատարվեր «իրավաբար» և ոչ «իշխանաբար»։*

*Հենց այս կետի համաձայն դաշինքից հետո վերանորոգվում էին հետզհետե նախարարական բնիկ կարգերը, ինչպես այդ պարզ երևում է Փարպեցու համապատասխան վկայություններից։*

III, *ՂԶ, էջ 175 (Տփղիս 1904)՝*

*«Եւ Թագաւորին և ամենայն Արեաց աւագանւոյն լսեցուցեալ գբանս Մամիկոնենին Վահանայ՝ բազմեցուցանէին զնա ի գահու տէրութեանն Մամիկոնէից, տուեալ ցնա,* ըստ օրինի նախնեաց իւրոց, *և զսպարապետութիւն Հայոց աշխարհին։ Շնորհէին և այլոց ուխտապահ նախարարացն Հայոց, որք ի միաբանութեանն էին ընդ տեառն Մամիկոնենից և սպարապետին Հայոց Վահանայ, իւրաքանչիւր ումեք ի ժամուն՝ որ ինչ պէտք էին պատշաճ ըստ անձին արժանաւորութեան».*

III, *ՂԶ, էջ 175՝*

*«և դարձեալ վասն զի նախ և առաջին զայդ պարգև խնդրեցեր ի մէնջ՝ եղիցի վասն քո տուեալ զտէրութիւն Կամսարականին։ Իսկ յաղագս տէրութեանն Արծրունւոյն թող վայր մի, զի դիտասցեն մարդիկն [թէ] որ ի տոհմէն են, սպաս ինչ արժանաւորապէս ցուցանել առ մեզ և վաստակս ինչ յօգուտ Արեաց աշխարհիս վաստակել. հայեսցուք ապա և մեք յարժանն»։*

*Պայմանագրի երրորդ կետի համաձայն՝ Հայաստանն իրավունք էր ստանում, որ նախարարների քննողն ու դատողը լիներ ինքը Պարսից Թագավորը, որը նրանց բարձրագույն ու անմիջական սյուզերենն էր։ Հայկական նախարարությունների իշխանավոր անդամները ենթակա էին ըստ այսմ Թագավորական դատարանի իրավասության։ Այդ, իհարկե, կարևոր մի իրավունք էր, համապատասխան նրանց*

բարձր դիրքին, որ նրանք ունեցել էին, հավանորեն, նաև Արշակունյաց թագավորության ժամանակ։

Դաշնագրության վերոհիշյալ յերեք կետերը պարզ ցույց են տալիս, որ Պարսկական Հայաստանին արված էին բացառիկ դիրքողություններ։ Նրան տրված արտակարգ իրավունքները վերահաստատում էին, ինչպես տեսնում ենք, հայկական նախարարությունների և քրիստոնեական յեկեղեցու արտոնյալ հին դրությունը։

Հայկական ֆեոդալիզմի կայունացման ու հարատևման համար 484 թվի դաշինքը կարելի յե, անտարակույս, համարել մի նոր դարագլխի սկիզբը, որը տևել եր այնուհետև գրեթե անընդհատ մինչև արաբական տիրապետությունը։

Սովորական այն կարծիքը, որ իբր թե յեկեղեցու և նախարարությունների դեմ նոր հալածանքներ եյին հարուցվել նաև Խոսրով Անուշիրվանի թագավորության ժամանակ (531—578)՝ մի պարզ թյուրիմացություն է, անշուշտ, որը չի հաստատվում հակասական վկայությունների ուշադիր քննությամբ։

Ինչպես հայտնի յե, 572 թվին նախարարական մի մեծ ապստամբություն ծագել եր Պարսկական Հայաստանում առաջնորդությամբ դարձյալ Վարդան Մամիկոնյանի։

Հետաքրքիր է նախ և առաջ, որ այդ ապստամբության պատճառների մասին մատենագրական աղբյուրները տալիս են տարբեր տեղեկություններ։ Ոտար աղբյուրները՝ Հովհաննես Եփեսացին, Եվագրը, Հովհաննես Բիկլարեցին և Գրիգոր Տուրոնի յեպիսկոպոսը՝ շեշտում են իբրև ապստամբության պատճառ՝ կրոնական հալածանքը[1]։ Թեոփանես Բյուզանդացու վկայությամբ՝ ապստամբության գլխավոր պատճառներից մեկն այն եր, որ Սուրեն մարզպանը սպանել եր Վարդանի յեղբոր Մանուելին[2]։

---

[1] Տես Հ. Ն. Ակինյան, «Դունոյ 572-ի ապստամբութիւնը և յաջորդ տասնամեայ շրջանը», (Հանդ. Ամս. 1913, հունվար, էջ 62—79)։

[2] Տես նաև Հ. Հ. Համբարյան, «Հայաստանի քաղաքական վիճակը Վահանի մահէն մինչև Վարդան Բ-ի ապստամբութիւնը», Հանդ. Ամս. 1912, սեպտեմբեր, էջ 534։

Նույն պատմության շարժառիթները բոլորովին այլ կերպ է մեկնում Փոտ պատրիարքը Զաքարիա կաթողիկոսին գրած իր թղթում։ Փոտ պատրիարքի ասելով՝ երբ Խոսրով Անուշիրվանը տեղեկություն ստացավ, որ Դվինի 554–555 թ. ժողովում մերժվել է նույն յեկեղեցու քաղկեդոնական դավանությունը՝

«զովեալ զՆերսէս եւ զյառաջ խոստացեալ դաշինսն կատարեաց՝ ղորդին տալով Նմա յորգեգիրս, եւ զՀայաստան աշխարհի զհարկսն ի Նա հաւատաց, եւ յեպիսկոպոսունսն հաւանեալս ընդ Նմա. եւ ի Զ եւ ի Ժ Թուականութեանն Հայոց սպան խեռն Վարդան Մամիկոնեան զՍուրէն մարզպան Պարսից առ ի չժուժելոյ արհամարանացն, քանզի եբարձ զպատիւ ազատացն եւ եռ յեպիսկոպոսունսն. եւ ինքն փախեաւ բազում աղխիւ եւ համօրէն ընտանեօք եւ եմուտ ի Յոյնսն» (Վիեննայի Մխիթ. գրադ. ձեռագիր թ. 623, թղ. 234 բ—235 բ, տես Հանդ. Ամս. 1913, հունվար, էջ 74)։

Խոսրով Ա-ի այս բացառիկ բարյացակամությունը հայ յեկեղեցու հանդեպ ինքնին արդեն կարևոր մի ապացույց է, որ հատկապես Նրա թագավորության ժամանակ կրոնական հալածանքները Հայաստանում միանգամայն կասկածելի յեն ու անհավանական։

Ցեվ հետաքրքիր է ու ուշագրավ, որ հայկական աղբյուրները չունեն, իրոք, այդ մասին անգամ վորևե ակնարկ։

Սեբեոսն ապստամբությունը հիշում է անորոշ կերպով և միաժամանակ շեշտում է առանձնապես Խոսրով Ա-ի «խաղաղասէր» և «աշխարհաշէն» քաղաքականությունը հետևյալ իր վկայություններում.

Սեբեոս, գլ. Ա, էջ 26 (Պետերբ. 1879)՝

«Եւ եղև ի ԽԱ ամի թագաւորութեան Խոսրովայ՝ որդւոյ Կաւատայ՝ ապստամբեաց Վարդան, և ի բաց եկաց ի ծառայութենէ թագաւորութեանն Պարսից

հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաւք Սպանեալ զՍուրէնն մարզպան յանկարծաւրէն ի Դուին քաղաքի, առին զաւար բազում, և գնացին ի ծառայութիւն Յունաց»։
Նոյնը, գլ. Բ, եջ 28՝

«Այս Խոսրով որ կոչեցաւ Անուշ Ռուան՝ ի ժամանակս իւրոյ թագաւորութեանն յառաջ քան զապըստամբութիւն զայս, հաստատեաց զերկիր, քանզի էր խաղաղասէր և աշխարհաշէն։ Եւ ի լինել ապստամբութեան այնորիկ, յայնմ հետէ ընդոստուցեալ զարթեաւ ի բարկութիւն՝ զանձն անմխաս համարեալ, իբր թէ՝ «հայր էի ամենայն երկրի, և ոչ տէր։ Եւ սնուցեալ զամենեսեան իբրև որդի և սիրելի։ Եւ արդ՝ ասէ, ի նոցանէ խնդրեսցէ Աստուած զարիւնս զայս»։

Կրոնական հալածանքների մասին փոքինչ չգիտե նաև Ասողիկը, վորն ոգտվել ե մի անհայտ աղբյուրից և ապըստամբության պատճառ համարում ե մարզպան Սուրենին։

«Եւ ապա Խոսրով արքայ Պարսից — վկայում ե Ասողիկը — զՍուրէն ոմն ազգական իւր, որում անուն էր Ճիհովր-Վշնասպ՝ հանէ ի հազարապետութիւն Հայոց։ Որ եկեալ կալաւ զերկիրս մեր, յոյժ հարստահարելով զնախարարս Հայոց. զի շնայր ընդ կանայս ազատաց, ոչ ածնելով զայրն տէր կնոջ իւրոյ» (II, գլ. Բ, եջ 84, Ս. Պետերբուրգ 1885)։

Ապստամբության դրդապատճառների մասին վերոհիշյալ տեղեկությունները, ինչպես տեսնում ենք, խիստ հակասական են։

Բոլոր այդ վկայությունները քննված են այժմ Երնստ Շտեյնի „Studien zur Geschichte des byzantinischen Reiches“ (Stuttgart 1919) ընդարձակ ու խիստ կարևոր աշխատության մեջ։ Գերմանական այս գիտնականի կարծիքով՝ ոտար մատենագիրների ավանդած տեղեկությունները, մեծ մասամբ, հերյուրանքներ են և չափազանցություններ վոր նրանք

լած են յեղել Բյուզանդիա փախած հայ ապստամբներից։ Այդ տեղեկություններից կարող են վորոշ չափով ճիշտ լինել Սուրեն մարզպանի բռնությունների մասին վկայությունները, վորոնք սակայն, հավանորեն, մասամբ աղավաղված են և մասամբ չափազանցված։ Կրոնական հալածանքների նկատմամբ միակ արժանահավատ փաստն այն է, վոր պարսիկներն ուզեցել են իրանց համար կառուցել Դվինում հատուկ ատրուշան։ Ուրեմն՝ 484 թվի դաշինքի խախտում համարվել է, հավանորեն, ատրուշանի կառուցումը, վոր կարող էր, իրոք, առիթ ծառայել վորոշ դժգոհությունների։

Ապստամբության բուն պատճառը, վոր մանրամասն քննության է առնված Շտեյնի ուսումնասիրության մեջ, բոլորովին այլ է և վոչ մի կապ չունի վոչ պարսկական դաժան բռնությունների, վոչ էլ կրոնական հալածանքների հետ։

Դեռևս 572 թվից առաջ Յուստինոս կայսրը, վորը մտադիր էր խախտել 562 թվի հիսնամյա խաղաղությունը, դիվանագիտական իր ներկայացուցիչների ջանքերով առաջուց նախապատրաստել էր թե հայկական և թե վրացական ապստամբությունները։

570 թվին Պարսկական Հայաստանի հայ իշխանավորները, ինչպես այդ յերևում է Հովհաննես Բիկլարեցու և Եվագրի վկայություններից, ըստ յերևույթին, գաղտնի դաշինք էյին կնքել Բյուզանդիայի հետ, վորի մեջ նախատեսնված է յեղել Հայաստանի անջատումը Պարսկաստանից։

Այդ գաշինքը, ինչպես մատնացույց է արել Շտեյնը, հիշատակված է նաև Սեբեոսի հետևյալ վկայության մեջ.

Սեբեոս, գլ. Ա, էջ 26 (Պետերբ. 1879)՝

«Իսկ առ Հայոց երգնոյր թագաւորն Յունաց, և հաստատէր նոյն ուխտ՝ որ ի մէջ թագաւորացն էր երկոցունց՝ երանելւոյն Տրդատայ և Կոստանդիանոսի. և տայր նոցա զզաւրսն կայսերական յաւգնութիւն»։

Շտեյնի կարծիքով՝ Սեբեոսի այս վկայությունից կարելի յե հետևցնել, վոր գաղտնի համաձայնությամբ վորոշված

է չեղել վերականգնել հայկական թագավորությունը և թագավորական գահը տալ Վարդան Մամիկոնյանին։

Նոր այս յենթադրությունը, վոր անհավանական չե, արժանի յե ըստ իս հատուկ ուշադրության։

Ինձ թվում ե, վոր Մամիկոնյանների ուժեղացման ու վերոհիշյալ խոստումների հետ կարող ե կապ ունենալ Սյունիքի բաժանվելը Պարսկական Հայաստանից, վորը տեղի յեր ունեցել 572 թվի նախարարական ապստամբությունից առաջ։

> «Յայնժամ յառաջ քան զայս, — վկայում ե Սեբեոսը, — ապստամբեալ ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց, և խնդրեաց ի Խոսրովայ յարքայէն Պարսից. զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դըւնայ ի Փայտակարան քաղաք, և կարգեսցէ զքաղաքն ի շահրմար Ատրպատականի. զի մի ևս կոչեսցի անուն Հայոց ի վերայ նոցա։ Եւ կատարէր հրամանն» (գլ. Ա, եջ 26)։

Մեր այս համառոտ դիտողություններից, կարծում եմ, կարելի յե վստահորեն հետևցնել, վոր 572 թվի ապստամբությունը համատիպ ու համապատասխան չեր Վարդանանց և Վահանյանց ապստամբություններին և չեր ունեցել սոցիալական նման դրդապատճառներ։

Ինչպես տեսանք, չե կարելի բնավ հաստատել, վոր Պարսկական Հայաստանի կրոնական ազատությունը կամ ներքին ինքնուրույնությունը վտանգված են յեղել պարսկական բռնությունների պատճառով նաև վեցերորդ դարում։

Իսկ այս ուշագրավ մի յեզրակացություն ե ու խիստ կարևոր հայկական ֆեոդալիզմի պատմության համար։

Անցնենք այժմ նախարարական մեծ ապստամբություններին Բյուզանդական Հայաստանում։

Հայաստանի հռոմեական մասը, ինչպես ասացինք, մեծ չեր։ Նրա մեջ եյին Չորրորդ Հայքում գտնվող նախարարական յերկիրները, վոր հռոմեական աղբյուրներում անվանվում են

սատրապություններ, և Բարձր Հայքը, վորը կոչվել է Մեծ կամ Ներքին Հայք (Armenia magna կամ interior): Այս վերջինը, Արշակ թագավորի մահից հետո (390 391 թ.) կառավարում եյին կայսրության կողմից նշանակված կոմեսները (comites):

Մեծ Հայքի, ինչպես և սատրապությունների, ներքին դրությունը մանրամասն արդեն ուսումնասիրված է Գյուտերբոքի և Ադոնցի վերոհիշյալ աշխատություններում (տես «Հռովմեական Հայաստան և հռովմեական սատրապութիւնները», թարգմ. Մ. Նորշուանի և „Армения в эпоху Юстиниана"):

Այս աշխատություններից հայտնի յե, վոր Բյուզանդական Հայաստանում, ինչպես և Պարսկականում, պահպանված է յեղել հայկական ֆեոդալիզմն իր հատուկ ինքնավար ներքին կարգերով։ Գործող իրավունքը և վարչաձևը յեղել են այստեղ նախարարական և վոչ հռոմեական։

«Մեծ Հայքը, — ասում է Գյուտերբոքը, — թեև հռոմեական իշխանության տակ նվաճված մի յերկիր եր, բայց վոչ իբրև հռոմեական պետության և սահմանադրության կազմակերպված մի մաս»։ Նրա դրությունը տարբերվել է սատրապությունների դրությունից նրանով, վոր Մեծ Հայքը, գտնվելով կոմեսների իշխանության ներքև, կառավարվել է կայսրության կողմից անմիջաբար, իսկ սատրապությունները կախում են ունեցել ուղղակի Հռոմից։

Ադոնցի կարծիքով՝ թե Մեծ Հայքը և թե սատրապությունները իրավական իրանց դրությամբ կարող են համարվել կայսրության կիսանկախ դաշնակից յերկիրներ (civitates foederatae)։ Տեղական իրավահասկացողությամբ՝ նախարարություններն այդ կապն ընդունել են, բնականաբար, իբրև վասսալական կախում կայսերական իշխանությունից։

Բյուզանդական Հայաստանի այս արտոնյալ վիճակը շարունակվել է անփոփոխ մոտ հարյուր տարի մինչև Զենոն կայսրը (474—491 թ.)։ Հատկապես սատրապությունների նկատմամբ նախարարական հին կարգերի վորոշ փոփոխու-

թյուն, համաձայն Պրոկոպիոսի վկայության (de aedif. III, 1), տեղի չեր ունեցել այս կայսեր ժամանակ։

484 թվին, արևելյան Իլլոս զորապետի մեծ ապստամբության ժամանակ, հայկական գրեթե բոլոր սատրապությունները անցել էին Ղևոնդիոս հակառակաթոռ կայսեր կողմը։ Ապստամբությունը ճնշելուց հետո՝ Զենոն կայսրը չէր կարող այլևս ունենալ նրանց հանդեպ նախկին վստահությունը. ուստի և նա կարգադրեց, որ սատրապները, այսինքն՝ «նահապետ»-ները կամ «տանուտէր»-ները, նշանակվեն այնուհետև կայսեր հրամանով։

Ուրեմն՝ այստեղ ևս, ինչպես և Պարսկական Հայաստանում Հազկերտ Բ-ի և Պերոզի ժամանակ, խախտված է չեղել տոհմային ժառանգականության եական ու կարևորագույն իրավունքը։

Այս փոփոխությունը, իհարկե, մեծ նշանակություն ուներ։

Թեև սատրապությունների ներքին կարգերը փոփոխություններ չէին կրել և սատրապներն ընտրվում էին, գլխավորապես, նախարարական տիրող տոհմերից, սակայն նրանք, կորցնելով ժառանգական իշխանության իրանց հին իրավունքը, դառնում էին այժմ կայսրներից կախում ունեցող կառավարիչներ։

Սատրապությունները այս ձևի տակ մնացին քառասուն տարուց ավել՝ մինչև Յուստինիանոսի թագավորությունը (527—565 թ.)։

Բյուզանդական Հայաստանի ներքին այս դրությունը հիմնովին փոխվեց սրա թագավորության առաջին հենց տարիներում։

Վեցերորդ դարում Հայաստանը, ինչպես հայտնի չէ, դառել էր նորից համառ ու պարբերաբար կրկնվող չերկարաձիգ կռիվների ռազմադաշտ։ Յուստինիանոսի գահակալությունից մի քանի տարի առաջ կայսրությունն այստեղ պարտություն էր կրել և պարսիկները ներս էին խուժել և հասել մինչև Պոնտոս։ Սահմանների պաշտպանությունը

*կոմեսի ու սատրապությունների զինվորական թույլ ուժերով համարվեց այժմ անբավարար։*

*528 կամ 529 թվին. Յուստինիանոսի հատուկ կարգադրությամբ* (Cod. Just. I, 29, 5), *արևմտյան Հայաստանը յենթարկվեց զինվորական վերակազմության։ Մեծ Հայքը, Սատրապությունները, Պոլեմոնյան Պոնտոսը և Առաջին ու Յերկրորդ Հայքը միացվեցին իբրև ռազմական հատուկ մի մեծ շրջան և այս շրջանում հաստատվեց ստրատեգի կամ «զորքերի մագիստրոսի»* (magister militum) *նոր պաշտոն, վորն այս յերկրի պաշտպանության համար ուներ իր տրամադրության տակ բյուզանդական զորքեր։ Այնուհետև կառուցվեցին այստեղ բազմաթիվ նոր բերդեր ու ամրություններ, վորոնք կայաններ յեղան բյուզանդական զորքերի կամ նրանց հրամանատար դուքսերի։*

*Նախարարական յերկիրների զինվորական այս վերակազմությամբ վերացվում եյին, բնականաբար, թե կոմեսի քաղաքացիական պաշտոնը և թե սատրապների զինվորական իշխանությունը։*

*Նախարարությունները, ինչպես տեսնում ենք, կորցնում եյին այսպիսով ռազմական իրանց նախկին նշանակությունը, ուստի և ավելորդ եր դառնում այժմ հանդուրժել նրանց արտակարգ իրավունքներն ու արտոնությունները։*

*528/529 թ. հրովարտակին հաջորդեցին այնուհետև 535 և 536 թ. հրովարտակները Հայաստանի վարչական, դատական և որենսդրական վերակազմության մասին։*

*Համաձայն 536 թվի 31-րդ հրովարտակի («Չորս կառավարիչների հաստատման մասին Հայաստանում»,* Nov. 31)՝ *հայկական բոլոր յերկիրները — Մեծ Հայքը, Սատրապությունները, Պոլեմոնյան Պոնտոսը և Առաջին ու Յերկրորդ Հայքը — փոխելով իրանց նախկին անունները, վերակազմվեցին իբրև չորս նահանգներ՝ Առաջին, Յերկրորդ, Յերրորդ և Չորրորդ Հայք՝ ու ստացան վարչական ու դատական նոր կազմակերպություն։*

*Համաձայն 535 և 536 թ. որենսդրական հրովարտակ-*

ների («Ժառանգության մասին հայերի մոտ», Const. 73=
=Ed. 3 և «Հայերի մասին՝ որպեսզի նրանք ամեն բանում հետևեն հռոմեական օրենքներին», Nov. 21)՝ կարգադրվեց ժառանգության վերաբերմամբ կիրարկել Հայաստանում հռոմեական իրավունքը և վերացնել տեղական «բարբարոսական» օրենքներն ու սովորույթները։

Յուստինիանոսի միաձուլման ու կենտրոնացման նոր քաղաքականությունն ուղղված է յեղել, ինչպես պարզ յերևում է այս հրովարտակներից, վոչ միայն նախարարական կարգերի, այլ անգամ տեղական իրավունքների ու իրավական սովորույթների դեմ։

Նրա վճռական այդ դիտավորությունը պարզ կերպով շեշտված է, օրինակ, 21-րդ հրովարտակի հետևյալ հատվածում.

Const. 47=Nov. 21՝

«Կամենալով, վոր Հայկական յերկիրը բոլորովին բարեկարգվի և վոչնչով չտարբերվի մեր պետության մյուս մասերից՝ մենք մտցրինք այստեղ հռոմեական վարչություն, վերացնելով նրա առաջվա անունները. սովորեցրինք նրանց ոգտվել հռոմեական կարգերից և հրամայեցինք, վոր նրանց մոտ չլինեն ուրիշ օրենքներ բացի այն օրենքներից, վոր ունեն հռոմայեցիները»։

Յուստինիանոսի վերանորոգումները, վոր արմատապես հեղաշրջում էյին Բյուզանդական Հայաստանի ֆեոդալական դարավոր կարգերը, առաջ պիտի բերեյին, բնականաբար, համառ ու կատաղի դիմադրություն։

Ցեվ հայտնի յե, իրապես, վոր այստեղ ես, ինչպես հինգերորդ դարի պարսկական հալածանքների ժամանակ, ֆեոդալ ազնվականության անհուն զայրույթն արտահայտվել է ամենաբուռն կերպով և վերածվել նախարարական ապստամբության։

Պրոկոպիոսի վկայություններից դիտենք, վոր ապստամ-

բության ժամանակ սպանված են յեղել Սիտտան, վորը Հայաստանի առաջին ստրատեգն եր, և Ակակիոսը, վորը վերակազմված Առաջին Հայքի պրոկոնսուլն եր։

Նախարարների համար, վորոնք կորցնում եյին իրանց արտոնությունները ու տիրական իրավունքները, Հայաստանի կրոնական ու կուլտուրական կապը Բյուզանդիայի հետ դառնում եր այժմ անկարևոր ու անարժեք։ Նրանք հասկացած պիտի լինեյին, վոր հայկական ֆեոդալիզմի համար ամենավտանգավոր թշնամին վոչ այնքան ֆեոդալական Պարսկաստանն ե, վորքան վարչապես ու որենսդրորեն միաձույլ ու միահեծան Բյուզանդիան։

Նրանց հույսն այժմ Պարսկաստանի վրա յեր և Պրոկոպիոսի վկայություններից հայտնի յե (De bello Persico, III, 2), վոր նրանք դիմել եյին Խոսրով Անուշիրվանին և խնդրել նրա ոգնությունը և միջամտությունը պարսկա-բյուզանդական յերկրորդ պատերազմից առաջ (540—562 թ.)։ Հայտնի յե նույնպես, վոր նախարարական ապստամբության առաջնորդներից մեկը՝ Արտավան Արշակունին մասնակից ե յեղել դավադրության, վոր հայ նախարարները կազմակերպել եյին Պոլսում Յուստինիանոսի դեմ։

Նախարարությունների համառ պայքարը չունեցավ և վոչ մի հաջողություն։

Ինչպես ապստամբության, նույնպես և պարսկա-բյուզանդական պատերազմի ժամանակ, Հունահայաստանի վերակազմությունը շարունակվեց աննկուն վճռականությամբ։

Հայկական ֆեոդալիզմի քայքայումն ունեցավ այստեղ այն հետևանքը, վոր խիստ ուժեղացավ ազնվականների գաղթը Պոլիս և Բյուզանդիայի այլ շրջաններ, ուր նրանք ստանում եյին բարձր պաշտոններ և սպասավորում կայսրության ընդհանուր շահերին։

Ազնվականության բռնի ու կամավոր այս գաղթը գլխավոր պատճառներից մեկն ե, անշուշտ, վոր վեցերորդ դարից հետո հնարավոր չեղավ այլևս վերականգնել այստեղ նախարարական հին իշխանությունները։

Յուստինիանոսի քաղաքականությունը նախարարությունների հանդեպ ունեցել ե սակայն նաև ուրիշ հետևանքներ, վոր ուշադրության չեն առնվել պատմագիտական ուսումնասիրություններում։

Արևմուտքից սպառնացող մեծ վտանգն ակներև կերպով տեսել եյին այժմ թե Պարսկական Հայաստանի նախարարական իշխանությունները և թե ինքը հայ յեկեղեցին։ Յեվ ուշագրավ ե, վոր հենց վերոհիշյալ անցքերից հետո, պարզ նկատելի յեն Հայաստանում քաղաքական կողմնորոշման բեկում և թշնամություն Բյուզանդիայի դեմ։

Յուստինիանոսի վերանորոգումներն եյին ըստ իս գլխավոր պատճառը, վոր 554/555 թվին մերժվեց Դվինում քաղկեդոնական դավանանքը և հայ յեկեղեցին վերջնականապես բաժանվեց հունականից։ Այս վորոշումը, թեև զուտ կրոնական եր, սակայն հետևանք եր պարզապես նախարարական Հայաստանի կողմնորոշման ընդդեմ կայսրության։

Յուստինիանոսի քաղաքականությամբ սկիզբ եր դրվել ըստ իս քաղաքական թշնամության Բյուզանդիայի դեմ, վոր հետագայում վերածվեց անհաշտելի ատելության։

Նախարարական ապստամբությունները հինգերորդ և վեցերորդ դարերում, ինչպես տեսնում ենք վերոհիշյալ դիտողություններից, ֆեոդալական ու կենտրոնական իշխանությունների մեծ պայքարի շարունակությունն եյին, վորը հարատև ու մշտական մի յերևույթ եր հայկական ֆեոդալիզմի պատմության։

---

## 12. ՀԱՅԿԱԿԱՆ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ՏԵՂԱԿԱՆ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Համաձայն իր զարգացման աստիճանների ֆեոդալիզմը բաժանվում ե, ինչպես հայտնի յե, յերեք շրջանների՝ 1. նախնական ֆեոդալիզմի շրջան, 2. զարգացած ֆեոդալիզմի շրջան և 3. քայքայվող ֆեոդալիզմի շրջան։ Հայաստանի նախարարական կազմակերպությունն Արշակունիների և մարզպանության ժամանակաշրջաններում, ինչպես յերևում ե մանրազննին մեր ուսումնասիրությունից, կարելի յե բնորոշել իբրև զարգացած ֆեոդալիզմ։ Իսկ ֆեոդալիզմի ծագումը Հին Հայաստանում և նրա նախնական շրջանը դրվելու յեն Արշակունիներից առաջ։*

*Ֆեոդալական հասարակակարգի վերոհիշյալ հաջորդականությունը և բաժանումը յերեք շրջանների պայմանավորված են տնտեսապես քաղաքների ու առևտրական-փողային հարաբերությունների զարգացմամբ։*

*Այդ զարգացումը կատարվել ե Արևմտյան Յեվրոպայում համեմատաբար արագ և գրեթե միշտ բարձրացող գծով։ Իսկ ֆեոդալական Հայաստանում, վորը մշտական ռազմադաշտ եր աշխարհակալ մրցող պետությունների, քաղաքները և քաղաքային տնտեսությունը յենթարկվել են պարբերաբար հիմնական ավերման, ուստի և յերկրի հաջորդական զարգացումը մատնվել ե այստեղ հաճախ տնտեսական հետաշրջման։*

*Վոչ միայն պարբերաբար կրկնվող արտաքին արհավիրքներն ու ծանր ցնցումները, այլ և առևտրական միջազգային հարաբերությունների հաճախակի ընդհատումները և, մանավանդ, առևտրական ճանապարհների և կենտրոնների տեղափոխումները, նպաստավոր չեն յեղել բնավ քաղաքային*

անտեսության տևական ու հարաճուն զարգացման համար։

Այդ է, հավանորեն, գլխավոր պատճառներից մեկը, որ Հայաստանում չէր զարգացել արտադրության ավելի բարձր տնտեսական ձևը և յերկիրը կառչած էր մնացել շարունակ արտադրության ֆեոդալական յեղանակին։

Վերև մենք տեսանք, որ Բագրատունյաց թագավորության ժամանակ քաղաքային արդյունագործության ու ապրանքային փոխանակության բուռն ու արագ զարգացմամբ սկիզբ էր դրվել սոցիալական-տնտեսական նոր հարաբերությունների առաջացման։ Միանգամայն հնարավոր է ըստ իս, որ հայկական ֆեոդալիզմը Հայաստանում և կրքայքայվեր ներքուստ, յեթե տնտեսական զարգացման վերոհիշյալ ընթացքը չընդհատվեր Սելջուկյան ավերածությունների ժամանակ։

Հայաստանի նախարարական կազմակերպության ինքնուրույն առանձնահատկություններից մեկն այն է, որ նրա աստիճանական զարգացումը և անկումը, Հայաստանի աշխարհագրական ու քաղաքական աննպաստ դրության հետևանքով, ունեցել են հատուկ ընթացք՝ անհամապատասխան Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալիզմի առաջադեմ զարգացման և վորակական ներքին քայքայման։

Հայկական ֆեոդալիզմի անկումը տեղի յեր ունեցել, ինչպես վերև տեսանք, տնտեսական հետաշրջության պայմաններում։ Թուրք թաթարական արշավանքներից հետո նա հարկադրված էր զիջել իր դիրքերը մահմետական նոր իշխանություններին և Հայաստանում հաստատվել էր հետզհետե պարսկական ու օսմանյան խոշոր կալվածատիրությունը, վորն իր էությամբ թեև դարձյալ ֆեոդալական էր, սակայն ուներ իր յուրակերպ բնույթը։

Ֆեոդալական հասարակակարգի ծագումը, ինչպես վերև տեսանք, Արևմուտքում և Արևելքում տեղի յեր ունեցել տարբեր պայմաններում։

Արևմտյան Յեվրոպայում ֆեոդալիզմի զարգացումը հետևանք էր գերմանական նվաճման և հռոմեական պետության

և նրա տնտեսական-սոցիալական կարգերի քայքայման, իսկ Արևելքում նա առաջ էր յեկել տոհմական հասարակակարգի կազմալուծման ու հեղաշրջման ընթացքում։

Հիմք ընդունելով նրա ծագման այս տարբեր պայմանները՝ յեվրոպական ֆեոդալիզմը համարում են, ինչպես վերև ասացինք, կրկնված ֆեոդալիզմ, իսկ արևելյանը՝ առաջնական։

Հին Հայաստանի նախարարական կազմակերպությունը, լինելով առաջնական ֆեոդալիզմ, պահպանել էր իր մեջ տոհմային նախկին կենցաղի բազմաթիվ մնացորդներ, մինչդեռ յեվրոպականը, լինելով կրկնված ֆեոդալիզմ, ուներ իր մեջ վոչ միայն համայնական-տոհմային գերմանական կարգերի, այլ և հռոմեական պետականության ու նրա քաղաքային կուլտուրայի և հիմնարկների մնացորդներ։

Ինքն ըստ ինքյան հասկանալի յե, վոր նախաֆեոդալական տոհմային տարրերը շատ ավելի ուժեղ ու շեշտված պիտի լինեյին Հայաստանի նախարարական կազմակերպության մեջ, քան Արևմտյան Յեվրոպայի ֆեոդալիզմում։

Տոհմական նախորդ շրջանից եյին ծագել, ինչպես վերև տեսանք, նախարարական կազմակերպության վերաբերյալ վորոշ տերմիններ։

Վոր տոհմային կենցաղի հին հարաբերությունները առանձնապես զորեղ են յեղել նախարարական Հայաստանում՝ այդ յերևում ե մատենագրական աղբյուրների վկայություններից ու ակնարկներից։

Հետագա այս շրջանում գոյություն են ունեցել, հավանորեն, համայնական-տոհմային հողատիրության հատուկ կարգեր, վորոնք նախարարական միջավայրում յենթարկված պիտի լինեյին, անշուշտ, վորոշ փոփոխությունների։ Նախարարական Հայաստանում տարածված ու արմատացած ե յեղել տոհմային վրեժխնդրությունը, ինչպես այդ վկայում են Եւսեբիոսը, Յեզնիկը և ուրիշ աղբյուրներ (տես Eusebius Praeparatio evangelica VI, 10, § 12 և «Եզնկայ Կողբացւոյ, Եղծ աղանդոց» I, գլ. ԺԵ)։ Նախարարական զորքերը, ինչ-

պես հայտնի չէ, դասավորված են եղել միշտ ըստ առանձին ազգերի կամ տոհմերի։ Ֆեոդալական Հայաստանի ժառանգական իրավունքի մեջ ակներև են տոհմային սեփականատիրության ուշագրավ հետքեր, որ ամրագրված են, օրինակ, Հուստինիանոսի 535 և 536 թ. վերոհիշյալ հրովարտակներում։

Հայկական ֆեոդալիզմին առանձնահատուկ են եղել, ուրեմն, տոհմական ու նախաֆեոդալական թե այս և թե նման տարրերը, որոնց դերն ավելի մեծ է եղել այստեղ, քան Արևմտյան Եվրոպայի ֆեոդալական հասարակակարգում։

Հայաստանի նախարարական կազմակերպության առանձնահատկությունները պայմանավորված են եղել, բացի այդ, հայկական բարձրավանդակի աշխարհագրական դիրքով ու տեղագրական կառուցվածքով։

Հայաստանը սարահարթերի ու հովիտների, իրարից բաժանված ու կտրված շրջանների մի լեռնաշխարհ է, ուստի և նրա այդ տեղագրության համեմատ հնագույն ժամանակներից սկսած կազմվել էին այստեղ իրարից անջատ բազմաթիվ «աշխարհներ» և նախարարական ինքնուրույն երկրներ, որոնք տնտեսական ու կուլտուրական իրանց կենցաղով և առնչությամբ ու բնակչության կազմով նման ու համակերպ չէին հաճախ զանազան վայրերում։

Հասկանալի է հետևապես, որ Հայաստանում պիտի լինեին «զանազան սովորութիւնք գաւառաց և աշխարհաց», ինչպես այդ վկայում են աղբյուրները։ Նախարարական երկրաշրջանների մասնակի առանձնահատկությունները և նախաֆեոդալական ու ֆեոդալական կարգերի տարբեր համակցությունները կարող էին, բնականաբար, ավելի բազմազան լինել Հայաստանի երկրային հատուկ միջավայրում, քան ֆեոդալական դաշտային երկիրներում։

Նախարարությունների ներքին կացության այդ զանազանությունները, որ գոյություն են ունեցել, անշուշտ, ֆեոդալական նաև ուրիշ երկիրներում, առանձնապես ցայ

*տուն և շեշտված են յեղել ըստ իս նախարարական Հայաս-
տանի աշխարհագրական պայմաններում։*

*Վերև մենք տեսանք, վոր Արշակունիների ու մարզպա-
նության շրջանում նախարարները չեն ունեցել սեփական
ինքնուրույն տնտեսություններ, այլ յեղել են սոսկ հողա-
տերեր և ստացել շինականներից տուրքեր և հարկեր։ Մա-
տենագրական աղբյուրներից բնավ չի յերևում, վոր նախա-
րարներն իրանք ևս յեղած լինեյին գյուղատնտեսներ, այլ
նրանց մեջ շեշտվում են միշտ նախարարների զորական
կենցաղը և զինվորական բարքերը։ Հայաստանում, վոր
մշտական կռիվների թատերաբեմ եր, միանգամայն բնական
ե, իհարկե, վոր ազնվականությունը գերազանցապես զին-
վորական դաս եր և նրանից եր կազմված «ազատազօրք»-ը։*

*Թեև ազնվականության ռազմականությունը և զինա-
պարտությունն ընդհանուր յերևույթ ե համարվում նաև
ֆեոդալական Յեվրոպայում, սակայն այնտեղ, որինակ,
արևելյան Գերմանիայում, Լեհաստանում և Ռուսաստանում
իշխանավոր սենյորներն ունեցել են հաճախ սեփական խոշոր
տնտեսություններ* (Gutsherrschaft) *և յեղել են վոչ միայն
զինվորականներ, այլ միաժամանակ նաև կալվածատեր-գյու-
ղատնտեսներ։*

*Նախարարական կազմակերպության վերև մատնանշված
առանձնահատկությունները, վոր բղխում են Հայաստանի
տեղական ինքնուրույն պայմաններից, թվում են ինձ ուշա-
գրավ ու կարևոր։*

*Սակայն նույն այս կազմակերպությանը վերագրվում
են հաճախ նաև այնպիսի առանձնահատկություններ, վորոնք
ըստ իս խիստ կասկածելի յեն, վորովհետև չեն հաստատվում
աղբյուրների փաստական տվյալներով։*

*Հայագիտական աշխատություններում մատնանշվում ե
հաճախ, վոր նախարարական Հայաստանում, ինչպես և
արևելյան բռնապետություններում, հողի գերագույն «սեփա-
կանատերն» ե յեղել պետությունը, այսինքն՝ սուվերեն թա-
գավորը։*

*Գարագաշյանը, օրինակ, կարծում է, որ «ինչպէս կենաց՝ նոյնպէս ընչից և ստացուածոց բացարձակ տէր էին Արշակունի թագաւորք» («Քննական պատմութիւն», Բ, էջ 4)։ Նույն կարծիքն ավելի որոշ ու ձևակերպած հայտնել է Խ. Սամվելյանն իր «Մխիթար Գոշի Դատաստանագիրքն» աշխատության մեջ։*

> *«Հին Արևելքի ամբողջ պատմության մեջ—ասում է Սամվելյանը—հողը, իբրև անշարժ ստացվածք բացառապես թագավորների և ընդհանրապես գերագույն իշխանների սեփականությունն էր համարվում։ Նույնն էր նաև Հին Հայաստանի պատմության մեջ։ Այստեղ հողը, ընդհանրապես յերկիրը, տեսականորեն համարվում էր թագավորների սեփականություն, իսկ իրականորեն, բացի թագավորներից հողի սեփականատեր եյին ճանաչվում նաև նախարարները. բդեշխները և այլ տիրող իշխանները, բարձր հոգևորականությունը հանձին կաթողիկոսական տան, յեպիսկոպոսական աթոռների, վանքերի և նույնանման հոգևոր հիմնարկությունների։ Հողային սեփականության գաղափարն յուր սկզբունքով մարմնանում էր թագավորի անձի մեջ։ Թագավորն արդեն յուր կողմից կարող էր հողատիրության իրավունք տալ նախարարներին և այլ մարմնավոր ու հոգևոր իշխաններին, սրանց բաշխելով հողեր կամ իբրև ժառանգական սեփականություն, նման միջնադարյան ավատական կարգի* foedum-*ին կամ թե ժամանակավոր սեփականություն նման* beneficium-*ին» (տես էջ 293—294)։*

*Պետք է ասել, որ գերագույն սեփականության այս իրավունքը գոյություն է ունեցել հաճախ ոչ միայն Արևելքում, այլ և Արևմուտքում։ Նույն իրավունքն ունեցել են սյուզերեն թագավորները ֆեոդալական այն միապետություններում, որոնց մեջ առանձնապես զորեղ է յեղել պետական կենտրոնացումը։ Միջնադարյան Անգլիայում, օրինակ, նոր-*

մանական տիրապետության ժամանակ թագավորը համարվել ե ամբողջ յերկրի ու հողի գերագույն ու միակ սեփականատերը, իսկ ֆեոդալներին պատկանել ե միայն հողի տիրության ու օգտագործման իրավունքը։

Սակայն գերագույն նույն իրավունքը չեն ունեցել փաստորեն սյուզերեն թագավորները, օրինակ, միջնադարյան Ֆրանսիայում։ Այստեղ վաղ միջնադարում, թագավորական իշխանության անզորության պատճառով, համեմատաբար թույլ ե յեղել պետության կենտրոնացումը։ Ամենազորեղ վասսալ իշխանությունները, լինելով գրեթե անկախ թագավորից, յեղել են այստեղ անպայման ու լիակատար տեր իրանց յերկրների ու կալվածների։

Վերոհիշյալ յենթադրությունը, վոր Հայ Արշակունիները գերագույն տեր եյին Հայաստանի բոլոր հողերի, չի կարելի, իհարկե, անել, հիմնվելով կասկածելի կռահումների վրա հողատիրական կարգերի մասին Հին Արևելքում։

Այդ խնդիրն անհրաժեշտ ե, անշուշտ, հիմնավորել պատմական հաստատուն վկայությունների օգնությամբ։

Իսկ համապատասխան վկայություններից դժվար չե հետևեցնել, վոր Հայ Արշակունիների թագավորությունը, լինելով թուլահոդ ու ապակենտրոնացած ֆեոդալական միապետություն, նման ե յեղել ավելի միջնադարյան Ֆրանսիային, քան նորմանական Անգլիային։

Միանգամայն հավանական ե, ուրեմն, վոր Հին Հայաստանում ևս, ինչպես և միջնադարյան Ֆրանսիայում, կիսանկախ ու ինքնուրույն նախարարությունները ունեցել են իրանց յերկրների ու կալվածների նկատմամբ սեփականատիրական լիակատար իրավունքներ։

Այս հետևությունը, վոր հիմնովին հակառակ ե վերոհիշյալ յենթադրության, արել են Տուրնեբիզը և Ադոնցը։

Տուրնեբիզի կարծիքով՝ հայ նախարարները բացարձակ տեր են յեղել իրանց յերկրների և նրանց հողերը համարվել են ժառանգական ու տոհմական լիակատար սեփականություն

(„franc-alleu, avec droit héréditaire", *տես* Histoire politique et religieuse de l'Arménie, *էջ 72)։*

*Նույն այս կարծիքն ավելի հանգամանորեն արտահայտված է Ադոնցի* „Армения в эпоху Юстиниана" *աշխատության մեջ (էջ 460—461)։ Համաձայն Ադոնցի յենթադրության՝ հայկական իշխանական հողատիրությունն ավելի համապատասխան է յեղել ֆեոդների այն տեսակին, վորը ֆեոդալիզմի պատմաբաններն անվանում են* fiefs-seigneuries, *իսկ Պավլով-Սիլվանսկին՝* fiefs-alleux *(տես* Павлов-Сильванский Н. П., Феодализм в древней Руси, изд. вт., Москва 1923, *էջ 97)։*

> *«Պատմաբանները — ասում է Ադոնցը — տարբերում են իսկական ֆեոդերն այն ֆեոդերից, վորոնք թեև նույնպես անվանվում են ֆեոդ՝ սակայն իրավական իրանց դրությամբ վորակվում են վորպես սենյորիաներ։ Այս յերկու կարգի ֆեոդերը հենված են ֆեոդալական հողատիրության յերկու հակադիր սկզբունքների վրա։ Ֆեոդը համարվում է մի կողմից պայմանական հողատիրություն, վորը յենթակա յեր յետ դրավման՝ յեթե նրա տերը խախտում եր ծառայության իր յերդումը. իսկ մյուս կողմից՝ ֆեոդալը, յեթե չեր կամենում ծառայել տվյալ սենյորին, իր հողի հետ անցնում եր ծառայության ուրիշ սենյորի մոտ այսպես կոչված կոմմենդացիայի* (commendatio) *կարգով։ Նման փոխադըրումներն ապացուցում են, վոր անցնողը ճանաչվել է հողի լիակատար սեփականատեր և նա ազատ կերպով ծառայել է, ում վոր ինքը կամեցել է։ Նշանակում է, վոր այս դեպքերում ավելի գերակշռող է յեղել ֆեոդալի անձնական կախումը սենյորից, քան հողայինը։ Այս կարգի սենյորատը նկատելի յե մանավանդ ֆեոդալիզմի սկզբնական շրջանում..... Հենց այսպես կարելի յե բնութագրել նաև թագավորի ու իշխանների հարաբերությունները Հայաստանում։ Այդ հարաբերությունները ունեցել են ավելի անձնական կախման բնույթ,*

> քան տերիտորիական։ Թագավորը զրկում էր տվյալ իշխանին կալվածներից վորեե հանցանքի համար, սակայն այդ պատիժը չէր տարածվում նրա հետնորդների վրա։ Պատժված իշխանի ամենամոտիկ հաջորդը ստանձնում էր դարձյալ իր իրավունքները և գրավված հողը վերադարձվում էր նրան, իբրև նրա տոհմի անոտարելի սեփականություն։ Սակայն Հայաստանում, ինչպես և ընդհանրապես ֆեոդալական միջավայրում, սոցիալական հարաբերությունների կարգավորիչ էյին հանդիսանում վոչ թե իրավական սկզբունքները, այլ իրական ուժը, և այս վերջինի կապակցությամբ դասավորվում էյին զանազանակերպ հարաբերությունները»։

*Տուրնեբիզի ու Ադոնցի այս բացատրություններից պարզ յերևում է, վոր նրանք իշխանապատկան յերկիրների վերաբերմամբ ժխտում են Հայ Արշակունիների գերագույն սեփականության իրավունքը և իշխանական կալվածներն ու հողերը համարում են* allod-*ներ, այսինքն՝ «լիակատար» ու «անոտարելի» ժառանգական սեփականություն իշխանական տոհմերի։*

*Մատնանշելով հայկական իշխանությունների հողային սեփականատիրության լիակատար ու անպայման իրավունքները՝ Լորանն իր* „L'Arménie entre Byzance et l'Islam“ *աշխատության մեջ* (Paris 1919, *էջ 68) համարում է այդ Հին Հայաստանի նախարարական կազմակերպության ինքնուրույն մի առանձնահատկություն, վորով նա տարբերվել է արևմտյան ֆեոդալիզմից։*

> «Հայկական իշխանությունների կալվածատիրությունը — ասում է Լորանը — ստացել էր իրավական այնպիսի մի ձև, վորը ծանոթ չէր արևմտյան ֆեոդալիզմին։ Ձեռք բերված լինելով միանգամ կամ բարձրագույն իշխանությունից իբրև պարգև և կամ բռնի ուժով՝ նա վորպես սեփականություն փոխանցվել է

ուղղակի հաջորդ սերունդներին առանց իշխանության միջամտության և առանց նոր տուչության (investiture)։ Այդ կալվածատիրությունը դիտվել է իբրև աննախադիր մի իրավունք, վորին վոչ վոք չեր կարող ձեռք տալ օրինավորապես (եջ 68)։

Լորանը, ինչպես տեսնում ենք, համամիտ չե Տուրնեբիզին և Ադոնցին, վորոնք իշխանական այդ կալվածատիրությունը համապատասխան են յենթադրել francs-alleux կամ fiefs-seigneuries կոչված իշխանական սեփականատիրության։ Այս կետում Տուրնեբիզի ու Ադոնցի յեզրակացությունները կարելի յե ըստ իս համարել ավելի հիմնավոր և ընդունելի, քան Լորանինը։

Հողային սեփականատիրության վերոհիշյալ խնդիրը քննության է առնված նաև շինականների մասին իմ աշխատության մեջ («Դիտողություններ Հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում», Պետ. Համալսարանի Տեղեկագիր № 1, Յերևան 1925, եջ 15—17)։

Այս հոդվածում մատնացույց են արված Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայությունները, վորոնց մեջ ակնարկված է Հայ Արշակունիների գերագույն սեփականատիրության իրավունքն ագարակների ու ավանների հողերի վերաբերմամբ։

Ագաթանգեղոս, գլ. ԾԺԹ, եջ 436 (Տփղիս 1909)՝

«Յետ այսորիկ հասեալ նմա [Գրիգոր Լուս.] բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց Մեծաց աշխարհին, շինելով եկեղեցիս յամենայն աշխարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքս, յաւանս, ի շէնս, ի գեօղս և յագարակս։ Սոյնպէս և թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս երդոյ՝ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն, նուէր պտղոյ Տեառն մատուցանէր»։

Փաւստոս, V, ԼԱ. էջ 237 (Վենետիկ 1889)՝

«Եւ հատ ես յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողուլն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զերբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն»։

Արդ՝ ի՞նչպես հասկանալ թագավորի այդ իրավունքը։ Ունե՞ր արդյոք Տրդատ Մեծը կամ նրա հաջորդներից մեկն այնքան լայն իրավունքներ, որ կարողանար գյուղական հոգևորականությանը հողաբաժիններ հատկացնել ամբողջ Հայաստանում՝ թե բուն արքայական և թե նախարարապատկան յերկիրներում։

Արշակունիների սեփականատիրական գերագույն իրավունքը վորոշելու համար այս հարցի պատասխանն ունի, անշուշտ, մեծ կարևորություն։

Փավստոսի վկայության մեջ պարզ ու հաստատ ասված է, վոր Տրդատ թագավորը տվել եր յեկեղեցիներին հողաբաժիններ «ընդ ամենայն երկիրն Հայոց», իսկ Ագաթանգեղոսի ասելով՝ «յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ»։ Ագաթանգեղոսի վկայությունը, ինչպես տեսնում ենք, այնքան էլ պարզ չէ, վորովհետև «յամենայն իշխանութեան իւրում» կարող է նշանակել թե ամբողջ Հայաստանը և թե թագավորի անմիջական տիրության տակ գտնվող սեփական յերկիրը։

Այս խնդիրը մենք թեև հարուցել եյինք, բայց չեյինք լուծել վերոհիշյալ աշխատության մեջ։

Ինձ թվում է՝ կարելի յե այժմ հաստատապես պնդել, վոր միանգամայն հավանական են Տուրնեբիզի, Ադոնցի և Լորանի յեզրակացությունները, վորոնք նախարարական իշխանությունների հողերը և կալվածները, ուրեմն՝ և նրանց

ավանները ու ագարակները՝ համարում են այդ իշխանությունների ժառանգական ու տոհմական լիակատար սեփականությունը։

Կարևոր է այդ տեսակետից, որ Ագաթանգեղոսի պատմության արաբերեն թարգմանությունը, որն ավելի հին խմբագրություն է, քան այժմյան հայերենը և հունարենը՝ ունի ուշագրավ մանրամասնություններ, որոնք ակնարկում են Հայ Արշակունիների թագավորական իշխանության թույլ ու սահմանափակ իրավունքները։

Թվելով մի առ մի Հայաստանի տասն և վեց մեծ իշխանությունները՝ արաբերեն թարգմանությունը շեշտում է, օրինակ, որ հիշատակված իշխաններից տասն և հինգը «ստորագրված էյին Տրդատին պատերազմի ժամանակ» (տես Н. Марр, Крещение армян, грузин, абхазов и аланов, арабская версия, СПБ. 1905, էջ 115)։ Մի ուրիշ տեղ նույն թարգմանությունը մատնանշում է դարձյալ, որ յեպիսկոպոսություններ հաստատվել էյին նախարարական այն յերկիրներում, որոնց իշխանները «տրամադրված են յեղել բարեմտաբար» (էջ 137)։

Այս վկայություններից անգամ դժվար չէ յեզրակացնել, որ Հայաստանի մեծ նախարարությունները յեղել են, իրապես, ինքնուրույն ու գրեթե անկախ իշխանություններ, և միանգամայն անհավանական է, ուրեմն, որ քրիստոնեության մուտքը ինչպես և հողաբաժինների հատկացումը գյուղական հոգևորականության, տեղի ունեցած լիներ այստեղ Արշակունիների անմիջական կարգադրությամբ։

Մատենագրական աղբյուրների վկայություններից կարելի յե նույնպես հետևցնել, որ թե Արշակունիների արքունի յերկրում և թե նախարարական իշխանություններում գոյություն են ունեցել մասնավոր հատուկ կալվածներ ու հողեր, որոնք համարվել են՝ նման միջնադարյան allod-ների՝ ժառանգական լիակատար սեփականություն։

Այս կարգի գույքերը, ինչպես ճիշտ մատնանշել է Ադոնցը, անվանվել են «հայրենիք» (տես „Армения в эпоху

Юстиниана", էջ 457—458)։ Allod-ական սեփականություն պետք է համարել, օրինակ, Սահակ կաթողիկոսի կալվածները, վոր նա տվել եր իբրև ժառանգություն Համազասպ Մամիկոնյանի վորդիներին «մինչև ցյաւիտեան»։

> «Եւ վասն զի ոչ գոյր իւր արու որդի — ասում է Փարպեցին — բայց միայն դուստր մի, զոր էր տուեալ կնութեան Համազասպայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի, որ ծնաւ ի Համազասպայ երիս արու որդիս, զսուրբն Վարդան և զսուրբն Հմայեակ և զերանելին Համազասպեան. որոց ետ և կնքեաց սուրբ այրն Աստուծոյ Սահակ զստացուածս գեօղից իւրոց և ագարակաց, և որ ինչ միանգամ էր իւր՝ ետ նոցա ի ժառանգութիւն և զաւակի նոցա մինչև ցյաւիտեան» (տես I, ԺԸ, էջ 37, Տփղիս 1904)։

Հայ Արշակունիները, ինչպես տեսնում ենք, չեն կարող համարվել գերագույն ու բացարձակ սեփականատեր Հայաստանի ամբողջ հողի։

Հայաստանի ֆեոդալիզմի գլխավոր առանձնահատկություններից մեկը կարելի յե, ընդհակառակը, այն յենթադրել, վոր նախարարապատկան հողերը, նման ֆրանսիական francs-alleux կոչված կալվածների կամ ռուսական „вотчина"-ների, յեղել են փաստորեն վոչ թե պայմանական ֆեոդեր, այլ լիակատար ու անպայման սեփականություն։

Նախարարական իշխանների կախումը Հայ Արշակունիներից յեղել է, ուրեմն, վոչ թե հողային, այլ սոսկ վասսալական։

Հողային սեփականատիրության այս խնդրի վրա անհրաժեշտ եր մանրամասն կանգ առնել, վորովհետև նորագույն իսկ յերկերում մատնանշվում է հաճախ, վոր Հին Հայաստանում, ինչպես և ասիական այլ մեծ յերկիրներում, հողի սեփականատեր է համարվել պետությունը կամ սուվերենը։

Խոսելով «բաժ» բառի իմաստաբանական զարգացման

*մասին, նման կարծիք է հայտնել, օրինակ, Թ. Ավդալբեգյանն իր «Հաս, սակ, բաժ» վերնագրով հոդվածում (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 1, Յերևան 1926, էջ 88)։*

> *«Վորովհետև խոսքը վերաբերում է Հայաստանին, — ասում է Ավդալբեգյանը, — վոր յեղել է ասիական մի յերկիր, ապա կարծում ենք, վոր սխալված չենք լինի, յեթե վորոշ վերապահություններով ասենք, թե ինչպես ասիական այլ մեծ յերկիրների—Պարսկաստանի, Ասորեստանի, Հնդկաստանի ու Չինաստանի, այնպես և Հայաստանի պետական կազմակերպության հիմքը դրվել է այն ժամանակ, յերբ մասսաներն սկսել են զբաղվել գլխավորապես յերկրագործությամբ՝ աստիճանաբար նստակյաց դառնալով։ Այս շրջանում ինչպես հնադարյան ասիական այլ հասարակությունների մեջ, այնպես և Հայաստանում՝ պետությունը կամ սուվերենը, վոր համարվում է հողի սեփականատեր, բաժին է վերցնում հողագործի արտադրածից, յերկրագործական արդյունքներից» (էջ 88)։*

*Յենթադրելով Հայաստանի ամբողջ հողը պետության սեփականություն՝ Ավդալբեգյանն իր ուրիշ աշխատության մեջ մի քանի քայլ ևս առաջ է գնում և մարզպանական Հայաստանի տնտեսակարգը համարում է վոչ թե ֆեոդալական, այլ «ասիական տնտեսություն»։*

*Նոր այս կարծիքը նա հայտնել է իր «Հայ շինականի ու գեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում» ուսումնասիրության սկզբում։*

> *«Այս մենագրությունը, — ասում է Ավդալբեգյանն իր հոդվածի առաջաբանում, — վոր տեղի սղության պատճառով խիստ հակիրճ է շարադրված, վերաբերում է Հայաստանի տնտեսական զարգացման պատմության գլխավոր բաժիններից մեկին — աշխատավարձի պատմությանը և շոշափում է մեր յերկրի տնտեսական*

զարգացման պատմության այն շրջանի աշխատավարձի հարցը, որը կոչում ենք «ասիական տնտեսության» շրջան (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 3, Երևան 1928, էջ 51)։

Արդ՝ ի՞նչ է հասկանում նա «ասիական տնտեսություն» ասելով։

Նրա ըմբռնողությամբ՝ — որը վերապահությամբ կռահված սեփական իր կարծիքն է՝ — ամենագլխավոր հատկանիշն այս տնտեսության այն է, «որ անմիջական արտադրողների գերակշռող տիպն ազատ գյուղացի չէ» (տես Նրա «Կարլ Մարքսի տնտեսական զարգացման թեորիան», չերկր. հրատար., Երևան 1926, էջ 44)։

Հասկանալի չէ, ուրեմն, թե ինչու նա իր աշխատություններում բացասում է շարունակ հայ շինականների ճորտացման վիճակը, որը քննության է առնված ու լուսաբանված իմ «Դիտողություններ Հին Հայաստանի շինականների գրության մասին» ուսումնասիրության մեջ։

> «Մասնավորելով խոսքը Հայաստանի տնտեսական զարգացման պատմության մասին՝ — ասում է նա, — պետք է ասենք, որ, այսպես թե այնպես, մեր խորին համոզմամբ ասիական տնտեսության գաղափարն այս ասպարեզում անգնահատելի ծառայություններ կարող է մատուցանել և պիտի մատուցե մեր ուսումնասիրողներին՝ նրանց զերծ պահելով ամենուրեք պարտադրաբար ստրուկ կամ ճորտ տեսնելու «արդիական» նախապաշարումից» (տես «Կարլ Մարքսի տնտեսական զարգացման թեորիան», չերկրորդ հրատար., էջ 45, ծանոթ. համեմատե նաև Նրա «Հաս, սակ, բաժ» աշխատությունը, էջ 55—56, ծանոթ.)։

Ավդալբեգյանի այս բացատրություններից պարզ չերևում է, որ նա տրամադիր է ժխտել նախարարական կազմակերպության ֆեոդալական բնույթն Հայ Արշակունիների և մարզպանության շրջաններում։ Սակայն նրա

յենթադրությունները, վոր մտացածին կառուցումներ են, չեն հաստատվում ընավ աղբյուրների փաստական այն վկայություններով, վոր հիմք են ծառայել իմ այս ուսումնասիրության։

Նախարարական Հայաստանում, ինչպես տեսանք, գոյություն են ունեցել թե հողի allod-ական լիակատար սեփականություն և թե ճորտական գյուղացիություն։

Միանգամայն պարզ է, ուրեմն, վոր Նախարարական Հայաստանի տնտեսակարգը չե կարելի համարել «ասիական տնտեսություն»։

Իմ այս ուսումնասիրությամբ չեն սպառվում, անշուշտ, այն բոլոր խնդիրները, վոր կապ ունեն հայկական հնագույն շրջանի ֆեոդալիզմի և նրա տնտեսական կամ սոցիալական առանձնահատկությունների հետ։

Կըգտնվեն թերևս նոր նյութեր ու նոր տեղեկություններ, վորոնք, հավանորեն, հիմք կըծառայեն նաև մութ մնացած խնդիրների լուսաբանման։

Յեվ ես խորապես համոզված եմ, վոր ինչպես այս, նույնպես և հետագա այդ աշխատությունները, ուղղեցույց են լինելու այն պատմաբանների համար, վորոնք ուսումնասիրում են Վրաստանի, Աղվանքի և իրանական յերկրների ֆեոդալական անցյալը և նույն յերկրների տնտեսական ու սոցիալական ներքին կենցաղը։

---

# ՑԱՆԿ ՀԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԻՐԵՐԻ

---

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՀՍՍՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

# ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

1. *Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ.—Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում* . . . . . . . . . սպառած
2. *Պրոֆ. Մ. ԱԲԵՂՅԱՆ.—Հայոց լեզվի տեսությունը* . . սպառած
3. *Պրոֆ. Հ. ԱՃԱՌՅԱՆ.—Հայերեն արմատական բառարան, Դ. հատոր, 1350* . . . . . . . .
4. *ԵՐՎԱՆԴ ՇԱՀԱԶԻԶ.—Հին Երևան (Նկարազարդ)* . . սպառած
5. *ԵՐՎԱՆԴ ԼԱԼԱՅԱՆ.—Դամբանների պեղումներ Խորհրդային Հայաստանում, (բազմաթիվ նկարներով)* . . . սպառած
6. *Պրոֆ. ՀՐ. ԱՃԱՌՅԱՆ.—Հայերեն արմատական բառարան, Ե. հատոր 1294 եջ* . . . . . . . .
7. *Պրոֆ. ՀՈՎՀ. ՀԱԿՈԲՅԱՆ.—Ուղեգրություններ, Ա. հատոր ԺԳ.—ԺԶ. դար. 510 եջ. (լաթակազմ)* . . . . սպառած
8. *ԵՐՎԱՆԴ ՇԱՀԱԶԻԶ.—Միքայել Նալբանդյանի Դիվանը, (լաթակազմ)* . . . . . . . . . սպառած
9. *Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ.—Մանր հետազոտություններ* 2 ռ. 50 կ.
10. *ՍՊ. ՄԵԼԻՔՅԱՆ.—Կոմիտասի ստեղծագործության անալիզը* . . . . . . . . . . . 1 ռ. 50 կ.
11. *Ճարտ. ԹՈՐՈՍ ԹՈՐԱՄԱՆՅԱՆ.—Շինանյութերի գործածությունը հին Հայաստանում* . . . . . . 1 ռ. 50 կ.
12. *Պրոֆ. ՀՐ. ԱՃԱՌՅԱՆ.—Հայերեն արմատական բառարան, Զ. հատոր, 1626 եջ* . . . . . . . .
13. *Պրոֆ. Մ. ԱԲԵՂՅԱՆ.—Հայոց լեզվի տաղաչափությունը (լաթակազմ)* . . . . . . . . . 12 ռ.
14. *Ճարտ. Ն. ԲՈՒՆՅԱԹՅԱՆ.—«Գառնիի հեթանոսական տաճարը», չափագրություններ և լուսանկարներ, (լաթակազմ)* . . . . . . . . . . 23 ռ.
15. *Պրոֆ. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ.—Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն, (լաթակազմ)* . . . 15 ռ.

16. *Պրոֆ. ՀՈՎՀ. ՀԱԿՈԲՅԱՆ.—Ուղեգրություններ, Զ. հատոր, 1800—1820։ 884+VIII էջ, բազմաթիվ նկարներ. յերկու գունավոր նկար և կից Անդրկովկասի քարտեզը* XIX *դարասկզբին* . . . . . . . . . . 20 ռ.

17. *ԶԱՎԵՆ ԿՈՐԿՈՏՅԱՆ.—Խորհրդային Հայաստանի ազգաբնակչությունը վերջին հարյուրամյակում (1831—1931)* 18 ռ.

18. *Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ.—Երատոսթենեսի ստադիոնը և Պարսից ասպարեզը* (Das Eratosthenische Stadion und der persische Asparêz) . . . . . 2 ռ.

19. *Պրոֆ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ.—Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 337, (լաթակազմ)* . . . . . 12 ռ.

## ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ ԵՆ

20. *Պրոֆ. ԼԵՎՈՆ ՄԵԼԻՔՍԵԹԲԵԿ.—«Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Ա. հատոր, Ե.—ԺԲ. դար.*

21. *ԳԱՐԵԳԻՆ ԼԵՎՈՆՅԱՆ.—Հայ պարբերական մամուլը սկզբից մինչև մեր որերը.*

22. *ՍՊ. ՄԵԼԻՔՅԱՆ.—Ուրվագիծ հայ յերաժշտության պատմության.*

23. *Պրոֆ. ՀՐ. ԱՃԱՌՅԱՆ.—Հայերեն արմատական բառարան, հավելված.*